ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԻԱ·

# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՑ

# ԱՆՎԱՒԵՐԱԿԱՆ ԿԱՆՈՆԱՑ ՄԱՏԵԱՆԸ

## ԹՈՒՂԹ ՅԱԿՈԲԱՅ ԱՌ ԿՈԴՐԱՏՈՍ

## ԵՒ ԿԱՆՈՆՔ ԹԱԴԴԷԻ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1896.

*Vardapetut'iwn Arak'elets' anvawerakan Kanonats' mateanē, T'ught' Hakobay ar Kodratos ew Kanonk' T'addēi*

# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՑ

# ԱՆՎԱՒԵՐԱԿԱՆ ԿԱՆՈՆԱՑ ՄԱՏԵԱՆԸ

## ԹՈՒՂԹ ՅԱԿՈԲԱՅ ԱՌ ԿՈԴՐԱՏՈՍ

ԵՒ

## ԿԱՆՈՆՔ ԹԱԴԴԷԻ

---

ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐՔ

ԳՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ


Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1896.

# Ա Զ Դ

Առաջիկայ հրատարակութիւնս մեր "Մատենագրական Մանր Ուսումնասիրութեանց„[1] երկրորդ մասն ըլլալու որոշուած էր. բայց քննութիւնն ընդարձակուելով "մանր ուսումնասիրութեանց„ սահմանէն դուրս ելաւ, որով այժմ իբրեւ անկախ գործ հարկ եղաւ հրապարակ հանել:

Որչափ ալ գրութեան գլխաւոր նպատակն էր՝ մեր Կանոնագրոց առաջին կտորը միայն հետազօտել, անկարելի էր անտես ընել անոր հետ սերտ կապուած միւս մասերն եւ ընդհանրապէս բովանդակ Կանոնագիրքն: Յաջորդ գործքն ըստ այսմ մասամբ նաեւ ընդհանրապէս Կանոնագրոց քննութեան երեւոյթ մ'ունի շատ տեղեր (տես ի մասնաւորի էջ 202—256, յատկապէս էջ 231 եւն:) "Թադդէի„ անուն կրող անվաւեր կանոնքն, ինչպէս նաեւ ոչ նուազ անվաւեր "Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս„ շատ աւելի անձուկ կապ ունենալով մեր հետազօտած ասորի Կանոնաց հետ, առնուեցան հրատարակութեանս մէջ իբրեւ երկրորդական մասն ամբողջին:

Երկու մասէ կը բաղկանայ գրութիւնս. առաջինը՝ Հետազօտութիւնքն, երկրորդը՝ Բնագիրքն բովանդակելով: Երրորդ մաս մը կամ իբրեւ Յաւելուած դրուած է համառօտ քաղուած մը հանգուցեալ Հ. Յովսէփայ Վ. Գաթրճեան Կանոնագրոց տակաւին անտիպ Քննութեան մէկ մասը, որ կապ ունէր այս մասերուն հետ, միանգամայն իբրեւ նախընծայ ճաշակ մ'այն յարգի գործոյն:

Հետազօտութեանց մեծ մասն (գործքիս 1—230 էջերը) լոյս տեսած էին արդէն "Հանդիսի„ մէջ 1893

---

[1] Հմմտ. "Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք.„ Հետազօտութիւնք եւ Բնագիրք: Մասն Առաջին, Ա—Զ. Նեմեսիոս եւն: Վիեննա 1895. 8° ԺԲ+296:

տարւոյն սկզբէն ի վեր[1]: Այս տեղ ամբողջական են թէ Հետազօտութիւնքն եւ թէ ամբողջ երկրորդ մասն՝ Բնագիրքն, Ծանօթութիւնքն եւ Յաւելուածն:

Բնական էր որ կանոնաց-մատեանները հետազօտելով քննութենէ դուրս չմնային կանոնաց բովանդակութիւնքն, հին եկեղեցւոյ բարեկարգութիւնքն եւն: Թէ «Վարդ. Առաք.» եւ թէ Կանոնք Թադդէի նաեւ ցայսօր հայ եկեղեցւոյ կանոնագրոց մասն են: Եթէ ասոնք անվաւեր գտանք, եթէ շատ մը կանոնական որոշմունք նորագոյն սովորութեանց արդիւնք տեսանուեցան եւն, նպատակնիս այն չէր երբեք, ինչպէս ուրիշ գրութեանց համար կարծուեցաւ, դիտմամբ հայ եկեղեցւոյ մէջ ճոխութիւն ունեցող կանոնական եւ պատմական-աւանդական գործոց յարգը նուազեցնել: Բայց թէ իրենց ինչ էին նախնաբար՝ անկեղծօրէն քննել անհրաժեշտ է այս օրս, եւ քննել այնպէս՝ ինչպէս գիտութիւնը կը պահանջէ, եթէ նաեւ ասով շատ մ'աւանդական, դարերէ ի վեր տարածուած եւ սիրելի եղած կարծիքներ եւ զրոյցներ ջրուին: Ճշմարտութիւնը յերեւան հանել պարտք է ամէն բանասիրի. եւ այս եղած է միայն մեր նպատակը:

ՀԵՂԻՆԱԿԸ:

---

[1] Հմմտ. «Հանդէս Ամսօրեայ» 1893, Թ. 1, էջ 1–7. Թ. 3, էջ 65–69. Թ. 4, էջ 97–102. Թ. 6, էջ 161–168. Թ. 7, էջ 193–197. Թ. 8, էջ 232–239. Թ. 9, էջ 257–262. Թ. 10, էջ 303–308. Թ. 11, էջ 325–332. Թ. 12, էջ 380–383: «Հանդէս Ամս.» 1894, Թ. 1, էջ 21–25 եւ Թ. 3, էջ 76–83:



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՑ

## ԸՆՎԱԻԵՐԱԿԱՆ ԿԱՆՈՆԱՑ-ՄԱՏԵԱՆԸ

### 1.

Շատ անգամ կրկնուած է թէ Հայոց մատենագրութիւնը՝ գոնէ հնագոյն ժամանակաց մէջ՝ "գերազանցօրէն քրիստոնէական մատենագրութիւն„ է. այնչափ սակաւ են այս շրջանէն դուրս գրութիւնք՝ գոնէ ըստ մեր արդի ծանօթութեանց: Իրաց այս հանգամանաց մէջ կ'ենթադրուէր որ ամէնէն աւելի մեր եկեղեցական մատեանները կրկտուած ու քննուած ըլլալու էին: Թէեւ եղած են այս նկատմամբ քանի մը կարեւոր քննութիւնք, բայց մեր եկեղեցական-պատմական գրականութեան մեծագոյն մասն տակաւին մթութեամբ եւ շատ անգամ զրուցախառն քօղով ծածկուած է: Սակայն անհրաժեշտ է գիտնալ թէ հայկական եկեղեցին ինչ շրջաններէ անցած՝ հասած է այժմու դրութեան, թէ իւր պաշտաման մատեանք, պատարագամատոյցք, ժամագիրք, մաշթոցք եւ մանաւանդ կանոնագիրք ե՛րբ եւ ի՛նչպէս ծագած, տակաւ զարգացած եւ ի՛նչ փոփոխութիւններ կրած են դարաւոր ժամանակաց շրջանի մէջ: Ամէնէն կարեւորն է կանոնագրոց պատմութիւնը հիւսել՝ իւր կրած բոլոր փոփոխութիւնները նշանակելով. եւ այս՝ Հայոց ոչ միայն եկեղեցական, այլ եւ ընդհանրապէս ընդհանուր պատմութեան լուսաւորութեան համար. վասն զի յայտնի է արդէն թէ ինչ. ազդեցութիւն ըրած են հայ եկեղեցին եւ իւր բարեկարգական օրէնքներն ազգային պատմութեան ամէն մասերուն մէջ:

Մեր յաջորդ դիտողութեանց նպատակն է քննութեան առնուլ Հայոց կանոնագրոց առաջին կտորն, հետազօտելով անոր ծագումը, փոփոխութիւններն եւ բուն ազդեցութիւնն հայկական գլխաւորաբար եկեղեցական գրականութեան մէջ։ Ուստի մեր ծրագիրն է մատենագրական միայն. թէեւ յընթացս գրութեան պիտի շօշափուին նաեւ շատ մը կէտեր, որոնք մեր մէջ ցայժմ տիրող շատ մը կարգաց ու սովորութեանց հնութեան չափն ու ծագումը կ'որոշեն։ Դժբախտաբար նաեւ այս քննութեան վերջնական հետեւութիւնը ժխտական է հայ գրականութեան համար, այն իմաստով՝ որ, ինչպէս պիտի տեսնենք, շատ բան, շատ սովորութիւնք ու կանոնք՝ որ թերեւս շատերուն ընիկ հայ կ'երեւային, փոխառութիւնք կ'երեւան ասով օտարէն, այս անգամ՝ ասորականէն։ Սոյն այս պատասխանը պիտի տանք նաեւ այն առաջին հարցման՝ թէ ինչ է Հայոց եկեղեցական կանոնագրոց նոյն իսկ առաջին կտորը, որ "Վարդապետութիւն Առաքելոց" մեծահնչիւն տիտղոսը կը կրէ, որ հայ եկեղեցւոյ մէջ տիրող առաջնակարգ օրինաց-մատեանններէն է, եւ որ յաջորդ հայկական ժողովոց օրէնսդրութեանց մէջ այնպէս մեծ դեր խաղացած է՝ դարերով վայելելով ամենամեծ ճոխութիւն, իբրեւ բուն առաքելոց կանոնադրութիւն։ Պատասխանն ամփոփուած է սա կարճ բայց շատ նշանակալից նախադասութեան մէջ. — Այս գիրքն է Թարգմանութեան ուրիշ անվաւերական (apocryphe) մէկ գրութեան։

Շատերուն՝ որ թերեւս այնչափ տեղեակ չըլլան՝ անձուկ մօք արեւելեան հին եկեղեցեաց ամէն հանգամանաց, անշուշտ անըմբռնելի պիտի երեւայ թէ ինչպէս կրնայ սուտանուն անվաւերական մատեան մ'այսչափ յարգ ստանալ դարերու ընթացքին մէջ։ Բայց ով որ քիչ շատ տեղեակ է գլխաւորաբար ասորի անվաւերական մատենագրու-

*թեան՝ գիտէ թէ ինչ մեծ հօսանք մըն էր մատենագրութեան այն ճիւղն, եւ ինչ մեծ ազդեցութիւն ըրած է բովանդակ քրիստոնէական գրականութեան վրայ։ Ճշդիւ մեր այս գիրքն անշուշտ Հայոց քով չէր ունենար այն մեծ յարգն, եթէ նոյնն առացած չըլլար արդէն իւր հայրենի հողոյն վրայ՝ — Ասորւոց քով. եւ արդեամբք՝ ինչպէս Հայոց, նոյնպէս Ասորւոց՝ կանոնական աղբիւրներէն մին եղած է միշտ։ Վերջապէս գրութիւնս ծնունդ է ասորական այն գրական շարժման որ խճողած է քրիստոնէական մատենագրութիւնն անվաւերական անթիւ պատմութիւններով, շատ մը կեղծ եւ աղաւաղեալ վկայաբանութեամբք եւ նմանեօք, եւ որուն շնորհիւ ասորի եւ նաեւ հայ պատմութեան ոչ սակաւ մասը հիւսուած է կարգ մը աւելի կամ նուազ աստիճանաւ ստայօդ զրոյցներով, որ շատ անգամ հազիւ թէ քօղ գոյացուցեան միայն ճըշմարտութեան հետքերը կը բովանդակեն, եւ որուն ամէնէն նշանաւոր ծնունդն է Ադդէի կամ լաւ եւս Աբգարու զրոյցը, այն՝ որ մեր պատմութեան մէջ նշանաւոր կնճիռ մը յօդած է։*

*Ճշդիւ այս վերջին զրոյցն եղաւ առիթ մեր այս քննութեան։ Երբ երեք տարի յառաջ երբ "Աբգարու զրուցին" վրայ համառօտ տեսութիւն մը կը գրէինք[1], մեր ուշադրութիւնը գրաւած էր Գիւրըթոնի (— որ Աբգարու զրուցին ասորական բնագրի նշանաւոր հրատարակիչն է —) ի լոյս հանած նոյն գործոյն մէկ ուրիշ կտորն, որ Աբգարու զրուցին կից տպուած էր։ Մեր կանոնագրոց առաջին էջը բանալն ու մէկ երկու տող համեմատելն՝ բաւական էր համոզելու, որ գտած էինք նոյն ասորի անվաւեր*

---

[1] Տես՝ Հանդէս Ամս. 1889, թ. 3, էջ 47—51 եւ թ. 4, էջ 63—67։ Նոյն նիւթոյ վրայ աւելի ընդարձակ՝ Zur Abgar-Sage: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, IV, Heft 1, 2, 3 (առանձինն գրքուկով՝ 1890, pp. 55.)

պատմութեան հնագոյն հայերէն թարգմանութիւնը։ Յաջորդ քննութիւնք քիչ մը նուազեցուցին այս հնաւանդ հայ թարգմանութեան յարգը, վասն զի տեսնուեցաւ որ հայ թարգմանութիւնը չէր պահուած անխառն ու հարազատ, այլ մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրն ուրիշ գրչի մը յաւելուածներով այլափոխեալ էր։ Ինչ որ հետազօտութեանց շարունակութեամբ՝ կրցանք ի լոյս հանել, ամփոփուած են մասամբ այս գրութեանս գերմաներէն թարգմանութեան ծանօթաբանութեանց, եւ մասամբ մեր յաջորդ դիտողութեանց մէջ։

Ի լոյս ընծայելով այս հետազօտութիւնն՝ կատարած կ'ըլլանք՝ թէեւ թերեւս քիչ մ'ուշ՝ մեր այլուր տուած խոստումն։ Մատենախօսական քննութեան մը մէջ[1] յիշած էինք որ Կանոնագրոց մէջ Զաքարիայի անուամբ գտնուած Օրէնսդրութիւնը ցուցումն կ'առնուէր[2] սխալմամբ՝ պնդելու թէ նաեւ Ա դարուն կատարեալ նուիրապետութիւն մը գոյութիւն ունէր ի Հայս. եւ այն տեղ գրած էինք. “Այս Օրէնսդրութիւնը մէկն է այն շատ մը կանոնական կեղծ կտորներէն, որոնցմէ ոմանք՝ մուտք գտած են նաեւ մեր կանոնագրոց մէջ։ Օրէնսդրութեանս աղբիւրներէն մին է “Վարդապետութիւն Առաքելոց„ կոչուած փոքր գրութիւնը, որ Ե դարուն թարգմանուած է հայերէն։ Ասոր վրայ ուրոյն գրութեամբ պիտի խօսինք։„ — Այս խոստումն ոչ թէ վայրապար տրուած էր, ինչպէս կարծուեցաւ, այլ այն ժամանակ արդէն մասամբ պատրաստ էր քննութիւնս։ Միայն նորագոյն աղբիւրներ գտնելու եւ ի մանաւորի Հռոմայ մատենադարաններէն սոյն գործքին արաբերէն մէկ թարգմանութեան մ'օրինակը գտնելու ջանքն էր որ յապաղեց հրատարակութիւնս։ Բայց այս յապաղումն յուսանք

---

[1] Տես Հանդէս Ամս. 1891, թ. 8, էջ 247։

[2] Հմմտ. “Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը.„ (Վենետ. 1890), էջ 185, 275։

որ գործքին յօգուտ եւ ոչ թէ ի վնաս եղաւ։ — Այս դիտողութենէս ետքն անցնինք բուն խնդրոյն։

“Վարդապետութիւն Առաքելոց„ անուն գրութիւնն Ասորւոց աշխարհի ծնունդ մըն է որ շատ քիչ ծանօթ է Արեւմտից, իբր Դ դարու վերջերն յերեւան ելած իւր այժմու ձեւին մէջ։ Այս մատեանն՝ որուն բուն ծանրակէտը կը կազմեն անվաւեր ու կեղծ Առաքելական կանոններն՝ թուով 27 ըստ ասորի բնագրին, եւ 33 ըստ Հայ թարգմանութեան, իւր այժմու ձեւին մէջ չորս մասերու կը բաժնուի։ Համառօտ ներածութենէ մ'ետքն, — ուր կը պատմուի թէ Առաքեալք նոյն օրն իսկ, երբ լեզուաց պարգեւն ընդունեցան, կարգադրութիւններ ըրին, եւ այս՝ սոյն գրոց մէջ յառաջ բերուած՝ կանոնները դրին ու հաստատեցին, — կը յաջորդեն այն կարգադրութիւնքն՝ որ իբր թէ առաքեալներէն դրուած են, եւ որոնք շատ անգամ ընիկ արեւելեան նկարագիր մ'ունին։ Այս մասին կը յաջորդէ նկարագրութիւն մ'առաքելոց գործունէութեան, քահանայից դարձին եւ քրիստոնէից կրած հալածանաց։ Վերջին մասն ցուցակ մըն է աշխարհաց, որոնց մէջ իւրաքանչիւր առաքելոց գործունէութեան շրջանը նշանակուած է։

Այս գործքն՝ որ հնութեան մէջ նաեւ յոյն մատենագրաց մեծաւ մասամբ անծանօթ մնացած է, անձուկ մտօք Արեւելքի համար, այսինքն՝ ասորական եւ հայկական եկեղեցեաց եւ մատենագրութեանց համար այն նշանակութիւնն ունեցած է, մանաւանդ թէ թերեւս աւելի եւս քան զայն՝ ինչ որ ունեցան Արեւմտից համար Դիոնէսիոսի Կրտսերի թարգմանած “Առաքելական կանոնք„ կոչուածները։ Մանաւանդ հայ մատենագրութեան մէջ այս գիրքն միշտ պատուաւոր տեղ մը գրաւած է, թարգմանուելով Ե դարու առաջին կիսուն՝ որչափ կ'երեւայ՝ նոյն իսկ “Ադդէի Վարդապետութեան„ կամ “Ար-

դարու Թղթոյն„ թարգմանչէն, իբրեւ վաւերական կարծուած ու յարգուած, եւ նոյն դարուն երկրորդ կէսին՝ Հայկական առաջին կանոնաց-մատենին խմբագրութեան մէջ առնուած է։ Անկէ ի վեր այս մատեանս ամէն ամբողջական կանոնաց հաւաքածոյի կամ “Կանոնագրոց„ ինչպէս սովոր ենք ըսել, առաջին կտորը կը կազմէ։ Ճիշդ նոյն գիրքն առած է ասորական բնագիրն նաեւ Եբեդ-Յեսուայ ասորական Կանոնաց-մատենին մէջ։

Թէ՛ ասորերէն եւ թէ՛ Հայ բնագրաց մէջ մեր այս մատեանն “Վարդապետութիւն Առաքելոց„ կը կոչուի։ Ասորի ձեռագիր մը (Հրտ. Լակարտ) թերեւս շփոթելով Լաբուբնայի գրութեան հետ կամ նման պատճառաւ մը՝ կը յորջորջէ մեր մատեանը՝ “Վարդապետութիւն Ադդէի առաքելոյ„։ Թէ արդեօք երբեք Հայ ձեռագիր մ'ալ այս վերջին տիտղոսը կրած է թէ ոչ՝ խնդիր մըն է, որուն վրայ յետոյ պիտի խօսինք։ Սովորաբար այս կանոններն ի վկայութիւն կը բերուին այս տիտղոսներով՝ “Կանոնք„ կամ “Կարգք եւ օրէնք առաքելոց,„ կամ “Առաքելական կանոնք։„ Այս կէտերու վրայ յընթացս գրութեանս պիտի խօսինք։ Մեզի կարեւորն այժմ այն է որ այս անուանակոչութեանց եւ ոչ մին ճշգրիտ է ու յատուկ. վասն զի այս եւ նման անուններով կը գտնենք ուրիշ յոյն, ասորի, լատին եւ Հայ գրութեանց կոյտ մը, որոնց հետ դիւրաւ կրնայ շփոթուիլ մեր գրքոյկը։ Այսպէս բոլորովին ուրիշ եւ ընդարձակագոյն գործք մըն է “Ուսումն„ կամ “Վարդապետութիւն Առաքելոց„ անուն նախնաբար յԱսորիս յօրինուած գործքը, զոր Լակարտ հրատարակեց[1]։ Երկու նախնաբար անկախ գրքեր,

---

[1] Didascalia Apostolorum syriace, (ed. P. Lagarde.) Lipsiae 1854. B. G. Teubner, VII, 121 pp. Ասորական վերնագիրն է. “Ուսումն (didascalia) կամ Վարդապետութիւն Երկոտասան Առաքելոց եւ աշակերտացն սրբոց Փրկչին մերոյ։„ — Վերնագրոյն նոյնութեան

որ սա տիտղոսը կը կրեն՝ “Սահմանադրութիւնք Առաքելոց վասն խորհրդական պաշտաման„[1] եւ որոնք արաբական թարգմանութեան մէջ “Կանոնք Ս. Հիպողիտայ„ անուամբ ծանօթ են[2], յետոյ աւելցան, եւ այսպէս ելաւ “Սահմանադրութիւնք Առաքելոց„ անուն ընդարձակագոյն գրութիւնը[3]։ Ս. Հիպողիտայ անուամբ կանոնաց հետ նոյն են շատ մասամբ՝ Լակարտի հրատարակած ասորական ութ գրքերը, (մանաւանդ գիրք Ձ) որոնք Կղեմայ անունը կը կրեն[4]։ Ասոնց առաջինը Լակարտ նոր թարգմանած է յունարէնի՝ “Կտակ Տեառն„ վերնագրով[5], իսկ երրորդն է “Առաքելական Կարգադրութիւն Եկեղեցւոյ[6]„ կամ “Սահմանադրութիւնք ի

---

պատճառաւ ճիշդ մեր մատեանն եւ Լակարտի հրատարակած այս գործքն չփոխած է իրարու հետ՝ գիտնականն Լանտ (J. P. N. Land, Anecdota Syriaca, Lugd. Bat. 1862. I, p. 19), երբ Բրիտանական թանգարանի Cod. Add. 14,644 fol. 10ff. կտորին համար կը գրէր թէ ըլլայ՝ “Վարդապետութիւն Առաքելոց, զոր հրատարակեց Լակարտ՝ Փարիզի Կայս. Գրատան Սէն-Ժէրմէնի Թ. 38 ձեռագրէն, ի Լայփցիկ 1854։„ (Տես Cureton, Ancient syriac documents, p. 166.) Բայց յետոյ տեսնելով իւր սխալն՝ ուղղած է. (Հմմտ. Anect. Syr. II, Addenda et emend. p. 4.)

[1] Pitra J. B., Juris Ecclesiastici Graecorum Historia et Monumenta. Romae, 1864. Vol. I, pp, 49—72։ *Διατάξεις τῶν ἁγίων ἀποστόλων περὶ μυστικῆς λατρείας*, Constitutiones Apostolorum De Mystico Ministerio. Այս գործքերէն մին Հիպողիտեայ անունը կը կրէ. այսպէս ի գիրս՝ P. Lagarde, Reliquiae iuris ecclesiastici antiquissimae. II Graece, Lips. 1856, pp. 5—18. *Διατάξεις . . . περὶ χειροτονιῶν, διὰ Ἱππολύτου.*

[2] Haneberg, Canones S. Hyppolyti, Arabischer Text mit lat. Uebers., Noten und Proleg. München, 1870.

[3] Pitra, I pp. 113—422։ *Διαταγαὶ τῶν ἁγίων ἀποστόλων*, Constitutiones Apostolorum. Շատ անգամ տպագրուած է։

[4] P. Lagarde, Reliquiae, I Syriace, pp. 2—61, եւ մանաւանդ՝ էջ 23 եւն։

[5] Lag. Reliq. II, p. 80—89. *Διαθήκη τοῦ Κυρίου.* Ասորի բնագրին տիտղոսն (I. pp. 2—15) է. “Գիրք առաջին Կղեմայ, որ կոչի Կտակարան Տեառն մերոյ։„

[6] Տես J. W. Bickel, Geschichte des Kirchenrechtes. Giessen, 1843. I p. 107ff.

*ձեռն Կղեմայ եւ կանոնք առաքելոց եկեղեցականք*[1]*„ կոչուած գործքը։ Բոլորովին ուրիշ բան է մօտերս յոյն մետրապոլիտին՝ Փիլոթէոս Բրիեննիոսի գտած ու հրատարակած “Վարդապետութիւն Երկոտասան առաքելոց„ անուն գրութիւնն*[2]*, զոր գիտնականաց ոմանք Բառնաբայ թղթոյն շարունակութիւն կը նկատեն։ Նաեւ Արեւմտից եւ Յոյն եկեղեցւոյ մէջ այնչափ հռչակեալ “Կանոնք Առաքելոց՝ ՁԵ„ մեր այս կանոններէն բոլորովին տարբեր բան են, թէեւ նաեւ անոնք նախնաբար Ասորիքէն ծագած կ'երեւան, որոնց ասորի բնագիրն հրատարակեց Լակարտ յիշեալ իւր գրքին մէջ՝ Կղեմայ անուամբ*[3]*։ Սոյն այս տիտղոսը կը կրեն այս կանոնք նաեւ հայ թարգմանութեան մէջ, որ սովորաբար կանոնաց-մատեաններու մէջ մեր այս “Վարդապետութիւն Առաքելոց„ մատենէն անմիջապէս ետքը կը դրուի. բայց որպէս զի լաւ եւս զանազանուին “Կանոնք երկրորդ առաքելականք„ յորջորջուած են։ — Վերջապէս կը գտնուին նաեւ “Քաղուածք ի Սահմանադրութեանց Առաքելոց*[4]*„. “Կանոնք Առաքելոց ա-*

---

[1] Pitra, I pp. 77—86։ *Αἱ διαταγαὶ αἱ διὰ Κλήμεντος,* Լատ. Constitutiones per Clementem et ecclesiastici Apostolorum canones. Նոյնը նաեւ՝ Lagarde, Reliq. II, p. 74—79։

[2] *Διδαχὴ τῶν δώδεκα ἀποστόλων,* ed. Philotheus Bryennius. Constantinop. 1883։

[3] Pitra, I pp. 13—26։ *Κανόνες ἐκκλησιαστικοὶ τῶν ἁγίων ἀποστόλων,* Canones Apostolorum կամ Regulae ecclesiasticae Apostolorum prolatae per Clementem ecclesiae Romanae Pontificem. Տես նաեւ՝ Hefele, Conciliengeschichte 1873, I p. 793—827 եւ Lagarde, Reliq. II pp. 20—35։ Իսկ ասորականն (Lagarde, Reliq, I pp. 44 ff.) այս տիտղոսը կը կրէ. “Գիրք ութերորդ՝ Կղեմայ կատակարանք եւ կամ հրամանք առաքելոց զոր առաքեցին առ ազգս ի ձեռն Կղեմայ։ Կանոնք եկեղեցականք։„ — Հայերէն թարգմանութեան վերնագիրն է “Սահմանք եւ կանոնք սուրբ առաքելոցն ի ձեռն Կղեմայ առաքեալ հեթանոսաց։ Կանոնք երկրորդ առաքելականք։„

[4] Pitra, I pp. 96—100։

պաշխարականք„[1], "Պատիժք Առաքելոց վասն Անկելոց[2]„, եւ Կանոնք "Ժողովոյն Առաքելոց յԱնտիոք[3]„, որ Պամփիլեայ վկային անունը կը կրէ, եւ այլն: Բոլորովին զատ բան է Լաբուբնայի անուամբ "Վարդապետութիւն Ադդէի[4]„, նշանաւոր անվաւերականն, որ Հայ թարգմանութեան մէջ ուրիշ որոշ տիտղոս մը կը կրէ. "Թուղթ Աբգարու թագաւորի Եդեսեայ քաղաքի„ եւն. (տպ. Վենետ. 1868:)

Այս ամէն համանուն կամ շատ նման անուն կրող գրութիւններէն բոլորովին զատ է մեր "Վարդապետութիւն Առաքելոց„ անուն գրութիւնն, որ մասնաւոր մտադրութեան արժանի է: Բայց թէեւ այս գրքին ասորական բնագիրն երեք անգամ լոյս տեսած է յԵւրոպա, եւ թէեւ երեք թարգմանութիւնք եղած են ասորի բնագրէն՝ ի լատիներէն, յունարէն եւ անգղիերէն, կրնանք ըսել թէ այս գիրքը քիչ ծանօթ է Եւրոպայի մէջ: Որչափ մեզի ծանօթ է՝ եւ ոչ գիտնական մը փորձած է ցայսօր ուրոյն գրութեամբ մը հետազօտել մատեանս. իսկ Հայերէն թարգմանութիւնն եւրոպական գիտնոց եւ ոչ ծանօթ է, այն իմաստով՝ որ, որչափ մեր տեղեկութիւնք կը զօրեն, եւ ոչ տեղ մը յիշատակութիւն կը գտնուի անոնց քով Հայ թարգմանութեան: Սակայն Հայ թարգմանութիւնն այս դէպքիս մէջ ալ կարեւոր է քննութեան առնուլ, վասն զի նախ որ շատ հին է՝ հասնելով մին-

---

[1] Pitra, I p. **103** ff. *Ὅρος κανονικὸς τῶν ἁγίων ἀποστόλων* (Սահման կանոնական առաքելոց սրբոց:) P. Lag., Reliq. II. p. **36** ff.

[2] Pitra, I, **105—107**:

[3] Pitra, I pp. **91—93**. *Τοῦ ἁγίου ἱερομάρτυρος Παμφίλου ἐκ τῆς ἐν Ἀντιοχείᾳ τῶν ἀποστόλων συνόδου.* Lagarde, Reliq. II. pp. **18—20**:

[4] Տես Cureton, Ancient syr. documents. Lond. **1864**, pp. **5—23**. G. Philipps, The doctrine of Addai. Lond. **1876** etc.

չեւ Ե դար, եւ երկրորդ՝ որ ասորական գործքին բոլորովին ուրիշ, աւելի լիակատար կամ ընդարձակեալ մէկ խմբագրութիւնը կը ներկայացնէ։ Նոյնպէս արաբերէն թարգմանութիւնն՝ որչափ ինձ ծանօթ է, դեռ լոյս տեսած չէ ամբողջ։

Ինչպէս յիշեցինք, ասորի բնագիրն երկու անգամ լիակատար, եւ անգամ մ'ալ թերակատար օրինակներէ լոյս տեսած է յԵւրոպա։ Արդէն անցեալ դարու մէջ մեծ ասորագէտն Ասսեմանի ճանչցած է մեր "Վարդապետութիւն Առաքելոց" մատեանը, բայց Եբեդ-Յեսուայ կանոնաց ժողովածոյից մէջէն[1]. իսկ այս վերջնոյս մէջ ներածութեան մասը կը պակսի։ Թէպէտ եւ նոյն հեղինակն իւր Վատիկանու արաբերէն ձեռագրաց ցանկին մէջ այս կանոնաց արաբական թարգմանութեան մը գոյութիւնը կը նշանակէ[2], եւ այս արաբական բնագիրն քանի մ'անգամ կը յիշէ[3], բայց ոչ ասորի եւ ոչ արաբական բնագրին վրայ մանրամասն ճառած է։ Այլ միայն տեղ տեղ կտորներ առած գործածած է՝ մանաւանդ վերջին մասէն, այսինքն՝ առաքելոց գործունէութեան շրջանը նշանակող աշխարհաց ցանկէն։ Այսպէս Թովմաս առաքելոյն[4], Ադդէի[5] եւ Ագգէի[6] գործունէութիւնը նկարագրող կտորն ասորի բնագրով ու լատին թարգմանութեամբ իւր գրոց մէջ զետեղած է։

Այս դարուս առաջին կիսուն՝ Պիքքել անուանի գիտնականն իւր "Եկեղեցական Իրաւանց Պատմութեան[7]" մէջ երկու անգամ համառօտիւ

---

[1] S. J. Assemani, Bibliotheca Orientalis, Tomus III. Pars. I (Romae **1725**), **333**ff.

[2] Bibl. Or. I, p. **619** ll.

[3] Bibl. Orient. III, Pars I, p. **14** n. **2**.

[4] B. O. III, Pars II, p. **32**.

[5] Անդ, էջ 10։

[6] Անդ, էջ 16—18։

[7] Johann Wilhelm Bickell, Geschichte des Kirchenrechtes. Giessen, **1843**. Band I. Beil. IV, pp **178—181**.

խօսած է մեր այս մատենին վրայ, առանց գիտնալու որ այն երկու կտորները միեւնոյն բանն են: Ծանօթ էր Պիքքէլի որ “Առաքելական Լ. կանոնադրութեանց ժողովածոյք„ մը կայ արաբերէն լեզուաւ, զոր Ասսեմանի “Գործք Առաքելոց եւ կանոնք նոցա Լ.„ տիտղոսով նշանակած էր[1]: Արդէն Կրէպ գիտնականը նշանակած էր[2] որ Պոտլէեան գրատան կանոնաց ձեռագիր մէկ մատեանը կը սկսի նոյնպէս Լ. կանոնաց ժողովածոյքով մը: Վանսլէպ ծանուցած էր որ նաեւ Ղպտի եկեղեցին Լ. կանոններ կ'ընդունի. եւ իւր գրութեան մէջ համառօտիւ յառաջ բերած էր[3] այն կանոնաց բովանդակութիւնը, որ արդեամբք մեր գրութեան հետ կը նոյնանան բոլորովին: Վերջապէս Պիքքէլ յիշելով Beveridge ծանօթ գիտնականին ըսածը[4], թէ արաբական կանոնաց-մատենի մը մէջ այս կանոններն ի վկայութիւն բերուած եւ ժողովուած են, եւ դնելով այն կանոնաց համառօտ նիւթն՝ ըստ Վանսլէպի, կը փակէ իւր խորհրդածութիւնքն այսպէս. “Անստոյգ կը մնայ թէ արդեօք այս ժողովածոյքն յո՞յն աղբիւրէ մը յառաջ եկած է: Բայց Beveridge կը հաստատէ թէ այս կանոններն ո՛չ հռոմէական եւ ո՛չ ալ յունական եկեղեցւոյ ծանօթացած են երբեք: Երբ բուն բնագիրն արաբական ձեռագրաց մէկէն առեալ ծանօթանայ, այն ատեն կրնայ հաստատութեամբ որոշուիլ թէ գոնէ ի՛նչ ծանօթ աղբիւրներէն առնուած են ասոր գոնէ ինչ ինչ կանոնները, եւ ի մանաւանդ թէ արդեօք ազգակցութիւն մ'ունի՞ այն ասորական կտորին հետ որուն վրայ վարը՝ Թ. 6. պիտի խօսինք[5]:„ — Սակայն այս Թիւ 6 հատածին մէջ բոլորովին ուրիշ գրութեան մը վրայ է խօսքը, այսինքն՝ “Գիրք Կղեմայ„ Փարիզի Կայսերական

---

[1] B. O. I, 619.
[2] Grabe, Essay, p. 50.
[3] Wansleb, Hist. de l'église d'Alex. p. 239.
[4] Beveridge, Syn. II. app. p. 211.
[5] Bickel, Gesch. p. 179—80:

Գրատնէն։ Այս վերջին գրոց սկզբնաւորութիւնն՝ ըստ Ցէնքէրի (Zenker) տուած տեղեկութեան՝ այսպէս է. “Գիրք առաջին Կղեմայ որ կոչի Կտակարան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, բանք՝ զոր խօսեցաւ առ սուրբ առաքեալս իւր յետ յարութեան իւրոյ ի մեռելոց։ Եւ եղեւ, իբրեւ յարեաւ Տէր մեր ի մեռելոց եւ շօշափեցաւ ի Թովմայէ եւ ի Մատթէէ եւ Յովհաննէ„ եւն։ Ուստի եւ այս գիրքն է Լակարտի հրատարակած այն ութ գրքերէն առաջինը, որ Կղեմայ ընծայուած են, ինչպէս քիչ մը վերը յիշեցինք։

Պիքքէլ յետոյ (Թ. 7 հատածին մէջ) կը քննէ “Գիրք Ս. Ադեայ (Թադէոսի ?)[1] առաքելոյն„ եւ ի վերջոյ այսպէս կը գրէ. “Ջուր աշխատեցայ այս կտորիս հետք մը գտնել ուրիշ տեղ. ոչ Եւսեբիոսի Թադէոսի վրայ ասորերէնէ թարգմանածը, ոչ յունարէն կտոր մը Թադէի գործոց վրայ Վիեննայի մէկ ձեռագրին մէջ (Lambec. VIII 428, հրտ. Kall.) եւ ոչ Փաբրիկիոսի Անվաւերականաց Գրութիւնն (Fabricius, Codex apocryphus) նման բան մ'ունին։„ — Պիքքէլ այսչափ միայն կրցած էր տեղեկութիւն տալ սոյն կտորին վրայ. “Նոյն (Փարիզեան) ասորի ձեռագրէն առեալ՝ Սէն-Ժէրմէնի արեւելեան ձեռագրաց ձեռագիր ցուցակին մէջ “Քաղուածոյք ի գրոց Կղեմայ„ գրութենէն անմիջապէս ետքը կը յիշուի ուրիշ կտոր մը այս վերնագրով. “Քաղուած ի գրոց վարդապետութեան Ս. Ադդէի առաքելոյ որ քարոզեաց զհաւատս՝ Ուռհայեցւոց եւ ամենայն Միջագետաց„ եւն։ Այս գրքին սկիզբն (Թղ. 211)՝ ըստ Ցէնքէրի տեղեկութեան՝ է. “Յամի 342 իշխանութեան Յունաց, որ օր ԺԴ էր Խեզիրան ամսոյ, յաւուր կիւրակէի պեն-

[1] Bickel, p. 185—6։ Հեղինակն Ադդէի եւ Թադէոսի խնդրոյն վրայ դեռ չէր կրնար այն գաղափարը կազմել, որ յետոյ յերեւան ելաւ՝ Աբգարու թղթին գտնուելովն եւ անոր վրայ եղած քննութեամբք։

տակուտէից՝ եկին աշակերտք ի Նազարէթէ Գալիլիացւոց„ եւն.՝ եւ վերջաւորութիւնը (Թղ. 221) "Աստ է վախճան գրոց Ադէի (Adi) առաքելոյ:„ — Ուրեմն այս գրութիւնն՝ զոր Պիքքէլ այլուր տեղ մը յիշուած չէր գտած, է բուն իսկ մեր "Վարդապետութիւն Առաքելոց„ գիրքն. միայն թէ հոս վերնագիրն ու վերջաւորութիւնը քիչ մ'այլազգ են: Ճիշդ այս ձեռագրին բնագիրն առած հրատարակած է Լակարտ՝ ինչպէս պիտի տեսնենք:

Այս ժամանակէն քանի մը տարի յառաջ արդէն հրատարակուած էր "Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեան ասորերէն բնագիրը՝ թէեւ անկատար՝ Անճելոյ Մայի ծիրանաւորին բազմահատոր "Նոր ժողովածոյ հին մատենագրութեանց„ հրատարակութեան մէջ[1], ուր լոյս տեսաւ Եբեդ-Յեսուայ "Ժողովածոյ կանոնաց„ գործքն իբրեւ առաջին կտորը, եւ այն՝ ասորի բնագրաւ եւ լատիներէն թարգմանութեամբ ի ձեռն Ալոյիսիոսի Ասեմանեայ: Հրատարակիչն այս վերնագիրը դրած է այն գործքին ճակատը՝ ասորի լեզուաւ. "Ժողովածոյ կանոնաց սինոդականաց[2], զոր արարեալ է Եբեդ-Յեսուայ մետրոպոլտի Ծոբայ (Մծբին) եւ Հայոց աշխարհին[3], որ առան ի քաղդէական մատենից Պետրոսեան (= Վատիկանեան) Մատենա-

---

[1] Scriptorum Veterum nova collectio e vaticanis codicibus edita ab Ang. Mai. Tom. X, Romae 1838. Pars I, pp. 1—168: Եբեդ-Յեսուայ գործքին ասորի բնագիրն ալ՝ էջ 169—331:

[2] Լատիներէն վերնագիրն քիչ մ'այլազգ է. Ebediesu Metropolitae Sobae et Armeniae Collectio Canonum Synodicorum ex Chaldaicis bibliothecae Vaticanae Codicibus sumpta et in Latinam linguam translata ab Aloysio Assemano. Praecedit Epitome Canonum Apostolorum auctore eodem Ebediesu. Սակայն իւրաքանչիւր էջի վրան Եբեդ-Յեսուի գործքը միայն "Ճառ Եբեդ-Յեսուայ„ կը կոչուի: Իսկ նոյն ինքն հեղինակն՝ Եբեդ-Յեսու (Ցուցակ Գրոց, գլ. ՃՂԸ. տես Bibl. Or. III, Pars I, 332) "Ժողովածոյ համառօտ կանոնաց ...„ կ'անուանէ:

[3] "Ծոբա„ է = Մծբին: (Հմմտ. Ass. B. O. III Pars I, p, 3.) "Ասորւոց քով Ծոբա նոյն է Մծբնայ (Nisibis)

դարանի, եւ կոչի այս մատեան՝ Համառօտութիւն կանոնաց առաքելոց։„ — Երեդ-Ցեսուայ այս "Համառօտութեան„ մէջ երեք կտոր ամփոփուած են ի մի. ա) "Կանոնք Առաքելոց՝ ԻԷ. վասն կարգաւորութեան Եկեղեցւոյ[1].„ բ) "Կանոնք Առաքելոց տուեալ ի ձեռն Կղեմայ՝ ՁԳ.[2]„ եւ գ) "Այլ կանոնք Առաքելոց տուեալ ի ձեռն Նորին Կղեմայ՝ Ի[3]։„ Այս երեք կտորներն՝ որ մէկ հասարակաց անուան ("Կանոնք Առաքելոց[4]„) ներքեւ ժողվուած

---

Հեռ, որուն երբեմն նաեւ Աթոր կոչուած ըլլալը կը յիշէ Ս. Եփրեմ՝ Արարածոց մեկնութեան մէջ։„ Արդեամբք ալ Ս. Եփրեմ՝ նոյն բանն ըսած է. եւ այս տեղը մեր Ե դարու ասորաբան թարգմանիչն փոխադրած է այսպէս (Եփրեմայ Մատենագրութիւնք, տպ. Վենետ. 1833. Ա, էջ 53. բնագիրը տես նաեւ Ass. B. O. I, p. 26) "Որէք (Arach) որ ասի Ուռխա (= Եդեսիա), Արտափաթ (Ասոր. "Ախար„) Նծբին (= Մծբին։)„ — Թէ արդեամբք "Տորա„ անունը Մծբնայ տեղն է, յայտնի է նաեւ անկէ որ մեր այս "Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեան վերջն Ադդէի գործունէութեան շրջանը կը գծուի (Հմծ. Թ) այսպէս. "Ուռհա, եւ ամենայն քաղաքք որ շուրջ զնովաւ, Մծբին եւ Արաբ,„ եւն ըստ Հայ թարգմանութեան,„ ուր ասորին է "Ուռհա եւ ամենայն կողմանք որ շուրջ զնովաւ յամենայն կուսէ, եւ Տօբա եւ Արաբ,„ եւն։ Նոյնպէս նաեւ Լաբուբնայ ասորւոյն մէջ կը գտնենք "Տոբա,„ իբրեւ = Մծբին, ինչպէս թարգմանած է նաեւ Հայը. (Հմմտ. տպ. Վենետ. 1868) էջ 19, 6 "Մծբնայէք եւ խառանացիք եւն (= Աս. տպ. Phillips, էջ 18, 20 "որք . . . ի Տօբոյ եւ ի Խառանէ . . .։„ —) — Իսկ այն պարագայն թէ ինչու Երեդ-Ցեսու "մետրոպոլիտ Տորայ եւ Հայոց աշխարհին„ կը կոչուէր, կը մեկնէ Ասեմանի (անդ III, p. 3. n. 3) թէ Մծբնայ կամ Տորայ քաղդէացի Նեստորականաց արքեպիսկոպոսը, որ երկրորդ գահն ունէր քաղդէացի Նեստորականաց պատրիարքութեան մէջ՝ ըստ տախտակաց Ամրեայ եւ Եղիայի (տես B. O. II, p. 458, 459), իւր իրաւասութեան տակն ունէր բոլոր Հայոց աշխարհին մէջ ցրուած քաղդէացի Նեստորականները։

[1] Տես Ang. Mai, Nova Coll. X. pars I. pp, 3—8. ասորի բնագիրը՝ 169—175։

[2] Անդ, էջ 8—17։

[3] Անդ, էջ 17—22։

[4] Լատ. Apostolorum Canones. Ասորի բնագրին բուն սկզբան խորագիրն է "Կանոնք եւ կարգք եւ օրէնք՝ զոր կարգեցին առաքեալք.„ իսկ նոյն կանոններուն վերջաբանութեան մէջ՝ "Կատարեցաւ առաջին սինհոդոս առաքելոց։„ Երեդ-Ցեսու ուրիշ տեղեր այս կանոնները լոկ "ի կանոնաց առաքելոց„ անուամբ կը կոչէ ի վկայութիւն։

են, երեք տարբեր գործքեր են։ Մեր "Վարդապետութիւն Առաքելոյ" գրութեան հետ նոյն է ասոնց առաջին կտորը, որ դժբախտաբար թերի է. վասն զի ամբողջ ներածութիւնն կը պակսի։ Նաեւ բուն բնագրին մէջ (— այս ասորի ձեռագիրը գրուած է 1332ին —) քանի մը նորագոյն փոփոխութիւնք եղած են, ինչպէս յետոյ պիտի տեսնենք։

Աւելի կատարեալ բնագիր մը հրատարակեց ասորական մատենագրութեան համար արդիւնաշատ գիտնականն Լակարտ[1]։ Լակարտ՝ իւր բնագիրն առած է Սէն-Ժէրմէնի Թիւ 38 ձեռագրէն։ Յետոյ պիտի խօսինք այս ձեռագրին, ու հրատարակութեան վրայ. այժմ կը բաւէ ըսել որ այստեղ սոյն գրութիւնը դրուած է իբրեւ ութերորդ գիրք Կղեմայ այս վերնագրով. "Գիրք ութերորդ Կղեմայ, Կատակարանք կամ Հրամանք առաքելոց, զոր առաքեցին ազգաց ի ձեռն Կղեմայ. Կանոնք եկեղեցականք." — ուստի այն գործքն է, որուն վրայ կը խօսի Պիքքէլ իւր Թ. 7 հատածին մէջ, ինչպէս տեսանք։

Լակարտի այս հրատարակութեան մէջ մեր գրութիւնը Ադդէի առաքելոյ կը տրուի. վասն զի կը կրէ այս խորագիրը. "Դարձեալ ի գրոցն Վարդապետութեան Ադդէի առաքելոյ, այն՝ որ աշակերտեաց եւ ուսոյց զՈւռհայեցիս եւ զամենեսին որ ի Միջագետս." — այսպէս նաեւ վերջաբանն՝ "Կատարեցաւ Գիրք Ադդէի առաքելոյ։" — Լակարտ կը կարծէր որ մեր այս գործքն ըլլայ ասորերէն թարգմանութիւն յունական նախաբնագրի մը, որ այժմ կորսուած ըլլայ։ Ուստի ճգնեցաւ Լակարտ ըստ այսմ ասորի բնագրին իւր ենթադրած յունական նախաբնագիրը վերակազմել, եւ ասով ամենայն ճշգրտութեամբ նոր թարգմանեց նոյն գործքը հին յունարէն լեզուի, իւր թարգմանութեան ճակատը դնելով Διδαχὴ Ἀδδαίου (Վարդապետութիւն

[1] P. Lagarde, Reliquiae etc. I, pp. 32—44։

Ադդէի) վերնագիրը[1]: Իւր գրոց վերջն աւելցուցած է քանի մը սրբագրութիւնք ասորի բնագրին, եւ ուրիշ փոքր ծանօթութիւնք, զորոնք մեր հրատարակութեան մէջ իրենց տեղը դրած ենք միշտ:

Ամենէն ընտիր հրատարակութիւնն ըրաւ՝ ինչպէս ուրիշ շատ մ'ասորի հին մատենագրութեանց՝ հռչակաւոր ասորագէտն Գիւրըթոն, որ բարեբախտաբար գտած էր սոյն գործքն հնագոյն (— Ե դարու — վերջերը գրուած, ինչպէս յետոյ պիտի տեսնենք, —) ձեռագրի մը մէջ, այսինքն՝ Բրիտանական թանգարանին (Cod. Add. 14,644 fol. 10 ff.) ճիշդ այն ձեռագրին մէջ, ուր գտած էր նաեւ Լաբուբնայի գործքն, այն նոյն անվաւերականին ճիշդ կից: Այսպէս նաեւ հրատարակեց Գիւրըթոն՝ Լաբուբնայի գործքին ետեւ դնելով նաեւ այս գործքն[2], որ հոս առաջին անգամ իւր ճիշդ տիտղոսը — "Վարդապետութիւն Առաքելոց" — կը կրէ. եւ այս ձեռագրին ամենէն աւելի համեմատ կ'ելլէ մեր ունեցած հայերէն թարգմանութիւնը: Գիւրըթոն՝ որ նոյն թանգարանին ուրիշ ձեռագրի մը մէջ ալ գտած էր նոյն գործքը (Cod. Add. 14, 531 fol. 109 ff.), շատ յաջող անգլիերէն թարգմանութիւն մ'ալ ըրած է[3], որուն մէջ նաեւ Մայի ծիրանաւորի եւ Լակարտի հրատարակութիւնքն ալ անտես չէ ըրած: Շատ յարգի են նաեւ իւր գործքին մէջ տեղերը զետեղած այն ոչ սակաւ ծանօթութիւնքն՝ որ դրուած են "Վարդապետութիւն Ադդէի" գրութեան ծանօթութիւններէն ետքը[4]:

Ասոնք են ահա ասորի բնագրին հրատարակութիւնքն ու թարգմանութիւնք: Ուրիշ կարեւոր

---

[1] P. Lagarde, Reliq. II, pp, 89—95. Ἐκ τῆς βίβλου τῆς Διδαχῆς Ἁδδαίου τοῦ ἀποστόλου.

[2] W. Cureton, Ancient syriac documents. London, 1864. Ասորի մասն՝ էջ 24—35:

[3] Նոյն. Թարգմանութեան մասն՝ էջ 24—35 այսու վերնագրով՝ The doctrine of Apostles.

[4] Անդ. Ծանօթութեանց մասն (Notes), էջ 166—173:

ուրոյն գրութիւն մը, ի մասնաւորի ընդարձակ քննութիւն մ'այս գործքիս վրայ որեւէ եւրոպական լեզուաւ՝ ինծի անծանօթ է։ Ի հարկէ չեն պակսիր անցողակի եւ համառօտ դիտողութիւնք՝ թէեւ շատ յարգի, որ աստ անդ կրնան գտնուիլ ուրիշ քննութեանց մէջ. այսպէս Թիքսըրոնի կարեւոր դիտողութիւնքն իւր Լաբուբնայի քննութեան մէջ[1], եւ նմաններ[2], զորոնք յընթացս գրութեանս յիշած ենք։

Իսկ հայերէն թարգմանութեան վրայ եւրոպական գրութեանց մէջ եւ ոչ տեղ մը յիշատակութիւն կը գտնուի։ Նաեւ հայերէն գրութեանց մէջ չենք գտած ակնարկութիւն մ'անգամ սոյն գործքին ուստի՛ ծագած ըլլալուն, եւն. ինչպէս նաեւ մեր կանոնագրոց վրայ զարմանալի եղանակաւ դեռ եւ ոչ մի մանրամասն հետազօտութիւն եղած է եւ ոչ ալ գոնէ ամբողջական հրատարակութիւն մը, որ սոյն անուան արժանի ըլլայ։ Միայն հանգուցեալ Հ. Յ. Գաթրճեանի անտիպ մնացած գրութիւնքն կարգի դնելու ժամանակ՝ նոյն հեղինակին մեր կանոնագրոց ընտիր քննութեան մէջ, զոր յուսամ օր մ'ի լոյս հանուած տեսնել, գտայ նաեւ համառօտ՝ բայց շատ ճիշդ դիտողութիւններ հայերէն թարգմանութեանս որպիսութեան ու անոր թարգմանչին վրայ։ Թէեւ հեղինակը շատ կանուխ գրած է այս մասն (1868—70) բայց իւր հետազօտութիւնքն այսօր ալ մեծայարգ են։ Մեր գրութեան վերջը պիտի դնենք այս կտորները, որմէ պիտի տեսնուի որ հեղինակն իւր քննութեամբք սա եզրակացութեանց հասած է. ա) Հայերէն թարգմանութիւնս հաւանականօրէն նոյն թարգմանչէն է, որ

---

[1] Տես Tixeront, Les Origines de l'Eglise d'Edesse. Paris 1888, p. 114—117.

[2] Զոր օրինակ ներածութեան համար՝ տես A dictionary of Christian Bibliography. Vol. I. (London 1877) p. 19ff: Acts of the Apostles etc.—Zahn, Forschungen I, p. 92—94 etc.

թարգմանուած է նաեւ Լաբուբնայի գործքը. բ) Ե դարու վերջին կիսուն հայ կանոնաց-մատեանին առաջին խմբագրութեան մէջ առնուած է, բայց այստեղ շատ մը նիւթոյ եւ լեզուի փոփոխութիւններ կրած. գ) Այս գործքն օրինակ եղած է ի մասնաւորի Շահապիվանի ժողովոյն կանոնաց. եւ վերջապէս դ) Սերտ յարաբերութիւն ունի նիւթոյ եւ լեզուի կողմանէ ուրիշ անվաւերականաց հետ, ինչպէս են Լաբուբնա եւն։

Յաջորդ մեր դիտողութեանց երկրորդ մասին մէջ, երբ խօսինք հայերէն թարգմանութեան վրայ, մանրամասն պիտի խօսինք այս խնդրոյ վրայ. զորոնք համառօտիւ նշանակած է մեծանուն գիտնականը, եւ պիտի տեսնենք որ շատ ճիշդ են իւր հանած. հետեւութիւնքն։

Մեր շատ մը ձեռագրաց համեմատութեամբ պատրաստած բնագիրն արդէն աւարտած էր, երբ երկու աշխատասիրութիւնք ծանօթացան մեզի։ Առաջինն է 1888ին վերջերը լոյս տեսած աշխարհաթարգմանութիւն մը “Վարդապետութեան առաքելոց„, որ լոյս տեսած է “Սոխակ„ շաբաթաթերթին մէջ[1]։ Այս թարգմանութիւնն՝ թէեւ ընդհանրապէս ճիշդ է, բայց նաեւ շատ տեղեր ազատ եւ այլեւայլ մեկնողական յաւելուածներով, ինչպէս պիտի տեսնենք։ Բաց աստի նաեւ թերի է. վասն զի թարգմանուած չէ ամբողջ ներածութիւնն. եւ նաեւ վերջէն բաւական մաս մը թերի մնացած՝ շաբաթաթերթին դադրելովը։

Երկրորդն՝ աւելի հնագոյն ժամանակաւ՝ Մ. Աղաբէկեանի հրատարակած “Ծիլն Աւարայրի„ թերթին 1867 տարւոյ կրկին հատուածներն

[1] “Սոխակ Հայ. եկեղեցւոյ„ հանդէս շաբաթաթերթ, հրտ. Վահան Վ. Մինասեան, Կ. Պոլիս, տպ. Գ. Պաղտատլեան, 1888։ Տես այս 1888 տարւոյ՝ Թ. 10, էջ 358—361. Թ. 11, էջ 374—378. Թ. 14, էջ 421—425 եւ Թ. 15, էջ 436—441։

նն[1]։ Աղաբէկեան Փոքուն Ասիոյ մէջ գտնելով ամբողջական կանոնագիրք մը՝ ձեռնարկած էր զայն իւր Թերթին մէջ հրատարակել։ Սոյն 1867 տարւոյ երրորդ Թուոյն մէջ դնելով կանոնագրոց առաջին հատածն՝ մինչեւ կանոն Է, մնացեալ մասն կ'աւարտի չորրորդ Թուոյն մէջ։ Այս ձեռագրին վրայ ալ յետոյ տեղւոյն պիտի խօսինք։

Վերջապէս Մեծ. Հ. Գարեգին Վ. Զարբ. Նախնեաց Թարգմանութեանց ցանկին "Կանոնագրոց" մէջ[2] յիշած է "Վարդապետութեան առաքելոց" կանոններուն ցանկը, որ ԼԵ եղած է հոն, մինչ բունն է՝ ըստ հայ թարգմանութեան՝ ԼԳ. այս տարբերութեան պատճառն յետոյ պիտի յիշենք։ Առնցմէ դուրս ծանօթ չէ ինձ որեւիցէ գրուածք առաջարկեալ նիւթոյս վերաբերմամբ թէ՛ հայերէն եւ թէ՛ այլ լեզուաւ։

Մեր նպատակը պիտի ըլլայ այժմ քննել նախ գրութեանս բուն ասորական բնագրին ծագումն, հեղինակն ու ժամանակը՝ որչափ կարելի է մեզ, անոր այլեւայլ ասորի գրոց՝ ի մասնաւորի Լաբուբնայի գրութեան հետ՝ ունեցած կապը, այլեւայլ ձեռագրաց իրարու ունեցած աղերսն. ապա անցնիլ հայերէն թարգմանութեան քննութեան այլեւայլ տեսակիտիւ, եւ ի վերջոյ՝ արաբական թարգմանութեան՝ վերջինս շատ համառօտիւ։

## 2.

Ի՞նչ բան է այս գրութիւնն՝ որ "Վարդապետութիւն Առաքելոց" մեծահնչիւն տիտղոսը կը կրէ. ի՞նչ երկրի ու դպրոցի, եւ՝ եթէ հնար է

---

[1] "Ծիլն Աւարայրի", ամսաթերթ, հրտ. Մարկոս Աղաբէգեան. Կ. Պոլիս, տպ. Ռ. Ց. Քիւրքճեան. Բ Տարի, 1867, Թիւ Գ (Մարտ) էջ 131—136 եւ Թիւ Դ (Ապրիլ) էջ 153—167։

[2] Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց. Վենետ. 1889, էջ 490—491։

գիտնալ՝ ո՞ր հեղինակի մտաց ծնունդն է. ի՞նչ ժամանակի գործ է ընդհանրապէս, եւ ի՞նչ աղբիւրներէ բղխած. — ահա այն առաջին եւ կարեւոր խնդիրներն որ անմիջապէս կը ծագին հետազօտող մտաց առջեւ, եւ որոնց պատասխան տալ պիտի ջանանք փոքր ի շատէ եւ որչափ հնար է՝ գրութեանս նկատմամբ ներքին ու արտաքին վկայութիւնները կրկնելով։

Այս եւ նման խնդիրներ այս օրս ամէն բանասիրի համար անհրաժեշտ պէտք մ՚եղած են, եթէ կ՚ուզուի այս կարգի գրութեանց արժանահաւատութեան չափը գիտնալ։ Հինգերորդ եւ յաջորդ դարերու Ասորիք, ինչպէս նաեւ մեր Նախնիք, այսպիսի խնդիրներ յուզելու պէտք չէին զգար. քանի որ իրենց համար “Վարդապետութիւն Առաքելոց„ աներկբայ հաստատութեամբ հարազատ գրութիւն մըն էր, առաքելական դարու գործ մը, որ բուն իսկ առաքելոց սահմանած կանոնները կ՚աւանդէր յետնոց։ Օրինակի աղագաւ ի Շահապիվան գումարուած մեր Նախնեաց համար ինչպէս սրբազան էին “Նիկիականն„ սահմանադրութիւնք, նոյնպէս ստոյգ ու սրբազան էր այս “առաքելական կանոնն„, այսինքն՝ մեր այս “Վարդապետութիւն Առաքելոց„ գրութիւնը, ինչպէս յետոյ մանրամասն պիտի տեսնենք։

Գրութեանս բուն հեղինակն որոշ կերպով ինք զինք յայտնել չէ ուզած. բայց իւր գրութեան քրիստոնէական առաջին դարու գործ մ՚ըլլալը երեւոյթն ուզած է տալ յայտնապէս։ Սակայն եկեղեցական բարեկարգութեան պատմութեան քիչ մը հմուտ անձին ակնարկ մ՚արձակել կը բաւէ՝ տեսնելու որ շատ յետագայ ժամանակաց ծնունդ է, եւ՝ ինչպէս պիտի տեսնենք՝ Դ դարու վերջերը միայն կրնայ առած ըլլալ իւր այժմու ձեւը։ Այսպէս դատեցին արդէն շատ մը գիտնականք, թէեւ միայն անցողակի ակնարկութեամբք։ Եթէ

մանր քննենք գրութեանս ամէն կէտերը՝ պիտի համոզուինք որ այս կեղծ-առաքելական կանոնաց մատենիս հեղինակն Դ դարու վերջերն ապրող ասորի եկեղեցական մատենագիր մըն է, Արեւմտեան Ասորւոց կողմերէն, լաւ ծանօթ ասորի անվաւերական գրականութեան, ի մասնաւորի Աբգարու զրոյցին՝ որ Լաբուբնայի անունը կը կրէ։ Ասորւոյս գրութեան մէջ որոշ պիտի տեսնենք երկու խմբագրութիւններ, եւ թէ հնագոյնն այլափոխած այժմու ձեւին վերածած է մեր Ասորին։ Այս արդեանց պիտի հասնինք այս ներկայ եւ յաջորդ գլխուն հետազօտութեամբք։

Ակնարկեցինք[1] որ գրութեանս սկզբնագիր ըլլալն կամ ոչ՝ առաջին անգամ Լակարտ գիտնականն որոշելու հարկ տեսաւ։ Լակարտ կը կարծէր որ այս կտորն յունական սկզբնագիր անվաւերականի մը՝ որ այժմ անհետ կորսուած է, ասորական թարգմանութիւնն ըլլայ պարզապէս։ Ասոր համար մեծաւ խնամով ջանաց վերականգնել այն ենթադրեալ եւ կորուսեալ յունարէն բնագիրը՝ ասորերէն բնագրիս վրայէն նոր թարգմանելով ի յունարէն։ Գրութեան մէջ պատահած քանի մը կէտերն ալ՝ որ այս կարծեաց կրնային աննպաստ ըլլալ, ջանացած է մեկնել, օրինակի համար ասորական ամսոյ մ'անունը հռոմէականի դարձընելով։

Գրութիւնս կը սկսի թուականաւ մը, ուր կը նշանակուին Համբարձման եւ Հոգեգալստեան տարին ու օրը հետեւեալ կերպով. “Յամին 339 իշխանութեան Յունաց ի թագաւորութեան Տիբերեայ կայսեր Հռոմոց որ աւր չորք էր Խզիրան (חזירן) ամսոյ։„ Հայն այս տեղը թարգմանած է՝ “որ աւր չորք էր Մարգաց[2] ամսոյ„։ Սոյնպէս նաեւ

[1] Տես վերը՝ էջ 15—16։

[2] “Խզիրան„ ամիսն Լակարտ “Յուլիս„ կը փոխադրէ, իսկ հայն լաւ եւս “Մարգաց„, որ Յունիս ամսոյն կը համապատասխանէ ըստ անշարժ տոմարի։ Ի հարկէ խիստ նայելով՝ ըստ յայսմաւուրաց՝ 4 Մարգաց կը համեմատի 10 Յունիսի։

Լակարտ իւր յունարէն թարգմանութեան մէջ այս տեղը μηνὶ Ἰουλίῳ փոխադրած է՝ կցելով սա դիտողութիւնը՝[1] թէ անոր համար հոս ամսոյն հռոմէական անունը դրած է թարգմանութեան մէջ, որպէս զի չըլլայ թէ՝ երբ ամսոյն մակեդոնական կամ եգիպտական անունը գործածէ, նշան մ'առնուի այն թէ սա գրուած կրնայ ըլլալ այս գործը։ Նաեւ ուրիշ տեղերէ ալ կը տեսնուի յայտնապէս որ Լակարտ յունականէ թարգմանուած կ'ենթադրէ սոյն գործքը։

Սակայն լաւ քննելով՝ պէտք է զանազանութիւն մ'ընել։ Գործքիս մէկ մասին եւ ի մասնաւորի բուն կանոնաց նկատմամբ կրնայ անշուշտ ընդունիլ որ գուցէ հեղինակն յոյն աղբիւր մ'առջեւն ունէր, որ այլափոխուած առաւ այժմու ձեւն. սակայն գործքն իւր այժմու ձեւին մէջ պարզապէս թարգմանութիւն մ'ընդունիլ յունարէնէ՝ դժուար է։ Գործքն ծայրէ ծայր բնիկ ասորական գրութեան մը նկարագիրն ունի, եւ շատ կէտեր ասորի հեղինակ մը մատնանիշ կ'ընեն։ Օրինակի համար՝ Խոզիրան ամսոյ անունը յինքեան շատ նշանակութիւն չունի, սակայն նոյն իսկ այս թուականն ընդհանրապէս ասորական մատենագիր մը կ'ակնարկէ։

Այս տեղ գործածուած թուականն (— "յամին 339 իշխանութեան Յունաց." —) է Ասորւոց սովորական գործածածը կամ Սելեւկեան թուականը։ Ասորական հեղինակք ընդհանրապէս Սելեւկեան թուականը կը գործածեն, եւ մտադրութեան արժանի է որ ասորական շատ մ'անվաւեր գրութիւններ ճիշդ այս ոճով կը սկսին, այսինքն՝ թուականը նշանակելով։ Բաւական է օրինակի համար Լաբուբնայի գրութեան սկիզբը համեմատել,[2] — "Յամին 340 (Ասոր. 343) թագաւորութեան Յու-

---

[1] Reliq. II, էջ 89, ծան. առ 33, 19։

[2] Տես «Թուղթ Աբգարու», տպ. Վենետ. 1868, էջ 1—2։ G. Phil. the Doctrine of Addai, Lond. 1876, p. 1.

նաց, ի Թագաւորութեան Տիբերեայ կայսեր Հռովմայ, .. որ օր ԺԲ էր Տրեայ (Ասոր. “առաջին Թշրին) ամսոյ„ եւն. — Եւ կը տեսնենք լիակատար նմանութիւն երկուքին: Այսպէս է նաեւ Շարբիլի, Բարսամիայի, Հաբիբայ վկայաբանութեանց սկիզբն[1] եւն: Ասորիք սելեւկեան թուականը նշանակելու կը գործածեն “յամի ... Թագաւորութեան Յունաց„ կամ “Հոռոմոց„ կամ “Աղեքսանդրի„ բացատրութիւնքը: Նշանաւոր է օրինակի համար Հրահատայ Զգօնի Պարսկի սա խօսքը[2]. “Զառաջին տասն ճառս յօրինեցի յամին 648 իշխանութեան Աղեքսանդրի որդւոյ Փիլիպպեայ Մակեդոնացւոյ, ... եւ զերկոտասան վերջինսն գրեցի յամի 655 Թագաւորութեան Յունաց եւ Հոռոմոց, այսինքն՝ թագաւորութեան Աղեքսանդրի, եւ յամին 35 Պարսից արքայի„ եւ այլն[3]: Վերջին կէտիս նկատմամբ պէտք է ըսել որ մի միայն արեւելեան Ասորիք, այսինքն՝ այն քրիստոնեայք որ Պարսից պետութեան ներքեւ կը բնակէին, իրենց գրութեանց մէջ իբրեւ թուական կը գործածեն Պարսից ինքնակալ արքայից թագաւորութեան տարիները. այսպէս ի մասնաւորի Զգօն իւր ճառերուն մէջ: Արդ այն պարագայէն որ այս “Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեան հեղինակն սելեւկեան թուականին հետ նաեւ Տիբերեայ կայսեր թագաւորութեան տարին նշանակած է իբր

---

[1] Տես Cureton, Ancient syriac documents. Lond. 1864, էջ 41 եւ 63 եւ 72 եւն:

[2] Զգօն, Ճառ ԻԲ (դժբախտաբար հայերէնին մէջ պակաս է:) Հմմտ. Aphrahat's des persischen Weisen Homilien, übersetzt von G. Bert, Leipzig 1888, p. 366.

[3] Յիշենք օրինակի համար Զգօնի ուրիշ մէկ կտորը. Ճառ ԺԴ (Հայ՝ ԺԹ, տպ. Կ.Պոլիս, 1824, էջ 394) “Գրեալ է թուղթս այս ի քաղոց ամսեան՝ որ ամ 655 էր Աղեքսանդրի որդւոյ Փիլիպպեայ Մակեդոնացւոյ. եւ էր ամ 35 Շապհոյ արքայի Պարսից:„ — Այս տեղն է որ Սասանեան արքայից ժամանակագրութիւնն ուղղելու նպաստեց գլխաւորաբար Նէօլտէքէ գիտնականին նշանաւոր գործքին մէջ. Հմմտ. (El-Tabari,) Geschichte der Perser und Araber etc., übersetzt von Th. Nöldeke. Leyden 1879, p. 410.

թուական[1], կարելի է հետեւցրնել որ ինքը Հռոմէական կայսրութեան վերաբերող Ասորիքի մէջ կ'ապրէր, ուստի արեւմտեան Ասորիներէն էր. ընդհակառակն Զգօն՝ Պարսից արքային թագաւորութեան տարիները կը հաշուէ իբր թուական, վասն զի Պարսից պետութեան մէջ կ'ապրէր։

Արեւմտեան ասորի մ'ըլլալը կը ցուցրնէ հեղինակս ուրիշ մէկ խօսքի մէջ ալ։ Բուն գրութեանս խորագրին մէջ նշանակելով գրքին բովանդակութիւնը, կը յայտնէ որ ինքը պիտի պատմէ թէ “յումէ եւ ուստի ընկալան ք——ք Հ——մոց (Ասոր. “կողմանք տանն Հ——մոց[2]„) զձեռնադրութիւն քահանայութեան։„ Ասորի գրութեանց մէջ այս “տուն Հռոմոց„ բացատրութեամբ ընդհանրապէս Հռոմէական պետութեան երկիրները կը նշանակուին[3], սակայն անձուկ մտօք՝ Հռոմէական պետութեան Տիգրիսէն ասդին եղած սահմանակողմանք, ուստի ի մասնաւորի Ասորիք, մինչդեռ Տիգրիսէն անդին՝ Պարսից իշխանութեան ներքեւ եղած կողմանք անձուկ մտօք “Արեւելք„ կը նշանակուին։ Առ այս բաւական է Աբգարու թղթին սա նշանաւոր խօսքը[4] թէ “բազումք

---

[1] Այս Տիբերեայ թագաւորութեան տարին ունի միայն Հայերէնը, իսկ ասորի օրինակաց մէջ կը պակսի։ Սակայն հայն սկզբնական բնագիրը պահած է, որուն վկայ են Լաբուբնայի Աբգարու թղթին սկիզբն (տպ. Վենետ. 1868, էջ 1, 7) եւ Պարսամեայ վկայաբանութեան վերջը (տես Cureton, Ancient syr. docum. p. 72), որ ունին Տիբերեայ թուականը։

[2] Այսպէս ասորի Cur. եւ M ձեռագիրք, L. “ամենայն կողմանք Յունաց եւ Հռոմոց։„

[3] Հմմտ. օրինակի համար Լաբուբնա (ed. G. Phillips, p. 11, 2 = Հայ., տպ. Վենետ. էջ 13, 5) որ զՊատրոնիկէ կ'անուանէ “դշխոյ եւ տիկին ամենայն աշխարհին Հռոմոց„ (Ասոր. “ամենայն աշխարհին տան Հռոմոց։„)

[4] Հմմտ. Լաբուբնա (G. Phillips,) p. 37, 2 = Հայ. էջ 34, 11։ Նոյն գրութեան մէջ ուրիշ տեղ մը (G. Phillips, p. 37, 20 = Հայ, էջ 35, 8) կը գրուի թէ Աբգար չկրցաւ “անցանել ընդ Հ——մոց տ——ն եւ երթալ ի Պաղեստինէ,„ հոն Ուռհայ եւ իր շրջակայքն կը նկատուին

յորէ-Եւէյն„ այսինքն՝ Պարսից պետութեան սահմանակից երկիրներէն "ի նմանութիւն վաճառականաց„ կու գային Եդեսիա "յիշխանութիւն Հոռոմոց„ (Ասոր. "ի փոքն Հոռոմոց„)՝ "տեսանել զնշանսն զոր առնէր Ադէ առաքեալ,„ եւ առնլով անկէ "ձեռնադրութիւն քահանայութեան՝„ կը դառնային իրենց աշխարհը, եւ "յաշխարհին իւրեանց յԱսորեստանի զգաւառականս իւրեանց աշակերտէին„ եւ աղօթարաններ կը շինէին, բայց ի ծածուկ՝ "վասն երկիւղի այնոցիկ՝ որք երկիր պագանէին կրակի եւ պատուէին զջուրս„: — Յայտնի է աստուվ որ մեր կանոնաց հաւաքիչն ալ "Արեւելից„ բնակիչներէն չէ: Բաց աստի՝ Կանոն ԻԸ (Ասոր. ԻԵ) հաւանականաբար բնիկ եդեսական է, ուստի Ուռհայի մէջ ծագած նախնաբար: Սակայն այս կանոնիս վրայ յետոյ պիտի խօսինք մանրամասն, ուստի հոս երկար չենք մնար: Նմանապէս մտադրութեան արժանի է Կանոն Է, որ կը հրամայէ Քրիստոսի Յայտնութեան տօնը կատարել Յունուար 6ին "ըստ յունարէն թուոյ.„ (Ասոր. "ըստ երկար թուոյ Յունաց,„ ինչպէս ունին Cur. եւ M ձեռագիրք, իսկ L "ըստ թուոյ ամսոց Յունաց:„) Այս յայտնի նշան է որ կանոնս գրուած է Ասորիքի այնպիսի տեղ մ'ուր եկեղեցական տօնախմբութիւնք դեռ եւս ըստ յունական եկեղեցւոյ կարգի կը տօնուէին, ինչպէս յԱնտիոք: Այս նշանաւոր կանոնիս վրայ ալ քիչ մ'ետքը կրկին պիտի խօսինք:

Շատ մը կանոններ բնիկ արեւելեան՝ կամ ճիշտ եւս՝ ասորական նկարագիր մ'ունին: Շատ նշանաւոր է օրինակի համար կանոն ԺԵ (Ասոր.

---

իբր անկախ Հռոմէական պետութենէն, ուստի "Հոռոմոց տան„, այսինքն՝ ինչպէս յայտնի կ'երեւայ, Ասորւոց հռոմէական իշխանութեան հպատակ գաւառաց սահմաններէն դուրս: Ճիշդ այս խօսքը կրկնուած է ուրիշ տեղ մ'ալ, (G. Phil. p. 3, 9 = Հայ. էջ 4, 6.) ուր կ'ըսուի Աբգարու համար՝ թէ "չէր իւր իշխանութիւն աշխարհն Հոռոմոց:„

ԺԹ) որ կը հրամայէ իբրեւ անաստուած նկատել զանոնք, "որ սուտ վկայէ կամ սուտ երդնու եւ կամ երթայ առ կախարդս եւ հարցուկս եւ Քաղդէացիս (Ասոր. "Քաղդէացին") եւ վհուկս, եւ հաւատայ բախտից, ծննդոց եւ աստեղագիտութեանց:" Այս տեղւոյն նկատմամբ արդէն շատ լաւ դիտողութիւն մ'ըրած է Թիքսըրոն գիտնականն Արդարու Թղթին քննութեան մէջ[1]: Սոյն գիտնականը միտ դնել կու տայ որ կանոնիս մէջ "աստեղագիտութեանց եւ Քաղդէացւոց այս յիշատակութիւնն ասորական Առաքելական-կանոնաց առանձնայատուկ (caractéristique) է." եւ կը յիշէ Սոյն-Բարդեծանու "Գիրք օրինաց աշխարհաց" ասորական մատենին[2] շատ տեղերն, ուր կ'ըսուի թէ աստեղագիտութեանց հետամուտ են "արքն որ կոչին Քաղդէացիք," եւ թէ Բախտ կ'ուսուցանեն նոյն Քաղդէացիք[3] եւն. եւ կը յաւելու թէ "յունական կանոնաց մէջ այսպիսի բան ամենեւին չենք գտներ, օրինակի համար (յունական եկեղեցւոյ մէջ գործածուած "երկրորդ" Առաքելական կանոնաց) ԻԵ կանոնին մէջ[4], որ նմանութիւն մ'ունի "Վարդապետութեան Առաքելոց" այս կանոնիս հետ:"

Քիչ մ'եւսքը պիտի դնենք ի կարգին Լաբուբնայի մէկ նշանաւոր կտորն, որ մեր այս կանոնը կարծես բառ առ բառ կը կրկնէ, եւ կը հրամայէ փախչիլ "ի խորոց եւ ի կիւսոց եւ վհհկաց եւ ի բախտից եւ ի ծննդոց, որովք գործին Քաղդէացւոց մոլորականք, եւ յաստեղագիտութենէ եւ ի մղավաշէից:" Բաբելոնի մէջ Քաղդէացւոց աստեղագի-

[1] L.-J. Tixeront, Les origines de l'Eglise d'Edesse etc. Paris 1888, p. 115 n. 1.

[2] Զոր հրատարակած է W. Cureton իւր Spicilegium syriacum (Lond. 1855) գրութեան մէջ։

[3] Տես գաղղիերէն թարգմանութիւնն ի կարգի Հայ պատմագրաց Լանկլուայի. (V. Langlois, Collection des histor. d'Arm. I, p. 78 etc.)

[4] Հմմտ. C. J. Hefele, Conciliengeschichte. 2. Aufl. 1, p. 807.

տութեան կամ աստղահմայութեան վրայ մանրամասն կը խօսին նաեւ Որոգինէս[1] եւ Եպիփան[2]. — վերջնոյս խօսքը հետաքրքրական է այնու որ կը պատմէ թէ Քաղդէացիք "աստեղագիտութեան գիտութեամբ . . . պործին," այսպէս բառ առ բառ ձայնակից ըլլալով Լաթուբնայի յիշեալ խօսքին։ Բայց ամէնէն նշանաւորն է մեզի համար Հրահատայ Ջգօնի Պարսկի խօսքը, զոր հայերէն թարգմանիչը քիչ մը ճոխացուցեր է իւր թարգմանութեան մէջ, եւ է այսպէս[3]. "Եւ կամ ո՞վ տացէ զհատուցումն վարձուց մանկանց խաւարի ղանդբէն ադանդբէն, այս ջնթն էն Մոնքեբեցէն, (Ասոր. պարզապէս՝ "աղանդին Մանեայ ամբարշտի"), որ բնակեալ նստին ի խաւարի ի նմանութիւն օձից եւ քարբից եւ ծառայեն աստեղագիտութեան Քողդէեցն աղանդին հերձուածոցն Բաբելոնի." (Ասոր. պարզապէս՝ "որ ծառայեն քողդէաբնեան աղանդին Բաբելոնի" կամ ըստ A . . . "աղանդոց որդւոց Բաբելոնի։") — Ասորերէն כלדיא (Քաղդէացի) անունը շատ սովորական է ասորի գրութեանց մէջ "աստեղագէտ" ուստի եւ "աստեղահմայ" նշանակութեամբ։ Այս իմաստով ծանօթ են հայերէնին մէջ քողդէայ, քողդէաբնեան[4] բառերն, որ մեղմացմամբ յառաջ եկած են քաղդէայ բառէն, որ կը նշանակէ պարզապէս "քաղդէացի," բայց իւր սովորական առմամբն իբր "աստեղագէտ, աստեղահմայ, կախարդ." եւ

[1] Որոգինէս, Մեկնութիւն Երեմիայի, Ճառ Ի, 4։

[2] Ընդդէմ Հերես. Գիրք Բ, Մասն Բ, Հերես. ԿԶ. 13. (Հրատ. Կողոնիոյ, էջ 609։)

[3] Ճառ Գ. § 6. (W. Wright, the homilies of Aphrahates etc. Lond. 1869, p. 51 եւ Հայերէնն՝ Ջգօն, տպ. Կ.Պոլիս 1824, էջ 52։)

[4] Համմտ. օրինակի համար՝ Բուզանդ, Գ, ԾԴ (տպ. Վենետ. 1832, էջ 167) "կոչեաց թագաւորն Պարսից Շապուհ զդիւթսն եւ զաստեղագէտսն եւ զքողդէայսն" եւ այլուր։ Եզնիկ, Ընդդէմ Աղանդոց՝ Բ, Իգ. (տպ. Վենետ. 1826, էջ 184) "դիւթութեամբք եւ հմայիւք եւ քողդէաբնեամբ" եւ այլուր յաճախ։

ասկէ «քաղդէութիւն»[1] բառն, որ ճիշդ կը համապատասխանէ ասորական כלדיותא բառին, զոր Զգօնի թարգմանիչը վերոյիշեալ տեղը «աստեղագիտութիւն Քաղդէից» թարգմանած է։

Թէ ասորի մըն է գրոցս հեղինակը, կը ցուցընեն նաև Ս. Գրքէն եղած կոչումունք, որոց մէկ քանին շատ նշանաւոր են այս նկատմամբ։ Գրութեանս մէջ երբ խօսք կ'ըլլայ այն հրէական քահանայից վրայ, որոնք թէև կը ճանչնային քրիստոնէութեան յարգը, բայց առ երկիւղի չէին յայտներ իրենց կարծիքը, կ'ըսուի թէ «Եւ մոռացան նոքա զգրեալն որ ասէ թէ «Տէր սրտագէտ է (Ասոր. «ինքն է տէր գիտութեան») և ոչ հաստատէ կամակորութիւնս առաջի նորա,» այսինքն՝ խորամանկ հնարագիտութիւնք իւր առջև չեն զօրեր։ Ճիշդ այս վկայութիւնը կրկնուած է նաև ԺԳ (Ասոր. ԺԳ) կանոնին մէջ, ուր ընդհանրապէս այն անձանց նկատմամբ որ «երկմիտ» են «ի հաւատս», կը հրամայուի որ աստուածային պաշտօն չկատարեն. վասն զի «նա զմարդիկ խաբէ և ոչ զԱստուած, այն որ ոչ հաստատին կամակորութիւնք առաջի նորա։» Արդէն Լակարտ մատադիր եղած էր որ այս կոչումն Ս. Գրոց (Ա. Թագ. Բ, 3) ասորէ բնագրէն առնուած է և ոչ թէ յունական Եօթանասնից թարգմանութենէն, որ այս խօսքը բոլորովին ուրիշ կերպով ունի։ Ասորի բնագիրները հոս ի մէջ բերել և իրարու հետ համեմատել աւելորդ կը համարինք, վասն զի այս կոչումն կէտ առ կէտ նոյն է Ս. Գրոց ասորական «Պարզ» կոչուած հնագոյն թարգմանութեան հետ։ Իսկ Եօթանասնիցն այն կոչումն ունի այսպէս՝ καὶ θεὸς ἑτοιμάζων ἐπιτηδεύματα αὐτοῦ, որ մեր Հայերէն թարգմանու-

[1] Հմմտ. օրինակի համար՝ Բուզանդ, Ե. խգ. (տպ. Վենետ. 1832, էջ 252) «իջանէր ի հմայս քաղդէութեան, զքուէս հարցանէր» ևն։ — «Քաւդեայ» բառին «քաղդեայ» բառէն ծագելուն նկատմամբ տես Lagarde, Armenische Studien, (Göttingen, 1877), § 2354։

*թեան մէջ փոխադրուած է՝ "եւ Աստուած պատրաստէ զարուեստս։„ Այս երեւոյթս մեզի շատ բնական եւ անհրաժեշտ իսկ կ'երեւայ, քանի որ՝ ինչպէս թէ՛ ցայսվայր ըսուածներն եւ թէ՛ յաջորդ շատ մը կէտեր աներկբայ կը ցուցընեն, ասորի մատենագրի մը գործն է "Վարդապետութիւն Առաքելոց„, ուստի եւ նոյն կոչումն ասորի մը մատնանիշ կ'ընէ։ Լակարտ այս նորանշան վկայութիւնն կը ջանայ մեկնել[1] անով որ կամ ասորի թարգմանիչը փոխած ըլլալու է այս կոչումն, եւ կամ որ արդէն Ակիւղասայ թարգմանութեան մէջ այսպէս եղած ըլլալու էր. — որ շատ տկար մեկնութիւն է եւ պարզապէս ենթադրութիւն։ Բաց աստի՝ ինչպէս պիտի տեսնենք, նոյն իսկ բնիկ ասորական Համաբարբառէն կոչումն կայ մեր գրութեան մէջ։*

*Կանոն Թ. կը հրամայէ որ "կատարումն ամենայն գրոց ընթերցցի Աւետարան„։ Եթէ համեմատենք այս խօսքը Լ կանոնին հետ (Ասոր. ծ) — "Կարգեցին առաքեալքն զի մի ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի (այլ գիրք), բայց միայն Հին կտակարանք եւ Մարգարէք եւ Աւետարան եւ Գործք Առաքինութեանց Նոցա[2],„ այսինքն՝ Առաքելոց. — անմիջապէս աչքի կը զարնէ "Աւետարան„ բառն եզակի ձեւոյն եւ Ս. Գրոց միւս մասերէն անջատ, այնու որ Նոր կտակարանի մասերուն մէջ Գործոց Առաքելոց քով կը դրուի միակ "Աւետա-*

[1] Reliq. II, p. 93, Ծան. առ 40, 12։

[2] *Այս խօսքը դրինք ասորերէնէն նոր թարգմանելով. վասն զի հայերէնն այնպէս փոխուած է որ կերպարանափոխ եղած է բովանդակն եւ անճանաչելի գրեթէ. "Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ յեկեղեցւոջ գիրս ընթերցցին Հին կտակարանք՝ Աւրէնք եւ Մարգարէք, եւ Նոր կտակարանք որ լինիցին վասն կենաբար չարչարանաց փրկչին մերոյ Քրիստոսի, եւ Գործք եւ Խուսք աւետարանչացն քարոզութեան վասն բանին ճշմարտութեան եւ Վարդապետութիւն աշակերտաց փրկչին։ եւ այլ աւելի քան զայս մի ընթերցցի ի բեմի։„*

րան„ մը։ Ցան գիտնականն[1] արդէն ցուցուցած է որ Հրահատ Զպօն Պարսիկ ուր որ “Աւետարան„ մը կը յիշէ եզակի ձեւով կամ կոչումն կ'ընէ, պէտք ենք այն կոչմունքն Տատիանու Աւետարանի Համաբարբառէն առնուած ընդունիլ եւ ոչ թէ չորս աւետարանիչներէն։ Թէ այս իմաստով է նաեւ գրութեանս մէջ “Աւետարան„ բառն, — ասորերէնին մէջ այս տեղերն յունական εὐαγγέλιον բառը կը գործածուի, եւ ճիշդ այս բառը կը գործածէ Ս. Եփրեմ Տատիանու Համաբարբառը նշանակելու համար[2]. — յայտնապէս կրնանք տեսնել նաեւ օրինակաւ մը։ Մատթէի աւետարանի ԻԸ. 20 խօսքը գրութեանս մէջ այս ձեւով է՝ “Ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս՝ մինչեւ կատարէ այս աշխարհս։„ Ամենուն աչքի կը զարնէ այս նորանշան կոչումն, որ արդեամբ ալ հայ թարգմանութեան մէջ փոխուած է սովորական ձեւին եւ եղած՝ “մինչեւ ի կատարած աշխարհի։„ Սակայն այս փոփոխութիւնն յետնագոյն ժամանակի է եւ ոչ թէ բուն թարգմանչին գործքն, ինչպէս կը վկայէ Յակոբու առ Կոդրատոս անվաւերական թղթոյն հայերէն թարգմանութիւնն, զոր քիչ մ'ետքը պիտի տեսնենք։

Այժմ կարեւորն այս է որ սոյն կոչումն չէ համեմատ ոչ միայն Եօթանասնից յունականին եւ հայերէն թարգմանութեան, որ բնական էր, այլ՝ որ նշանաւորն է՝ եւ ոչ ասորական “Պարզ„ կոչուած Աստուածաշնչին ընթերցուածոյն. վասն զի նաեւ ասորական Ս. Գիրքն այստեղ սովորական ընթերցուածն ունի, որ է “մինչեւ ի կատարած աշխարհի։„ Ուստի՞ առած է ուրեմն մեր հեղինակն իրեն այս նորանշան ընթերցումն։ Ասոր շատ դիւրին եւ որոշ պատասխան կայ, այսինքն՝ այս կոչումն առնուած է Տատիանու ասորական Համաբարբա-

---

[1] Th. Zahn, Forschungen etc. I. Tatian's Diatessaron. Erlangen 1881, p. 91 etc.

[2] Տես Ass. Bibl. Orient. I, p. 58։

ուէն: Երկու շատ յարգի վկայ ունինք աստ: Զգօն այս Նորանշան ընթերցուածս ունի, եւ այն՝ ոչ մի անգամ, այլ յաճախ. («Ես ընդ ձեզ եմ մինչեւ կատարած այս աշխարհի:»[1]) Երկրորդ կարեւոր վկայն է վերը յիշուած անվաւերականն, որ է «Թուղթ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղէմի առ Կոդրատոս:» Այս անվաւերականն ալ՝ ինչպէս վարը պիտի յիշենք, շատ սերտ կապ ունի մեր «Վարդապետութիւն Առաքելոց» գրութեան հետ: Արդ այն գրութեան մէջ ալ կը կարդանք հետեւեալ խօսքը, ուր Քրիստոսի Տեառն մերոյ նկատմամբ կ'ըսուի՝ թէ «Է նայ ընդ երկրպագուս իւր եւ ո՛չ թողու զնոսա, մինչեւ կատարած այս աշխարհի:» Այլ եւս տարակոյս չի մնար այժմ թէ ուստի՛ առնուած է այն Նորանշան կոչումն, քանի որ թէ՛ Զգօն, (որուն Տատիանու Համաբարբառ գործածելը հաստատուն իրականութիւն է,) եւ թէ՛ Յակոբու թուղթը կը վկայեն թէ ասորական Համաբարբառէ մը քաղուած է: Եւ ասով թէ՛ այս կոչումն եւ թէ՛ նախընթացն ի միասին անժխտելի ապացոյց են որ մեր գրութիւնն ասորի մատենագրի մը գործն է եւ ո՛չ թէ պարզապէս թարգմանութիւն յունական գրութեան: Արդէն աներկբայ կը ցուցուի այս բանս նաեւ այն պարագայէն, որ մեր «Վարդապետութիւն Առաքելոց» գրութիւնն սերտ կապ ունի ասորական անվաւերականաց, եւ ի մասնաւորի Ղաբուբնայի գրութեան հետ: Բայց այս մասին վրայ յաջորդ հատուածով մանրամասն պիտի խօսինք:

Առ այժմ մտադիր ընել կու տանք որ արդէն այն պարագայն որ «Վարդապետութիւն

---

[1] Տես Զգօն, Ճառ Զ. § 10. (ed. W. Wright, p. 120 — Հայ. տպ. Կ.Պոլ. 1824, էջ 124, 11. ուր սակայն թարգմանիչը փոխած է վկայութիւնն եւ սովորականին դարձուցած.) եւ Ճառ ԻԳ (ed. Wright, p. 484, 3), որ ճառը դժբախտաբար Հայերէնին մէջ կը պակսի: Հմմտ. G. Bert, Aphrahat's etc. p. 103, n. 3 եւ p. 399, n. 3:

Առաքելոց„ նոյն Համաբարբառ Աւետարանը կը գործածէ՝ զոր գործածած է նաեւ Զգօն, կը ցուցընէ որ շատ ուշ ժամանակի գործք է։ Զգօնի գործածած Աւետարանին նկատմամբ կը միաբանի նաեւ Լեխնէր գիտնականն[1], թէ ոչ այլ ինչ է բայց Համաբարբառ մ'ուր նոյն իսկ իբր 330—350 տարիները (Ց. Ք) Նինուէի շրջակայ քրիստոնեայ հասարակութեանց մէջ կը գործածուէր եկեղեցական պաշտամանց մէջ, եւ որ նոյն է այն Համաբարբառին հետ, զոր Ս. Եփրեմ մեկնաբանած է։ Ս. Եփրեմայ մեկնաբանած Համաբարբառն, որ միայն հայերէն թարգմանութեամբ պահուած է[2], է Տատիանու անուն կրող ասորական Համաբարբառն, ինչպէս ցուցուց Ցան գիտնականն, եւ այս Համաբարբառն շատ տեղեր ասորական եկեղեցեաց մի միակ աւետարանն էր, նաեւ արեւմտեան Ասորւոց քով, ինչպէս կը վկայէ Ս. Եփրեմայ մեկնութիւն գրելը. ուստի կրնար գործածուիլ նաեւ մեր հեղինակէն՝ որ արեւմտեան ասորի մըն էր, եւ որ Ս. Եփրեմայ վերջին տարիները կ'ապրէր եւ անշուշտ տեսած էր զայն։ Դժբախտաբար Ս. Եփրեմ Մատթ. ԻԲ, 20 խօսքը չէ մեկնած, ուստի իւր Մեկնութեան մէջ Համաբարբառի այս խօսքը չենք գտներ ի վկայութիւն բերուած, որով նոր եւ հզօրագոյն ապացոյց մ'ալ պիտի ունենայինք առ այն թէ յիշեալ կոչումն արդեամբք նոյն Համաբարբառէն առնուած է։

---

[1] Lechner, Urkunden zur Geschichte des christlichen Alterthums. II, p. 7. Հմմտ. նաեւ G. Bert, Aphrahat's, p. XXXIV ff.

[2] Տես "Մեկնութիւն Աւետարանի Համաբարբառ„ ի գիրս Ս. Եփրեմայ (Մատենագրութիւնք, տպ. Վենետ. Հատոր Բ. 1836, էջ 1—260.) եւ ասոր լատիներէն թարգմանութիւնը (Evangelii Concordantis Expositio facta a S. Ephraemo, in latinam translata a P. Joanne Bapt. Aucher, ed. Dr. Georgius Mösinger, Venetiis, typ. Mechith. 1876։)

Ասորական Համաբարբառի նկատմամբ մեր դիտողութիւնքը լիակատար ընելու համար կարեւոր կը համարինք պարզաբանել կէտ մը, որ մտադիր ընթերցողին արդէն հետաքրքրութիւնը զարթուցած պիտի ըլլայ։ Յիշեալ կանոնին մէջ կը հրամայուի որ եկեղեցւոյ բեմին վրայ ուրիշ գիրք չկարդացուին, բայց միայն “Հին կտակարանք եւ Մարգարէք, եւ Աւետարան եւ Գործք Առաքինութեանց„ Առաքելոց։ Ս. Գրոց մասանց այս բաժանումը շատ ուշքի զարնէ, այնու որ պատահական չէ, այլ կրկնուած նաեւ ուրիշ անգամ։ Օրինակի համար գրութեանս վերջերը կը հրամայուի որ Պաւղոսի Առաքելոյ թղթերը կարդացուին եկեղեցւոյ մէջ, եւ կ'աւելցուի թէ “Նոյնպէս ընթեռնուն միաբան Գործք Առաքինութեանց նոցա (այսինքն՝ Գործք Առաքելոց[1]), զոր գրեաց Ղուկաս. զի յայսմ ծանիցին Առաքեալք եւ Մարգարէք եւ Հին կտակարանք եւ Նորք։„

Յայտնապէս կը տեսնուի որ Ս. Գիրք չորս մասերու բաժնուած է գրութեանս մէջ, այնպէս որ “Մարգարէք„ կամ մարգարէական գրութիւնք “Հին կտակարանի„ անուան ներքեւ չեն առնուիր, եւ չեն նկատուիր անոր մասն, ինչպէս եւ ոչ “Առաքեալք՝„ այսինքն Առաքելոց թղթերը՝ կը նկա-

[1] Ղուկասու գրութիւնը, զոր “Գործք Առաքելոց„ սովոր ենք յորջորջել, այս ասորական գրութեան մէջ յաճախ “Գործք Առաքինութեանց նոցա„ տիտղոսը կը կրէ եւ կամ “Առաքինութիւնք գործոց նոցա։„ Սոյն անուանակոչութիւնք կը գտնուին նաեւ Լաբուբնայի Աբգարու թղթին եւ այլ ասորի անվաւերականաց մէջ։ Ս. Գրոց ասորի թարգմանութեան մէջ տիտղոսն է “Գիրք Պրակաց„ (πράξεις,) զոր նաեւ Լաբուբնա կը գործածէ անգամ մը (ed. Phil. p. 46, 11 = Հայ՝ էջ 43, 4) “Պրակք Երկոտասան Առաքելոց„ գրելով, զոր հայ թարգմանիչը փոխած է սովորականին։ Նոյնպէս ազատութեամբ վարուած է հայ թարգմանիչը (կամ թերեւս խմբագիրն) “Վարդապետութեան Առաքելոց„ Լ կանոնին մէջ՝ “Գործք եւ խօսք աւետարանչացն քարոզութեան„ թարգմանելով, ինչպէս վերը դրինք. (տես վերը՝ էջ 29, ծան. 2։)

տուին իբր մասն Նոր կտակարանի։ Այս երեւոյթն, որուն մատադիր եղած է արդէն Գիւրըթոն,[1] զարմանալի պիտի երեւայ շատերուն. եւ սակայն դրութեանս յատուկ չէ։ Ասորական շատ գրութեանց մէջ միեւնոյն երեւոյթը կը նշմարենք, եւ կը գըտնենք միեւնոյն յատուկ բացատրութիւնքն, որ սովորական եղած են նաեւ մեր նախնեաց՝ ասորական գրութեանց թարգմանութեամբք.— օրինակի համար "Օրէնք" բառն, որ կը նշանակէ Մովսէսի Հընգամատեանը եւ այլ նմաններ։[2] Երկար ցուցմանց տեղ բաւական կը համարինք յիշել հոս Լաբուբնայի մէկ կտորն, ուստի այն անվաւեր գրութեան՝ որ ամէնէն աւելի սերտ կապ ունի այս կանոնացմատեանին հետ։ Լաբուբնա Ս. Գրոց մասունքը կ՚անջատէ նոյն կերպով, եւ այն՝ ոչ մի այլ շատ անգամ։ Այսպէս ի միջի այլոց կ՚ըսուի հոն թէ Ադդէ ընդունելով Փըղոտ, Բարշմաղայ, Բարսեմի եւ այլ աշակերտները՝ մասնակից ըրաւ զանոնք պաշտաման, եւ թէ "ընթեռնուին նոքա զՀին կտակարանս եւ զՆորս եւ զՄարգարէս (Հայն "զՄարգարէական գիրս") եւ զԳործս Առաքելոց։"[3] Լաբուբնայի այս տեղւոյն վրայ նոյն խորհրդածութիւնն ըրած է Փիլլիփս գիտնականն,[4] զոր կանոնացս առթիւ համառօտիւ նշանակած էր արդէն Գիւրըթոն, ինչպէս քիչ մը վերը յիշեցինք։ Փիլլիփս կը հետեւցընէ որ "Նոր Կտակարան" ասութեամբ միայն Աւետարանը կը հասկցուէր։ Այս հետեւութիւնն

[1] Cur. p. 172. l. 14. Համմ. նաեւ p. 157, l. 15։

[2] Համմ. Լաբուբնա էջ 32, 4 "Հրեայք գիտակք Օրինացն եւ Մարգարէիցն"։ — Նոյն՝ էջ 21, 7 "Գրեալ էին ի Գիրս եւ ի Մարգարէս." (Հայ թարգմանիչը փոխած է՝ "ի Գիրս մարգարէից։") — Նշանաւոր է նոյնպէս Լաբուբնայի սա խօսքը (ed. Phil. p. 46, 8 = Հայ՝ էջ 43, 1 եւն) "Բայց զԳիրս զոր ընթեռնուք յեկեղեցւոջ ժողովրդեան՝ առաջի՝ զՕրէնս (հոս = "Օրէնք") եւ զՄարգարէս եւ զԱւետարան եւ զԹուղթս Պաւղոսի." եւն։

[3] G. Phil. p. 35, 9 = Հայ՝ էջ 32, 19։

[4] G. Phil. p. 33, n. d. Համմ. նաեւ p. 44, n. a.

գլուխին կը հաստատուի Աբգարու Թղթին “Նոր Կտակարան Համաբարբառ„ (Diatessaron) բացատրութեամբն,[1] ուր խօսքն ի հարկէ Տատիանու Համաբարբառին վրայ է: — Ուրիշ գրութիւններէն օրինակներ բերել աւելորդ կը համարինք: Կարելի էր օրինակի համար Զգօնի ճառերէն օրինակաց շատ մեծ կոյտ մը հաւաքել. (տես մանաւանդ Ճառ Բ.) Ի հարկէ նաեւ շատ մ'այս տարի գրութեանց մէջ ալ Ս. Գրոց սովորական բաժանումն կը գտնենք գործածուած, ի մասնաւորի երբ ընդհանուր է խօսքը:

Բազմաթիւ կանոնացս մէջ անշուշտ կրնան գտնուիլ նաեւ այնպիսիներ, որոնք քիչ շատ տեղական գոյն ունենան՝ ըլլալով այն երկրին այլեւայլ դիպաց ու հանգամանաց արդիւնք, եւ ասով յայտնապէս մասնանիշ ընեն իրենց հայրենիքն: Այս կողմանէ նշանաւոր են ԻԸ եւ ԼԱ կանոնք ի մասնաւորի, թէեւ այլ կանոնք ալ քիչ շատ տեղական նկարագիր մ'ունին՝ ինչպէս ԺԶ, ԺԷ եւն: Աւելորդ չէ ասոնց վրայ քիչ մ'աւելի մանրամասն խօսիլ:

Կանոն ԻԸ (Ասոր. ԻԵ) կը հրամայէ որ “Թագաւորք որք ունին զհաւատս եկեղեցւոյ սրբոյ եւ խոստովանին զՔրիստոս, իշխանութիւն լիցի ընդ քահանայս ի բեմի կալ:„ Այստեղ՝ ուր հայն “ի բեմի կալ„ կը գրէ, ասորին “առաջի սեղանոյն կալ„ կ'ըսէ: Բայց այս բացատրութեան տարբերութիւնը նշանակութիւն չունի: “Բեմ„ (= յունարէն βῆμα, որմէ եւ ասորերէն בים զոր յաճախ գործածուած կը գտնենք,[2] —) եկեղեցւոյ դասուն կամ սրբա-

[1] P. Phil. 36, 17 = Հայ՝ էջ 33, 27: (Հայն հոս ալ այլազգ է՝ “ի հնոց կտակարանաց եւ ի Նորոց Գրոց:„) Տես այս նկատմամբ մեր գրութիւնը՝ Zur Abgar-Sage, p. 48.

[2] Տես Լաբուբնա էջ 39, 25. 44, 31, (ed. Phillips 42, 1. 48, 4.) Զգօն առ. Կ. Պոլ. 159, 14 եւն (ed. Wright,

րանին այն մասն էր, ուր խորանը կանգնած էր, եւ ուր եկեղեցականք կրնային կենալ։ Արդ ի դասն ու ի բեմն, որ եկեղեցւոյ միւս մասերէն աւելի բարձր կ'ըլլար քանի մ'աստիճաններով, (— այսպէս է մինչեւ ցայսօր ամէն Հայ եկեղեցեաց մէջ ալ, —) միայն եկեղեցականք մուտք ունէին, ինչպէս որոշ վճռած կը գտնենք Դ դարու վերջերը Լաւոդիկեայ ժողովոյն կրկին կանոնաց մէջ։ Ասոնց մին (կան. ԺԹ) կը կարգադրէ որ միայն եկեղեցականք կարենան մերձենալ սեղանոյն՝ ուստի բեմն ելլել,[1] իսկ միւսին մէջ (կան. ԾԶ) կ'արգելուի քահանայից՝ եպիսկոպոսէն յառաջ մտնել եւ "բեմի" վրայ նստիլ[2]։ Մեր կանոնը կը հրամայէ արդ որ քրիստոնեայ թագաւորք մտնել եւ առաջնորդին հետ (— ըստ M ձեռագրի, Cur. եւ այլք "ընդ առաջնորդս" Հայն՝ "ընդ քահանայս." —) կենալ կարենան։

Անշուշտ կանոնս այնպիսի ժամանակ մը գրուած է, երբ եկեղեցականաց մէջ խնդիր կար քրիստոնեայ թագաւորին եկեղեցւոյ մէջ նստելու տեղւոյն նկատմամբ։ Այսպիսի խնդիր մը ծագած կ'երեւայ ասորի եկեղեցւոյ մէջ, այնպէս որ Ագդէ

---

p. 156 etc.) — "Բեմի" (βῆμα) եւ "դասու" (χορὸς) նկատմամբ հմմտ. Herm. Adalb. Daniel, Codex liturgicus. (Leipzig 1853) IV p. 197—211.

[1] Hefele, I, 763 "Եկեղեցականաց միայն արժան է մատչել ի սեղան (θυσιαστήριον) եւ լինել հաղորդակից։" Հայն (կանոնագիրք՝ ՋԾԹ) փոխուած է քիչ մը. "Ոչ է մարթ աւելի զոմանս արտաքս քան զկանոնեալ սաղմոսողոգսն ի բեմ հանել, եւ ի բեմի գրովք սաղմոսել յեկեղեցւոջ։" Վերջին նախադասութիւնն հայոյն միայն սեպհական է։ Այս միեւնոյն կանոնը համառօտուած եղած է նաեւ այսպէս (Կանոնագիրք՝ ՑԺԹ) "Ոչ է պարտ ժողովրդականաց ի սեղանն հաղորդել եւ ոչ արանց ի բեմ ելանել։"

[2] Hefele, I 773 (= Հայ կանոնագիրք՝ ՋՂԵ) "Ոչ է մարթ երիցանց՝ մինչ չեւ եպիսկոպոսին մտանել եւ նստել՝ ի բեմի (ἐν τῷ βήματι, Pitra I 503), բայց ընդ (Ցոյն՝ "զկնի") եպիսկոպոսին մտանել արժան է. ապա թէ դժուարու իցէ եպիսկոպոսն (Ցոյն "բայց եթէ հիւանդ իցէ կամ յայլ վայր գնացեալ") համարձակեալ լիցի երիցանց մտանել նստել։"

այս նկատմամբ յորդոր մը տալ պէտք տեսած է իւր աշակերտաց։[1] Ընդ հակառակն յունական եւ արեւմտեան եկեղեցւոյ ժողովոց եւ այլ կանոնագրութեանց մէջ հնագոյն ժամանակներէն ասոր նման կանոն մը չի գտնուիր, օրինակի համար ոչ Փիթրայի հրատարակած "Ցիշատակարանաց" (Monumenta etc.) եւ ոչ Հէֆէլէի ժողովոց պատմութեան համեմատական մասերուն մէջ։ Եւ որովհետեւ գրութեանս ասորւոյ մը գործքին ըլլալը խնդրական չէ, կ'երեւայ մեզի որ կանոնիս բովանդակութիւնն ասորի եկեղեցւոյ մէջ շատ հին ժամանակներէն մնացած սովորութիւն մըն է, այն ժամանակէն անշուշտ՝ երբ յԵդեսիա քրիստոնեայ թագաւոր մը կը նստէր, (Աբգար Ը.) եւ քանի որ դեռ այն թագաւորութիւնը չէր կործանած. (215—6 Ց. Ք.։[2]) Այսպէսով կանոնս ամենահիններէն մին է, եւ ի հարկէ գրութեանս նախնական խմբագրութեան մասերէն՝ գոնէ ըստ էական մասանց, եւ իրեն ծագման վայրն եղած կ'ըլլայ Ուռհա։

Թերեւս ոչ նուազ հին, բայց ի մասնաւորի ասորի եւ հայ եկեղեցեաց համար մեծ նշանակութիւն ունի կանոնն ԼԱ։ Ըստ այսմ կանոնի՝ "Հաց պատարագին յորում աւուր եփեսցի ի նմին աւուր ելցէ սեղան," (Աս. յաւ. "եւ մի՛ յետ աւուրց, որ չէ օրէն.") կամ համառօտ ըսելով՝ պատարագի հացին "ջերմ" մատուցուելու հրաման կը տրուի։ Թերեւս սխալած չենք ըլլար՝ եթէ ըսենք որ կանոնս անձուկ մօք արեւելեան է, գոնէ արեւելեան եկեղեցեաց մէջ միշտ ճոխութիւն ունեցած։ Յունական եւ արեւմտեան կանոնաց մէջ հնագոյն ժամանակներէն ասոր նման կանոն մը չի գտնուիր, որ-

---

[1] Phillips, p. 45, 22 (= Հայ. 42, 27) "Բայց զիշխանս եւ զդատաւորս՝ որք մերձենան ի հաւատս այս, սիրեսջիք զնոսա առանց ակնառութեան" եւ ն.։

[2] Հմմտ. Tixeront, Les origines de l'église d'Edesse. p. 9—10.

չափ մեզ ծանօթ է։ Յունական Առաքելական կանոնաց չորրորդն, որ այս նիւթոյ վրայ է, յետնագոյն է ժամանակաւ եւ բոլորովին այլազգ, վասն զի կը հրամայէ «Նոր արմտեաց հասկ եւ խաղող մատուցանել առ սեղանն, եւ ձէթ ի սուրբ աշտանակն եւ խունկ ի ժամ պատարագին»։[1] Այս կանոնիս մէջ նմանութիւն մը կրնանք միայն այսչափ գտնել որ «Նոր» արմտիք կը հրամայէ նուիրել. բայց ասորական կանոնս բոլորովին ուրիշ բան կը պատուիրէ՝ հացը նորեփ կամ «ջերմ» հանել ի սեղան։

Աւելորդ է յիշել ասորի եւ հայ այն բազմաթիւ կանոնադրութիւնքն, որ ըստ այսմ կանոնիս վարուիլ կը հրամայեն։ Այսպէս են՝ օրինակի համար՝ Դիոնիսեայ Բար-Սալիբիի[2] եւ Յովհաննու Բար-Աբգարու կանոնները,[3] որ նմանողութիւն են ասորի կանոնիս, ինչպէս նաեւ ի Հայոց՝ կանոն Զ «Թադէի» կանոններուն եւ կանոն Է «Մակարայ» եւն,[4] զորոնք յիշել աւելորդ կը համարինք։ Յետոյ ժամանակաւ այն հարցման թէ որչափ կրնայ պահուիլ նուիրագործեալ պատարագիքն, աւելի մեղմ վճիռ սկսուած է տրուիլ։ Օրինակի համար «Յովհաննու Սիւնակեցի» անուամբ կանոն մը կը ներէ որ մէկ շաբաթ պահուի։[5] Նման որոշում կ'ընէ նաեւ Տիմոթէոս Աղեքսանդրացի։[6]

Շատ հին է այս կանոնը ասորի եկեղեցւոյ մէջ, վասն զի արդէն Զգօն՝ եթէ ոչ այս կանոնս բառ առ բառ, գոնէ իւր նախնականը ճանչցած կ'երեւայ։ Զգօն ԺԲ («Վասն Զատկաց») ճառին

---

1 Hefele, I 801։ Հայ կանոնագիրք՝ ԼԷ։ Յունական եկեղեցւոյ այս մասին նկատմամբ ունեցած սովորութիւնքն՝ տես Daniel, Cod. lit. IV, p. 383—391։

2 Տես Ass. Bibl. Or. II, p. 183.

3 Bibl. Or. III, p. 243, տես նաեւ էջ 305։

4 Հմմտ. կանոնագիրք՝ ՃԻԵ եւ ՆԿԲ։

5 Տես կանոնագիրք՝ ՌՃԾԶ։

6 Pitra, I 641։

մէջ[1] մանրամասն կը խօսի Հրէից զատկական գառին եւ բաղարջին վրայ, եւ կը համեմատէ անոնց հետ քրիստոնէական պատարագը, եւ յիշելով Ս. Գրոց մէկ խօսքը (Ելք, ԺԲ, 6 "մի ուտել հում եւ ոչ եփեալ ջրով.") կը յաւելու. "Այս յայտ է եւ մեկնակ. զի պատարագն՝ որ մատչէր յեկեղեցւոջ Աստուծոյ, ի կրակի խորովեն զնա, եւ ոչ եփեն եւ ոչ հում մատչի ի վերայ սեղանոյն." Հոս յայտնի է նաեւ այն՝ որ "անխմոր" հաց կը հասկընայ Զգօն, եւ այս կը հասկըցուի նաեւ ասորի կանոնէս. Յայտնի է որ Ասորիք ալ Հայոց պէս ի սկզբան "անխմոր" հացով կը պատարագէին:

Քիչ շատ տեղական հանգամանաց ծնունդ կ'երեւան նաեւ ԺԶ եւ ԺԷ (Ասոր. ԺԵ եւ ԺԶ) կանոնները: Առաջինը կը պատուիրէ որ "եթէ ոք սիրէ զՀրեայս" (— Հայը կը յաւելու "եւ հաղորդի ընդ նոսա," որ իմաստն որոշ կը մեկնէ, —) Յուդայի եւ հեթանոսաց նման համարուի եւ "մի մտցէ յեկեղեցի եւ մի պաշտեսցէ" (— Հայն չունի այս վերջինը, որ կարեւոր կէտ մըն է. —) եւ թէ՝ եթէ հաւատացելոց մէջ կը բնակի այնպիսին, մերժուի: Քայլ մ'աւելի յառաջ կ'երթայ ԺԷ կանոնը: Վերջինս կը պատուիրէ որ եթէ հրեայ կամ հեթանոս մը քրիստոնեայ ըլլալէն ետքն՝ թողու եւ "երթիցէ յէր բնակեսցէ," (— Ասորին՝ "ի կողմն, յորում էր զառաջինն" —) եւ դարձեալ դառնայ եւ գայ քրիստոնէից, այլ եւս չընդունուի, եւ համարուի թէ ըլլայ "ի նմին կարգի՝ ուր էր զառաջինն:" Երկու կանոնքս ալ ուրեմն ուղղուած են՝ բաց ի հեթանոսներէն՝ ի մասնաւորի Հրէից դէմ, եւ բաւական խիստ որոշումներ կը բովանդակեն՝ մանաւանդ կանոն ԺԷ: Եկեղեցական այլ կանոնագրութեանց մէջ այսչափ խիստ կարգադրու-

[1] Ճառ ԺԲ (Հայ՝ ԺԴ) § 6. (ed. Wright, p. 225 = տպ. Կ. Պոլ. էջ 261.)

թիւններ սովորական չեն։ Ղաւոդիկեայ ժողովքն օրինակի համար՝ միայն արգիլած էր որ Հրեիցմէ ընծայ չառնուն եւ անոնց հետ ի միասին չտօնեն քրիստոնեայք տօները, ինչպէս նաեւ որ բաղարջ չառնուն Հրեիցմէ։[1] Յունական առաքելական կանոնք կը հրամայեն որ եթէ մէկը Հրեից կամ Հեթանոսաց երկիւղէն պատճառաւ ուրանայ Քրիստոսի անունը, բանադրուի. իսկ եթէ կղերական ըլլալն ուրանայ՝ մերժուի պաշտօնէն, "բայց եթէ ապաշխարիցէ, ընկալցի իբրեւ զժողովրդական.[2]" — որ ԺԷ կանոնէն շատ մեղմ է, ինչպէս նաեւ նոյն կանոնաց մէկ ուրիշն, որ Հրեից ժողովրդանոցն (synagogue) կամ Հեթանոսաց մեհեանն աղօթելու համար մտնողը կը նզովէ։[3]

Ասոնք՝ ինչպէս կը տեսնուի՝ շատ մեղմ են մեր գրութեան ԺԷ կանոնէն, որ հրէութենէ կրկին անգամ դարձողը չընդունիլ կը հրամայէ՝ կրնանք ըսել ճիշդ հակառակ Նիկիոյ ԺԳ կանոնին,[4] որ հնոց ոմանց խստութիւնն՝ ըստ որում այսպիսեաց եւ ոչ մահուան վայրկենին Ս. Հաղորդութիւն կը տրուէր, վերցուց։ Միայն սպանիական եկեղեցւոյ մէջ այս տարականաց նման խիստ կանոններ կային։ Ելուիրայի ժողովոյն կանոնք այս կողմանէ նմանութիւն մ'ունին տարականացս հետ։ Այնտեղ կը զրկուի Ս. Հաղորդութենէն այն քրիստոնեայն՝ որ Հրէի մը սեղանակից ըլլայ կամ անոր հետ կերակրոյ նստի[5] (կան. Ծ.)։ Ճիշդ ԺԷ կանոնին պէս կը գտնենք հոն[6] ալ որ՝ եթէ քրիստոնեայ մը մեհեան մտնէ եւ զոհէ, "Եւ ոչ ի մահուան" ընդու-

---

[1] կան. ԼԷ եւ ԼԸ. Hefele, I 770 (= կանոնագիրք՝ ՋՀԱ եւ ՋՀԲ։)

[2] կան. ԽԲ. Hefele, I 819 (= Հայ կանոնագիրք ՂԱ։)

[3] կան. ԽԴ. Hefele, I 820 (= կանոնագիրք՝ ՂԴ։)

[4] Hefele, I 417 (= Հայ կանոնագիրք՝ ՄԺԸ։)

[5] Hefele, I 178։

[6] Hefele, I 155, 162, 164։

նիլ կը հրամայուի ի "Հաղորդութիւն." (— զոր պէտք չէ արձակման մօտք առնուլ, ինչպէս կ'առնուն այլեւայլ մեկնիչք. եւ յայտնի կը տեսնուի այս նաեւ ԻԲ կանոնէն։ —) Վերջապէս նոյն ժողովոյ ԺԶ կանոնն արգիլեց Հրէից հետ ամուսնանալը։ Գիտնականք կը մեկնեն սպանիական եկեղեցւոյ միւս եկեղեցիներէն աւելի գործադրած այս խըստութիւնն այն հանգամանքովն, որ Սպանիոյ մէջ Հրեայք այն ժամանակ շատ մեծ ազդեցութիւն ունէին՝ ի վնաս քրիստոնէութեան։[1] Անշուշտ միեւնոյն պատճառէ յառաջ եկած են նաեւ ասորականքս։ Ճիշդ գրութեանս յօրինման միջոցներն՝ այսինքն Դ դարուն կէսերը՝ շատ մեծ էր Հրէից ազդեցութիւնն ասորի քրիստոնէից դէմ։ Զգօն կարծես իր ճառերուն մէջ ուրիշ ամեներուն նպատակ չունի, բայց եթէ Հրէից դէմ մաքառիլ՝ մանաւանդ վերջին (Ժ—ԻԲ) ճառերուն մէջ։ Շապհոյ Բ.ի կատաղի հալածանաց ժամանակ Հրեայք հանգիստ էին, եւ այս պատճառաւ կ'արհամարհէին քրիստոնեայքն եւ թշնամաբար կը վարուէին քրիստոնէից դէմ։[2] Այս երկարատեւ հալածանաց ժամանակ Հրեայք ոչինչ նուազ չարիք հասուցին Ասորւոց եւ ասորալեզու քրիստոնեայ Պարսից, ինչպէս կը պատմեն ասորի վկայագիրք, օրինակի համար Մարութայ՝ Շմաւոնի վկայաբանութեան մէջ, ուր կը գրէ.[3] "Եւ Հրեայք եւս Թշնամիք՝ որդիք ոուձոր էին՝ սկսան չարախօսել զՇմաւոնէ եւ զամենայն քրիստոնէից. քանզի ոոխոր էին յայսպիսում ժամանակի գտանել չարախօսս, սկսան ամբաստան լինել

---

[1] Հմմտ. Hef. I 178 եւն։

[2] Հմմտ. ի մանաւանդ ճառ ԻԱ Զգօնի. (G. Bert, Aphr. p. 329 ff.) Զգօն՝ Հրէից դէմ այնչափ մաքառելով հանդերձ՝ հրէական գիտնոց ազդեցութեան շատ ենթակայ եղած է՝ բազմաթիւ րաբբինական աւանդութիւնքն իր գրոց մէջ առնելով, ինչպէս դիտած են արդէն գիտնականք (Հմմտ. F. Sasse, Aphr. p. 11. G. Bert, Aphr. p. XIII etc.)

[3] "Ի վկայս Արեւելից„ ի գիրս՝ Սոփերք Հայկականք, Հատ. Ի (Վենետ. 1854) էջ 23—24։

եւ ասել. Յորժամ դու, արքայ, հրովարտակս եւ պատգամս մեծաւ շքով եւ պատրաստութեամբ առաքես կայսեր, առ ոչինչ համարի, իսկ Շմաւոն եթէ դոյզն բանս առնէ ի թղթի եւ առաքէ, յոտն յառնէ„ եւն. եւն։ Հրեայք այնչափ եւս համարձակած էին քրիստոնէից դէմ այս միջոցին, որչափ որ Շապուհ — որուն կինը շատ հրէասէր կ'ըսուի, — անոնց կողմն կը բռնէր, եւ որչափ որ զարթած էր անոնց մէջ Երուսաղէմի նորէն շինուելու գաղափարը, ինչպէս յայտնի է անկէ որ ասոր դէմ գրել ստիպուած էր Զգօն յատկապէս,[1] եւ ինչպէս կը պատմէ նաեւ նոյն Մարութաս թէ "Ել ընդկառափին նոցա չարախօսութիւնն բազում հազարօքն՝ որ անկան յանկարծակի ի սուր՝ ի ժամանակի իբրեւ գնացեալ Եբրայեան ի Հռովմա շինուածոյն Երուսաղէմի՝ ըստ բանից առն միոյ, որ խաբեաց զնոսա։„ Այս ամէն պարագայից մէջ յայտնի է որ Հրէիցմէ վտանգ մը կը տեսնէին քրիստոնեայ առաջնորդք, եւ ասով կը մեկնուի թէ ինչու այս կանոնք գրուած են, եւ թէ ինչու այնչափ խիստ է ի մասնաւորի ԺԷ կանոնը։ Ասով գտած կ'ըլլանք միանգամայն՝ որ կանոնքս ծնունդ են Շապհոյ հալածանաց (340ին) ժամանակին, եւ թէ տեղական կամ՝ ինչպէս կրնանք ըսել այժմ՝ ասորական նկարագիր ունին։

Գրութեանս ասորական նկարագիրը յերեւան կ'ելլէ վերջապէս բազմաթիւ բնիկ ասորական ասութիւններով, որոնցմէ շատերը մնացած են նաեւ Հայերէն թարգմանութեան մէջ։ Հայերէն թարգմանութեան այս ասորական հետքերուն վրայ յետոյ պիտի խօսինք։ Հոս կը յիշենք միայն քանի մը շատ գործածուած բացատրութիւններն, որոնց բուն իմաստը թերեւս շատերուն ծանօթ չըլլայ։

---

[1] Զգօնի ԺԸ (Աս. ԺԹ) ճառն ուրիշ բան չէ, բայց եթէ "Ցանդիմանութիւն ընդդէմ Հրէից. զի ասեն թէ կայ մեզ ժողովել։„

Բաց ի "դէտ„[1] բառին առած եկեղեցական նշանակութենէն (— որ առնուած է ի Ս. Գրոց, Եզեկիէլ ԼԳ, 7. —) շատ սովորական է գրութեանս մէջ "առաջնորդ եւ հրամանատար„ առումին, որ ճշգրիտ թարգմանութիւնն է ասորերէնին։ Այս առումին ոչ թէ անորոշ բացատրութիւն մըն է, այլ արդէն հաստատուն իմաստ մ'ունի եւ կը նշանակէ պարզապէս "եպիսկոպոս,„[2] թէեւ այս վերջին յունական բառս ալ ինչպէս մենք՝ նոյնպէս նաեւ Ասորիք կը գործածեն՝ օրինակի համար Ռաբբուլի վկայաբանութեան մէջ։ Այս ընիկ ասորական բացատրութիւնը շատ յաճախ է իմաստաւորի այն կարգ մը գրութեանց մէջ, որ "Վարդապետութեան Առաքելոց„ հետ կապ մ'ունին, օրինակի համար Լաբուբնայի Աբգարու թղթին մէջ. թէեւ կը գործածեն զայն նաեւ այլ գրութիւնք, ինչպէս են Բարսամեայի վկայաբանութիւնն, Վարդապետութիւն Սիմոնի Կեփայի, եւն.։[3] Հայ թարգմանիչք սովորաբար հաւատարմութեամբ կը պահեն այս "առաջնորդ եւ հրամանատար„ բացատրութիւնն.

---

[1] Հմմտ. Կանոն Զ. "Կաթուղիկոսն դէտ եւ գլուխ եւ աւրէնսդիր լիցի ժողովրդեան.„, եւ այլուր։ "Դէտ„ այս տեղերը թարգմանութիւն է ասորերէն նոյն իմաստով բառին, եւ սակայն հետեւողութիւն է Եզեկիէլի խօսքին (ԼԳ. 7) "Եւ դու որդի մարդոյ, դէտ ետու զքեզ տանդ Իսրայէլի„ եւ այլուր, ինչպէս ԼԳ. 6։

[2] Եւ այս նշանակութեամբ կը գտնենք նշանակուած արդէն Payne Smithի ասորական բառագրոց մէջ. տես Thesaurus Syr. 1 ի կարգին։

[3] Տես բաց ի մեր գրութենէն՝ Լաբուբնա, էջ 13, 6 "Այլ Յակոմբոս որ էր մեր առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջն։„ — Էջ 46, 13 "Ադէ . . եղեւ առաջնորդ եւ հրամանատար եւ ժառանգաւոր աթոռոյն . . . ։„ Վարդապետութիւն Կեփայի (Cureton, p. 40, 10) կը գրէ Կեփայի համար թէ "պաշտեաց անդ ի պաշտաման առաջնորդի եւ հրամանատարի զԻԵ ամս։„ — Վկայութիւն Բարսամեայի (Cureton, p. 65, 8) "Դու Պարսամիա որ եղեր առաջնորդ եւ հրամանատար ժողովրդեան քրիստոնէից.„ եւն. եւն, զորոնք յիշելն աւելորդ է։ Միայն յիշենք որ Ռաբբուլի վկայաբանութեան մէջ կը գրուի (Cureton, p. 41, 27.) "Ռաբբուլ էր գլուխ եւ հրամանատար ամենայն քրմաց։„

բայց երբեմն ալ ուղղակի այս բացատրութեան բուն իմաստը դնել նախամեծար կը համարին, ինչպէս ըրած է օրինակի աղագաւ Լաբուբնայի թարգմանիչը՝ մէկ երկու տեղ պարզապէս "եպիսկոպոս" թարգմանելով։ Օրինակի համար Լաբուբնա կը պատմէ[1] թէ երբ Ադդէ մեռնելու վրայ էր՝ զԱգգէ "առաջնորդ եւ հրամանատար" ըրաւ իրեն տեղը։ Հայ թարգմանիչն այս տեղն գրեր է պարզապէս "եւ կարգեաց . . ի կարգ եպիսկոպոսութեան յիւրում տեղւոջ։" Քիչ մ'ետքն ալ ուր տարին կ'ըսէ[2] Ագգէի նկատմամբ թէ "Եւ նա ձեռամբքն (այսինքն՝ ձեռնադրութեամբն) զոր ընկալաւ ի նմանէ (յԱդդէէ), կացոյց քահանայս եւ առաջնորդս յամենայն երկրիս Միջագետաց։" Հայն այս տեղը բոլորովին այլափոխած եւ գրած է "Եւ անտի (յՈւռհայէ) ընդունէին զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան ամենայն արեւելք։"

Վերջին կոչմանս մէջ մտադրութիւն գրաւած պիտի ըլլայ "ձեռամբքն զոր ընկալաւ" բացատրութիւնն, որ համառօտութիւն մըն է "ձեռան քահանայութեան" բնիկ ասորական բացատրութեան։ Ասորի գրութեանց այս շատ սովորական բացատրութիւնն այն իմաստն ունի, զոր սովոր ենք բացատրել "ձեռնադրութիւն" բառով՝ որ է թարգմանութիւն յունական χειροτονία բառին, եւ զոր նաեւ Ասորիք այլ գրութեանց մէջ "դրութիւն ձեռաց" ասութեամբ կը յայտնեն։ Այն բացատրութիւնը կը գտնենք գործածուած նաեւ Լաբուբնայի, Կեփայի վարդապետութեան, Զգօնի, Եփրեմի եւ այլոց քով։[3] Ուրիշները "ձեռն" բառին տեղ "աջ" բառը կը գործածեն. եւ անոնց կարգէն է նաեւ "Վար-

---

[1] G. Phil. p. 40, 18 = Հայ՝ էջ 38, 14։ Տես Zur Abgar-Sage, p. 46, n. 2.

[2] G. Phil. p. 50, 1 = Հայ՝ էջ 47, 4։

[3] Տես G. Phil. p. 1, 7. 49, 21. 52, 12. Cureton, p. 40, 30 եւն եւն։

դապետութիւն Առաքելոց,„ որ կը գրէ առաքելոց նկատմամբ թէ “Ընկալան ղաշ քահանայութեանն իբրեւ զՄովսէս եւ զԱհարոնն:„ Ասորերէնի մէջ կը գործածուին նաեւ “աջ երիցութեան,„ “աջ սարկաւագութեան„ բացատրութիւնքը: Հայ թարգմանիչք խորթ համարած են “ձեռն քահանայութեան„ եւն ասորական բացատրութիւնն, այնպէս որ թէ՛ “Վարդապետութեան Առաքելոց„ եւ թէ՛ Լաբուբնայի թարգմանիչը միշտ փոխած ու “Յեռանորդութեան քահանայութեան„ թարգմանած է, թէեւ հաւատարմութեամբ պահած է “աջ քահանայութեան„ ասութիւնը:

Բաւական կը համարինք գրութեանս ասորական նկարագրին նկատմամբ ցայս վայր ըսուածն, մանաւանդ որ յընթացս գրութեանս յաճախ առիթ պիտի ունենանք ուրիշ նման կէտերու ալ մատնիր ընել տալ: Այժմ անցնինք ուրիշ կարեւոր խնդրոյ մը, որ է գրութեանս երբ յօրինուած ըլլալը:

## 3.

“Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեան հեղինակին վրայ կրցանք ցայժմ գտնել որ Ասորի մատենագիր մըն է եւ այն՝ Արեւմտեան Ասորիներէն: Քիչ շատ նշմարեցինք նաեւ թէ երբ գրուած կրնայ ըլլալ գրութիւնս, երբ կը խօսէինք Համաբարբառին եւ ԺԶ եւ ԺԷ կանոնաց վրայ: Այժմ պիտի ջանանք ընդարձակօրէն քննել թէ երբ կ'ապրէր սոյն անձն կամ ճիշդ եւս ո՛ր ժամանակէն է իւր գրութիւնը: Վերն անցողակի տեսանք որ Դ դարու վերջերէն պէտք է որ ըլլայ գրութիւնը: Սոյն եզրակացութիւնը պիտի հաստատեն յաջորդ դիտողութիւնք:

Այս կարգի գրութեան մէջ, ուր բաց ի պատմական նկարագիր ունեցող կտորներէն՝ կայ նաեւ եկեղեցական կանոնաց հաւաքածոյ մը, դժուար

եւ գրեթէ անկարելի է գրութեան ժամանակին բոլոր հետքերը ծածկել եւ անհետ ընել։ Եկեղեցական բարեկարգութեան պատմութեան տեղեակ աչք մը շատ անգամ կրնայ որոշ զանազանել թէ այս ինչ կանոնն երբ կրնայ ծագած ըլլալ, այն ինչ կանոնն որ դարու մէջ միայն կրնայ գրուած ըլլալ, եւ շատ անգամ նաեւ թէ ինչ աղբիւրէ յառաջ եկած են անոնք։ Վասն զի եկեղեցական բարեկարգութիւնն ոչ թէ առաջին վայրկենէն արդէն լիովին կատարեալ հաստատուած է, այլ հետզհետէ զարգանալով՝ ունեցած է իրեն որոշ պատմութիւնը։

Գալով մեր "Վարդապետութիւն Առաքելոց" գրութեան՝ դժուար չէ տեսնել որ անկարելի է ընդունիլ թէ այս բոլոր կանոնները միեւնոյն ժամանակի ծնունդ ըլլան. այնպէս որ՝ որոշ կը տեսնուի շատ մը կանոնաց մէջ եկեղեցական բարեկարգութեան տարբերութիւնն եւ տարբեր ժամանակներու դրոշմը, թէեւ սորի գրիչ մ'այս ամէնն հաւաքած, փոփոխած եւ դրած է քովէքով։ Շատ խոր հնութեան կնիք կրող կանոնաց քով կը գտնենք շատ նոր ժամանակի կարգադրութիւններ, որմէ կը հետեւի ի հարկէ որ մեր առջեւն ունեցած գրութիւնն նորագոյն խմբագրութիւն մըն է։

Շատ մեծ հնութեան նշան կը կրէ օրինակի համար գրութեանս սկիզբը, ուր կ'ըսուի թէ Քրիստոսի Տեառն մերոյ "Համբարձումն" կատարուեցաւ Յունաց իշխանութեան 339 տարին՝ Մարգաց ամսոյ չորրորդ օրը, "յաւուր միաշաբաթոջ՝ որ է կատարումն Պենտակոստէից։" Ըստ այսմ Համբարձման օրը նոյն է Հոգեգալստեան օրուան հետ, մինչ այժմ տասն օրուան անջրպետ կայ այս երկու տօներուն մէջ։ Գիւրըթոն[1] կը ջանայ մեկնել այս կտորն՝ ընդունելով որ հեղինակն հոս տեղ շփո-

---

[1] Cureton, p. 168. l. 12։

թած ըլլալու է երկու տօները։ Սակայն այստեղ տօներու պատահական շփոթութիւն մ'եղած չէ, ինչպէս յայտնի կը վկայէ կանոն Ժ. (Ասոր. Թ.։) Այս վերջին կանոնս կը հրամայէ՝ ըստ թարգմանութեան մեր ասորաբան հայ թարգմանչին՝ "Զկնի պասեքին կատարեսցեն Ծ աւր յետ յարութեան նորա, եւ արասցին տաւն յիշատակի վերացման (= Համբարձման) նորա առ Հայր յերկինս փառաւորեալ։" Այստեղ ուրեմն բոլորովին բացայայտ կը հրամայուի Յարութենէ յիսուն օր ետքն, ուստի Հոգեգալստեան օրը՝ Համբարձման տօնը կատարել։

Յայտնի է ուրեմն որ կանոնս այն կանուխ ժամանակէն է՝ երբ Համբարձման եւ Ս. Հոգւոյն գալստեան տօները դեռ չէին զատուած, այլ կը տօնուէին ի միասին՝ "ի լրումն պենտակոստէից," այսինքն՝ յիսներորդ օրը Զատկէն ետքը։ "Պենտակոստէ" (πεντηκοστὴ) յունական ընդհանուր անուամբ կը նշանակուէր Զատկէն մինչեւ Հոգեգալուստ եղած ամբողջ միջոցը. այսպէս Ս. Բարսեղ "սրբոյն պենտակոստէի եօթն շաբաթք" կը հաշուէ, եւ Անտիոքայ 341ի ժողովքը կը հրամայէ որ տարեկան ժողովքն աւարտի "ի չորրորդ շաբաթու պենտակոստէի։"[1] Արդ այս միջոցին բուն վերջին օրը՝ յիսներորդն ի Զատկէ՝ էր ի հարկէ "լրումն պենտակոստէից." եւ տօն էր յիշատակի գալստեան Ս. Հոգւոյն, սակայն միեւնոյն ժամանակ նաեւ յիշատակ էր Համբարձման՝ հնագոյն ժամանակները։ Յետոյ ժամանակաւ բաժնուեցան երկու տօները, եւ Համբարձման տօնը դրուեցաւ Զատկէն 40 օր վերջը։ Բայց այս բաժանումն արեւելեան եկեղեցեաց մէջ շատ ուշ եղաւ, ուստի եւ այն ժամանակ՝ որ կանոնս գրուած է առաջին

[1] Տես այս մասին՝ Hefele, Conciliengeschichte, 1873. I, p. 430, 519.

խմբագրին ձեռօք՝ դեռ չէր եղած բաժանումն։ Ընդհակառակն Արեւմուտք աւելի կանուխ եղած էր այս բաժանումն, ըստ Հէրկէնրէօթէրի արդէն Դ դարուն, այնպէս որ Ս. Աւգոստինոս Համբարձման տօնը կը յիշէ իբրեւ հնագոյններէն մին։[1] Մանաւանդ թէ մնած էր Արեւմուտք զեղծումն ալ՝ Պենտակոստէից օրերը Զատկէն 40 օր վերջը Համբարձման տօնին հետ փակել, այնպէս որ Ելուիրայի 306ին գումարուած ժողովքն իրեն ԽԳ կանոնը գրած է այս զեղծման դէմ։[2] — Համբարձման տօնը բաժնուած կը յիշեն "Սահմանադրութիւնք Առաքելոց„ եւ "Յաղագս Խորհրդական Պաշտաման„ անվաւերական գրութիւնքն,[3] որոնք սակայն Դ դարու վերջերն առած են իրենց այժմու ձեւն։ Նաեւ մեր գրութեան Ժ կանոնն այլափոխուած եւ ըստ յետնագոյն սովորութեան փոխուած է ասորերէն L եւ M ձեռագրաց ընթերցուածոյն մէջ. սակայն ուղղագոյն ընթերցուածը պահած են Cur. ձեռագիրն, ինչպէս նաեւ հայերէն ձեռագիրն, որ այնչափ աւելի արժէք ունի, — որով եւ այս ընթերցուածին վաւերականութիւնը տարակուսի տակ չի կրնար իյնալ, — որչափ որ կանոնիս բովանդակութիւնը թարգմանչին ժամանակին սովորութեանց համեմատ չէր, եւ անոր համար ալ ԺԱ կանոն մ'աւելցուած կը գտնենք հայերէնին մէջ։

Այս եւ այլ ստուգիւ հին կանոնաց քով կան շատ մը նորագոյններ, որոնք՝ գոնէ իրենց այժմու ձեւին մէջ՝ հին չեն կրնար ըլլալ, օրինակի համար կանոն Զ (Ասոր. Ե) եւ կանոն Ի (Ասոր. ԻԵ։) Առաջինը կը հրամայէ որ եկեղեցւոյ մէջ ըլլան "երիցունք եւ սարկաւագունք . . . եւ կէս-սար-

---

[1] Augustinus, epist. 118 ed. Jan. c. 1. տես Alzog Kirchengeschichte. 9. Aufl. p. 248. Hergenröther Kirchengeschichte. I, p. 187 եւն։

[2] Hefele, I 174.

[3] Տես Pitra, Monumenta, I 68 եւ 290.

ܗܘܦܕܝܩܢܐ։„ Այստեղ ասորի բնագիրը մինչեւ անգամ յունական ὑποδιάκονος (կիսասարկաւագ) բառը գործածած է, որ ասորի գրականութեան հնագոյն գործոց մէջ՝ որչափ ինծի ծանօթ է, ամենեւին չի գտնուիր։[1] Նոյն իսկ այս բառը կը ցուցընէ որ կանոնս իւր այժմու ձեւով շատ ուշ ժամանակ միայն կրնայ գրուած ըլլալ, եւ շատ աւելի ուշ քան իրեն հետ սերտ կապ ունեցող ուրիշ անվաւերական մը՝ Աբգարու Թուղթն, որ իւր այժմու ձեւն Դ դարու վերջին կէսին մէջ առած է։[2] Այս վերջին ասորական գործքը դեռ եւս չի գիտեր "կիսասարկաւագ„ աստիճանն, այլ քահանայից եւ սարկաւագաց ետեւ գիտէ միայն "ընթերցողաց„ աստիճանն, ինչպէս կը տեսնենք ի միջի այլոց սա խօսքին մէջ, ուր կ'ըսուի թէ Ադդէ թէ՛ Ուռհայի եւ թէ՛ շրջակայ գիւղերու մէջ եկեղեցիներ կը շինէր, եւ կը հաստատէր անոնց համար "երիցունս եւ սարկաւագունս եւ ܐܓܢܘܣܛܐ։„[3] (= ἀναγνώστης.) Միայն Լաբուբնայի գրութեան սոյն կտորին հետ համեմատելով մեր կանոնը՝ պէտք ենք ըսել որ վերջինս՝ ամէնէն կանուխ՝ Դ դարու վերջին տարիները կրնայ գրուած ըլլալ։

Այս նիւթոյս նկատմամբ աւելի ամբողջական գաղափար ունենալու համար պէտք է յիշել որ հնագոյն ժամանակները նաեւ յունական կանոնաց մէջ ὑποδιάκονος (կիսասարկաւագ) բառը շատ քիչ կը գտնուի գործածուած։ Հնագոյն յունական կանոնական գրութեանց մէջ սովորաբար կը գործածուի ὑπηρέτης (ܡܫܡܫܢܐ) ասութիւնն, որով կը նշանակուին եկեղեցական փոքրաստիճանաւորք ընդհանրապէս, եւ անձուկ մտօք նաեւ կիսասարկաւագունք ի միասին առեալ։ Այսպէս կը

---

[1] Հմմտ. նաեւ Payne Smith, Thes. Syr. I p. 995։

[2] Թիքսըրոն կը դնէ իբր 370–390 Յ. Ք. տարիները (Tixeront, les origines etc. p. 128ff.)

[3] G. Phil. p. 40, 13 = Հայ՝ էջ 38, 6։

խօսի օրինակի աղագաւ Նէոկեսարիոյ իբր 314—325 Յ. Ք. գումարեալ ժողովոյն Ժ կանոնը.[1] այսպէս կը խօսին Գանգրիկեայ (գումարեալ 343—381 Յ. Ք.) ԻԱ, ԻԲ եւ ԻԳ կանոնները,[2] եւ այլն։ Աւելի հնագոյն եկեղեցական գրիչք նաեւ սարկաւագներն "սպասաւոր" անուան ներքեւ կ'առնուն, օրինակի համար Արքեղայոս՝ որ "սպասաւորք, երիցունք եւ եպիսկոպոսունք" միայն կը յիշէ։[3] Կանոնական գրութեանց մէջ, զորոնք ամփոփած է Փիթրա ծիրանաւորն իւր արդէն յիշուած գործոյն մէջ, իբր Դ դարու վերջերը կը գտնենք ὑποδιάκονος բառը։ Այսպէս այն բառը կը գործածեն Դ դարու վերջերն իրենց այժմու ձեւն առնող անվաւեր կանոնական գրութիւնք, ինչպէս են յունական "Առաքելական Կանոնք", "Առաքելական Սահմանադրութիւնք," եւ "Ցաղագս Խորհրդական Պաշտաման" գրութիւնք, բաց աստի նաեւ Տիմոթէի Աղեքսանդրացւոյ "Կանոնական պատասխանի"[4] եւ այլ գրութիւնք։[5]

Գրեթէ նոյնչափ նոր է նաեւ կանոն Ի (Ասոր. ԻԴ։) Սոյն նշանաւոր կանոնը հետեւեալն է՝ ըստ ասորի բնագրին, (— վասն զի հայերէնն անճանաչելի ըլլալու չափ փոխուած է խմբագրողէն, թէեւ թարգմանիչը հաւատարմութեամբ թարգմանած էր, ինչպէս պիտի տեսնենք. —) "Կարգեցին դարձեալ առաքեալք եթէ եղիցին հրամանատարք ի վերայ երիցանց որ ի գեօղս են, եւ երեւեսցի գլուխ

---

1 Hefele, I 248։

2 Hefele, I 764—66 եւն։

3 Արքեղայոս, վիճումն ընդ Մանեայ, ԾԱ. (տես Caillau, Collectio SS. Eccl. Patrum. XV, p. 224 եւ 592։)

4 Pitra, Monumenta, I 57, 58, 62, 399, 640. Hefele, I 814։

5 Ըստ Hergenrötherի (Kircheng. III, Per. I. § 190) Արեւմուտից մէջ Կիպրիանոս յաճախ կը գործածէ hypodiaconus բացատրութիւնը։ Կրնայ թերեւս քննուիլ թէ արդեօք Կիպրիանու վաւերական գրութեանց մէջ կը գործածուի այս բառը։

*ամենեցուն, զի ի ձեռն նորա խնդրեցին ամենեքեան, քանզի եւ Սամուէլ այսպէս շրջէր տեղէ ի տեղւոջ եւ հրաման տայր:”* Որչափ կ'երեւայ կանոնիս նախնականը գիւղական եպիսկոպոսաց կամ “քորեպիսկոպոսաց” (χωρεπίσκοπος) վրայ կը խօսէր: Ինչպէս յայտնի է՝ հնագոյն ժամանակները նաեւ գիւղերու մէջ կային եպիսկոպոսներ, որոնց նկատմամբ եկեղեցական կանոնաց մէջ յաճախ յիշատակութիւն կ'ըլլայ: Ի մասնաւորի Անտիոքայ 341ին ժողովքն իւր Ժ կանոնին մէջ կը հրամայէ որ “եպիսկոպոսք ի գիւղս, որ կոչին քորեպիսկոպոսք, եթէ նաեւ ընկալեալ իցէ նոցա զօծումն իբրեւ զեպիսկոպոսունս,” պէտք են իրենց սահմանին մէջ մնալ եւ հոգալ իրենց եկեղեցին, միայն ընթերցող, կիսասարկաւագ եւ երդմնեցուցիչ կարգել, բայց սարկաւագ եւ քահանայ չձեռնադրել առանց քաղաքին եպիսկոպոսին հաւանութեան՝ որուն ենթարկեալ են: Նոյն հրամանն արդէն Անկիւրիոյ 314ի ժողովն ալ տուած էր (կան. ԺԳ) եւ ուրիշ կարգադրութիւն մ'ալ Նէոկեսարիոյ ժողովն ըրած էր իրեն ԺԴ կանոնին մէջ[1]: Բաց ի այլ յիշատակութիւններէն[2] պէտք ենք յիշել նաեւ Ս. Սահակայ անուամբ եղած կանոնները քորեպիսկոպոսաց նկատմամբ[3]: Արդ թէպէտ մեզ հաւանական կ'երեւայ թէ կանոնիս Նախնականին աղբիւրն էր Անտիոքայ ժողովոյն յիշեալ կանոնը, սակայն իրեն այժմու ձեւը շատ աւելի ուշ ժամանակէ է: Վասն զի Կանոնս իւր այժմու ձեւն այն ատեն կրնայ առած ըլլալ, երբ “քորեպիսկոպոսք” շատ քիչ անգամ բուն եպիսկոպոս էին, այլ երբ իրենց տեղ “այցելու” կամ տեսուչ կամ յատուկ բառով “պերիոդեւտ” (περιοδευτής) կը դրու-

---

[1] Հմմտ. Hefele, I. 231, 250, 516.

[2] Ինչպէս են Եւսեբիոսի քով (Է, 30) Դիոնեսեայ Աղեքսանդրացւոյ խօսքերը:

[3] Տես Սոփերք, Բ, էջ 71, 81—87.

էին[1], մինչեւ որ վերջապէս Լաւոդիկէի ժողովքն իրեն ԾԷ կանոնաւն բոլորովին արգիլեց գիւղերու մէջ եպիսկոպոսներ դնել, այլ միայն “պերեւտուտ„[2]: Մեր կանոնն այս հրամանէն (ուստի իբր 343—381 Ց. Ք. տարիներէն) ետքը գրուած է, վասն զի այցելուաց վրայ է խօսքը: Թէ արդեամբք “այցելուաց„ վրայ է խօսքը, յայտնի կը տեսնենք կանոնիս վերջին նախադասութենէն, ուր օրինակ կը բերուի թէ նաեւ Սամուէլ “շրջէր տեղի ի տեղւոջէ եւ հրաման տայր:„

“Այցելուաց„ պաշտօնը նաեւ յետնագոյն ժամանակները պահուած կը գտնենք ասորի եկեղեցւոյն մէջ, եւ Եբեդ-Յեսու[3] եկեղեցական նուիրապետութեան մէջ “աւագ-սարկաւագաց„ աստիճանէն ետքը կը դնէ “պերեւտուտք„ եւ ապա “երիցունք·„ ինչպէս կը յիշէ նաեւ “Բուդ„ (պերեւտուտ) ասորի մատենագիրն, որ Գալիլակ եւ Դիմնակ առակաց գիրքը թարգմանած է ասորերէնի: Հայ եկեղեցւոյ մէջ այնչափ հաստատուն պաշտօն մ'եղած չ'երեւար “պերեւտուտն„ կամ “այցելուն„, որ շատ քիչ անգամ յիշատակուած կը գտնենք: Անշուշտ այս ալ է պատճառն, ինչպէս վարը պիտի ըսենք, որ խմբագրիչն այլայլած է այս կանոնն, այնպէս որ անորոշ գոյն մ'առած է: Հայերէն կանոնագիրքն մէկ անգամ միայն գործածած է այս “պերեւտուտ„ բառը “Հարանց հետեւողաց յետ առաքելոց„ կոչուած կանոններուն միոյն մէջ, որ է կան. ԻԲ եւ ըստ կարգի բովանդակ կանոնագրոց՝ ՃԶԲ: Այստեղ կ'ըսուի թէ “գհիմունս եկեղեցւոյ եպիսկոպոսն միայն իշխեսցէ ծրագրել ուղղափառութեամբ, կամ քորեպիսկոպոս կամ պերեւտուտ

---

[1] Hefele, I 344.

[2] Hefele, I 773. Նոյնը նաեւ հայերէն կանոնագրոց մէջ՝ իբրեւ կան. ՃԺԱ համառօտման Նիկիական եւն կանոնաց. (Կանոնագիրք՝ ՑԼԵ:)

[3] Հմմտ. այս անձնուն նկատմամբ Bibl. Or. III 5p. 35 եւ 219 եւ IV 829 եւն:

Հռամանաւ եպիսկոպոսին:„ Մխիթար Գօշ[1] իւր Դատաստանագրոց մէջ առած է այս կանոնը բառ առ բառ, եւ Հարկ տեսած է մեկնել այսպէս. "Գիտելի է զի քորեպիսկոպոսն երկու են, մի՝ ձեռնադրեալն, եւ մի՝ ոչ, (որ) եւ պէրէդուտն է, որ այժմ ասի բուդ:„ Բաստամեան՝ Մխիթարայ Գօշի այս տեղւոյն նկատմամբ դրած ծանօթութեան մէջ կը կարծէ թէ բուդ ժողովրդական լեզուի բառ մըն է, որ իբր թէ ծագած ըլլայ Հայերէն պորէդ բառէն կրճատուելով: Բոլորովին սխալ է այս կարծիքը, վասն զի "բուդ„ ոչ այլ ինչ է բայց եթէ ասորերէն בוד. — այս անուամբ ասորի մատենագիր մ'ալ արդէն քիչ մը յառաջ յիշեցինք:[2] Ուրիշ Հայ գրութեանց մէջ բաւական յաճախ կը յիշուին քորեպիսկոպոսունք՝ ի Հարկէ յետնագոյն ժամանակաց իմաստով. շատ անգամ ալ "տեսուչ„[3] (= σκοπός) կամ լաւ եւս "գաւառի տեսուչ„[4] վերադիրները կը գտնենք գործածուած. (— Մեսրոպեան Հայերէնի մէջ՝ ծանօթ է որ "տեսուչ„ կը նշանակէ նաեւ "եպիսկոպոս„ ուստի = ἐπίσκοπος

---

[1] Մ. Գօշ, Դատաստանագիրք. Հրտ. Վահան Ծ. Վ. Բաստամեան: Վաղարշապատ 1880: Մասն Ա, կան. ԽԵ, էջ 141:

[2] Այս տողերս գրուած էին, երբ ընդունեցանք ուսուցչապետ Ն. Մառի մէկ Հմտալից գրութիւնն այս բուդ բառին վրայ. (Н. Марръ. Имя Бутъ или Будъ: „Зап. вост. отдѣл. имп. русск. археол. общ.“ томъ VII, стр. 322—325.) Այնտեղ ի մէջ բերուած է նաեւ արձանագրութիւն մը Է դարէն որ շատ Հետաքրքրական ըլլալով կը դնենք Հոս: (Ա) "Երեսուն չորրորդ ամի Խոսրովայ արքայի երանելին տէր բուդ Աւուեղեան ձգեաց զՀիմունս սուրբ եկեղեց(ւոյս) երես...„ (Բ) "...ուն եւ ութ ամօյն կորուսին զբուդն եւ յետ երից ամաց բուդն կատարեաց սուրբ եկեղեցիս Աննայ բոդէն ամուսին տրէ ամն[այ]...„ (Գ) "...(մա)րծպանութեան Վարազտիրոցի յԱւուեղեան տերութեան Վահանայ..:„ Ուսուցչապետին սոյն գրութիւնը կ'արժէ Հայ ընթերցողաց մատչելի ընել թարգմանութեամբ:

[3] Օրինակի Համար՝ Ներսէս Կլայեցի, Թուղթ ընդհանրական. (տես Nerses Glayensis, Epist, past. ed. Venet. p. 86.)

[4] Մ. Գօշ, Դատաստանագիրք, Ա, կան. ԿԳ, էջ 163 եւն:

եւ ոչ σκοπὸς որ է "դէտ։" —) Թերեւս "այցելու" կամ "տեսուչ" իմաստով է նաեւ "Հայեցող" բառն, — եթէ ուղիղ է ընթերցուածն, — զոր կը գտնենք Կաղականտուացւոյ Պատմութեան մէջ, ուր կ'ըսուի թէ "Եւ կարգեալ տեղեաց տեղեաց եպիսկոպոսս եւ երիցունս եւ հայեցողս[1]"։ Սոյն Թադդէի կանոնաց միոյն (Կան. Բ) մէջ յիշուած "տեսուչք," եւ "տեսուչք գաւառաց" ասութեանց վրայ յետոյ առիթ կ'ունենանք խօսելու։

Այն երեք կանոններուն նկատմամբ ցայժմ ըսուածներէն տեսնուեցաւ, որ մեր գրութիւնն այլեւայլ ժամանակաց բարեկարգութեան հետքերը կը կրէ յինքեան, եւ թէ շատ մասերը հաւզիւ Դ դարուն վերջերը կրնան գրուած ըլլալ։ Գրութեանս վերջնական յօրինման ժամանակին նկատմամբ մեր այս հանած հետեւութիւնը կը հաստատեն շատ մ'ուրիշ կանոններ ալ, որոնցմէ ոմանք պէտք ենք հոս տեսնել, որպէս զի աւելի եւս հաստատուի մեր կարծիքը։

Ասորի մատենիս Ը կանոնը կը պատուիրէ որ "քառասնորդական տալ պահս կարգեսցեն . . . յառաջ քան զաւուրն չարչարանաց փրկչին մերոյ եւ ապա արասցեն զաւուրն չարչարանաց . . եւ տաւն յարութեան Փրկչին։" Արդ այս կանոնը՝ որ Մեծ պահքը 40 օր կը դնէ (Աւագ շաբաթն ալ ի միասին հաշուելով) ամէնէն կանուխ Դ դարուն կրնար այս ձեւն առնուլ։ Ֆունք գիտնականն իւր մէկ նոր գրութեան մէջ, որ "Զատկական պահոց զարգացումը" կը քննէ, եւ որ լոյս տեսած է Թիւպինկէնի Աստուածաբանական Եռամսաթերթին մէջ[2], շատ

---

[1] Կաղականտուացի, Պատմութիւն Աղուանից, Ա. գլ. ԺԷ. (Մոսկ. 1860, էջ 38)։

[2] Dr. Funk. Die Entwicklung des Osterfastens: Theologische Quartalschrift (Tübingen) LXXV. Jahrg. (1893), Heft II. pp. 179—225։ Մեծ պահոց նկատմամբ համեմատ նաեւ Hefele, I 94—95, 772 եւ 821 (Յունական Առաք. կան. ԿԹ.) եւ "Սահմ. Առաք.", յաճախ. (Pitra, I 279,

լաւ կը ջրէ այն գիտնոց կարծիքն որ Մեծ պահոց քառասուն օրը ըլլալը շատ հին կը համարին ։ Կը ցուցընէ գիտնականն որ Մեծ պահոց նկատմամբ մեզի հասած ամենահին տեղեկութիւնքն իբր երկու օր միայն կը յիշեն . այսպէս Իրենէոս իւր առ Վիկտոր քահանայապետ (189—199) գրած թղթին մէջ, զոր ըստ մասին պահած է Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Ե. գլ. իդ, 11—18.) այսպէս նաեւ Տերտուղիանոս (De ieiun. 2. 13. 14.) որուն խօսքերէն թերեւս կրնայ հետեւիլ որ արդէն սկսուած էր՝ առ առաւելն Աւագ շաբթու միւս օրերն ալ պահք պահուիլ, որ բաւական ընդհանրացած էր Գ դարու կէսերն՝ ինչպէս կը վկայեն “Առաքելական Վարդ.„ (Didascalia) գրութիւնն եւ Դիոնիսիոս Մեծ Աղեքսանդրացի, որ մեռած է 264 թուին ։ Այս թուէն վերջն ուրեմն հետ զհետէ աճելով պահոց օրերու թիւն՝ արդէն 40 օրուան հասած կը գտնենք Դ դարուն մէջ ըստ վկայութեան Նիկիոյ ժողովին (կան. Ե), Անտիոքայ 241ի (կան. Ի) եւ Լաւոդիկէի ժողովոց (կան. ԽԹ—ԾԴ) եւ շատ մը Ս. Հարց, ինչպէս Կիւրղի Երուսաղէմացւոյ (Ճառ Դ, 3 եւն եւն.) Ամէնէն կանուխ ուրեմն Դ դարէն կրնայ ըլլալ մեր ասոր կանոնը, որ անշուշտ եօթն շաբաթ կ'ենթադրէ Մեծ պահքն՝ ի միասին հաշուելով նաեւ Աւագ շաբաթը ։[1]

---

298, 360, 421, 422, 440 եւն.) Հմմտ. նաեւ Hergenröther, III, Per. I, § 213.

[1] Փունք (անդ, էջ 210 եւն) միտ դնել կու տայ որ Դ դարուն Մեծ պահքը Վեց շաբաթ էր, եւ այն վեցերորդն էր Աւագ շաբաթն Հռոմէական եկեղեցւոյն եւ Լիւբիկէի, Յունաստանի եւ Եգիպտոսի եկեղեցեաց մէջ՝ ըստ Սոկրատայ (Պատմ. Եկեղ. Ե, գլ. իբ). նաեւ ի Պաղեստին ըստ Սոզոմենեայ (Պատմ. Եկեղ. Է, գլ. ժթ.) իսկ միւս եկեղեցեաց մէջ՝ Կ. Պոլսէն մինչեւ Փիւնիկէ՝ եօթն շաբաթ էր պահքն, վասն զի Աւագ շաբաթը չէին հաշուեր Մեծ պահոց վեց շաբաթներուն մէջ ։ Բայց պահոց օրերու թիւը հաւասար էր ։ Վասն զի արեւմուտք վեց շաբաթը կը պահէին ամբողջ՝ միայն կիւրակէն չպահելով, (ուստի 6×6=36 օր.) իսկ արեւելք եօթն շաբաթ էր, բայց նաեւ շաբաթն

Աւելի ուշ են ուրիշ կանոնները։ Արդէն Ի կանոնն որուն վրայ այժմ խօսեցանք, ցուցուց որ մեր կանոնաց ոմանց աղբիւրն է Գանգրիկէի ժողովքն, ուստի թէ սոնք իբր 343—381 տարիներէն ետքը գրուած ըլլալու են։ Նոյն արդիւնքը ցոյց կու տան նաեւ այլ կանոնք, օրինակի համար կանոն Ե, որ ուրիշ տեսակէտէ ալ նշանաւոր է՝ գլխաւորաբար հայերէն թարգմանութեան արժէքին համար։ Այս կանոնը կը պատուիրէ. "Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ որ շաբաթն եղիցի տօն եւ պաշտօն ընդ ամենայն տիեզերս, եւ եղիցի յիշատակ ամենայն մարտիրոսաց. պատարագ մատուցեն ի նմա քահանայքն եւ ուրախութեամբ սաղմոս ասասցեն. վասն զի կարապետ է մեծի արքային գալստեան, պարտ է ամենայն որբոցն ուրախ լինել ընդ առաջ Քրիստոսի։" Այստեղ նախ մտադիր ընել կու տանք որ այս նշանաւոր կանոնը միայն հայերէն թարգմանութիւնն ունի, եւ թէ սուրբ երեք ձեռագրաց մէջն ալ կը պակսի։ Սակայն անտարակուսելի է որ կանոնս հարազատ է, այսինքն թէ հայ թարգմանիչն իրեն առջեւն ունեցած սուրբ ձեռագրին մէջ արդեամբք գտած էր զայս ու թարգմանած, թէեւ քանի մը մանր փոփոխութիւններ կրնայ կրած ըլլալ երկրորդ հայ խմբագրողէն։

Պէտք է միտ դնել որ այս կանոնիս մէջ խնդիրն ընդհանրապէս մարտիրոսաց յիշատակը կատարելու վրայ չէ, — այս վերջինս յատկապէս նիւթ է ԻԷ կանոնին. — այլ կարեւորն հոս այն է որ կը հրամայուի թէ շաբաթ օրն ըլլայ տօն, եւ "պաշտաւն" կատարուի եւ "յիշատակ մարտիրոսաց։" Ծանօթ է արդ որ շաբաթ օրն իբրեւ օր ստեղծման աշխարհի տօնական համարիլն եւ իբրեւ տօն

---

պահք չէր պահուեր՝ ի բաց առեալ աւագ շաբաթ օրը, որով կ'ըլլար 7×5+1=36 օր։ Յետոյ 40 օրն ամբողջացընելու համար աւելցան պահոց քանի մ'օրեր ալ։

խմբելը գոնէ Դ դարու վերջին կէսին շատ տեղեր սովորական եղած էր, զոր եւ կը յիշեն նոյն ժամանակի անվաւեր գրութիւնք, ինչպէս ի մասնաւորի “Սահմանադրութիւնք Առաքելոց։„[1] Իբրեւ այսպիսի տօնական օր՝ ի հարկէ շաբաթ օրն ալ “պաշտօն„ պէտք էր մատչիլ։ Արդեամբք ալ Լաւոդիկէի ժողովքն՝ որ այլուստ շատ զգոյշ էր թէ մի գուցէ շաբաթ օրուան տօնը հրէացման առիթ տայ, պէտք տեսաւ վճռել իրեն ԺԶ կանոնին մէջ թէ “Զաւետարանն հանդերձ այլովք գրովք արժան է կարդալ շբթ օր։[2]„ Այս կանոնիս իմաստն՝ ինչպէս քննիչք կը միաբանին, է այն որ նաեւ շաբաթ օրն Աստուածաշունչ մատեանք հրապարակաւ կարդացուին եկեղեցւոյ մէջ, ուստի հանդիսական աստուածային պաշտօն մատուցուի։ Այս մեկնութեանս նեցուկն է նոյն ժողովքին ուրիշ կանոն մ'ալ (կան. ԽԹ), որ կը հրատարակէ թէ “Չէ պատշաճ ի Քառասնորդսն հաց մատուցանել (ἄρτον προσφέρειν), բայց եթէ ի շբթու եւ կիրակէի։„[3] Առաւել մեկնութեան համար ըսելու է որ կանոնս՝ որ ընդունուած է նաեւ Տրուլլեան ժողովոյն կանոնաց մէջ (ԾԲ), կը պատուիրէ որ Մեծ պահոց լուր օրերը չմատուցուի լիակատար պատարագ, այլ միայն “Նախասրբելոց„ կոչուածն, ինչպէս սովորութիւն է ցայժմ իսկ յունական եկեղեցւոյ մէջ։ Շաբաթ օրը կրնար մատուցուիլ պատարագ իբրեւ տօնական օր։ Վերջապէս նաեւ այն թէ Մեծ պահոց միայն շաբաթ օրերը ներեալ է մարտիրոսաց յիշատակն ալ տօնել, ինչպէս կը գրէ “Վարդապետութիւն Առաքելոց,„ հրամայած է դարձեալ սոյն ժողովս իւր ԾԱ կանոնին մէջ, որ է. “Չէ մարթ եւ պատշաճ ի Քա-

---

[1] Հմմտ. Pitra I, 67—68, 181, 209, 361, 370, 420 եւն։ Տես նաեւ Hergenröther, III Per. I § 212 եւ Per. II § 261.

[2] Hefele, I 762, ուր կայ նաեւ մեկնութիւնը։

[3] Hefele, I 772, եւ մեկնութիւն։

ուանորդան զմարտիրոսացն ծնունդս (γενέθλια) եւ տաւնս առնել, այլ զուրբ Մարտիրոսաց զյիշատակ կատարել ի շաբաթու եւ կիւրակէի,„[1] — եւ այս սովորութիւնը մնացած է Հայ եկեղեցւոյ մէջ ցայսօր[2], թէեւ կիւրակի օր մարտիրոսաց տօն չենք տօներ: Այլ եւս տարակոյս չի մնար որ "Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեանս Ե կանոնը ոչ այլ ինչ է, բայց հետեւողութիւն Լաւոդիկէի ժողովոյն յիշեալ կանոնաց, ուստի առնց յօրինմանէն (343—381 Ց. Ք.) ետքը միայն կրնայ գրուած ըլլալ:

Բայց ի՞նչ պատճառաւ արդեօք ասորի բնագրին մէջ կը պակսի այս կանոնը զոր միայն հայը պահած է: Ըստ իս ասոր պատասխանը դիւրին է: Կանոնիս նիւթն այնպիսի է որ դիւրաւ կրնար հրէացման առիթ տալ: Շաբաթ օրն իբրեւ տօնական օր նկատելէն մինչեւ նոյն օրը Հրէից հետ իբրեւ կիւրակէ սուրբ պահելը՝ քայլ մը միայն կար: Եւ վտանգն էր այնչափ առաւել՝ որ շատ տեղեր կային արդեամբք նաեւ Դ դարուն վերջերը քրիստոնեայք, որ մէտ էին շաբաթը հրէաբար պահելու, եւ այս այնչափ որ նոյն Լաւոդիկէի ժողովքն պէտք տեսած է այս պատահականութեան առջեւն առնուլ իւր ԻԹ կանոնաւը հրամայելով[3]: "Չէ արժան քրիստոնէից զՀրէից վարս ունել (ἰουδαΐζειν) եւ բանդագուշել եւ դատարկացուցանել (σχολάζειν) զաւր շաբաթուն, այլ գործել արժան է. բայց զաւր կիրակէին պատուել արժան է, եւ հանգչել արժան է որպէս քրիստոնեայք. ապա թէ գտցի ոք հրէաբար, նզովեալ եղիցի ի Քրիստոսէ:„ Շատ հաւա-

---

[1] Hefele I 772.

[2] Օձնեցւոյ (Հրատ. Աւգերեան, էջ 38) եւ Մանդակունւոյ կան. Ա կտորները, որ նմանողութիւն են մեր Ե կանոնին, վարը պիտի յիշենք: Համմտ. նաեւ կանոն Եփրեմի Ե (կանոնագիրք՝ ՊԻԷ, ՑԻԵ եւ ՑԻԸ:)

[3] Hefele, I 767. Համմտ. կանոն ԿԶ յունական Առաքելական կանոնաց՝ Hefele, I. 820.

նական է որ մեր Ե կանոնին նիւթն արդէն շատ կանուխ ժամանակները կասկածելի երեւցած ըլլայ տօրի գրչի մը, վասն զի հրէացման ախտ կրնար տալ, եւ վասն զի թերեւս տօրի գրչին տեղը պակաս չէին հրէամիտք։ (Հմմտ. ԺԶ եւ ԺԷ կանոնները, որոնց վրայ վերը խօսեցանք։) Ասով դիւրաւ կրնայ մեկնուիլ որ մեր ձեռքն եղած երեք տօրի ձեռագիրք չունին այս կանոնը, մինչ Հայ խմբագրիչն՝ որ այսպիսի վտանգ մը կ'երեւայ թէ չէր ճանչնար իրեն հայրենակցաց համար, պէտք չէ տեսած դուրս թողուլ զայն։ Բայց այս խորհրդութենէս, եթէ ուղիղ է մեր կարծիքը, կը հետեւի նախ թէ Հայ թարգմանիչն այնպիսի տօրի բնագիր մ'ունէր իւր առջեւն, որ յիշեալ 381 Ց. Ք. տարիէն շատ եաքը չէր գրուած, եւ որուն մէջ դեռ պահուած էր այս կարեւոր կանոնը. մինչդեռ տօրի ձեռագիրը՝ զոր Գիւրըթօն հրատարակեց եւ որ նոյն հինգերորդ դարուն վերջերը գրուած է, չէ գտած այս կանոնն իւր նախագաղափար օրինակին մէջ։ Երկրորդ հետեւութիւնն այն է որ Հայն ունի աւելի կտորներ, որ ստուգիւ հին եւ հարազատ են. — եւ այս երկրորդ կէտս այնչափ աւելի արժէք ունի, որչափ որ Հայոյն մէջ բազմաթիւ յետոյ ստմուտ ընդմիջարկութիւններ գտնելով՝ մեր աչքին առջեւ իւր արժէքը կրնար շատ նուազիլ։

Որովհետեւ այս քանի մը կանոնաց քննութիւնը ցոյց տուաւ որ մեր կանոնաց էական աղբիւրներէն է Լաւոդիկէի ժողովոյն կանոնադրութիւնը, եւ որովհետեւ այս կէտն էական կէտ մըն է գրութեանս յօրինման ժամանակին համար, հարկ կը համարինք քանի մ'ուրիշ մասեր ալ յիշել, որոնց աղբիւրը նոյնպէս յիշեալ ժողովն եղած կ'երեւայ։

"Վարդապետութեան Առաքելոց„ Դ կանոնն ըստ Հայ թարգմանութեան կը հրամայէ որ նոյն օրն ըլլայ "ի պահս, ի սուգ եւ ի տրտմութիւն,„ եւ յատկապէս՝ թէ "պահեալ լիցի մինչեւ ցիններորդ

ժամու։„ Թէ՛ այս եւ թէ՛ նախընթաց Գ. կանոնն ասորւոյն մէջ էապէս տարբեր են, վասն զի այնտեղ՝ թէեւ կը հասկցուի պահոց պատուէրը, բայց բուն հրաման ա՛յլ ինչ է։ Ասորին կը պատուիրէ որ ինչպէս չորեքշաբթի՝ նոյնպէս նաեւ ուրբաթ օրը "Եղիցի պաշտօն յիններորդ ժամու։„ Ուստի հայը պահք կ'ըսէ մինչեւ իններորդ ժամն, ասորին իններորդ ժամուն պատարագ մատուցուիլ կը հրամայէ։ Այստեղ տարբերութիւնը շատ մեծ է եւ հնագոյնն է ասորւոյն ընթերցուածը։ Արդ այս ժամն իննին պաշտօն ընելու հրամանն առնուած է Գլաւոդիկէի ժողովոյն վճիռներէն, որ իւր ԺԸ. կանոնին մէջ կը հրամայէ. "Զպաշտաւն աղաւթիցն եւ յիններորդ ժամու եւ յերեկորին արժան է կատարել։[1]„ Բայց նաեւ հայոյն գրածը թէ մինչեւ իններորդ ժամ պահք պահուի, համեմատ է հնութեան, (— թէեւ այս խնդիրն այժմ կապ չունի մեր նիւթոյն հետ.) — վասն զի նաեւ Ս. Ոսկեբերան կը յիշէ զայն։

"Քաղդէացւոց„ եւ "քաղդէութեան„ վրայ խօսած ժամանակնիս յիշեցինք[2] կանոն ԺԵ (Ասոր. ԺԲ) կանոնը, որ կը պատժէր զայն՝ "որ երթայ առ կախարդս եւ հարցուկս եւ Քաւդեայս եւ վհուկս, եւ հաւատայ բախտից, ծննդոց եւ աստեղագիտութեանց։„ Այս կանոնիս բնիկ ասորական նկարագիր մ'առած ըլլալը խմբագրին ձեռօք եւ Քաղդէացւոց յիշատակութեան նշանակութիւնը երկար բացատրեցինք։ Սակայն հոս կրնայ խնդիր ըլլալ թէ ինչ կանոն առջեւն ունէր նախնաբար ասորի մատենագիրը։ Կախարդութեան դէմ շատ վճիռներ կը գտնենք թէ՛ անվաւերական

---

[1] Hefele I 763 եւ մեկնութիւն։ Հայերէն թարգմանութիւնը (Կանոնագիրք՝ ՁԿԲ) քիչ մ'ազատ է՝ գրելով "Զպաշտաւն աղօթիցն յամենայն ժամ եւ յերեկորին„ եւն։

[2] Տես վերը՝ էջ 26—27։

գրութեանց[1] եւ թէ Ս. Հարց քով:[2] Սակայն առնցմէ եւ ոչ մին այնչափ նման է մեր կանոնին, (— աննման է նաեւ Անկիւրիոյ 314ին գումարեալ ժողովոյ ԻԴ կանոնին վճիռը,[3]) — որչափ Լաւոդիկէի ժողովոյն ԼԶ կանոնը, որ կը պատուիրէ[4]. "Ոչ է մարթ քահանայից եւ ուխտաւորաց (ἱερατικοὺς ἢ κληρικοὺς) մոգս եւ թովիչս եւ գիւթս (μαθηματικοὺς) եւ վհուկս (ἀστρολόγους) լինել կամ առնել, կամ հմայեալս եւ պահապանս (յոյնը լոկ φυλακτήρια), որ ճշմարտութեամբ չեն պահապանք, այլ կապանք հոգւոց նոցին: Եւ որ այսպիսի ինչ գտցին յանձին ունել, արտաքս քան զեկեղեցի ընկեսցին:" Այս կանոնն է կարծենք աղբիւր "Վարդապետութեան Առաքելոց:" Սակայն երկուքին համեմատութիւնը կը ցուցնէ թէ շատ տարբերութիւն կայ երկուքին խմբագրութեան մէջ: Օրինակի համար ասորին՝ ինչպէս նաեւ Լաբուբնա՝ որ կը յիշէ ասորւոյն այս կանոնը, չի գիտեր "հմայեալ"ներու գործածութիւնը, մինչդեռ ասորւոյն մէջ աւելի սաստկութեամբ յիշուած են ծննդոց, ճակատագրի, եւ աստեղահմայութեան սնոտիապաշտութիւնք:

Ուրիշ այսպիսի մանր կէտերու վրայ երկար զբաղիլ աւելորդ կը համարինք: Անտարակուսելի է արդէն որ "Վարդապետութեան Առաքելոց" ասորի մատենագիրն առջեւն ունեցած է Լաւոդիկէի ժո-

---

[1] Հմմտ. "Սահմանադրութիւնք Առաքելոց" Բ. 56 (Pitra I 214) ուր կը յիշուին ի միջի այլոց "երազափորձք, թռչնահմայք, մեռելահարցք." — Նոյնպէս "Յաղագս Խորհրդական Պաշտաման" (Pitra, I 66) կը դատապարտէ նաեւ պազանագիւթ, հաւադէտ, նշանախօսի եւն անձինք: Այսպիսեաց յիշատակութիւն չունի ասորին:

[2] Օրինակի համար՝ Ս. Բարսեղ առ Ամփիլոքիոս (Pitra I 600). Գրիգ. Նիւսացի (Pitra I 622) եւն եւն:

[3] Hefele I 241 եւ մեկնութիւն: Այս կանոնը կախարդաց 5 տարի ապաշխարանք կը սահմանէ: Հմմտ. նաեւ կան. Զ. Եղուիրայի (Hefele I 158) որ կախարդանօք մարդ սպանելու վրայ է:

[4] Տես Hefele I 770.

ղովոյն որոշումներն։ Այս կէտը ժամանակագրական կռուան մըն է գրութեանս տարին որոշելու։ Դժբախտաբար այս ժողովոյն գումարման ժամանակը միայն յընդհանուրն գիտենք, բայց ոչ նաեւ որոշ տարին։ Հէֆէլէ գիտնականն իւր նշանաւոր գրոց մէջ մանրամասն խօսելով[1] գիտնոց այս ժողովոյս ժամանակին նկատմամբ յայտնած կարծեաց, չի համարձակիր որոշ տարի մ'ընդունիլ, այլ շատ մը գիտնոց հետ կը դնէ ընդհանրապէս 343—381 Յ. Ք. տարիները, այսինքն՝ Սարդիկեայ (343 Յ. Ք.) ժողովքէն ետքն եւ Երկրորդ տիեզերական ժողովքէն (381 Յ. Ք.) յառաջ, ինչպէս կը վկայեն հնագոյն ժողովոց վճռոց հաւաքմունք եւ հին հեղինակք. եւ կը յիշէ որ Տրուղղեան երկրորդ կանոնը սոյն ժողովն Երկրորդ տիեզերական ժողովէն անմիջապէս յառաջ կը դնէ, որով իբր 360—381 տարեաց մէջ։ Յիշեալ գիտնականն որոշ տարի մը նշանակելէն հրաժարելով հանդերձ՝ կը հաստատէ որ ժողովոյն կանոնաց բովանդակութիւնը յայտնապէս Դ. դարու վերջին կիսուն եւ ոչ թէ առաջնոյն կը վերաբերի։ Սոյն ժողովոյն հայերէն թարգմանութեան սկիզբը կայ ծանօթութիւն մ'որ թէեւ որոշ տարի մը չի ցուցըներ, բայց գոնէ հետաքրքրական է։ Այս ծանօթութիւնն է հետեւեալը. “Յետ այսորիկ զաւրանայր Աւստացւոց (= Աւդիացւոց) հերձուածն որ Չորեքտասաներորդն կոչին, որ բազմաց այլայլութիւնս դաւանէին ի լլկանս եկեղեցւոյ. վասն որոյ ժողովեալ ի Լաւոդիկա Փռիւգացւոց եպիսկոպոսք ԻԵ, որք ժողովեալ ի Պատկանիանէս (= Պակատանիա) ի պէսպէս իշխանութենէ յԱրիանոսաց Ջնջումն, առնէին նոցա խիթմանց լուծումն։„ Այս ծանօթութիւնը հայն մասամբ ընդարձակելով եւ մասամբ համառօտելով յօրինած է յունարէն այն համառօտ տեղեկութե-

[1] Hefele, I 716—750.

նէն, որ կանոնաց սկիզբը կը գտնուի[1]։ Ըստ Հայոյն՝ ժողովոյն պատճառն եղած են Չորեքտասաներորդք (Quartodecimani) եւ տանց մէջ ի մասնաւորի "Աւդիանեանք." բայց տանց վրայ ամենեւին խօսք չկայ կանոնացս մէջ։

Բայց այս ընդհանուր ժամանակը (343—381) կրնանք քիչ մ'աւելի ամփոփել։ Առ այս կռուան մ'ունինք մեզի "Վարդապետութեան Առաքելոց" ԻԷ կանոնը (Աստ. ԺԸ։) Այս կանոնը կը պատուիրէ թէ "Եթէ ոք ելանիցէ յաշխարհէ ճշմարիտ վախճանաւ եւ կամ խողխողեալ յանաւրինաց՝ վկայ հաւատարիմ վասն անուան Փրկչին, խոստովանելով զՔրիստոս ի նեղութիւնն՝ որ վասն անուան նորա լինին, տօնեսցէն զյիշատակս նոցա յաւուր մահուան նոցա։" Կանոնս հարկ տեսած է ուրեմն մարտիրոսաց յիշատակը տօնելու հրաման տալ։ Եկեղեցական ամենահին յիշատակարանք, գրութիւնք Ս. Հարց եւ նաեւ անվաւեր գրութիւնք կը վկայեն որ այսպիսի յիշատակները կը տօնուէին միշտ։ Բայց այն որ Դ դարու վերջերն մասնաւոր հրաման մ'առ այս տօնիլ հարկ տեսնուած է, (— եկեղեցւոյ ծանօթ հնագոյն ժողովներն այսպիսի պատուէր մ'որոշ սահմանելու պէտք չեն տեսած, —) ունենալու է յատուկ պատճառ մը։ Եւ այս պատճառը դիւրին է գտնել։ Այս միջոցներն արդէն ծագած էին Եւստաթեանք, որոնց գլուխն եղաւ Եւստաթիոս եպիսկոպոս Սեբաստիոյ Հայոց, որ Կիսարիանոսաց գլուխներէն մին էր, եւ շատ մեծ ազդեցութիւն

---

[1] Տես Pitra I 494։ Յունարէնն ալ Σύνοδος ἡ κατὰ Λαοδικείαν τῆς Φρυγίας Καπατιανῆς (Ժողով ի Լաւոդիկէ Փռիւգիոյ Կապատիանոյ) կ'ընթեռնու։ Սակայն Փիթրա կ'ընտրէ Դիոնեսիոսի ուղղագոյն ընթերցուածն "Պակատիանոյ" (Phrygia Pacatiana)։ Հայը սխալմամբ "Պատկանիանէս" կ'ըսէ՝ պահելով նաեւ յունական -ῆς հոլովանիշ մասնիկը։ — Այս Լաւոդիկէն որ նաեւ Laodicea ad Lycum կը կոչուէր, պէտք չէ շփոթել այն Լաւոդիկէին հետ՝ որ Ասորւոց աշխարհին մէջն էր, — դիտել կու տայ Հէֆէլէ։ (I 746, n. 1.)

ունեցած է Հռոմէական պետութեան ներքեւ եղող Հայոց աշխարհին վրայ։ Ըստ Սոկրատայ եւ Սոզոմենեայ[1]՝ խստակեաց էր Եւստաթիոս եւ Փոքուն Ասիոյ եւ Հայոց աշխարհին մէջ մտցուցած էր վանականութիւնը։ Եւստաթեանք կը խոտէին ամուսնութիւնը, մսեղէն կերակուր ուտելը, ամուսնացեալ քահանայից պատարագէն կը խորշէին եւն. բայց նաեւ ի մասնաւորի կ'արհամարհէին ի պատիւ Մարտիրոսաց եղած պաշտամունքն եւ անոնց մասնակցողները, ինչպէս կը յիշէ Գանգրայ ժողովոյն սինհոդոսական թուղթն առ եպիսկոպոսունս Հայոց[2]։ Ասոնց դէմ գումարուեցաւ Գանգրայ ժողովը, որ 20 կանոն դրաւ։ Այս կանոններուն վերջինը (կան. Ի) կը վճռէ.[3] "Եթէ ոք ամբարտաւանութեամբ հպարտանօք խոտիցէ զկցուրդս մարտիրոսաց (τὰς συνάξεις τῶν μαρτύρων) կամ զատուածեղէն պաշտամունսն ի նոսա եւ զյիշատակս նոցին, նզովեալ եղիցի։" Այս կանոնն ուրեմն, — զոր դրինք նոր թարգմանութեամբ յունական բնագրէն, վասն զի հայերէն կանոնագրոց մէջ եղած թարգմանութիւնն անճանաչելի ըլլալու չափ փոխուած է[4], — յայտնապէս կը ցուցընէ "Վարդապետութեան Առաքելոց" յիշեալ կանոնին աղբիւրը, որով կ'ունենանք կռուան մ'ալ ընդունելու թէ սոյն ժողովքէն (իբր 360—380) վերջն է խմբագրած ասորի մատենագիրը։

---

[1] Սոկրատ, Պատմ. Եկեղ. Բ, 43. Սոզոմենոս, Գ. 14։ Տես այս ամէնուն նկատմամբ Hefele I 675, 744, 789—91 եւն։

[2] Տես ի միջի այլոց Pitra I 487 ff. Hefele I 777—80. Հայերէն կանոնագրոց մէջ թէ այս թուղթն եւ թէ բուն կանոնները շատ փոփոխութիւն կրած են։

[3] Hefele I 788 եւ մեկնութիւնը

[4] Հայերէնն է այսպէս. "Եթէ ոք երթիցէ ի ժողովս մարտիրոսաց՝ զգոյշ եւ պատրաստ լիցի սրբութեան յորդորման պաշտաման խոնարհութեան աղաւթից. զի մեծ վարձս առցէ. ապա եթէ ոք երթիցէ ամբարտաւանութեամբ հպարտանաւք ի ցոյցս տեսողաց եւ դիտել զնմանիս իւր, նզովեալ լիցի։"

Դժբախտաբար նաեւ այս ժողովին որոշ տարին չենք գիտեր։ Հեֆէլէ[1] յառաջ բերելով այլեւայլ կարծիքներն ու անոնց ապացոյցները՝ կը շատանայ 360—380 ընդհանուր թուականաւ։ Գիտնականներէն ոմանք միտ դնել կու տան որ Ս. Բարսեղ իւր նամակաց մէջ (Epist. 226 եւ 251) Եւստաթեայ վրայ տրտնջելուն իսկ ամենեւին չի յիշեր որ Գանգրայ ժողովն դատապարտած է զանի. ուստի ժողովս Ս. Բարսղի այն նամակներէն (— որ գրուած են 376ին Յ. Ք. —) ետքը կը դնեն. մանաւանդ որ ճիշդ 380ին Ս. Պետրոս՝ Բարսղի եղբայրը՝ դրուեցաւ եպիսկոպոս Սեբաստիոյ, որմէ կը հետեւի որ 380էն քիչ յառաջ Գանգրայ ժողովն վար առած է զԵւստաթիոս եւ յաջորդ դրած զՊետրոս։ Ուրիշները նկատելով որ ժողովոյս սինոդական թղթին առաջին ստորագրողն "Եւսեբիոս" է, եւ ընդունելով որ այս Եւսեբիոսն ըլլայ Կեսարիոյ Կապպադովկացւոց եպիսկոպոսը այս միջոցին (362—370 Յ. Ք.) մէջ կը դնեն, եւ ասոր կը համաձայնի նաեւ Սոկրատէս (Բ, 43) որ Կ. Պոլսոյ 360ի ժողովէն ետքը կը դնէ Գանգրա ժողովն։[2]

Կանոնիս բացատրութեան կերպը — "Եթէ ոք եկանիցէ յաշխարհէ ճշմարիտ վախճանաւ եւ կամ խոշխոշեալ յանօրէնաց՝ վկայ հաւատարիմ վասն անուան Փրկչին, խոստովանելով զՔրիստոս՝ ի Նեղութիւնս, որ վասն անուան Նորա լինին." — կը ցուցընէ որ կանոնիս յօրինման ժամանակ դեռ եւս դադրած չէին հալածմունք։ Դժուարաւ կրնար Յուլիանու (360—363) հալածումն հասկցուիլ։ Հաւանականագոյնն է որ այս ակնարկութիւնք Շապհոյ Բ յարուցած կատաղի հալածանաց նկատ-

---

[1] Hefele I 791 ff.

[2] Սոզոմենոս (Դ., 24) Անտիոքայ 341ի ժողովէն յառաջ դնել կ'երեւայ։ Այս կարգն ունին կանոնքս նաեւ մեր կանոնագրոց մէջ՝ Նիոկեսարիոյ կանոններէն (եբր. 314) ետքը եւ Անտիոքայ (341ի) կանոններէն յառաջ։

մամբ են։ Գիտենք որ ամենէն երկար երկրորդ հալածումն տեւեց 40 տարի (իբր 340—380), երբ հազարներով քրիստոնեայք խողխողուեցան։ Այս մարտիրոսաց յիշատակն՝ շատ գեղեցիկ ոճով աւանդած է Մարութաս, եւ որուն մէկ մասին ընտիր հայերէն թարգմանութիւնն ալ ունինք Ե դարու վերջերէն՝ բայց բնիկ մեսրոպեան լեզուաւ։ — Այս վերջին գործին վրայ պիտի խօսինք ուրոյն գրութեամբ։

Այսպէս կամ այնպէս՝ եթէ Լաւոդիկէի ժողովն մեր գրութեան 343—380 տարիները ցուցուց, Գանգրայ ժողովն ալ 360—380 տարիները կը նշանակէ իբր ժամանակ յօրինման։ Իբր այս ժամանակամիջոցը պիտի գտնենք յաջորդ հատուածին մէջ, երբ համեմատենք գրութիւնս Աբգարու թղթին հետ։ Այժմ կը խնդրուի թէ 380 Ց. Ք. տարիէն պէ՞տք ենք յետս մղել, եւ կամ որոշ ըսելու համար՝ ունի՞նք կռուան մ'ընդունելու թէ այս ինչ կամ այն ինչ տարիէն պէտք է որ յառաջ գրուած ըլլան մեր կանոնները, ուստի նշանակել կէտ մ'որմէ ետքը դնել անհնար ըլլայ։

Ասորական Cur. ձեռագիրն Ե դարու վերջերէն է։ Նոյն ժամանակէն է հայերէն թարգմանութեանս երկրորդ խմբագրութիւնը։ Սակայն թարգմանութիւնս արդէն գոյութիւն ունէր ապահովապէս Շահապիվանի (իբր 448) ժողովէն յառաջ, ինչպէս պիտի տեսնենք հետզհետէ, եւ հաւանականագոյնս գործ է Ե դարուն առաջին տասնամեակներն Եդեսիա խաւրուած աշակերտաց։ Սակայն նաեւ այս ժամանակէն մինչեւ վերը նշանակուած տարին (իբր 380—425) մեծ միջոց կայ։ Պէտք ենք ջանալ ամփոփելու այս միջոցը, եւ առ այս ունինք մեծ կռուան մը՝ կանոն Է (Ասոր. Զ։) Ասոր վրայ կ'արժէ քիչ մ'աւելի մանրամասն խօսիլ։

Գրութեանս ամենէն նշանաւոր կանոններէն

մին՝ կանոն. Է՝ կը հրամայէ թէ "Եղիցի տաւն [ծննդեան եւ[1]] յայտնութեան [Տեառն եւ] Փրկչին մերոյ որ է գլուխ եւ սկիզբն տաւնից եկեղեցւոյ, որ օր Զ Յունուարի ամսոյ ըստ յունարէն թուոյ:" Այստեղ ուրեմն կանոնս կը պատուիրէ Յայտնութեան տօնը Յունուար 6ին տօնել, մինչդեռ Ծննդեան տօնի յիշատակութիւն չկայ: Հայոյն "Ծննդեան" աւելցնելը յետագայ խմբագրի փոփոխութիւն է, — որուն պատճառն յայտնի է. — աւելի մեծ փոփոխութիւն մ'եղած է ասորերէն M ձեռագրին մէջ, որուն ընդօրինակողն ըստ յետագայ սովորութեան ասորի եկեղեցւոյ՝ փոխեր է կանոնս այսպէս. "Տօնեսցեն զօր Ծննդեան Տեառն մերոյ ի 25 Դեկտեմբերի," Արդէն Կիւրըթոն[2] շատ լաւ դիտած է որ այս փոփոխութիւնն անտարակոյս ուշ ժամանակ գրող գրչի մը գործքն է, վասն զի կանոնիս խմբագրութեան ժամանակ ասորի եկեղեցին Դեկտեմբեր 25ին չէր տօներ այս տօնը: Բաց աստի ուղիղ ընթերցուածը պահած են հայն եւ Cur., L եւ CA ասորի ձեռագիրք:

Յայտնի է ուրեմն որ կանոնիս խմբագրող ասորին դեռ չէր գիտեր Ծննդեան տօնը, այլ Յայտնութեան տօնը միայն Յունուար 6ին: Ծանօթ է արդէն որ "Արեւելից մէջ, — խօսելով Հերկէնրէօթէր նշանաւոր եկեղեցական պատմագրին հետ[3], — կանուխ ժամանակներէն կը տօնուէր նախնաբար միայն Յայտնութեան տօնը Յունուար 6ին, թէեւ խնդրական է թէ նախ Բասիլիդեա՞նք սկսան տօնել զայս թէ Ուղղափառք: Չորրորդ դարու մէջ նաեւ Արեւմտեան եկեղեցին այս տօնն ընդունեցաւ. աստ փոխարէն Արեւելեանք Արեւմուտքէն առին Ծննդեան տօնը Դեկտեմբեր 25ին. — Արեւ-

[1] Անկիւնաւոր փակագծի մէջ առածը չկայ ասորի բնագրին մէջ եւ յաւելուած է հայ խմբագրին:
[2] Cureton, p. 169—170.
[3] Hergenröther, I, 187, 412 եւն.

մուտք Յայտնութեան (Epiphanie) տօնը չէր խմբուեր իբրեւ տօն ծննդեան, այլ իբրեւ տօն երեւման Տեառն, իբրեւ հեթանոսաց առջեւ յայտնուելուն տօն:» Բարեբախտաբար գիտենք թէ երբ սկսաւ Ծննդեան տօնը մտնել արեւելքի մէջ: Սուրբ Եփրեմ որ 373ին մեռաւ ըստ այժմու սովորական կարծեաց, դեռ չի գիտեր Ծննդեան Դեկ. 25ին տօնը, եւ կը գրէ օրինակի համար Համաբարբառի մեկնութեան մէջ[1] թէ «Աւետարանեցաւ Մարիամու, որ օր տասն էր արէգ (Մարտ) ամսեան» եւ «Ծնաւ նա՝ որ օր վեց էր քաղոց ամսոյ, ըստ յունարէն թուոյ:»[2] Թէեւ դժբախտութեամբ չենք գիտեր հոս թէ ինչ էր ասորի բնագիրը, եւ թէեւ «քաղոց» 6 ըստ Յայսմաւուրաց կը համապատասխանէ Դեկտեմբեր 14ին, — Յունուար 6 ըստ նոյն Յայսմաւուրաց է 29 քաղոցի, — սակայն թէ հոս Յունուար 6 կը հասկցուի՝ չի կրնար տարակուսուիլ: Բայց ի յայտնապէս «օր վեց» ըսելէն՝ յայտնի է նաեւ որ Աւետումը Մարտի կը դնէ Եփրեմ, որմէ կը հետեւի որ «Դեկտ.» չէր կրնար հասկընալ, այլ «օր վեց» Յունուարի: Առ այս վկայ ունինք նաեւ Բար-Սալիբի ասորի մատենագիրը ԺԲ դարու, որ կը խօսի Քրիստոսի ծննդեան թուականին եւ օրուան վրայ, եւ թէեւ ինքը Դեկ. 25 կ'ընդունի իբրեւ ուղղագոյն, սակայն կը յիշէ որ հինք այլազգ կը հաշուէին: Բար-Սալիբի կարդացած է Ս. Եփրեմայ այս տեղը եւ կոչումն կ'ընէ անկէ՝ «ի միում ի ճառից» գրելով: Թէ՛ Ասեմանի եւ թէ՛ անկէ առեալ Գիւրըլթոն, որ Բար-Սալիբի այս կոչումն յառաջ կը բերեն[3], չէին կրնար Ս. Ե-

---

[1] Եփրեմայ Մատենագրութիւնք, Վենետ. 1836. Հատ. Բ, էջ 19:

[2] Այս «ըստ յունարէն թուոյ» բացատրութիւնը համեմատելու է մեր գրութեան մէջ գործածուած նոյն ասութեան հետ: Տես քիչ մը վերը՝ եւ էջ 25:

[3] Assem. Bibl. Or. II, p. 163—164, ուր ուրիշ

փրեմայ կողման բուն տեղը յառաջ բերել, վասն զի Համաբարբառս լոկ հայերէն լեզուաւ մնացած է այժմ, եւ հազիւ 1876ին թարգմանուեցաւ ի լատիներէն։ Բար-Սալիբիի կոչումն այսպէս է. „Ս. Եփրեմ ասէ ի միում ի ճառիցն. ի տասներորդ աւուր յղութիւն նորա, այսինքն՝ Նիսան ամսոյ, եւ ի վեցերորդ աւուր ծնունդ նորա, այսինքն՝ Քանուն երկրորդ (= Յունուար) ամսոյ։„ Բար-Սալիբի շարունակելով կը յիշէ Յակոբայ Եդեսացւոյ, որ Ուռհայի եպիսկոպոս եղաւ 651 Յ. Ք.[1], մէկ նշանաւոր խօսքն այս խնդրոյն նկատմամբ, որ է այսպէս. „Յակոբ Ուռհայեցի ասէ ի թղթին առ Մովսէս Տուր-Աբդինացի. Ոչ ոք գիտէ ճշդիւ զօր ծննդեան Տեառն մերոյ, բայց այս ինչ միայն յայտնի է թէ ծնաւ գիշերի յայնմանէ՝ զոր ասէ Ղուկաս։ Արդարեւ ի կողմանս Արեւելից եւ Հիւսիսոյ մինչեւ ցժամանակս Արկադեայ արքայի եւ Ս. Յովհաննու ի վեցն Յունուար ամսոյ խմբէին զայս տօն, եւ կոչէին զայն Տօն Ծննդեան կամ Յայտնութեան, որպէս յորջորջէ Սուրբն Աստուածաբան ի Ճառին Ծննդեան։ Բայց ի կողմանս Հռոմայ եւ ամենայն Իտալիոյ եւ ի Պաղեստին անդստին ի ժամանակաց առաքելոց մինչեւ յաւուրս մեր ի 25 Դեկտեմբերի կատարի տօն Ծննդեան. եւ զայս կարգ եւ սովորութիւն ճշդագոյն ընկալան ամենայն Արեւելք եւ Հիւսիս, բայց միայն Հայք՝ թանձրամիտք եւ ծանրասիրտք, որ ոչ հաւանին ճշմարտութեան եւ մինչեւ ցայսօր ըստ հնոյ կարգի ի վեցն Յունուարի կատարեն զերկոսին տօնս։„ Վերջին մասը Հայոց հետ վէճերուն արդիւնքն է. — ոչինչ նուազ ծանր խօսքեր կը գտնենք նաեւ Հայոց քով հակառակ սովորութեան հետեւողաց դէմ։

Ըստ այսմ Արեւելք եւ Հիւսիս մինչեւ Ար-

---

դրշի մ'այս խնդրոյ վրայ գրածն ալ յառաջ կը բերուի. Cureton, p. 160—170.

[1] Հմմտ. Ass. B. O. I 468 եւն։

կաղեայ եւ Ոսկեբերանի օրերը չէին գիտեր Դեկ. 25ին տօնել Ծննդեան օրը: Աւելի որոշ եւ հաստատուն վկայութիւն է նոյն իսկ Յովհաննու Ոսկեբերանի հաւանութիւնը: Ոսկեբերան 386 Յ. Ք. Դեկտեմբեր 25ի օրն յԱնտիոք խօսած ճառուին մէջ ("Ճառ ի Ծնունդն Յիսուսի Քրիստոսի"), որ շատ նշանաւոր է Ծննդեան աւուր խնդրոյ նկատմամբ, յայտնապէս կը խոստովանի որ եւ ոչ 10 տարի անցած է այն օրէն, երբ Արեւմուտքէն մուծուեցաւ յԱնտիոք Ծննդեան տօնը Դեկ. 25ին, բայց շատ ալ շուտ տարածուեցաւ[1]: "Եւ ոչ եւս տասն ամք են, կ'ըսէ Ոսկեբերան, յորմէ հետէ յայտնի եւ ծանօթական եղեւ մեզ այս օր: . . . Այսպէս եւ այս (տօն) յայնցանէ՝ որ ընդ արեւմտաբնակեն, անդստին ի սկզբանէ ծանուցեալ, եկ առ մեզ բերեալ ոչ յառաջ քան զբազում ամս, այնպէս աճեաց վաղվաղակի եւ պտուղ զայնպիսի եբեր, որպիսի այժմս է տեսանել" ևն[2]. Եւ կը յիշէ որ

---

[1] Սոյնը կը յիշէ Assem. Bibl. Or. III, p. 87. Hergenröther III, Per. I, § 213: Ծննդեան տօնը, կ'ըսէ վերջին գիտնականս, Հռոմի մէջ՝ ըստ Ամբրոսիոսի (Ambros. De Virgin. III, 1) ապահովապէս կը տօնուէր Լիբերիոս քահանայապետի (352—366) ատեն, մանաւանդ թէ շատ աւելի կանուխ ժամանակներէն ըստ հին աւանդութեան: (August. Trin. IV, 5., Const. Ap. V. 13.) Սակայն այս վերջին գրութեանս՝ "Սահմանադրութեան Առաքելոց,"՝ վկայութիւնն հնութիւն չունի, վասն զի ըստ նորագոյն քննութեանց Դ դարու վերջերն առած է այս ձեւն: Այս անվաւերականը Ծննդեան տօնն արդէն Դեկ. 25 ին օրը դնելով՝ (Const. Ap. V, 13 = Pitra, I 278) "Վարդապետութիւն Առաքելոցը գրութենէս ետքը խմբագրուած է: — Յայտնութեան տօնը կը յիշեն նաեւ "Յաղագս Խորհրդական Պաշտամանն" (Pitra I 68) եւ Սահմանադրութիւնք Առաքելոց՝ յաճախ (Pitra I 422 etc.) եւ այլ գրութիւնք:

[2] Joan. Chrysostomi Opera omnia, ed. Bern de Montfaucon, Parisiis 1718. Tom. II, p. 355. (Homilia in Servatoris nostri Jesu Christi Natalem.) *Καί τοιγε οὔπω δέκατόν ἐστιν ἔτος, ἐξ οὗ δήλη καὶ γνώριμος ἡμῖν αὕτη ἡ ἡμέρα γεγένηται... Οὕτω καὶ αὕτη, παρὰ μὲν τοῖς τὴν ἑσπέραν οἰκοῦσιν ἄνωθεν γνωριζομένη, πρὸς ἡμᾶς δὲ κομισθεῖσα νῦν καὶ οὐ πρὸ πολλῶν*

եկեղեցին լի էր այն օրը հաւատացելովք։ Շատ բացայայտ է ուրեմն որ “Վարդապետութեան Առաքելոց„ տորի խմբագիրը վերոյիշեալ կանոնն ապահովապէս 386էն յառաջ գրած է, եւ այն բաւական յառաջ, վասն զի ըստ Ոսկեբերանի շուտով տարածուեցաւ այս տօնս Ասորւոց մէջ, իսկ մեր հեղինակը դեռ չի գիտեր այսպիսի բան մը։ Ուստի եթէ ընդունինք իբր 380 տարին, կը տեսնենք որ կը նոյնանայ այս թիւն անոր հետ, զոր գտանք Ղաւոդիկէի եւ Գանգրայ ժողովոց ժամանակին քննութեամբ (360—380)։ “Վարդապետութիւն Առաքելոց„ ապահովապէս պէտք ենք այժմ 360—386 տարեաց մէջ գրուած ընդունիլ, եւ մերձաւոր հաշուով՝ իբր 380ին։

Վերն յիշեցինք որ M ձեռագիրը փոխած է այս կանոնը. յիշեցինք նոյնպէս Բար-Սալիբիի Հայոց դէմ ըրած ակնարկութիւնն, վասն զի միայն Հայք չընդունեցան այս տօնը, կամ ճիշդ եւս՝ ընդունելով Ծննդեան տօնը միացուցին յետոյ զայն Յայտնութեան տօնին հետ։ Այս տօնիս օրուան խնդիրը — որ ըստ ինքեան բարեկարգական խնդիր մըն էր, — յետոյ ամենամեծ վէճերէն մին եղաւ Յունաց եւ Ասորւոց մէկ կողմանէ եւ Հայոց մէջ միւս կողմանէ։ Քիչ հայերէն գիրք կայ այն ժամանակներէն, որուն մէջ առաջին քայլին իսկ չհանդիպինք այս վիճման հետքերուն[1], եւ կանոնական որոշմունք յաճախ կը պնդեն այս կէտիս վրայ՝

---

ἐτῶν, ἀθρόον οὔτως ἀνέδραμε, καὶ τοσοῦτον ἤνεγκε τὸν καρπὸν, ὅσον πέρ ἐστι νῦν ὁρᾷν κτλ.

[1] Համմտ. ի միջի այլոց Յովհ. Օձնեցի, (տպ. Վենետ.) էջ 30—34. Ստեփ. Սիւնեցի, Պատմ. գլ. կը. Կաղականտուացի, Պատմ. Գ, գլ. ժդ. Գր. Տաթեւացի, (տպ. Կ. Պոլիս 1729) էջ 482—484, 651 եւն։ Կանոն “Մանդակունւոյ„ Ը (Կանոնագիրք ՈՃԽԲ) “Եւ որ Ծնունդ առնեն յառաջ քան զՅայտնութիւնն՝ չէ արժան, զի սուտ է. զի Ծնունդ եւ Յայտնութիւն մի են, եւ յայտ յընթերցուածոյն է որ ասէ. Յիսուսի Քրիստոսի Ծնունդն էր այսպէս։„ Չենք յիշեր կրօնական անհամար վիճական գրութիւնները։

յենլով գրեթէ միշտ այն կարծեաց վրայ թէ Առաքեալք ինքնին այսպէս սահմանած են. — այս կարծեաց կռուանն ի հարկէ եղած է մեր “Վարդապետութիւն Առաքելոց։„ Օրինակի համար Կարնոյ ժողովոյն Ա կանոնը (— որուն այս մասին աղբիւրն է մեր “Վարդապետութիւն Առաքելոց„ —) կը վճռէ. “Վասն մեծի Յայտնութեանն՝ զոր չորքեցին առաքեալքն ի Հոգւոյն սրբոյ ի Յունուարի Զ.ն կատարել մեծ առաւելութեամբ ի փառս Աստուծոյ։ Արդ եթէ ոք . . . այլազգ խորհիցի եւ արտաքոյ առաքելական կանոնաց զոր ունիմք ի ի Դեկտ. ԻԵ ծնունդ առնեն„ եւն. (Հմմտ. Նաեւ Կան. Դ։) Այսպէս նաեւ “Երանելոյն Գրիգորի Աստուածաբանի Նաժիանձու եպիսկոպոսին„ կեղծ տիտղոսը կրող կանոններուն մէջ կ'ըսուի[1]. “Այլ փոփոխել կամելով զառաքելականն ծննդեան յերկուս որոշելով, այլ Ծննդեանն եւ այլ Յայտնութեանն. անհաւանք մնացեալ առաքելականք կանոնական սահմանացն զոր գրով դաւանեալ ունի եկեղեցի, եթէ աւր ծննդեան եւ յայտնութեան Փրկչին մերոյ ի միասին տօնեսցի ի Զն Յունուարի ամսոյ։„ — Այս երկուքն ալ կը բաւեն ցուցընելու թէ ինչ մեծ դեր կատարած են այս կարգի անվաւերական գրութիւնք եկեղեցական խնդրոց մէջ, որով դարերով վէճի եւ հակառակութեան նիւթ եղած են այլեւայլ եկեղեցեաց մէջ։ Շատ մը հայ գրութեանց իբրեւ ապահով ճշմարտութիւն պնդելը թէ Առաքեալք ուսուցած են այն սովորութիւնը, յեցած է միայն մեր այս ասորի անվաւերական գրութեան երբեմն ունեցած ճոխութեան վրայ։

[1] Հմմտ. Կանոնագիրք՝ ՆՀԱ։

Իրաց հանգամանքն այնպէս բերաւ որ մինչ մէկ կողմանէ գրութեանս յօրինման ժամանակը կը քննէինք, միւս կողմանէ տեսանք նաեւ շատ մը կանոնաց աղբիւրները, որ անհրաժեշտ ալ էր: Ի մասնաւորի առիթ ունեցանք շատ մը կանոնաց աղբիւրը գտնել Ղաւոդիկէի որոշմանց եւ հատ մը Գանգրայ ժողովոյն վճիռներուն մէջ[1]: Տեսանք նաեւ շատ մ՚այլ այնպիսիներ՝ որ հնագոյն եւ քիչ շատ տեղական նկարագիր ունին:[2] Ուրիշ կանոնի մը (Կան. Ի) համար ալ ըսինք՝ թէ հաւանականաբար անոր նախնականին աղբիւրն է Անտիոքայ 341ի ժողովոյն մէկ որոշումը:[3]

Այս վերջին ժողովոյս կանոնները շատ դիւրաւ կրնար գործածել ասորին, եւ գործած կ՚երեւայ: Ուրիշ աղբիւր չունի ըստ մեզ մեր գրութեան ԺԹ (Ա. ԺԷ) կանոնը: Ըստ այսմ կանոնի առաքեալք կը հրամայեն թէ "Չէ իշխանութիւն քահանայապետի կամ երիցու[4] եւ ոեւիցէ առաջնորդի եկեղեցւոյ՝ առանց խորհրդոյ պաշտօնակցացն առնել զինչ ինչ յեկեղեցւոջ, բայց կամաւք եւ միաբանութեամբ ամենեցուն արասցեն՝ զոր ինչ կամին" եւն: Այս կանոնն՝ առաջին ընթերցման քիչ մը խորթ կ՚երեւայ, վասն զի կարծես եպիսկոպոսին իշխանութիւնն իրեն "պաշտօնակցաց" քահանայից հաւանութեաններքեւ կ՚ենթարկէ: Սակայն այս մթութիւնը կը պարզի, եթէ համեմատենք այլ կանոնական որոշմանց հետ, եւ ի մասնաւորի Անտիոքայ յիշեալ ժողովոյն ԻԴ կանոնին հետ, եւ կը տեսնենք որ խնդիրն եկեղեցական ընչից մատակարարութեան

---

[1] Տես վերը՝ էջ 48—50 եւ 56—66:
[2] Տես վերը՝ էջ 35—42:
[3] Տես վերը՝ էջ 51 եւն:
[4] Այստեղ "երէց" հայոյն յաւելուածն է, եւ ինչպէս իմաստը կը պահանջէ՝ "առաջնորդի" իմաստ մ՚ունենալու է: Լատինական կանոնաց մէջ sacerdos (քահանայ) բառին նոյնպիսի իմաստ մ՚ունենալը կը յիշէ Hefele, II, 589, 657 եւն:

վրայ է։ Անտիոքայ այս կանոնը կը վճռէ. «Զեկեղեցւոյ ինչս եկեղեցւոյ արժան է պահել։ ... Բաշխել արժան է կամաւ եւ յօժարութեամբ եպիսկոպոսին (յոյնը՝ μετὰ χρίσεως καὶ ἐξουσίας τοῦ ἐπισκόπου, ըստ դատաստանի եւ իշխանութեան եպիսկոպոսի), ում եւ զժողովուրդն յանձն արարեալ է ... յայտ արժան է լինել եւ գիտակ որ անկ ինչ իցեն եկեղեցւոյն եւ սեպհական եկեղեցւոյն հանդերձ կամաւ երիցանց եւ սարկաւագաց, զի նոքին գիտակ իցեն եւ մի անգէտ՝ զինչ ոք ուստեք եկեղեցւոյն ընդիկ սեպհական է» եւն։[1] Յայտնի է ուրեմն որ կանոնս կը պահանջէ թէ եկեղեցւոյ ստացուածքն ըստ հեշտի չկարենայ վատնել եպիսկոպոսն, ուստի թէ քահանայք եւ սարկաւագունք ալ պէտք է որ տեղեակ ըլլան եկեղեցւոյ վերաբերող իրաց։ Այս իմաստով առնելու է մեր գրութեան ԺԹ. կանոնն, եւ ասով կը տեսնենք կանոնիս աղբիւրը եւ բուն իմաստը։ — Ամբողջութեան համար յաւելունք որ յունական Առաքելական կանոնաց մին (ԼԵ) ալ շատ նման է այս կանոնիս, վասն զի է այսպէս.[2] «Եպիսկոպոսաց իւրաքանչիւր ազգի պարտ է գիտել թէ ո ոք առաջին իցէ, զոր պարտ է նոցա մեծարել իբրեւ զգլուխ, եւ չառնել ինչ աւելի առանց գիտութեան նորա. այլ զայն միայն արասցէ իւրաքանչիւր ոք, որ ինչ նորա վիճակին է եւ քաղաքացն որ ընդ նովաւ։ Բայց եւ ոչ նա (գլուխն) արասցէ ինչ առանց գիտութեան սոցա։ Քանզի եւ այսպէս միաբանութիւն լինի եւ փառաւորի Աստուած Տերամբ ի Հոգին սուրբ։» Բայց այս կանոնին անշուշտ ուղղակի գործք չունի «Վարդապետութեան Առաքելոց» հետ, այնու մանաւանդ որ նաեւ այս յունական կանոնին աղբիւրը կը դնեն գիտնականք յիշեալ

---

[1] Տես Hefele, I, 520. Հայ կանոնագիրք՝ ՋԽԱ։

[2] Հմմտ. Hefele, I, 811։ Հայերէն թարգմանութիւնը շատ այլայլած է։ (Կանոնագիրք՝ ՀԲ.) Տես նաեւ Առաք. կան. ԽԱ (Hefele, I, 814 = Հայ կանոնագիրք՝ ՀԳ։)

Անտիոքայ կանոնն։[1] Վերջին խօսքը („ — այսպէս միաբանութիւն լինի եւ փառաւորի Աստուած„ —) շատ նման է Հայոյն վերջաւորութեան. (— „զի ի միաբանութենէ ամենեցուն եւ քարոզութիւնն հաւատարիմ լիցի եւ հաւատքն հաստատուն„ եւն։ —) բայց որովհետեւ տարին չունի այսպիսի վերջաւորութիւն մը, կը մնայ ընդունիլ որ Հայ խմբագիրն աւելցուցած է առնելով նոյն յունական կանոնէն, եթէ ոչ անոր ուրիշ մէկ աղբիւրէն, որ մեզի այժմ անծանօթ է։ — Վերջապէս յիշենք որ Ափրիկէի եկեղեցւոյ ԼԳ. կանոնը կը հրամայէ թէ „եպիսկոպոսք մի՛ իշխեսցեն վաճառել զինչս եկեղեցւոյ առանց գիտութեան ժողովոյ կամ երէցանց.„[2] եւ Քաղկեդոնի ժողովոյն ԻԶ կանոնը կ'արգելու եպիսկոպոսաց եկեղեցական ստացուածքները տըն-տեսել „առանց էգոնոմոսաց[3]„ (οἰκονόμος, տնտես։)

Կանոն ԻԳ (Աստ. ԻԱ) կը հրամայէ որ եկեղեցական իշխանութիւնք „զարժանիս աւրհնութեան միաբան աւրհնել եւ զանարժանսն միաբան կապել„ պէտք են, եւ թէ „զոր կապեսցենն, կապեալ կացցէ՝ մինչեւ հնազանդեսցի առաջնորդին։„ Յայտնի է որ կանոնիս իմաստն է թէ ուրիշ առաջնորդ մը չի կրնար զմէկն բանադրանքէ արձակել, որ դրուած է այն անձին առաջնորդին կողմանէ, բայց եթէ նոյն իսկ այն բանադրող առաջնորդը։ Այսպէս վճռած է արդէն Կան. Ե Նիկիոյ ժողովոյն[4] եւ գրեթէ նոյն բառերով յետոյ նաեւ Անտիոքայ ժողովոյն Կան. Զ[5]։ Այս երկուքէն մին՝ հաւանականաբար վերջինն՝ է աղբիւր մեր կանոնին, ինչպէս նաեւ անկէ առեալ է՝ ըստ Տրէյ գիտնականին՝[6] յունական Առաքելա-

---

[1] Hefele, I, 811, n. 1։
[2] Hefele, II, 128։
[3] Hefele, II, 527։
[4] Hefele, I, 387։ կանոնագիրք՝ ՄԹ։
[5] Hefele, I, 515։ կանոնագիրք՝ ՁԻԴ։
[6] Հմմտ. Hefele, I, 810 եւ n. 1. Հայը թարգմանած է (կանոնագիրք՝ ԿԴ) այսպէս. „Եթէ ոք երէց կամ

կան կանոնաց մին (Կան. ԼԳ) որ նոյն որոշումը կ'ընէ։ Սակայն մեր ասորական կանոնը կը յաւելու նաեւ որ "եթէ տարապարտուց եւ յանարժանից ոք կապեսցեն, պատիժ պատուհասի ընկալցին ըստ արժանի, որք ի զուր կապեցին„։ Նիկիոյ եւ Անտիոքիոյ կանոնները պատիժ մը չեն յիշեր, այլ միայն կը հրամայեն որ այսպիսի դիպաց մէջ գաւառական ժողովն երբ գումարուի՝ քննէ խնդիրն եւ վճիռ տայ։

Եթէ այստեղ տարակուսական մնաց թէ Նիկիո՞յ կանոնն եթէ Անտիոքայ ժողովոյն վճիռն է բուն աղբիւրը, աւելի քիչ տարակուսական կը մնայ Կան. ԺԲ (Ասոր. ԺԱ), որ կը պատուիրէ թէ "Եկամուտ ոք կամ բնակաւոր՝ որ ոչ գիտէ զհաւատս ճշմարիտ եկեղեցւոյ սրբոյ, եւ զկարգս եւ զաւրէնս՝ որ կարգեալ է ի նմա, մի՛ լիցի առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ„։ Կանոնիս նիւթն է "նորատունկ„ (néophyte) կամ նորադարձ քրիստոնէից վրայ։ Հին եկեղեցւոյ մէջ ալ կար կանոն մը որ կ'արգելուր այսպիսի անձանց եկեղեցական պաշտամանց բարձրացուիլը, մինչեւ որ ամէն բան հիմնովին սորված չըլլան։ Այսպէս վճռեց նաեւ Նիկիոյ ժողովն իւր Բ կանոնին մէջ[1], որ կը յիշէ թէ շատ բան "ընդդէմ եկեղեցական կանոնի„ (παρὰ τὸν κανόνα τὸν ἐκκλησιαστικὸν) եղած է, վասն զի շատերը հազիւ դարձած հեթանոսութենէ առանց պատշաճ ուսման քրիստոնիական իրաց՝ անմիջապէս մկրտուած են, եւ "ընդ մկրտութեանն եւ յաստիճան եպիսկոպոսութեան կամ քահանայութեան

---

սարկաւագ յեպիսկոպոսէ եղեւ որոշեալ, սայ ոչ է արժան յայլմէ ընդունել, այլ յայնմանէ որ որոշեաց զնա, բայց եթէ դէպ լիցի մեռանել եպիսկոպոսին որ որոշեաց„ (Ձեռն. թիւ 44 է "... մեռանել, որոշեաց եպիսկոպոսն։„)

[1] Hefele, I, 378 եւ մեկնութիւն։ Հայերէն թարգմանութիւնը (Կանոնագիրք՝ ՄԷ) շատ փոխուած է։ Սոյն կանոնը կրկնուած է "կանոնք երկրորդ Նիկիականք„ կոչուած Համառօտութեան մէջ (Կանոնագիրք՝ ՄԻԶ), որ իւր համառօտեալ ձեւին մէջ աւելի նման է մեր կանոնին։

մերձեցուցեալ„ են, եւ ասոր համար արգելք կը դնէ ժողովը։ Անշուշտ մեր ասորի մատենագիրը շատ լաւ կրնայ Նիկիոյ այս կանոնն իր առջեւն ունենալ. բայց չէ՞ր կրնար արդեօք ուրիշ աւելի հնագոյն կանոն մ'ալ իբր աղբիւր գործածել այստեղ։ Նիկիոյ ժողովն իսկ հոս կը յիշէ որ Առաքելոյն կանոն մը կար արդէն այս նկատմամբ, եւ անոր համար Հէֆէլէ Նիկիոյ կանոնէս աւելի հին կը համարի յունական Առաքելական Կանոնաց Զ վճիռը[1] որ կ'ըսէ. "Զառ ի հեթանոսաց եկեալն եւ մկրտեալն եւ կամ ի խառնակ վարուց՝ ոչ իրաւացի է վաղվաղակի ընձեռել յեպիսկոպոսութիւն, քանզի անիրաւ է„ եւն։ Եթէ արդեամբք հնագոյն է այս կանոնը, — զոր չ'ընդունիր Տրէյ, այլ Նիկիոյ յիշեալ կանոնին հետեւողութիւն կը դնէ, — շատ դիւրաւ կրնայ ըլլալ որ այս ըլլայ "Վարդապետութեան Առաքելոց„ կանոնիս աղբիւրը։ Թէեւ յունական Առաքելական կանոնաց խմբագրութիւնը շատ ուշ է մեր ասորականէն, սակայն շատ կանոններ արդեամբք հին են, եւ անհնար չէ որ այս դէպքիս մէջ երկու՝ յոյն եւ ասորի՝ իրարմէ անկախ խմբագրութիւնք միեւնոյն հին կանոնն ունեցած ըլլան իբրեւ աղբիւր։

Վերջապէս անշուշտ Նիկիական ԺԷ կանոնն ունի իբրեւ աղբիւր մեր գրութեան ԺԸ (Ասոր. ԺԳ), որուն պատուէրն է թէ "Որ փոխ տայ եւ առնու վաշխ եւ շահի շահս ագահութեան, այնպիսին . . . մի կացցէ ի կարգի պաշտաման քահանայութեան։„ Վաշխառուութիւնն եկեղեցական կանոնադրութեան մէջ նաեւ հնագոյն ժամանակները խստիւ արգիլուած էր՝ մանաւանդ եկեղեցականաց։ Արդէն Նիկիոյ ժողովն իւր ԺԷ կանոնին մէջ խստիւ կը պատժէ զանոնք, որ "յագահութիւն եւ ի զաւշաքաղութիւն անկանիցին, զարծաթ իւր ի վարձու տացէ եւ տոկոսեաւք պահանջիցէ„

[1] Hefele, I, 824։ Հայ կանոնագիրք՝ ճԸ։

եւն։[1] Նման վճիռ մը տուած է յետոյ նաեւ Դաւուդիկէի ժողովն,[2] ինչպէս նաեւ համառօտ վճիռ մ'ալ կը գտնենք յունական Առաքելական կանոնաց՝ ինչպէս նաեւ Բարսղի Մեծի թղթոյն, Նիկեփորայ եւն կանոնաց մէջ։[3]

Այստեղ կնքելով մեր դիտողութիւնքն կանոնաց աղբիւրներուն նկատմամբ, աւելորդ չենք համարիր անցողակի յիշել կէտ մ'ալ։ “Վարդապետութեան Առաքելոց„ երկու նշանաւոր հրատարակիչք ալ շատ մը կանոնաց ներքեւ ի ծանօթութեան նշանակած են “Սահմանադրութիւնք Առաքելոց„ կոչուած անվաւերական գրութեան բազմաթիւ կտորները։ Կարելի է հոս ուրեմն խնդիր յուզել թէ արդեօք մեր կանոնաց հաւաքիչը գործածա՞ծ է յիշեալ անվաւերականն։ Երկու գրութեանց ներքին բովանդակութիւնն իսկ այնպէս կը բերէ որ շատ նման կարգադրութիւններ գտնուին երկուքին մէջ ալ։ Մեր գերմաներէն հրատարակութեան մէջ նշանակած ենք ծանօթութեանց մէջ այսպիսի նման կտորներ. շատ բան ալ յընթացս հետազօտութեանս յիշելու առիթ կ'ունենանք. օրինակի համար վերն առիթ ունեցանք համեմատել այս երկու գրութիւնքն, երբ կը խօսէինք Համբարձման տօնին, Կիսասարկաւագաց, Շաբաթ աւուր պաշտաման, Կախարդութեան եւ մանաւանդ Ծննդեան տօնին նկատմամբ[4], զորոնք հոս կրկին յիշելն աւելորդ է։ Ասոնցմէ զատ կը գտնենք նմանութիւններ օրինակի համար յայնմ որ երկուքն ալ կը հրամայեն Արեւելք դառնալ

---

[1] Հմմտ. Hefele, I 421։ Հայ կանոնագիրք՝ ՄԻԱ, կրկնուած համառօտութեամբ՝ ՄԽԱ։

[2] Կան. Դ. Տես Hefele, I 752։

[3] Հմմտ. Hefele, I 814. Pitra, I 585 եւ Pitra, Spicil. Solesm. IV, 386 եւն։

[4] Տես վերը՝ էջ 48, 50, 55, 57, 61, եւ 70։

աղօթելու,[1] (— սա տարբերութեամբ որ մեր ասորին ասոր պատճառը կը դնէ այն թէ այն կողմանէ պիտի գայ Քրիստոս դատելու, մինչ "Սահմ. Առաք.„ նոյն բանը կը հրամայէ ըստ Սաղմ. ԿԷ, 34 խօսքին. —) երկուքն ալ կը հրամայեն Դշ. եւ Ուրբաթ պահք պահել՝ առաջինը ի յիշատակ մատնութեան եւ երկրորդը՝ չարչարանաց.[2] թէ արծաթասէր քահանայք չըլլան.[3] թէ ամէն գրքերէ վերջն աւետարան կարդացուի եկեղեցւոյ մէջ եւ ժողովուրդն ոտքի վրայ կանգնած մտիկ ընէ.[4] թէ "քառասուն օր„ մեծ պահք պահելու է.[5] եւ վերջապէս թէ ակնառութիւն ընող դատաւորները պատժելու է եւ պաշտօնէն զրկելու եւ թէ եպիսկոպոսն գլուխ է ամենուն "քահանայից եւ ղեւտացւոց„[6] եւ այլ շատ նմաններ: Բայց այս ամէն նմանութիւնք այնպէս ընդհանուր են որ անհնար է այս կամ այն կէտին վրայ պնդել թէ պէտք է որ մին միւսին աղբիւրն եղած ըլլայ: Սակայն շատ բնական է որ մեր "Վարդապետութեան Առաքելոց„ գրութեան հեղինակն առջեւն ունեցած ըլլայ յիշեալ գիրքն իւր հնագոյն ձեւին մէջ, որ ամէնէն տարածեալ գրքերէն մին էր հին քրիստոնէից հասարակութեանց մէջ: Ի հարկէ մեր ասորին "Սահմանադրութիւնք Առաքելոցն„ գրութիւնն իւր հնագոյն ձեւին մէջ միայն կրնար կարդացած եւ գործածած ըլլալ, քանի որ յիշեալ գրութեան այժմու յունական լեզուաւ գտնուած նորագոյն խմբագրութիւնն

---

[1] Հմմտ. կան. Ա եւ Pitra, I 204, 206 եւն:

[2] Հմմտ. կան. Գ եւ Դ եւ Pitra, I 294, 283 եւն:

[3] Հմմտ. կան. ԺԸ եւ Pitra, I 230, 231:

[4] Հմմտ. կան. Թ եւ Pitra, I 204:

[5] կան. Ը եւ Pitra, I 279, 298 եւն եւն:

[6] Հմմտ. կան. Զ "Եղիցին երիցունք եւ սարկաւագունք իբրեւ զՂեւտացիս եւ կիսասարկաւագունք .... եւ դէտ՝ որ է առաջնորդ ամենայն ժողովրդեան ...„ (ըստ Սոր.) եւ Pitra, I 171 "երիցունք ձեր՝ քահանայք, Ղեւտացիք ձեր՝ արդ սարկաւագունք ... եւ սոցա ամենեցուն ի վերոյ է քահանայապետն որ է եպիսկոպոս:„

աւելի կրտսեր է ժամանակաւ քան մեր “Վարդապետութիւն Առաքելոցն։„ Արդէն վերն առիթ ունեցանք այս նկատմամբ մեր կարծիքն յայտնել երկու ծանրակշիռ կէտերու վրայ խօսած ատենիս։ Յիշեցինք[1] այսպէս որ “Սահմանադրութիւնք Առաքելոց„ նորագոյն է քան մեր ասորի գրութիւնն այնու որ մինչ ասորին (կան. Զ) դեռ չի գիտեր Ծննդեան տօնին Դեկ. 25ին տօնուիլը, “Սահմ. Առաք.„ արդէն նոյնը բացայայտ կը հրամայէ (տես Pitra, I 278.) եւ մինչ մեր ասորին Համբարձման եւ Հոգեգալստեան տօներն դեռ ի միասին տօնուած կը յիշէ (կան. Ժ), “Սահմ. Առաք.„ նաեւ զատոնք արդէն իրարմէ անջատեալ գիտէ (Pitra, I 290 եւն։) Բայց աստի մեր ասորի գրութեան ժամանակն իբր 380 Յ. Ք. դրինք վերը, իսկ “Սահմ. Առաք.„ գրութեան նորագոյն խմբագրութիւնն ըստ նորագոյն քննութեանց այս ժամանակէն քիչ մ'ալ ետքն է։

“Սահմանադրութիւնք Առաքելոց„ (Constitutiones apostolicae) գրութեան վրայ նախ հիմնական քննութիւնն ընողն էր Տրէյ գիտնականն,[2] որ ցուցուց թէ գիրքն այլեւայլ հեղինակներու գործն է եւ զանազան ժամանակներէն է՝ Ա—Զ գրքերն իբր երրորդ դարու վերջին կէսին դնելով, Է գիրքն՝ չորրորդ դարու սկիզբն եւ Ը գիրքն նոյն դարու կէսէն, երբ ամբողջ գիրքն առաւ իւր այժմու ձեւն. — գրութեան հայրենիքն Ասորիք կը դնէ։ Սոյն կարծիքն յընդհանուրն ընդունեցաւ նաեւ Պիքէլ,[3] որ մտադիր ըրաւ թէ կան նաեւ ասորի,

---

[1] Տես վերը՝ էջ 70։

[2] Drey, Neue Untersuchungen über die Konstitutionen und Kanones der Apostel. 1832. Հմմտ. այս եւ յաջորդներուն նկատմամբ Funk, die apost. Const. pp. 1–27 եւն։

[3] Bickel W. J., Geschichte des Kirchenrechtes. Giesen, 1843, I pp. 154 եւն։ Այս գրութիւնն արդէն յիշեցինք վերը՝ էջ 10։

արաբական եւ խպտի «Վարդապետութիւնք (Didascalia) Առաքելոց» գրութիւններ, որոնց բովանդակութիւնն է յիշեալ «Սահմ. Առաքելոց» գրութեան առաջին վեց գրքերուն ուղեծուծն։ Ասորականն՝ զոր գիտունք յիշեալ գրութեան հնագոյն խմբագրութեան ներկայացուցիչը կը համարին, Պիքքէլ կը համարէր թէ ըլլայ ծայրաքաղ առաջին վեց գրոց յունական նախնական բնագրէն։ Լակարտ՝ որ հրատարակեց ասորին, ինչպէս վերն յիշեցինք,[1] փորձեց նոյն ասորականէն համեմատ յունական նախնական բնագիրը վերակազմել, եւ ցուցուց որ եթովպական արաբերէնէն է, իսկ ասորին ալ յետագայ յաւելուածներ չէ ընդունած։[2] Քննութիւնք ըրին նաեւ այլ շատ գիտնականք, որոնք կ'ընդունին ընդհանրապէս որ յիշեալ գործքին առաջին վեց գրքերն իբր 360—380 Ք. Ք. իրենց այժմու ձեւն առած են, իսկ վերջին երկուքն 400էն յառաջ։ Նորագոյն քննադատական գործք մը հրատարակեց այս նկատմամբ Ֆունք[3], որ շատ աւելի յետս կը մղէ այս ժամանակն, վասն զի կը դնէ որ «Սահմ. Առաք.» գրութիւնն բաղադրութիւն մ'ըլլայ այլեւայլ հնագոյն գրութեանց, որ ՀԻՆԳԵՐՈՐԴ դարուն սկիզըներըն առած ըլլայ իւր այժմու ձեւն, եւ թէ այժմու յունականին առաջին վեց գիրք ընդլայնումն են նախնականին, զոր Ասորիք կամ Պաղեստին յօրինուած կը դնէ իբր Գ. դարու

---

1 Տես էջ 6։

2 Ի գիրս Bunsen, Analecta Antenicaena, II. 1854. Հմմտ. Reliq. II, p. IV.

3 Fr. Xav. Funk, Die Apostolischen Konstitutionen, eine litterar.-historische Untersuchung. Rottenburg 1891, 8° pp. 374։ Հմմտ. ի մասնաւորի էջ 28—75, ուր նախնական խմբագրութեան վրայ կը խօսի, եւ էջ 76—112՝ որ նորագոյն խմբագրութիւնը կը քննէ։ Սոյն գիտնականն խօսելով Լակարտի Reliq. եան գրութեան վրայ՝ անցողակի կը յիշէ նաեւ մեր ասորական «Վարդապետութիւն Առաքելոց» գրութիւնն (էջ 248։)

սկիզբներն, եւ զոր հաւատարմութեամբ պահած է սուրբ թարգմանութիւնը։

Մեզի չ'իյնար այս կարծիքները քննել. այսպէս կամ այնպէս ապահով է միշտ որ նորագոյն յունական խմբագրութիւնը կրտսեր է քան մեր "Վարդապետութիւն Առաքելոց„ ինչպէս վերը ցուցուցինք։ Եթէ ուրեմն ընդունինք որ մեր սուրբին գործածած է "Սահմ. Առաք.„ գրութիւնն, որ հաւանական կ'երեւայ, պէտք ենք ըսել որ նախնական խմբագրութիւնը կրնար միայն կարդացած ըլլալ։ Անշուշտ ալ ո՛չ թէ յոյն նախաբնագիրը կը գործածէր մեր սուրբին, այլ ասորական թարգմանութիւնն, որ հնագոյն խմբագրութիւնն պահած է առանց յետագայ յաւելուածների։

Բաւական կը համարինք այսչափն՝ գրութեանս ժամանակին եւ աղբերաց նկատմամբ։ Այժմ անցնինք գրութեանս ուրիշ անվաւերականաց հետ ունեցած կապակցութիւնը քննելու։

Ընթերցողը միտ դրած պիտի ըլլայ որ ցայժմ մեր ամէն քննութիւնք ուղղեալ էին բուն կանոնաց որ "Վարդ. Առաք.„ գրութեան թէեւ էական՝ սակայն նաեւ միայն մի մասը կը կազմէ։ Ամենեւին չյիշեցինք միջանկեալ պատմական կերպարանք ունեցող մասն, ինչպէս նաեւ վերջին կէսն՝ որ ցուցակ է այն իւրաքանչիւր աշխարհաց որ ամէն մէկ առաքելոց գործունէութեան շրջանը կը նշանակէ։ Յաջորդ հատուածին մէջ աւելի այս մասերուն քննութեան պիտի զբաղինք, եւ պիտի տեսնենք որ այս մասերուն քննութիւնն ալ միեւնոյն հետեւութեանց պիտի հասցընէ, զորոնք գտանք կանոնացս հետազօտութեամբ։

---

## 4.

„Վարդապետութիւն Առաքելոց„ ըլլալով ասորական անվաւեր գրականութեան ծնունդ, ինչպէս ցայժմ ցուցուցինք, ի հարկէ աւելի կամ նուազ սերտ կապ մ'ունենալու էր նոյն ասորի գրականութեան ուրիշ արտադրութեանց հետ ալ։ Ամէնէն նշանաւոր ասորական անվաւեր գրութիւնն ըլլալով Աբգարու թուղթը, որ Լաբուբնայի անունը կը կրէ, պէտք է որ մեր մտադրութիւնն նախ անոր ձգուի քան ուրիշ որեւէ ասորի գրութեան մը, եւ պէտք է որ նախ հաստատենք թէ ինչ յարաբերութիւն ունին իրարու հետ այս երկու գրութիւնք։ Թէ արդեամբք սերտագոյն կապակցութիւն կայ այս երկու ասորի անվաւերականաց մէջ՝ կրնար արդէն գուշակուիլ մեր ցայս վայր ըսածներէն. վասն զի շատ դիպաց մէջ երկու գրութեանց նման կտորներն իրարու համեմատելու առիթ ունեցանք, երբ կը խօսէինք “Հռոմոց տուն„ տաութեան, երկու գրոց ալ վերնագրութեանց ճշգրիտ նոյնութեան, կախարդութեան նկատմամբ եղած կարգադրութեան, կիսաարկաւագ բառին հնութեան եւ նմանեաց վրայ[1]։ Յաջորդ քննութիւնք ասոնց իրարու հետ ունեցած յարաբերութիւնն աւելի պիտի պարզէ։

Լաբուբնայի հեղինակը կամ ճշդիւ եւս՝ այն խմբագրիչ ասորի մատենագիրն որ Աբգարու զրուցին նախնական պատմութիւնը վերածեց իւր այժմու ձեւին, կարդացած եւ գործածած ալ կ'երեւայ ապահովապէս մեր այս ասորի կանոնաց հաւաքածոյն՝ թէեւ ի հարկէ ուրիշ կամ հնագոյն ձեւին մէջ։ Այս կանոններն մինչեւ անգամ յայտնապէս ի վկայութիւն կոչած է իւր գրքին վերջերը։ Ադդէ

[1] Տես վերը՝ էջ 24, 25, 26—28 եւ 48—50։

իրեն վերջին յորդորակին մէջ՝ զոր կը խօսի Եդեսացւոց, այսպէս կ՚ըսէ՝ ի միջի այլոց՝ բացայայտ կերպով.[1] "Ըստ կարգաց եւ օրինաց որք եդան յաշակերտացն յԵրուսաղէմ (Հայ. "... զոր եդ Տէր մեր աշակերտացն յԵրուսաղէմ.") եւ նոքին կարգէն առաքելոյն եւ ընկերք իմ, այնպէս եւ դուք մի փոխիք ի նոցանէ եւ մի խոտորիք յաջ կամ յահեակ, եւ մի պակասեցուցանիցէք ի նոցանէ եւ մի յաւելուք, զոր օրինակ վարեցայ ես ի միջի ձերում եւ ոչ խոտորեցայ յաջ կամ յահեակ . . . զի մի օտարացայց ի կենացն խոստացելոց, որ պահեալ են այնոցիկ՝ որ կան ի պատուիրանին:" Այստեղ ուրեմն յայտնապէս կը հրամայուի Եդեսացւոց՝ պահել այնպիսի կանոններ, զորոնք Առաքեալք դրած են եղեր յԵրուսաղէմ: Թիքսըրոն գիտնականն, որ Լաբուբնայի եւ "Վարդ. Առաք." գրութեան իրարու հետ ունեցած յարաբերութեան վրայ համառօտիւ, բայց հիմնական կերպով խօսած է[2], մտադիր ընել կու տայ այս խօսքին նկատմամբ՝ որ այստեղ յիշուած "կարգք եւ օրէնք" ասութեամբ չենք կրնար համարիլ թէ յիշուած ըլլան այն կարգադրութիւնք, որոնք դրուեցան Առաքելոց ժողովքէն յԵրուսաղէմ եւ զորոնք կը յիշէ Ղուկաս (Գործ. ԺԵ, 6—29): Վասն զի այն ժողովքին մէջ այնպիսի կարգադրութիւնք դրուեցան, զորոնք պահելու էին հեթանոսութենէ դարձած քրիստոնեայք, այսինքն՝ որ պարտական չըլլան հրէական օրինաց պահպանութեան, բայց "ի բաց կալ ի զոհելոյ կռոց, եւ յարենէ եւ ի հեղձուցելոյ եւ ի պոռնկութենէ:" Իսկ Ադդէի յիշած "կարգք եւ օրէնք" բոլորովին ուրիշ բան են, վասն զի յայտնա-

[1] G. Phil. p. 41, 8 = Հայ՝ էջ 39, 4 եւն: Այս խօսքը բառ առ բառ կրկնուած է Մարէսի վկայաբանութեան մէջ. (տես Acta Martyrum et Sanctorum, ed. Bedjan. Paris. I 1890, p. 91, 14—15.) որ ըստ այսմ ընդօրինակութիւն է Լաբուբնայի գրքէն:

[2] Tixeront, Les origines, p. 116—118:

պէս կը յիշուի որ այն վերջինք գրուեցան Առաքեալներէն նաեւ իրենց պահպանութեան համար, եւ թէ արդեամբք ալ պահեցին՝ ինչպէս ինքն իսկ Ադդէ, որ չէ "խոտորած յաջ կամ յահեակ" այն կանոններէն: Եւ այս բոլորովին կը համաձայնի մեր "Վարդ. Առաք." գրութեան աւանդածին հետ, որուն համեմատ "մինչ էին ի միասին գունդն առաքելական, նովին պարգեւաւք որ տուաւ նոցա՝ շնորհք Հոգւոյն սրբոյ ի նմին աւուր, եդին նոքա կանոնս եւ կարգս եւ օրէնս, որք միաբանին աւետեաց աւետարանին քարոզութեան նոցա.[1]" եւն:

Սակայն աւելի որոշ ապացոյցներ պէտք ենք փնտռել առ այն թէ Ադդէ յիշեալ խօսքին մէջ ասորի "Վարդ. Առաք." գրութիւնը կը հասկընայ: Վասն զի նաեւ ուրիշ անվաւերականք կան որ իբր թէ Առաքեալներէն գրուած ըլլան, երբ գումարուած էին ժողովքի յԵրուսաղէմ. — այսպիսի նախաբան ծանօթութիւն մը կը կրէ օրինակի համար "Սահմանադրութիւնք Առաքելոց Ցաղագս Խորհրդական Պաշտաման" անվաւերականը:[2] Բարեբախտաբար շատ կռուաններ կան, որ անտարակոյս կ'ընեն առ կէտը թէ Ադդէ արդեամբք մեր ասորի կանոնները կը հասկընայ, եւ ասոնց առաջինն է նոյն իսկ կանոնաց անուանակոչութիւնը: Ադդէ կոչում կ'ընէ "ըստ կարգաց եւ օրինաց որք եդան յաշակերտացն յԵրուսաղէմ:" Անկարելի է որ աչքի չզարնէ հոս "կարգք եւ օրէնք" յորջորջումն մանաւանդ ասորական բնագրին մէջ (טכסא ונמוסא), վասն զի երկուքն ալ յունական փոխառեալ բառեր են (ἡ τάξις եւ ὁ νόμος) ի միասին գործածուած: Արդ այս անուանակոչութիւնը յատուկ է մեր ասորի կանոնաց, որոնք միշտ այս երկու օտար բառե-

---

[1] Այս "[illegible] [illegible]" բացատրութիւնը ճշդութեամբ կը գործածէ նաեւ Լաբուբնա. տես G. Phil. p. 1, 5 (Հայ՝ պակաս.) 31, 12 (= Հայ՝ 29, 32 ուր "[illegible] քարոզութեան" թարգմանուած է.) եւն:

[2] Հմմտ. Pitra, I, 49 եւն:

րէ բաղադրեալ անուամբ կը նշանակուին. այսպէս Ներածութեան վերջն, ուր կ'ըսուի թէ երբ Առաքեալք դեռ ի միասին էին, “եդին կարգս եւ օրէնս (տառ. ճշդիւ τάξις եւ νόμος բառերը կը գործածէ։) Այսպէս նաեւ գրութեանս վերջերը կը գրուի թէ Ղուկաս գրեց ո՛չ միայն Գործք Առաքելոցն, այլ նաեւ “զկարգս եւ զօրէնս պաշտաման քահանայութեան նոցա„ այսինքն՝ Առաքելոց. որով մեր կանոնները կ'ուզէ հասկընալ անվաւերագիր ասորին։ Այս վերջին բացատրութեան կերպն ալ կը գտնենք գործածուած Լաբուբնայի քով, որ “զկարգս պաշտաման„ կը գրէ։[1]

Զարմանալի չէ այսուհետեւ որ Լաբուբնայի գրութեան մէջ շատ կտորներ գտնենք, որ մեր ասորի կանոնները կ'ակնարկեն, երբեմն նաեւ գրեթէ բառ առ բառ։ Այս նկատմամբ նշանաւոր է ի մասնաւորի Ադդէի բերանը դրուած այն վերջին յորդորակն, որուն սկիզբն էր վերը դրուած խօսքը թէ պէտք չէն շեղիլ “յաջ կամ յաջեակ„ Առաքելոց դրած յիշեալ “կարգ եւ օրէնք„ կարգադրութիւններէն. բայց քիչ ակնարկութիւնք կամ նմանութիւնք չկան նաեւ միւս մասանց մէջ։

Արդէն անմիջապէս աչքի կը զարնէ սա կէտն որ այնչափ աննշանակ չէ որչափ թերեւս երեւայ առաջին անգամ։ “Վարդապետութիւն Առաքելոց„ կը պատմէ թէ Առաքեալք Համբարձման օրը, երբ Ձիթենեաց լեռն էին, Քրիստոս Տէր մեր “անդէն ի ժամուն մեծի առաւօտուն կիւրակէին ամբարձեալ զձեռս իւր՝ եդ ի վերայ գլխոյ մետասան աշակերտացն իւրոց՝ շնորհելով նոցա պաշտօն քահանայութեան։„ Ուրեմն ըստ ասորի մատենագրիս Առաքեալք Համբարձման օրը ձեռնադրուեցան՝ մինչ ըստ սովորական աւանդութեան (ըստ Ղուկ. ԻԲ, 19) արդէն վերջին ընթրեաց ժամանակ ձեռնա-

---

[1] G. Phil. p. 40, 14 = Հայ՝ 38, 7։

գրուած էին։ Արդ ասորւոյս կարծիքը կը գտնենք կրկնուած նաեւ Լաբուբնայի գրութեան մէջ, որ կը նկարագրէ թէ ինչպէս Ադդէ Աբգարու եւ իւր մեծամեծաց առջեւ կը պատմէր “զամենայն նշանսն եւ զսքանչելիսն Տեառն, զոր առնէր նա եւ զաստուածեղէն զօրութիւնս նորա եւ վերանալ նորա առ Հայր իւր յերկինս, եւ թէ որպէս առին նոքա (այսինքն՝ Առաքեալք) զօրութիւնս եւ իշխանութիւնս ի ժամ վերանալոյն իւրոյ[1]։„ Այստեղ Լաբուբնա անշուշտ կախում ունի “Վարդ. Առաքելոց„ գրութենէն, ճշդիւ՝ ինչպէս նաեւ ուրիշ ասորի անվաւերական մը, այսինքն՝ Բարսամիայ վկայաբանութիւնն[2], որ նոյնպէս ասորի կանոնացս հնագոյն խմբագրութիւնը կարդացած կ'երեւայ։ Այս վերջնոյս վրայ քիչ մ'ետքը առիթ պիտի ունենանք խօսելու։

Անցնելով այժմ կանոնաց՝ կը տեսնենք որ շատերը կամ ակնարկուած են Լաբուբնայի գրութեան մէջ ընդհանրապէս եւ կամ նաեւ գրեթէ բառ առ բառ ի մէջ բերուած։ Այսպէս ԺԸ (Ասոր. ԺԴ) կանոնն, — որ կ'արգելու “ի կարգի պաշտաման„ եղողներուն “փոխ տալ եւ առնուլ վաշխ եւ տոկոսիս եւ շահել շահս ագահութեան.„ — կ'ակնարկէ Ադդէ անշուշտ, երբ իւր յորդորակին մէջ կը պատուիրէ[3] թէ “ի պաշտամանդ յոր կոչեցարուք՝ մի՛ եւս լիցի ձեզ վաստակ . . . մի սիրէք զշահս աշխարհիս այսորիկ,„ եւ դարձեալ. “Դուք որ կոչեցարուք ի շնորհս պաշտամանս այսորիկ, զգոյշ լերուք, մի՛ շաղապատիցիք յիրս աշխարհիս այսորիկ։„ — Վերն արդէն խօսեցանք[4] ԺԶ եւ ԺԷ

[1] G. Phil. p. 9, 8 = Հայ. 10, 29 (բայց այլափոխեալ է. “. . . թէ որպէս առնէր նա զօրութիւնս մեծամեծս իշխանութեամբ բազմաւ ի ժամ վերանալոյն իւրոյ։„)
[2] Cureton, p. 72, 14։
[3] G. Phil. p. 36, 4 (= Հայ՝ 33, 13—15) եւ 45, 20 (= Հայ՝ էջ 42, 24 եւն։)
[4] Տես վերը՝ էջ 39—42։

կանոններուն վրայ, որոնք խստիւ կ'արգիլէին "խառնել„ կամ հաղորդութիւն ունենալ Հրէից հետ, այնպէս որ նոյն կանոններն հոս կրկնել աւելորդ է։ Նոյն պատուէրը կրկնած է Ագդէ, այնպէս որ իրեն աշակերտքը կը խոստանան[1] թէ "ընդ Հրեայս խաչահանուս ոչ հաղորդիմք„ (Ասոր. "[illegible]„) Մանաւանդ թէ սոյն նիւթոյ վերաբերեալ բացատրութիւնը մը բառ առ բառ նոյնպէս կը գտնենք Լաբուբնայի մէջ ալ։ Առաքեալք հրեայ քահանայից այն որդւոցն՝ որ թէեւ հաւատացեալ էին, բայց հրապարակաւ չէին ուզեր խոստովանիլ, կը սպառնան թէ "[illegible]„ Նոյն սպառնալիքը կ'ընէ նաեւ Ագդէ ըսելով[2]. "Զգոյշ լերուք այսուհետեւ ի խաչահանուացն եւ մի լինիք նոցա սիրելիք, զի [illegible]„ Այստեղ թէեւ հայ թարգմանիչը պէսպիսութեամբ թարգմանած է այս երկու նախադասութիւնքն. սակայն երկու ասորի բնագրաց մէջ ալ բոլորովին միեւնոյն է ասութեան կերպն՝ որ ընիկ ասորական դարձուածք մըն ալ է։ Ասորի բնագիրը դնել հոս աւելորդ կը համարինք հայ ընթերցողաց համար, թէեւ այն բաւական էր համոզելու որ անկախ չեն իրարմէ այն երկու նախադասութիւնք։

Երկու նշանաւոր կանոնաց վրայ առիթ ունեցանք վերը խօսելու ընդարձակօրէն, այսինքն Կան. ԺԵ եւ Լ. մին՝ կախարդութեան եւ միւսն՝ Աւետարանի ընթերցման վրայ, եւ յիշեցինք նաեւ Լաբուբնայի նոյն կտորներուն նման մասերը։[3] Այնչափ նման են այս կտորներն՝ որ կրնանք ըսել թէ բառ առ բառ են, ինչպէս կը տեսնուի յաջորդ համեմատութեան մէջ, որուն կը կցենք քանի մ'այլ նման տեղեր ալ։

---

[1] G. Phil. p. 48, 1 = Հայ՝ էջ 44, 29։
[2] G. Phil. p. 43, 12 = Հայ՝ 40, 27։
[3] Տես վերը՝ էջ 25—31։

| ՎԱՐԴ. ԱՌԱՔ. | ԼԱԲՈՒԲՆԱ |
| --- | --- |
| 1. (կան. ԺԽ. = Ասոր. ԺԲ։) | (G. Phil. p. 35, 15 = Հայ՝ 33, 3 եւն։) |
| "Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատու-թեամբ, եթէ որ սուտ երդնու կամ սուտ վկայէ, եւ կամ երթայ առ կա-խարդս եւ հարցուկս, եւ քաւդեայս եւ վոհուկս, եւ հաւատայ բախտից, ծննդոց եւ աստեղագիտութեանց, իբրեւ զայնոսիկ որ անաս-տուածքն են՝ խափանեսցի նա որպէս զանաստուած ի քահանայութենէ." եւն։ | "Եղերուք. ասէ. հեռա-նալ է սուտ երդմանց եւ յամպարիշտ սպանմանէ եւ յանօրէն վկայութեներն, որ ի չնութիւնս խառնակեալ են, եւ ի կախարդաց՝ յորոց վերայ չլինի ողորմութիւն, եւ ի խարոց եւ ի կիւսոց եւ փոհկաց եւ ի բախտից ե-ւ ծննդոց որովք պարծին Քաղդէացիք մոլորականք, եւ յաստեղագիտութենէ եւ ի մղավաչէից՝ յորս յու-սացեալ են յիմարեալքն։" |
| 2. (կան. ԻՁ = Ասոր. ԻԲ։) | (G. Phil. p. 35, 19 = Հայ՝ 33, 9 եւն։) |
| "Կարգեցին առաքեալքն . . . թէ որք են յատտի-ճանի դատաւորութեան եւ իշխան են առնել դատաս-տան, եթէ թիւրիցէ եւ աչ-առիցէ երեսաց եւ պար-տաւորեսցէ զարդարն եւ ար-դարացուսցէ զպարտաւորն, մի եւս կացցէ ի կարգի դատաւորութեան." եւն։ | "Եւ ի բաց արարէք ի ձէնջ զոխնասութիւն մեղաց եւ զկաշառս եւ զպատա-րագս, որով զպարտաւորն արդարէ,[1] եւ կուրացու-ցանեն զաչս առողաց." եւն։ (Հմմտ. Phil. 36, 6 = Հայ՝ 33. 16. "Եղիջիք առնել դատ արդարութեան եւ ստուգութեան." եւն։) |

---

[1] Այս բնիկ ասորի բացատրութիւնը կը նշանակէ թէ ակնառութեամբ արդարք կը դատապարտուին ("պարտաւորին,") եւ յանցաւորք ("պարտաւորք,") կ'արդարանան։ Այս բացատրութեան հիմն եղողն է בח բառը, որ կը նշանակէ բուն "յաղթահարել," եւ ասկէ առեալ "դատապարտել," Հայ թարգմանիչք՝ ինչպէս հոս թէ "Վարդ. Առաք.," եւ թէ Լաբուբնայի գրոց մէջ՝ նոյնպէս նաեւ այլուր շատ յաճախ "պարտաւորել," կը թարգմանեն երկու իմաստովն ալ։ Այսպէս առիթ ունեցանք յիշելու (տես "Հանդէս Ամս.," 1891, թ. 8, էջ 233) Եփրեմայ մէկ խօսքը (Մատենագրութիւնք, տպ. Վենետ. 1836, գ. էջ 120, 37) "Մի տացի պատասխանի այնոցիկ՝ որ պարտաւորին նովաւ.") եւ այլուր։

3. (Կան. ԻԷ = Ասոր. ԺԸ։)

"Կարգեցին առաքեալքն ... եթէ ոք ելանիցէ յաշխարհէ ճշմարիտ վախճանաւ եւ խաղխաղեալ յանաւրինաց ... արասցեն զյիշատակս նոցա յաւուր մահուան նոցա." եւն։

(G. Phil. p. 49, 17 = Հայ՝ 46, 6։)[1]

"Եւ կատարէին ամ յամէ զօր յիշատակի (մահուան) նորա, որպէս պատուիրեաց եւ ուսոյց զնոսա Ադդէ առաքեալ." եւն։

4. (Կան. ԻԸ = Ասոր. ԻՆ։)

"Կարգեցին առաքեալքն ... եթէ թագաւորք որք ունիցին զհաւատս եկեղեցւոյ սրբոյ եւ խոստովանիցին զՔրիստոս, իշխանութիւն լիցի ընդ քահանայս ի բեմի կալ." եւն։

(G. Phil. p. 45, 22 = Հայ՝ 42, 27։)[2]

"Բայց զիշխանս եւ զդատաւորս որք մերձենան ի հաւատս յայս, սիրեսցուք զնոսա առանց ակնառութեան." եւն։

5. (Կան. ԻԹ. = Ասոր. ԺԹ։)

"Կարգեցին առաքեալքն ... եթէ ի պաշտաման եկեղեցւոյ ասասցեն զաղմուսն եւ զաւրհնութիւնս Դաւթի պաշտել աւր ըստ աւրէ յամենայն ժամ." եւն։

(G. Phil. p. 41, 19 = Հայ՝ 39, 19։)

"Օրհնութիւնքն Քրիստոսի մի խափանեսցի ի բերանոց ձերոց, եւ տաղտկութիւն յողջոյն ժամուց (Հայ՝ "ի ժամ աղօթից") ի միտս ձեր մի մերձեսցի." եւն։

6. (Կան. Լ = Ասոր. Ժ։)

"Կարգեցին առաքեալքն զի մի ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի (այլ գիրք), բայց միայն Հին կտակարանք եւ Մարգարէք եւ Աւետարան եւ Գործք Առաքինութեանց նոցա։" — Հմմտ. Նաեւ հետեւեալը։

(G. Phil. p. 35, 9 = Հայ՝ 32, 18։)

"Ընթեռնուին նոքա զՀին Կտակարանն եւ զՆորն եւ զՄարգարէս. (Հայ՝ "մարգարէական գիրս") եւ զԳործս Առաքելոց (Աս. "զԱռաքինութիւնս Առաքելոց"). եւն։

---

[1] Հայն այստեղ տարբեր է, եւ սոյն մասն բոլորովին դուրս ձգուած, վասն զի անյարմար էր թարգմանչին դիտաւորութեան. (Հմմտ. Zur Abgar-Sage, p. 45—47.)

[2] Այս կանոնիս նկատմամբ՝ տես վերը՝ էջ 35—37։

"Նոյնպէս աւանդեցին ... զոր ինչ գրեաց Յակոբոս յԵրուսաղէմէ, (եւ Շմաւոն ի Հռովմ քաղաքէ)[1], եւ Յովհաննէս յԵփեսոսէ, եւ Մարկոս յԱղեքսանդրիայ, եւ Անդրէաս ի Փռիւգիայ, եւ Ղուկաս ի Մակեդոնիայ, Թովմաս ի Հնդկաց եւ Պաւղոսի առաքելոյ թուղթքն ԺԴ, որ ընթեռնուն յամենայն եկեղեցիս ընդ ամենայն տեղիս. Նոյնպէս ընթեռնուն միաբան Գործք Առաքինութեանց նոցա՝ զոր գրեաց Ղուկաս. զի յայտ ծանիցին Առաքեալք եւ Մարգարէք եւ Հին կտակարանք եւ Նորքս, զի գիտասցի թէ մի Հոգի խօսեցաւ յամենեսեան." եւն:

(G. Phil. p. 46, 8 = Հայ՝ 43, 1:)

"Բայց զգիրս՝ զոր ընթեռնուցուք յեկեղեցւոջ ժողովրդեան առաջի. ԶԱրարածս եւ զՄարգարէս եւ զԱւետարան եւ զԹուղթս Պաւղոսի՝ զոր էր բերեալ Սիմոն Պետրոս ի Հռովմ քաղաքէ, եւ զԳործս Առաքելոցն՝ զոր էր մեզ բերեալ Յովհաննէս որդին Զեբեդեայ յԷփեսոս քաղաքէ. զայն իսկ զայս գիրս ընթերցջիք յեկեղեցւոջ Քրիստոսի. եւ այլ աւելի քան զնոսա մի ընթեռնուցուք. քանզի չիք այլ ինչ յորում գրեալ է զճշմարտութիւն." եւն:

Այս համեմատութիւնք՝ ինչպէս նաեւ նախընթաց դիտողութիւնք՝ ցուցուցին որ Լաբուբնայի գրիչը չէ շատացած յիշելով միայն մեր աւորի "կարգքն եւ օրէնքն", այլ թէ նաեւ բաւական յաճախ գործածած է զանոնք: Նշանաւոր է համեմատութեանցս վերջինը՝ ոչ միայն անոր համար որ երկու գրութիւնք ալ Ս. Գրոց մասունքը նոյնպէս չորս մասի կը բաժնեն եւ երկուքն ալ "Աւետարան" բառով այլ ինչ կը հասկընան, — որոնց վրայ արդէն խօսած ենք.[2] — այլ նաեւ ուրիշ տեսակիտէ մը: "Վարդ. Առաք." գրութեան հեղինակը յայտնապէս մեր առջեւ կը դնէ կեղծիք մը, իբր այն թէ Առաքեալք՝ երբ իրարմէ անջատեալ հեռաւոր երկիրներ կը գործէին, իրարու հետ սերտ ճղճա-

[1] Հայերէնին մէջ պակաս է այս խօսքը:
[2] Թէ ասոնց եւ թէ Լ կանոնին վրայ տես վերը՝ էջ 29—35:

չցուրէն ունէին. եւ կը յիշէ ի մէջ այլոց նաեւ թէ գրած ըլլայ "Անդրէաս ի Փռիւգիայ„ եւ "Թովմաս ի Հնդկաց„ եւն, ինչպէս նաեւ Յակոբոս յԵրուսաղէմ եւ այլքն ի կարգին։ Այս կեղծիքը կը գտնենք նաեւ Լաբուբնայի քով, որ Պատրոնիկէի զրոյցը պատմելէն ետեւ կը գրէ[1]. "Այլ Յակոբոս առաջնորդ եկեղեցւոյն Երուսաղէմի, որ ինքն իսկ աչօք իւրովք տեսեւ զիրս զայս, գրեաց եւ եւս զանուն ընկերաց իւրոց առաքելոց ամենեցուն յաշխարհս եւ ի քաղաքս ուր եւ շրջէին ի նոսա. եւ նոքին իսկ առաքեալքն ընկերակիցք նորա՝ գրեն եւ ցուցանէին նմին իսկ Յակոբոսի զամենայն ինչ՝ զոր առնէ Քրիստոս ի ձեռն նոցա, եւ ընթեռնուն եւ պատմեն առաջի ժողովրդեանն։„ Ասկէ կրնանք մէկ կողմանէ հետեւցընել որ Պատրոնիկէի զրուցին պատմութիւնը Յակոբոս անուամբ ծանօթ ըլլալու էր գրչին. — յիշեցինք որ կայ հայերէնին մէջ նաեւ թուղթ մը Յակոբու առ Կոդրատոս. — եւ միւս կողմանէ՝ թէ Առաքելոց իրարու հետ թղթակցելու զրոյց մը կար, զոր միաբան կ'աւանդեն մեր աորին եւ Լաբուբնա։

Կարեւոր է "Վարդ. Առաք.„ գրութեան այս խօսքը նաեւ այնու որ ասորի հեղինակն ասով շատ մ'անվաւերական գրքեր կը յիշէ՝ ի մասնաւորի Անդրէաս եւ Թովմաս առաքելոց գրութիւններ։ Ըստ Ցան հմուտ գիտնոյն՝ որ անցողակի կը յիշէ քիչ յառաջ ի մէջ բերուած կեղծիքը[2], նաեւ անվաւեր գրականութեան մէջ "Մարկոսի, Անդրէի, Ղուկասու եւ Թովմայի անուամբ թղթեր եղած չեն երբեք։„ Դժուար է անոր համար որոշել թէ ինչ գործքեր կ'ակնարկէ ասորի անվաւերական գիրն յիշեալ տողերը գրելով։ Գիւրըթոն[3] կը կարծէր թէ "այս տե-

---

[1] G. Phil. 17, 1—7 = Հայ՝ 17, 28—35։

[2] Zahn, Diatessaron, p. 92, n. 3. Սոյն գիտնականը կը յիշէ նաեւ որ այս կեղծիքին նման կը գտնուի նաեւ սա գրութեանց մէջ՝ Clem. Hom. I, 20 եւ Epist. Petri ad Jac. 3.

[3] Anc. syr. doc. p. 172.

ղէն կը տեսնուի որ Արեւելից եկեղեցւոյն մէջ այս ժամանակներն ծանօթացած էին թղթեր կամ այլ գրութիւնք թէ Անդրէի եւ թէ Թովմայի անուամբ„ եւ կը յիշէ որ ցայժմ ալ կայ գրութիւն մ'որ է “Գործք եւ վկայութիւն սրբոյ Առաքելոյն Անդրէի,„ եւ թէ Եպիփան կը յիշէ այս վերջին գրութիւնը։[1] Անվաւերականաց ուրիշ ընդարձակ քննութեան մը մէջ[2] կը յիշուին “Գործք Անդրէի„ զոր արդէն Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Գ, 25) զանց չէ ըրած յիշել, “Գործք Անդրէի եւ Մատթէի ի քաղաքին Մարդակերաց,„ զոր կը յիշէ Եպիփան միանձն. (Հրտ. Dressel, 1843, p. 47.) “Գործք Թովմայի,„ զոր կը յիշեն Եւսեբիոս եւ Եպիփան, (— Եւս. Եկեղ. Պատմ. Գ, 25. Եպիփան, Հերես. ԽԲ, 1. ԾԱ, 1. ԾԳ, 2. Հրտ. Thilo, 1823ին եւ Tischendorf, Acta Apost. p. 190, եւն. —) եւ “Գործք Անդրէի եւ Պետրոսի,„ զոր Հրատարակած է Թիշէնտորֆ։ Սակայն՝ որչափ կ'երեւայ մեր ատուրոյն խօսելու կերպէն, իր ակնարկածը չեն այս կամ այլ “Գործք„ (Acta), այլ թղթեր կամ Աւետարաններ՝ որ յիշեալ Առաքելոց անունը կը կրէին։ Թովմայի անուամբ աւետարան մ'արդէն ծանօթ է այլեւայլ խմբագրութեամբք[3], եւ ասորական մ'ալ Հրատարակեց Ռայթ գիտնականը[4],

---

[1] *Πράξεις καὶ μαρτύριον τοῦ ἁγίου ἀποστόλου Ἀνδρέου*, ed. Woog: Acta Andreae, 1749. Tischendorf, Acta apocr. p. 106։ Համմտ. Եպիփան (Հերես. Գիրք Բ, 61.) “Առաքելականք . . . ընդ կաթարեանսն միայն ի Գիրսն՝ զորս ընդունին, ունին զհերետութիւն. սոքա առաւել եւս յեցեալք են ի Գործս Անդրէի եւ Թովմայի, զի այսպէս կոչեն զնոսին։„

[2] Տես Herzog, Realencyklopädie. 2. Aufl. I, 524—6.

[3] Tischendorf, Evangelia apocrypha, Lips. 1876, p. XXXVI ff. եւ 140—180. Համմտ. նաեւ Herzog, Realencykl. I, 499, 521, եւն։

[4] W. Wright, Evang. Thom. London, 1875. Ասորերէն ընդարձակ “Պրակք Յուդայ Թովմայի Առաքելոյ„ անվաւերականն մ'ալ արդէն Հրատարակած էր քիչ յառաջ (W. Wright, Apocryphal Acts of the Apostles. I, pp. 172—333.)

*որ թերեւս ըլլայ մեր ասորւոյն տեսածը։ Աւելի դժուար է ըսել թէ Անդրէի ալ անուամբ աւետարա՞ն մը տեսած է ասորին թէ ոչ.[1] եւ ընդհանրապէս այս նկատմամբ հաստատ բան մ'որոշել չենք կրնար։*

*Այժմ դառնալով մեր խնդրին՝ կարծենք որ ըստ բաւականին ցուցուեցաւ որ այս երկու ասորի գրութիւնք ո՛չ թէ լոկ միեւնոյն գրականութեան ծնունդն են, այլ նաեւ իրարմէ ոչ բոլորովին անկախ։ Այս պատճառաւ մեր հրատարակութեան մէջ զանց չենք առած երկու գրութեանցս նման կտորներն ու բացատրութիւնքն իսկ համեմատել իրարու հետ, որչափ ալ ասոնց մին կամ միւսն առանձինն առեալ մեծ նշանակութիւն մը չունենայ։ Սակայն ոչ քիչ անգամ նաեւ այս փոքր նմանութիւններն այնպիսի են, որ չեն կրնար իբրեւ բոլորովին աննշանակ նկատուիլ։ Իբրեւ օրինակ դնենք հոս քանի մ'օրինակ։*

| "ՎԱՐԴ. ԱՌԱՔ." | ԼԱԲՈՒԲՆԱ |
| --- | --- |
| 1. *"Զի տեսանէին զառաքելոցն՝ թէ զոր ինչ ուսուցանէին բանիւք, զնոյն եւ արդեամբք ցուցանէին առաջի ամենայն ուրուք։"* | *"Զոր ինչ բանիւ քարոզեմք՝ զնոյն եւ արդեամբք կատարեսցուք առաջի ամենայն ժողովրդոց։" — "Զոր ինչ ասէին եւ ուսուցանէին եւ խրատէին զայլս՝ ինքեանք գործովք ցուցանէին յանձինս իւրեանց։[2]"* |

[1] *Ըստ* Herzog, Real. I, 519 *"Անդրէի Աւետարան" մը կը յիշեն ոմանք* (Innocens. I, epist. 3, 7. Augustin. Contra advers. leg. et prophet. I, 20) *բայց կը յաւելու թէ թերեւս այս "Աւետարանը" նոյն ըլլայ "Գործք Անդրէի" անվաւերականին հետ։ — Գիւրըլթան (անդ) դիտել կու տայ նաեւ որ "Վարդ. Առաք." գրութեանս այս տեղւոյն մէջ "Նաեւ Յուդայի թուղթը չի յիշուիր, սակայն վերջինս ասորական Աստուածաշնչի կանոնին մէջ երբեք չէր ընդունուած," եւ ի մէջ կը բերէ* De Wette, Einleitung, 6. Aufl. p. 342։

[2] G. Phil. p. 41, 3 *եւ* 51, 10 = *Հայ՝ էջ* 39, 1 *եւ* 48, 14։

| | |
|---|---|
| 2. «Եւ ձեռնադրութեամբ քահանայութեան՝ զոր ընկալան առաքեալքն ի Տեառնէ, Թուեաւ վաղվաղակի քարոզութիւն աւետարանին ընդ ամենայն տիեզերս:» | «Ուրոյ (Քրիստոսի) Նոոուցեւլ ոոէտօրան ընտ ոմենոյն տէէվէրս նշանօք եւ արուեստիւքն» եւն¹: (— Այս խօսքն ունի նաեւ Թուղթն Յակոբու առ Կոդրատոս:) |
| 3. «Արարեալն տօն յիշատակի վերացմանն նորա առ Հայր յերկինս փառաւորեալ:» | «Եւ իջեալ ինքն միայն Եո ԵլԵոլ (Ա․ «Վէրոցեւլ») հանդերձ բազմօք ոո Հոյր Եոր Փոոոոոորեոլ:»² |

Կարծենք այսչափն ալ կը բաւէ համոզելու որ երբ Լաբուբնայի վերջին խմբագրողն յիշատակութիւն կ՚ընէ «Նորպոցէ Էօ օրէնոց որք եղան յաշակերտաց յԵրուսաղէմ», ուրիշ բան չի հասկընար՝ բայց այս մեր սուրբ «Նորպէ Էօ օրէնէ» Առաքելոցն, որ իւր այժմու ձեւին մէջ «Վարդապետութիւն Առաքելոց» վերնագիրը կը կրէ:

Եթէ մէկ կողմանէ ապահով է որ Լաբուբնայի հեղինակը գիտէ կանոնաց այս հաւաքածոյն, միւս կողմանէ խնդրական է թէ արդեօք նաեւ նոյն ձեւին մէջ՝ զոր առջեւնիս ունինք այժմ, տեսած է Լաբուբնա մեր կանոնները: Այս հարցման կարծինք պէտք ենք ժխտական պատասխան տալ: Ըստ ամենայն հաւանականութեան Ադդէի վարուց գրիչն այս սուրբ գրութիւնն ոոբէշ, այն է՝ Ընոֆոյն Յէոոլ կամ Խօբոֆրոոնեոժբ ունեցած իրեն առջեւ. մանաւանդ որ կրնանք ապահովութեամբ պնդել թէ «Վարդապետութիւն Առաքելոց» իւր այժմու ձեւին մէջ աւելի նոր է ժամանակաւ քան

---

¹ G. Phil. p. 21, 10 = Հայ՝ էջ 21, 19:

² G. Phil. p. 8, 15 = Հայ՝ էջ 10, 9: Համեմ. նաեւ Կան. Գ «Եւ յայտնեաց Տէրն մեր վասն դատաստանին իւրոյ եւ խաչելութեան եւ մահուան եւ յարութեան», եւ Լաբուբնա (G. Phil. 43, 16 = Հայ՝ 40, 32) «վկայեն . . . վասն դատաստանի եւ վասն չարչարանաց եւ յարութեան եւ վերանալոյն», եւն:

Լաբուբնայի գործքն, այնպէս որ վերջին գրութենէս ետքը պէտք ենք դնել ժամանակաւ։

Արդէն վերն երբ Զ (Ասոր. Ե) կանոնին վրայ կը խօսէինք,[1] ըսինք որ այն կանոնն աւելի կրտսեր ժամանակի բարեկարգութիւն մը մեր առջեւ կը դնէ՝ կէսարքեպիսկոպոսաց աստիճանն յիշելով, որ դեռ եւս անծանօթ կ'երեւայ Լաբուբնայի խմբագրին։[2] Բայց աւելի որոշ կը տեսնուի այս ի մասնաւորի երկու կտորի մէջ, որ “Վարդապետութեան Առաքելոց„ վերջին մասին՝ աշխարհաց ցուցակին՝ ամէնէն նշանաւոր մասերն են եւ կը նկարագրեն Ադդէի եւ Ագգէի գործունէութիւնը։ Կը շատանանք միայն այս երկու կտորները հոս համեմատելով, ի բաց թողլով ուրիշ կէտերն որ կրնային ի մէջ բերուիլ իբրեւ ապացոյց մեր կանոնաց խմբագրութեան աւելի կրտսեր ըլլալու Լաբուբնայէն։

“ՎԱՐԴ. ԱՌԱՔ.„

1. (Ցուցակ աշխարհաց՝ Թ.)

“Ընկալաւ ձեռնադրութիւն քահանայութեան յառաքելոցն՝ Ուռհա եւ ամենայն քաղաքք որ շուրջ զնովաւ, Մծբին եւ Արաբ եւ ամենայն Հիւսիս եւ կողմանք որ զնովաւ եւ Հարաւ եւ սահմանակիցք Միջագետաց՝ յԱդդէէ որ մին է յեւթանասունն եւ երկուց առաքելոցն, որ աշակերտեաց անդ եւ շինեաց անդ եկեղեցի եւ քահանա-

ԼԱԲՈՒԲՆԱ

(G. Phil. 18, 20. 35, 5. 37, 3. 40, 8 եւն։)[3]

“Որք էին ի քաղաքիս յայսմիկ (Ուռհա)... Մըծբնացիք եւ Խառանացիք հանդերձ բնակչօք աշխարհին Միջագետաց եկեալ.. զի լուիցեն վարդապետութեան Ադդէի առաքելոյ...։ — Ընդունէին զվարդապետութիւն նորա ամենայն աշխարհն Միջագետաց, եւ ամենայն կողմանք որ շուրջ զնովաւ։ — Ընդունէին ի նմանէ (յԱ-

---

[1] Տես վերը՝ էջ 48—50։

[2] Տես նաեւ Tixeront, les orig. p. 116, n. 7 եւն։

[3] Հայ՝ էջ 19, 5. 32, 12. 34, 13. 38, 1 եւն։ Հոս դրինք միայն քանի մը կտորներ ի համեմատութիւն։ Յայտնի է որ ամբողջ Լաբուբնայի գրութիւնն Ադդէի պատմութիւնն է։

յայտ եւ պաշտեաց անդ յառաջնորդութեանն,»

դէ) զձեռնադրութիւն քահանայութեան, եւ յաշխարհին իւրեանց յԱսորեստանի զգաւառականս իւրեանց աշակերտէին . . . : — Շինեաց Ադդէ առաքեալ զեկեղեցին Ուռհայի... եւ յայլ եւս գիւղս ի հեռաւորս եւ ի մերձաւորս, շինեալ նոցա եկեղեցիս» եւն։

2. (Անդ, ժ։)

«Ընկալաւ՝ ձեռնադրութիւն քահանայութեան յառաքելոցն՝ Պարսք (Հայ. «եւ Պարթեւքն») եւ ամենայն Ասորեստան եւ Հայք (— Հայն չունի «Հայք» —) եւ Մարք եւ ամենայն կողմանք որ շուրջ զԲաբելոնիւ, եւ Խուժաստան եւ Գէղք, մինչեւ ցսահմանս Հնդկաց (Հայ «Գդացն»), մինչեւ ցԳոգ եւ Մագոգ, եւ այլ աշխարհք որ շուրջ զկողմամբքն զայնոքիւ՝ յԱգգէէ (Հայ «յԱդդէէ») կերպաստագործէ յաշակերտէ Ադդէի առաքելոյ, (Հայ «որ բժշկեաց զԱբգար թագաւոր Ուռհայի։»

(G. Phil. 40, 7. 50, 1. 47, 18 եւն։)[1]

«Կարգեաց (Ադդէ)․․ ի կարգ եպիսկոպոսութեան (Ասոր. «հրամանատար եւ առաջնորդ») յիւրում տեղւոջ զԱգէ (= զԱգգէ) Կերպաստագործ . . . : — Եւ ինքն ձեռնադրութեամբն՝ զոր ընկալաւ ի նմանէ՝ կացոյց երիցունս եւ առաջնորդս ընդ ամենայն երկիրս այս Միջագետաց: — Տուեալ պատասխանի Ադդէի (Ագգէի) Կերպաստագործի թագաւորին եւն: — Բայց Ադէ (Ագգէ) կերպաստագործ եւ խոյրաքանդակ թագաւորին» եւն։

Նախ կանխենք ըսենք որ այս երկու կտորներն ալ դրինք ըստ Ասորի բնագրին ուղղելով Հայոյն ընթերցուածներն, վասն զի Հայն այս տեղերն իր բնագրէն դիտմամբ շեղած է՝ ազգային

[1] Հայ՝ էջ 38, 15. 46, 17. 44, 19. 32, 13 եւն։ Ընդհանրապէս այս համեմատութեանց մէջ Ասորի բնագրաց ընթերցուածներն դրած ենք. վասն զի երկու գրքին Հայ թարգմանութիւնքն ալ այս տեղերը հաւատարիմ չեն մնացած. որուն վրայ յետոյ պիտի խօսինք։

աւանդութեան չհակառակելու համար, ինչպէս յետոյ պիտի տեսնենք։ Նոյնպէս քանի մ'այլ մտադրութեան արժանի կէտերուն վրայ այլուր պիտի խօսինք առթիւ։

Գալով այժմ բուն խնդրին՝ ամենեւին չի կրնար ուրացուիլ որ «Վարդապետութեան Առաքելոց» խմբագիրն քաջ ծանօթ է Ադդէի՝ ինչպէս նաեւ Ադդէի պատմութեան, ասորական այն նշանաւոր զրոյցին՝ որուն բուն աղբիւրն եւ յետնոց աւանդողն է Լաբուբնայի անունը կրող գործքը կամ Աբգարու թուղթը։ Այս միայն բաւական է ցուցնելու որ կանոնաց հաւաքիչը կարդացած է Աբգարու զրոյցն՝ կամ անոր հնագոյն խմբագրութեամբն՝ զոր գիտնականք «Եդեսական Արձանագիրք» կ'անուանեն, եւ կամ գոնէ՝ որ ճշդագոյն եւս կ'երեւայ, անոր նորագոյն խմբագրութեամբն՝ որ է այժմու Լաբուբնայի գրութիւնը։ Թէ այս վերջինս է մեր կանոնաց հաւաքչին տեսածն եւ ոչ թէ հնագոյնը, կը հետեւցընենք անկէ որ մեր կանոնաց հաւաքածոյից մէջ թէ Ադդէի եւ թէ մանաւանդ Ագգէի զրոյցներն Լաբուբնայի պատմածներէն աւելի ընդարձակուած ու զարգացած են, որ նշան է յետագայ ժամանակի մէջ զրուցին առած կերպարանափոխութեանց եւ յաւելուածոց։

Նախ Ադդէի նկատմամբ Լաբուբնա միայն կ'ընդունի որ Ուռհա եւ իր շրջակայքն եւ ընդհանրապէս Միջագետք աշակերտեց եւ մեռաւ յՈւռհա. բաց ի Ուռհայէ՝ յանուանէ կը յիշուի միայն Խառան, իսկ «Ասորեստան» իրեն աշակերտաց ձեռօք միայն քարոզած կ'ըսուի։ «Վարդապետութիւն Առաքելոց» Լաբուբնայի այս պատմութիւնն յընդհանուրն ճշդիւ աւանդած է, թէեւ յականէ յանուանէ չէ յիշած զԽառան, ու զԱսորեստան ոչ թէ Ադդէի, այլ Ագգէի գործունէութեան շրջանին վերագրած է։ Բայց իրեն աւանդութիւնն Լաբուբնայէն կրտսեր է, այնու որ Ադդէի գոր-

ծունէութեան շրջանին աւելի ընդարձակուած է, վասն զի Արաբիա, Հիւսիս եւ Հարաւ եւ ասոնց շրջակայ տեղերն ալ Ադդէի գործունէութեան ասպարէզ եղած են, զոր դեռ չի գիտեր Լաբուբնա։

Սակայն ամէնէն որոշ կը տեսնենք այն երեւոյթը Ագգէի պատմութեան մէջ, վասն զի այս վերջնոյս գործունէութեան շրջանին վերագրուած են հեռաւորագոյն վայրեր։ Լաբուբնա միայն կ'ըսէ[1] որ Ագգէ “կերպասագործ եւ խոյրաքանդակ„ էր թագաւորին, աշակերտ Ադդէի եւ յաջորդ, եւ թէ իրմէ կառավարուեցաւ “ամենայն երկիրն Միջագետաց„ եւ թէ յՈւռհա մեռաւ մարտիրոսութեամբ։ “Վարդապետութիւն Առաքելոց„ այս ամէնն առած է Լաբուբնայէն, — “կերպասագործն„ նաեւ բառ առ բառ, — սակայն Լաբուբնայի այս պարզ պատմութիւնն արդէն շատ փոփոխուած եւ կրօնաւորագոյն աւանդութեան դարձած է մեր ասորւոյն քով, որուն համեմատ Ագգէ ոչ միայն Պարսկաստանն ու Ասորեստան, Հայոց աշխարհն ու Մարաստան քարոզած է, այլ նաեւ ի Խուժաստան, Գէլք, մինչեւ Հնդկաց սահմաններն եւ վերջապէս մինչեւ Գոգ ու Մագոգ եւ անոնց շրջակայքն, ճշդիւ ինչպէս կը գտնենք յետագայ ասորի մատենագրաց քով պատմուած Ագգէի եւ Մարէսի նկատմամբ[2]։ Այս աւանդութիւնն՝ ինչպէս ամէն մարդ կրնայ տեսնել, Ադդէի եւ Ագգէի նախնական զրոյցին՝ զոր կը գտնենք Լաբուբնայի քով, աւելի ընդարձակուածն ուստի եւ աւելի կրօնաւորագոյն վարդա-

---

[1] Տես G. Phil. p. 40, 8—53, 7 = Հայ՝ 38, 12—49, 20։

[2] Այսպէս՝ Եղիա Դամասկացի, Մարէս Սողոմոն, Բար-Հեբրէոս եւն. (տես Ass. B. O. IV, p. 15, 16 եւն։) Մարէսի ընդարձակ Պատմութիւն մ'ալ՝ որուն գլխաւոր աղբիւրներէն մին է Լաբուբնա, տես ի Bedjan, Acta Martyrum et Sanctorum. Paris. 1890. I, pp. 44—95 (ԺԲ գլուխք, ասորերէն։)

ցուցնէ, որով Լաբուբնայի գործքէն աւելի կրտսեր պէտք է որ ըլլայ մեր գրութիւնը։

Անշուշտ հակառակն երեւցած պիտի ըլլայ ընթերցողաց մեր այս կարծիքն, այնու որ վերն ալ ցուցուցինք որ Լաբուբնա գործածած է այս "կարգք եւ օրէնք" կոչուած կանոնները։ Ասոր մեկնութեան համար ըսենք որ ամէն քննիչք կ'ընդունին[1] որ Լաբուբնայի գործքն երկու խմբագրութեանց արդիւնք է։ Աբգարու զրուցին նկատմամբ կային նախնաբար "Եդեսական Արձանագիրք" (Acta Edessena), զորոնք առեալ է Եւսեբիոս. այս գրութիւնն Դ դարու վերջին կիսուն ատորի մը կերպարանափոխ ըրաւ եւ ստեղծեց այժմու Լաբուբնայի անուամբ գրութիւնը։ Արդ մենք ցուցուցինք ցայս վայր որ մեր կանոնաց մէկ մասն արդեամբք հնագոյն ժամանակներէն է, եւ թէ մէկ կողմանէ մեր կանոնները արդէն ծանօթ էին այն ատորւոյն որ "Եդեսական Արձանագիրքն" փոխեց եւ յօրինեց զԼաբուբնան, եւ միւս կողմանէ մեր այժմու "Վարդ. Առաք." գրութեան մէջ կան կտորներ որ աւելի կրտսեր են քան նոյն իսկ Լաբուբնան, այսպէս Ադդէի եւ Ագգէի կտորները եւն. ինչպէս նաեւ որ կանոնքս հաւասար հնութիւն չունին, վասն զի հնագոյն ժամանակի կանոնաց քով կը գտնենք բոլորովին նորագոյններ։ Կը մնայ ուրեմն ընդունիլ որ ինչպէս Լաբուբնա, նոյնպէս նաեւ այս ատորի "Վարդ. Առաք." գրութիւնն երկու խմբագրութիւն ունեցած է։ Կանոններս կամ ճիշդ եւս ատոնց նախնականքն անշուշտ ամբողջ մը կը կազմէին՝ թերեւս համառօտ ներածութեամբ եւ նոյնպէս համառօտ վերջաբանով մը։ Այս առաջին խմբագրութիւնն է որ Լաբուբնայի վերջին հեղինակը առեալ է, եւ այս նախնականին կը հային մեր վերը յիշած կոչմունքն ու ակնարկութիւնքն

---

[1] Տես Tixeront, p. 120—128 եւն։ Հմմտ. Zur Abgar-Sage, p. 10—12։

որ կը գտնուին Աբգարու Թղթին մէջ։ Աբգարու զրուցին իր այժմու ձեւ առնելու ժամանակէն քիչ մ'առաջն ուրիշ ասորի մ'ալ կերպարանափոխ ըրաւ յիշեալ նախնական կանոնները նոր կտորներ աւելցընելով, հիներն ըստ իրեն ժամանակին սովորութեան եւ բարեկարգութեան ուղղելով, շատ մը նորագոյն վճիռներ՝ ի մասնաւորի Ղաւոդիկեայ ժողովոյն կանոններն առնելով իր հաւաքածոյին մէջ, եւ այսպէս եղաւ այժմու “Վարդ. Առաք.„ որուն այս երկրորդ խմբագրութիւնն կրտսեր է Լաբուբնայէն։

Տեսանք որ այս վերջին խմբագրութեանս ժամանակն որոշ կրցանք իմանալ, այն է ապահովապէս 386էն յառաջ եւ 360էն վերջն, եւ իբր 380ին։ Ասկէ կրնանք հետեւցընել որ այս 380 թուականէն քիչ մը յառաջ դնելու է Լաբուբնայի վերջին խմբագրութեան ժամանակը, զոր Թիքսըրոն անորոշ թողուցած էր 370—390 տարեաց մէջ։ “Վարդ. Առաք.„ աստով Աբգարու Թղթին վերջին կերպարանափոխութեան ժամանակը ճշդելու համար կարեւոր կռուան մը կ'ըլլայ։

Անհնարին է ի հարկէ կանոնացս նախնական խմբագրութիւնն իր առաջին ձեւին մէջ վերստին կազմել։ Ապահով է միայն որ նաեւ այս նախնականն ասորի լեզուաւ տեսած է Լաբուբնա եւ թէ այն Եդեսիոյ մէջ ծանօթ էր, ինչպէս կրնանք թերեւս հետեւցընել ԻԸ (Ա. ԻԵ) կանոնէն, որուն վրայ վերը խօսեցանք։[1] Իսկ այն խնդրին նկատմամբ թէ ե՞րբ յերեւան եկած էր այս նախնականը, կրնանք թերեւս իբր Գ դարուն վերջերը դնել, թէեւ ի հարկէ որոշ բան մ'ըսել չենք կրնար։[2]

---

[1] Տես վերը՝ էջ 35—37։

[2] Թիքսըրոն սա հետեւութիւնը կը հանէ (Tixeront, les orig. p. 116—117.) “Պէտք չէ սակայն հետեւցընել թէ “Վարդապետութիւն Ադդէի„ (= Լաբուբնա) աւելի կրտսեր կամ բացարձակապէս նոյն ժամանակէն ըլլայ՝ որմէ է այս վերջին գրութիւնս (“= Վարդ. Առաք.„)։ Վերջինս Ադդէի

Եթէ կարելի է ենթադրութիւն մ'ընել, կրնանք թերեւս ըսել որ նախնականն այնպիսի երեւոյթ մ'ունէր, որ ընթերցողք զանոնք իբրեւ բնիկ առաքելական կարգադրութիւններ նկատել կը յօժարէին, եւ որչափ կ'երեւայ իբրեւ այն կարգադրութիւններ՝ զորոնք Առաքեալք դրին իրենց Երուսաղէմի ժողովյն մէջ (Գործ. ԺԵ, 6—29),

---

առաքելութեան վրայ աւելի մանրամասն տեղեկութիւններ կու տայ քան Լաբուբնա. (տես էջ՝ 69.) երկու յիշատակարանացս մէջ ժամանակագրութեան եւ բարեկարգութեան տարբերութիւններ կը գտնուին„: Այս տարբերութեանց վրայ այսպէս կը գրէ նոյն տեղը. “Ըստ “Վարդ. Առաք.„ համբարձումն եղած է Յունաց 339ին (= 28 Յ. Ք.) իսկ ըստ “Վարդ. Ադդէի„ 340ին (= 29 Յ. Ք. այս նախնական ժամանակագրութիւնը պահած է հայ թարգմանութիւնը.) տես Cureton, Anc. syr. doc. p. 167. Դարձեալ “Վարդ. Առաք.„ իւր Ե կանոնին մէջ Քառասնորդաց վրայ կը խօսի. “Վարդ. Ադդէի„ կ'երեւայ թէ չի գիտեր այս աստիճանն, եւ սարկաւագէն անմիջապէս վերջը կը դնէ “տօները„: (էջ 40.) Վերջապէս համեմատելով այս կանոնացս բնագիրն որ կը գտնուի Գիւրըլթոնի քով, այն բնագրին հետ, զոր կը գտնենք առ Եբեդ-Յեսուայ (“Վարդ. Առաք.„ կան. Զ եւ Թ եւ Եբեդ-Յեսու՝ կան. Զ եւ Ը), կը տեսնենք որ կը փոփոխէին բնագիրը, որպէս զի յարմարցընեն ընդօրինակման ժամանակ տիրող սովորութեան„: Գիտնականը խորհրդածութիւնքը կը կնքէ այսպէս. “Հաւանական է որ այս առաքելական կանոնքս նախնաբար ուրոյն ժողովածոյք մը կը կազմէին, քանի որ դեռ չէին այս ձեւն առած: Այս նախնական խմբագրութեան վրայ կրնան յեցեալ ըլլալ այն նմանութիւնքն (Լաբուբնայի հետ) զոր նշանակեցինք: Բայց որովհետեւ դժուարին է թէ այս առաջին խմբագրութիւնն մինչեւ Գ դար ելլէ, — յունական կանոնք մեծաւ մասամբ հազիւ Գ եւ նաեւ Ե դար միայն կը հասնին, — պէտք ենք նկատել որ գոնէ Գ դարէն են, եւ ըստ հետեւորդի ընդունիլ որ “Վարդ. Ադդէի„ մէջ գտնուած Առաքելական կանոնաց յիշատակութիւնն եւ այն բարեկարգական մանրամասնութիւնք որ անկէ առնուած են, ըլլան յաւելուած Աբգարու զրոյցին նախնական բնագրին„: — Ամբողջութեան համար յիշենք որ “Վարդ. Առաք.„ գրութեան ժամանակին համար անգղիարէն Քրիստոնէական Մատենախօսական Բառագրոց մէջ (A dictionary of Christian Biography, I. p. 19) կ'ըսուի թէ ըլլայ “Ասորական գործք մը՝ Գ դարուն վերջերը յօրինուած„, իսկ Ցան գիտնականը (Diatess. p. 92, n. 3) թէ “Շատ նշանաւոր են “Վարդ. Առաք.„ գրութեան տուած տեղեկութիւնքն, որ թէեւ առանց կապակցութեան չէ “Վարդ. Ադդէի„ հետ, բայց միշտ շատ աւելի ուշ գրուած է„:

որուն վրայ վերը խօսեցանք, եւ թէ ըստ այսմ Ղուկաս անունը կար կանոնաց նախնական հաւաքածոյին ճակատը։ Զայս կը հետեւցընենք վերջին խմբագրին մէկ երկու ակնարկութիւններէն։ Կանոններէն վերջը կը գրուի նախ թէ "զայս ամենայն՝ զոր ինչ կարգեցին Առաքեալքն, ոչ եթէ անձանց իւրեանց միայն կարգեցին, այլ եւ այնոցիկ՝ որ զկնի իւրեանց լինելոց իցեն." եւ յետոյ կ'աւելցընէ. "Նաեւ Պաւղոս եւ Տիմոթէոս, որ շրջէին ի կողմանս Ասորւոց եւ Կիւլիկեցոց, զայն եւ զայս [կարգս եւ] զաւրէնս պատուիրէին զառաքելոցն եկեղեցեաց։" Հոս յայտնապէս կ'ուզուի որ կանոնքս ըլլան այն կարգադրութիւնքն որ դրուեցան երբ "ժողովեցան Առաքեալքն եւ Երիցունք" հրէական օրինաց պահպանութեան նկատմամբ վէճերը քննելու (Գործ. ԺԵ, 6—29), զորոնք առնլով՝ Պաւղոս "շրջէր ի կողմանս Ասորւոց եւ Կիլիկեցւոց, եւ հաստատէր զեկեղեցիսն" (Գործ. ԺԵ, 40, 41)։ Հաւանական է որ այս մասն նախնական խմբագրութեան կը վերաբերի, վասն զի երկրորդ խմբագրիչն ուրիշ կարծիք ունի կանոնացս ծագման նկատմամբ, այն է թէ Առաքեալք Հոգեգալստեան օրն՝ երբ ի միասին էին եւ դեռ չէին իրարմէ բաժնուած քարոզութեան երթալու համար, դրած ըլլան զասոնք, ինչպէս կը պատմուի ներածութեան վերջը։

Ըսինք նաեւ Ղուկաս անունը կ'երեւայ թէ կը կարդացուէր գրութեանս ճակատը։ Այս եզրակացութիւնը կը համարձակինք հանել գրութեանս վերջերէն, ուր շատ մ'առաքելոց ո́ւր գնացած եւ քարոզած ըլլալը պատմուելէն ետեւ կը գրուի. "Իսկ Ղուկաս աւետարանիչ, որում եղեւ փոյթս այս եւ գրեաց հոգաբարձութեամբ զամենայն Առաքինութիւնս եւ զԳործս Առաքելոց, եւ զԿարգս եւ զԱւրէնս պաշտաման քահանայութեան նոցա, եւ եթէ յոր կողմն չոգաւ իւրաքանչիւր ոք ի նոցանէ.

*փութով առանց յապաղելոյ [զայս] եւ եւս յաճախագոյն քան զայս գրեաց Ղուկաս եւ ետ ի ձեռս Պրիսկեայ եւ Ակիւղեայ աշակերտաց իւրոց„ եւն։ Յայտնի է ուրեմն որ սորի մատենագիրը Ղուկասու գործք կը համարի բաց ի "Գործք Առաքելոց„ գրութենէն ("զԱռաքինութիւնս եւ զԳործս Առաքելոց„) նաեւ մեր այս կանոնաց-մատեանը, որուն բովանդակութիւնը շատ ճիշդ կերպով բացատրուած է, ըստ որում երկու գլխաւոր մասերն ալ նշանակուած են.* 1. *"Տէքսէ եւ նամոսէ* (טכסא ונמוסא)[1] *պաշտաման քահանայութեան նոցա,„ այսինքն՝ կանոնները. եւ* 2 *այն մասը, որ կը պատմէ թէ "յոր կողմն շրջան իւրաքանչիւր ոք ի նոցանէ,„ որով կը նշանակուի ճշդիւ սորի գրութեանս վերջին մասը՝ աշխարհաց ցուցակը։ Եւ որովհետեւ սորին կ'ըսէ թէ Ղուկաս "զայս եւս յաճախագոյն քան զայս գրեաց,„ յանդգնական չըլլայ թերեւս կարծել որ մեր այս գրութեան նախնականն քաղուածոյ մըն էր բուն աւելի ընդարձակագոյն գրութենէ մը, որ Առաքելոց գործքերն ու ըրած կարգադրութիւնները պատմող անվաւերական մըն էր։ Այս ամէնն ի հարկէ հաւանական ենթադրութիւնք են միայն։*

*Սակայն անշուշտ յանդուգն չըլլար ըսել թէ այն նախնականը սերտ կապ ունէր ուրիշ անվաւերականի մը հետ, որ "Վիճակք Առաքելոց„* (Sortes Apostolorum) *կը յորջորջուի*[2]*։ Գոնէ մեծ նոյնութիւն կայ մեր գրութեան եւ վերջնոյս մէջ։ Վասն զի "Վիճակքն„ կը պարունակեր նախ այն զրոյցը թէ Առաքեալք անտեղեակ օտար լեզուաց՝ Համբարձմանէն անմիջապէս ետքը վիճակաւ բաժնեցին*

---

1 *Տես վերը՝ էջ* 85։

2 *Այս անվաւերականին վրայ տես* A dictionary of Christian Biography. Vol. I. (London, John Murray), p. 17 *եւ* 19ff, *ուր ի մէջ կը բերուի նաեւ մեր կանոնաց մատեանը։*

աշխարհքն միջերնին (— նման մեր գրութեաննե-
րածութեան՝ ուր Համբարձմանէն անմիջապէս ետքն
կը դնէ Առաքելոց այլեւայլ լեզուաց պարգեւ
ընդունիլն, իսկ անկէ յառաջ անոնց հոգ ընելն ու
խորհրդակցիլն՝ օտար լեզուները չգիտնալուն հա-
մար. —) եւ ապա կը դնէր ցուցակն այն աշխարհաց՝
ուր Առաքեալք գացին քարոզելու, անշուշտ անոնց
ունեցած արկածից վրայ տեղեկութիւներ ալ տալով.
(— Ճշտիւ այսպիսի մաս մ'ալ ունի մեր գրութիւնը
վերջերը, ինչպէս տեսանք։) Նիւթոյ կողմանէ ուրեմն
սերտ կապ ունէր "Վիճակքն" զոր անշուշտ մեր
կանոնաց խմբագրիչն առջեւն ունեցած ըլլալու է, եւ
թերեւս իբրեւ գլխաւոր աղբիւրներէն մին գործա-
ծած։ "Վիճակքն" Մանիքեցւոց մատեաններէն
եղած կ'ըսուի, զոր չեն ընդունիր արդի քննիչք,[1]
եւ հնոց շատ ծանօթ էր։

---

[1] Անդ, էջ 19 եւն։ Այստեղ քննիչը կը յիշէ որ "Վիճակք Առաքելոց" կը գտնուի Գելասիոսի ցուցակին մէջ այսպէս „Liber qui appellatur Sortes Apostolorum apocryphus“ եւ այն այնպիսի դրից մէջ՝ որ գնոստիկեան կամ մանիքէական գրութիւն մ'եղած կրնայ հետեւցուիլ։ Այսպէս դատեց նաեւ Thilo (Acta Thomae, p. 91 եւն) հետեւելով Ս. Օգոստինոսի (de Util. Cred. c. 3 հմմտ. Adim. c. 17) եւ ընդունելով որ Մանիքեցիք վիճակաւ բաժնելու եւն զրոյցը հնարած են Հոգեգալստեան պատմութեան տեղ, այնու որ Ս. Հոգւոյ գալուստը չի յիշուիր հոն, իսկ Առաքելոց համար կ'ըսուի թէ անտեղեակ այլ լեզուաց՝ բաժնեցին վիճակաւ երկիրը Համբարձմանէն անմիջապէս ետքը։ Քննիչն այս ցուցման տկար ըլլալը կը ցուցընէ ի մէջ բերելով մեր կանոնաց-մատեանը, ուր Առաքելոց տատամսիլը կը պատմուի օտար լեզու չգիտնալուն համար, բայց այս արգելք չըլլար որ Ս. Հոգւոյն գալուստն ալ պատմուի, եւ այն՝ Համբարձմանէն անմիջապէս ետքը որով պէտք չկայ այն աւանդութիւնը Մանիքեցւոց միայն տալ։ Զինչեւ իցէ քննիչը կ'ընդունի որ "Վիճակք" անվաւերականին զրոյցն Բ դարէն ետքը ծագած է, եւ ի մէջ կը բերէ որ Համբարձման եւ Առաքելոց բաժնուելուն մէջ անցած միջոցին նկատմամբ պէսպէս աւանդութիւնք կը գտնուին։ Այսպէս մեր կանոնաց-մատեանը կ'աւանդէ որ Առաքեալք Համբարձմանէն անմիջապէս ետքը ցրուեցան, իւրաքանչիւրն երթալով այն երկիրն՝ որուն լեզուն առած էր. այսպէս ունին նաեւ գնոստիկեան Acta Thomae գրութիւնն (Tischendorf, Act. Apost. Apoc. p. 190) եւ Սուտ-

Նախնական խմբագրութեան համար ըսինք որ անշուշտ ասորերէն էր այն՝ զոր Լաբուբնա կարդացած է, եւ հաւանականօրէն յՈւռհա լոյս տեսած. (հմմտ. կան. ԻԸ։) Սակայն միշտ կրնայ խնդիր ըլլալ թէ արդեօք այս նախնականը բնիկ ասորի սկզբնագի՞ր մատեան մըն էր՝ թէ թարգմանութիւն մը՝ — թէեւ յաւելեալ ու փոփոխեալ՝ — սկզբնական յունականէ մը, որ այժմ կորսուած ըլլայ։ Այս խնդիրն որոշել անհնար է մեզ. եւ այսպիսի խնդիր մը յուզելուն պատճառն միայն այն է որ մէկ երկու կոչմունք կան, որ կարծես կը վկայեն թէ արդեամբք գոյութիւն ունէր այսպիսի յոյն բնագիր մը — որ ի հարկէ մեր ասորւոյն վերջին խմբագրութենէն շատ տարբեր պէտք էր ըլլալ, — նաեւ Դ դարուն վերջերն եւ աւելի ուշ ալ։ Այսպիսի կասկած մը կրնան զարթուցանել Եպիփանու եւ Յովհ. Դամասկացւոյ կրկին վկայութիւնքը։ Կարեւոր կը համարինք այս երկուքն ալ անյիշատակ չթողուլ հոս։

Եպիփան Հաւատոյ համառօտ մեկնութեան

---

Պրոխորոն (Acta Joannis: Bibl. Patr. Maxima, II, p. 46։) Նոյնը կը տեսնուի նաեւ Transitus Mariae անվաւերականին մէջ (Tischendorf, Apocalyps. p. 125 եւ 114), որ Ս. Կուսի մահն Համբարձմանէն մէկ տարի ետքը կը դնէ եւ կ'ըսէ թէ Առաքեալք հրաշքով եկան իրենց ցրուած ամէն աշխարհներէն։ Ուրիշ անվաւերականք 24 տարի ետքը կը դնեն Առաքելոց բաժնուիլը (Tischendorf, Apocalyps. Apoc. Proleg. XLIII), մինչ Բ դարէն աւանդութիւն մը կ'ըսէ թէ Առաքեալք հրամանաւ Փրկչին Երուսաղէմ կեցան 7 կամ 12 տարի՝ (հմմտ. Կղեմայ Recognit. I, 43. IX, 29, որ 7 տարի կ'ըսէ, իսկ 12 տարի՝ Ապողոնիոս առ Եւսեբ. Եկղ. Պատմ. Ե. 18 եւ "Քարոզութիւն Պետրոսի եւ Պաւղոսի„ առ Կղեմայ Աղեքսանդրացւոյ՝ Օթոցք, Զ, 5 հմմտ. Hilgenfeld, Nov. Testam. extra Can. IV, p. 58. Առաքելոց վիճակաւ աշխարհքը բաժնելը ծանօթ է Եւսեբեայ (Եկղ. Պատմ. Գ, 1) եւ Որոգինեայ (— զոր քննիչը տարակուսական կը համարի,) Ռուփինոսի (Եկղ. Պատմ. Ա եւ Expos. Symb. Apost.) եւ Սոկրատայ (Պատմ. Եկղ. Ա, 19։ Հմմտ. Հերոնիմոս՝ Մեկն. Եսայեայ, 34. III, p. 279 եւ Նիկեփոր (Եկղ. Պատմ. Բ, 39։)

մէջ[1] կը յիշէ թէ Առաքեալք սահմանած ըլլան Չորեքշաբթի եւ Ուրբաթ՝ ինչպէս նաեւ Կիւրակի օրերն՝ պատարագ մատուցանել եւ նաեւ պահել։ Այս մասն այնպէս նշանաւոր էր որ արդէն շատոնց քննչաց մտադրութիւնը գրաւած էր, որոնք այս խօսքն ալ կ'ուզէին իբրեւ վկայութիւն նկատել "Սահմանադրութիւնք Առաքելոց" (Διατάξεις τῶν ἀποστόλων) գրութենէն, զոր շատ անգամ յիշատակեցինք։ Բայց այս վերջնոյս մէջ յիշեալ կարգին նման Չորեքշաբթի, Ուրբաթ եւ նաեւ Կիւրակի օրը պատարագ մատուցանելուն նկատմամբ խօսք մը չգտնուելուն, սկսան քննիչք[2] համարիլ որ այստեղ տարբերութիւն մ'եղած ըլլայ "Սահմանադրութիւնք Առաքելոց" գրութեան եւ անոր նախնականին (Didascalia կոչուածին) մէջ։ Նորագոյն քննիչ մը՝ Ֆունք՝[3] անզօր կը համարի այս մեկնութիւնը, վասն զի մտադիր ընել կու տայ որ նաեւ Didascalia գրութեան մէջ, որուն ասորերէնը հրատարակած է Լակարտ, չի գտնուիր յիշելոյն նման խօսք մը։ Եպիփանու "Կարգեալ յառաքելոց" խօսքը, կ'ըսէ սոյն գիտնականը, կրնայ արդեամբք այն մտօք առնուիլ որ ակնարկութիւն համարուի այն "Սահմանադրութիւն" (Diataxis) գրութեան, եւ այս այնչափ աւելի՝ որ յիշեալ տեղւոյն երկրորդ մասն յայտնապէս այս գրութեան հետ յարաբերութիւն ունի։ Սակայն երբ կշռադատենք որ ո՛չ հոս եւ ո՛չ յիշեալ հատածին մնացեալ մասին մէջ յանուանէ յիշուած է Διατάξεις գրութիւնն, եւ թէ որչափ մէտ էին Ս. Հարք իրենց ժամանակի սովորութեանց առաքելական ծագում տալու, եւ թէ Եպիփան այսպէս գրել կրնար այն պարագայէն

---

[1] Spicilegium SS. Patrum. ed. Joannes Ern. Grabius Tom. I (Oxoniae 1714) p. 53: Epiphanius in Compendaria fidei expositione.

[2] Grab. I, 53.

[3] F. X. Funk, Die Apostolischen Constitutionen, 1892. p. 48—49.

դրդեալ որ Դշ. եւ Ուրբաթ օրերուն մէջ պահք պահելն արդեամբք ալ կար Didascaliaին մէջ, պէտք ենք հրաժարիլ յիշեալ խօսքն այսպէս մեկնելէն,» այսինքն՝ զայն «Սահմանադրութիւնք Առաքելոց» գրութենէն կոչում նկատելէն: Վերջապէս կը յայտնէ սոյն գիտնականն այն կարծիքն ալ թէ Եպիփան այս խօսքն ուրիշ գրքէ կրնայ առած ըլլալ, որ Առաքելոց անունը կը կրէր: Եւ այս է ուղիղը, ինչպէս կրնանք պնդել. վասն զի Եպիփանու բանծը մեր «Վարդ. Առաք.» գրութեան մէջ ալ կը գտնենք, որ կը պատուիրէ ոչ միայն կիրակի, այլ եւ՝ որ մտադրութեան արժանին է՝ Չորեքշաբթի եւ Ուրբաթ օրն պատարագ մատուցանել: Բայց ասոր նաեւ Եպիփանու կոչումն՝ թէեւ լոկ համառօտութիւն է այլեւայլ կանոնաց, բայց հանդերձ այսու շատ նման է մեր ասորւոյն գրածին, ինչպէս կը ցուցնէ յաջորդ համեմատութիւնը:

(ԵՊԻՓԱՆ. Grabe, I, 53:)

«Կարգեալ է յԱռաքելոց (ταχθεῖσαι ἀπὸ τῶν ἀποστόλων) ժողովմունս (συνάξεις) կատարել ի Չորեքշաբաթւոջ. յՈւրբաթու եւ ի Կիւրակէի. եւ զՉորեքշաբաթի եւ զՈւրբաթ պահել մինչեւ ցինն ժամ, քանզի ի լուսանալ Չորեքշաբաթու ըմբռնեցաւ, եւ յՈւրբաթու ի խաչ հանաւ: Եւ աւանդեցին Առաքեալք զայս աւուրս պահօք կատարել:»

(ՎԱՐԴ. ԱՌԱՔ. կան՝ Բ, Գ. Դ:)

Բ. «Կարգեցին Առաքեալքն.. եթէ յաւուր Միաշաբաթւոջ [յամենայն կիւրակէի] եղիցի [տաւն եւ] պաշտաւն եւն:

Գ. Կարգեցին Առաքեալքն.. թէ աւր Չորեքշաբաթու եղիցի պաշտաւն [եւ ի պահս.] զի ի նմա գուշակեաց եւ յայտնեաց Տէրն կենարար զխորհուրդ չարչարանաց իւրոց եւ մատնութեան եւ դատաստանի եւ խաչելութեան եւ մահուան եւ յարութեան՝ աշակերտացն իւրոց» եւն:

Դ. «Կարգեցին Առաքեալքն.. եթէ Ուրբաթ եղիցի պաշտաւն [եւ ի պահս եւ ի տրտմութիւն.] վասն զի զոր

ինչ ասացաւն յաւուր Չորեքշաբաթուցն վասն չարչարանաց Փրկչին մերոյ՝ յՈւրբաթուն խաչեցաւ... [դարձեալ մէջ] մինչեւ յիններորդ ժամն։„

Աներկբայ պէտք ենք ըսել որ Նպիփան արգեամբք այս կանոնները տեսած է. սակայն թէ ի՞նչ ճամբով՝ ահա այս է դժուարութիւնը։ Դժուար է որոշել թէ Նպիփան մեր կանոնաց — թէեւ այլափոխեալ — յունակա՞ն բնագիր մը գործածած է՝ թէ թերեւս նոյն իսկ ասորերէնը, — վասն զի հմուտ էր նոյն լեզուին, — կամ թէ վերջապէս ա՞յն անվաւեր գրութիւնն՝ որմէ ըսինք թէ հաւանականօրէն ծայրաքաղ եղած է մատենիս նախնականը։ Չենք երկար խօսիր այս խնդրոյս վրայ, վասն զի որոշ պատասխան մը տալ այս հարցմանց չենք կարող։

Կանոնացս նիւթոյն լուսաւորութեան համար յիշենք Հերկէնրէօթէրի հետ (III, Per. II. § 261) թէ "Չորեքշաբթի եւ Ուրբաթի՝ պաշտօն կատարելն սովորութիւն էր յԱղեքսանդրիա (Աթանաս, Պատմ. Արիանոսայ, ՁԱ, էջ 311. Սոկրատ, Ե, 22) եւ Արեւելից շատ եկեղեցեաց մէջ (Նպիփան, Հաւատ. Մեկն. ԻՔ. Migne, XLII, 625), հանդերձ պահօք մինչեւ իններորդ ժամն՝ Քրիստոսի բռնուելուն եւ խաչելութեան ի յիշատակ. (հմմտ. Ոսկեբ. Ճառ. Ե. ի Տիմոթ. Ա, 3. Migne, LXII, 530)։ Կեսարիոյ Կապպադովկացւոց մէջ Հաղորդութիւն կ'առնուէր կիւրակի, Չորեքշաբթի, Ուրբաթ եւ շաբաթ օրերը եւ ընդհանրապէս մարտիրոսաց յիշատակ եղած օրերը (Բարսեղ, Թուղթ ՂԳ, 283, էջ 186), իսկ ի Հռոմ, Ափրիկէ եւ Սպանիա՝ ամէն օր։ Դշ. եւ Ուրբաթ իբրեւ պահոց օր կը յիշէ նաեւ Աւգոստինոս„ (ep. 86 ad Casul.) եւն։ Այս ծանօթութեններէն կը տեսնուի որ Ասորին հնութեան համեմատ է, երբ Դշ. եւ Ուրբաթ օրերը պաշտօն կը հրամայէ կատարել։ Հայ խմբագրիչը դուրս

*թողուցած է այս բառն, եւ դրած՝ երկու կանոնին մէջն ալ՝ միայն պահոց, վասն զի իւր ժամանակին անշուշտ խափանուած էր նոյն օրերը պաշտօն կատարելն։ Հայ կանոնագրոց մէջ կան նաեւ այնպիսի՝ թէեւ ոչ շատ վաւերական՝ կարգադրութիւններ, որ ճիշդ հակառակը կը պատուիրեն։ Այսպէս Եփրեմայ անուամբ* Ը *կանոնը (կանոնագիրք՝* ՊԻԸ) *կը պատուիրէ "Եւ տէրունական պատարագ կիւրակէի եւ յայլ աւուրս անխտրաբար կատարեսցեն, բաց ի չորեքշաբաթու եւ յուրբաթու՝ ոչ։" Մանդակունւոյ անուամբ* Է *կանոնը (կանոնագիրք՝* ՌՃԽԱ) *կը գրէ. "Եւ որ չորեքշաբաթու եւ յուրբաթու մարտիրոսաց յիշատակ առնէ եւ տօնս զենմամբ, մեղք են նմա։" Եւ այս վերջին սովորութիւնն յետոյ տիրող եղաւ ոչ միայն Հայ, այլ եւ ուրիշ արեւելեան եկեղեցեաց մէջ, այնպէս որ Չորեքշաբթի եւ Ուրբաթ իբրեւ լոկ պահոց օրեր կը յիշեն բազմաթիւ գրութիւններ։*[1] *Իսկ Արեւմտից համար արդէն Ելուիրայի* 300*ին ժողովն իւր* ԻԶ *կանոնին մէջ որոշեց Չորեքշաբթի օրւան տեղ Շաբաթ օրը պահել։*[2] *Այս սովորութիւնն այնուհետեւ ընդհանուր եղաւ յԱրեւմուտս մինչ Արեւելք մնաց եւ ցայսօր ի զօրութեան է Չորեքշաբթի պահելն, մինչդեռ Շաբաթ օրերը պահք բռնել արգիլուած է, ինչպէս վերն առիթ ունեցանք յիշելու։*[3]

*Այստեղ պէտք չենք մոռնալ յիշելու ուրիշ յիշատակութիւն մ'ալ որ Եպիփանու անունը կը*

---

[1] *Այսպէս "Սահմանադրութիւնք Առաքելոց"* (Pitra, I **361**, **283**, **294** *եւն.*) *Յունական կանոնք Առաքելոց՝* ԿԹ (Hefele, I **821**.) *"Վարդապետութիւն* ԺԲ *Առաքելոց"* (Didache, ed. Philot. Bryennius, Const. **1883**, c. VIII, p. **30**.) *Կղեմէս Աղեքսանդրացի* (Strom. VII, **12**.) *Նիկեփորայ Սահմ. Եկեղ. կան.* Խ, ԽԳ, ԽԴ (Pitra, Spicil. Solesm. IV, p. **390**. *տես նաեւ՝* **456**), *Նիկողայոս Գրամատիկոս* (Pitra, Spicil. Solesm. IV, **481**—**487** *ուր յիշուած են Ս. Հարց շատ մը խօսքերը.*) *եւն եւն։*

[2] Hefele, I **166**։

[3] *Տես վերը՝ էջ* **56**—**59**։

կրէ։ Եպիփանու անունը կրող ճառերու հաւաքում մը կայ,[1] որուն շատ մասերն անշուշտ հին են, բայց մեծ մաս մ'ալ ներմուծուած ու փոփոխուած ըլլալու է։ Այս անտիպ հաւաքումն քննել ու հետազօտել թէ ո՛վ է անոնց հեղինակը, մեր ծրագրէն դուրս է. միայն կ'ըսենք որ ասոնց գոնէ մեծագոյն մասն ստուգիւ թարգմանութիւն է՝ որչափ կ'երեւայ՝ յունարէնէ, եւ թէ հետաքրքրական է իրեն բովանդակած բազմաթիւ զրուցախառն պատմուածքներովն։ Արդ այս ճառերուն երկուքը ԽԷ եւ ԽԸ թուականը կը կրեն,[2] եւ ասոնց ԽԷ "Երանելոյն Եպիփանու Ցաղագս գալստեան Հոգւոյն սրբոյ ի դասս առաքելոց„ վերնագիրը կը կրէ, իսկ ԽԸ շարունակութիւն է։ Ասոնց մէջ մեր կանոնաց ներածութիւնը կարծես կրկնուած է։ Համառօտելով յառաջ կը բերենք այս ճառին սկզբան մասերն, որ մեր նիւթոյ հետ կապ ունին. "Եւ ի կատարել աւուրցն Պենտէկոստէից՝ էին ամենեքեան միաբան ի միասին... յիջանել Հոգւոյն սրբոյ... զի յամենայն լեզուս փառս մատուցանէին ամենասուրբ Երրորդութեան։ Քանզի յաշտարակէն ուր ցրուումն եղեւ լեզուաց[3] մինչեւ յօրն յայն սուրբ Պենտա-

1 Տես. մեր մատենադարանի՝ Թիւ 49 Դ։ Միեւնոյն հաւաքումն է՝ քիչ տարբերութեամբ այն ձեռագիրն, որուն վերնագիրը կը գտնենք Եպիփանու գործոց ցանկին մէջ՝ Վ. Հ. Գար. Զարբ. Վարդապետի գրութեան մէջ. (Հայկական Թարգմ. Նախնեաց, տպ. Վենետ. 1889, էջ 401—4113։)

2 Տես. 49 Դ, էջ 659—677։

3 Զարմանալի եղանակաւ այս խօսքը շատ նման է մեր կանոնաց վերջը կցուած պատմական մասին մէկ տեղւոյն, զոր Հայ խմբագրողն՝ ինչպէս պիտի տեսնենք, աղճատած է, եւ է այսպէս. "Եւ շրջէին (առաքեալք) տեղի ի տեղւոջէ եւ քարոզէին զաւետարանն արքայութեան. որպէս յաշտարակէն ցրուումն՝ նոյնպէս եւ ի խաչէն ժողովումն...„ քիչ մը յառաջ ալ՝ "ըստ թուոյ Հրեշտակաց Աստուծոյ ըստ ՀԲ լեզուաց (եղեն առաքեալք) պատգամաւորք, քարոզք„ եւն։ Ելթէ ստուգիւ այս տեղը Հայ խմբագիրը յիշեալ ճառն աչքի առջեւ ունէր, (որ խնդրական է,) այն ատեն պէտք էր ըսել որ Ե դարուն վերջերն արդէն թարգմանուած եւ ծանօթ ըլլալու էր այն։ Խմբագրին այս յաւելուածին վրայ յետոյ առիթ պիտի ունենանք խօսելու։

կոստէիցն.. ոչ եւս էր փառաբանութիւն լեալ Աստուծոյ ի բերանոյ [illegible] եւ մի [illegible] եւ [illegible]...: Եւ նոցա ընկալեալ զանպատմելի շնորհս եւ զպարգեւս ողորմութեան Աստուծոյ, աւետարանին քարոզութեամբն եւ հաւատով սուրբ Երրորդութեանն եւ մկրտութեամբ աւազանին, եւ հաղորդութեամբն մարմնոյ եւ արեան որդւոյն Աստուծոյ լուսաւորեցին զամենայն հաւատացեալս Քրիստոսի...:„ (Ճառ. ԽԸ.) "Եւ ի գալ միւս աւուրն որ Երկուշաբթի կոչի՝ սկիզբն արար Պետրոս ասել ցնոսա. Եղբարք, զանսուտ խոստումն Աստուծոյ եւ զանհրաժեշտ Հոգւոյն սրբոյ գալուստն՝ զոր ուխտեաց մեզ Տէրն մեր եւ Աստուած Յիսուս յօրհնելն զմեզ եւ ի համբառնալն իւր յերկինս առ Հայր փառաւորապէս, կատարեաց... (— հոս կ'առաջարկուի վիճակով բաժնել աշխարհքն առաքելոց եւ աշակերտաց, որ եւ եղաւ երեքշաբթի օրը. եւ ապա կ'աւելցուի.) "Իսկ [illegible] կամաւ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ [illegible] ըստ ժամանակաց մարմնով երեւելոյ յաշխարհի Բանին Աստուծոյ, [illegible] աւուրն [illegible] սկիզբն արարին [illegible]. վասն զի ի չորեքշաբթու յերրորդ ժամու օրինադրեցան յարարչէն նախարարքն. զայս յօրինեցին ի շահ եւ յօգուտ հաւատացելոց... զգիրս Օրինաց եւ Մարգարէից եւ [illegible]„ եւն. եւն:

Այս համառօտութիւն յառաջ բերինք ամբողջութեան համար: Ամէն ընթերցող կը տեսնէ որ այստեղ յիշուած կանոնները չեն կրնար մեր առաքելականներն համարուիլ: Բովանդակ զրոյցն այլազգ է, եւ էական մասանց մէջ բոլորովին տարբեր մեր առաքելականէն: Մեր նպատակէն դուրս է քննել թէ ինչ բան կ'ակնարկեն այս խօսքերը, եւ թէ ինչ կանոններ կը համկրցուին այստեղ յիշուած՝ զորոնք Պշ. օրը գրած ըլլան Առաքեալք:

Այս մեկնութենէն ետեւ անցնինք Յովհ. Դամասկացւոյ յիշած կտորին։

Աւելի դժուար է մեկնել այն պարագայն որ նաեւ Յովհան Դամասկացի յԸ դարուն ի մէջ կը բերէ իբրեւ Առաքելոց կարգադրութիւն այնպիսի խօսք մը, որ շատ նման է մեր մատենին Ա կանոնին։ Դամասկացի «Վասն Ուղղափառ Հաւատոյ» գրոց մէջ[1] գլուխ մը կը նուիրէ այն աւանդութեան թէ պէտք է Արեւելք դարձած աղօթել, եւ կը մեկնէ այս սովորութիւնն այնու թէ Աստուած լոյս է հոգեւոր, եւ Քրիստոս՝ Արեգակն արդարութեան. թէ նաեւ հին տաճարն յարեւելս կը նայէր եւն. եւ թէ վերջապէս Առաքեալք այնպէս սահմանած են։ Կը դնեմ հոս Դամասկացւոյն յիշեալ կտորը, որուն մանաւանդ վերջերը շատ նման է ասորի կանոնին։

| (ՅՈՎՀ. ԴԱՄԱՍԿԱՑԻ, Le Queen, p. 266։) | („ՎԱՐԴ. ԱՌԱՔ.” կան. Ա.) |
| --- | --- |
| „Ոչ ի զուր ինչ եւ առանց պատճառաց յարեւելս կոյս կամք յաղօթս։... Որպէս եւ Տէրն՝ մինչ զխաչէն կախեալ եւ կայր, զերեսս իւր յարեւմուտս կոյս դարձուցեալ էր. վասն այսորիկ այնպէս երկիր պագանեմք, զի զաչս մեր առ նա ուղղիցեմք։ | |
| Դարձեալ մինչդեռ հանդերձեալն էր յերկինս համբառնալ, յարեւելս կոյս կացեալ էր եւ այնպէս երկրպագութիւն կրեաց յաշակերտացն, եւ այնպէս իսկ գալոց է, որպէս տեսին զնա | „Կարգեցին առաքեալքն եւ եղին հաստատութեամբ՝ եթէ յորժամ յաղօթս կան եւ երկիր պագանեն աստուածութեան, ընդ արեւելս կացցեն, ըստ այնմ զոր ասաց Փրկիչն ԵԹԷ Որպէս փայ- |

[1] Joannes Damascenus, Opera ed. Le Quien. Paris. **1712**. p. **266**: De fide ortodoxa, lib. IV, cap. XII: de adoratione ad Orientem.

համբառնալ յերկինս: Որպէս ասէ ինքն Տէր. Որպէս փայլակն զի ելանէ յարեւելից եւ երեւի մինչեւ յարեւմուտս, նոյնպէս եղիցի եւ գալուստ որդւոյ մարդոյ: Արդ քանզի ակն ունիմք նմա, վասն այնորիկ ընդ արեւելս երկիր պագանեմք: Զի եւ այս աւանդութիւն է Առաքելոց, քանզի բազում ինչ մեզ առանց գրոյ աւանդեցին:„

ւոյն զի փայլատակն յարեւելից եւ երեւի մինչեւ յարեւմուտս, նոյնպէս եղիցի եւ գալուստ որդւոյ մարդոյ. [զի արեգակն արդարութեան Քրիստոս որդի Աստուծոյ յարեւելից ծագեսցէ եւ արասցէ փրկութիւն ի մէջ երկրի.] եւ այսու գիտասցուք թէ յարեւելս կայ-արժան է յաղօթս կալ [եւ երկիր պագանել առաջի անմահէ յաւիտենից:]„

Հոս ծանրակշիռն այն է որ ոչ լոկ դէպ արեւելք աղօթելն կը հրամայուի, որ հնութեան ծանօթ սովորութիւն մըն էր, այլ որ կ'աւելցուի երկու բնագրաց մէջ ալ որ Արեւելից կողմանէ պիտի գայ Քրիստոս դատելու, եւ առ այս կ'առնուի երկուքին մէջն ալ Մատթ. ԻԴ, 27 խօսքը, եւ դարձեալ այն՝ որ Դամասկացի յայտնապէս կ'ըսէ թէ Առաքելոց անունն կրող գրութենէ մ'առած է զայն: Աներկբայ է անշուշտ որ անկախ չեն հոս երկու բնագիրքն, բայց թէ ինչ ճամբով Դամասկացի կարդացած կրնայ ըլլալ մեր կանոնին շատ նման կանոն մը, դժուարին է որոշել, եւ աւելի դժուարին քան Եպիփանու խօսքը, զոր յիշեցինք, եւ որուն նկատմամբ մեր ըսածն աւելորդ կը համարինք կրկնել:

Արեւելք աղօթելու սովորութիւնը ծանօթ է հնութեան, որ այլ մեկնութիւն կու տայ անոր: “Սահմանադրութիւնք Առաքելոց„ անվաւերականն ալ քանի մ'անգամ կը յիշէ այս սովորութիւնը[1], սակայն կը հաստատէ զայն Սաղմոսի ԿԷ, 33 խօսքին վրայ յենլով. (— “Սաղմոս ասացէք Տեառն . . . որ նստի յերկինս երկնից ընդ արեւելս:„)

[1] Տես Pitra, I, p. 206 (= Didasc. ed. Lagarde, XII, p. 56, 21.) I 204 (= Didasc. p. 56, 14.) եւն:

Սուտն-Յուստինոս[1] ընդհականակն արեւելք աղօթելն անով կը մեկնէ որ նոյն կողմն պատուականագոյն է. որուն նման բան մ'ալ Որոգինէս կ'ըսէ[2]: Դամասկացւոյն այն խօսքին թէ Քրիստոս դէմքն յարեւմուտս կոյս դարձած վերացաւ, ճիշդ նման աւանդութիւն մ'ալ կը յիշէ Եբեդ-Յեսու[3], որ մեր ասորի կանոնն ի վկայութիւն բերելէն ետքը՝ կը պատմէ նոյնը՝ գրելով թէ "յամբարձման այսպէս ասի:" Ընդարձակօրէն կը խօսի այս նիւթոյ վրայ նաեւ Ս. Աթանաս[4], որ այլեւայլ մեկնութիւններ կու տայ. եւ ի վերջոյ սա նշանաւոր խօսքը կը կցէ. "Լուսոյն հաւատացեալք եւ ուսցին եթէ վասն այնորիկ Հրաման եղաւ սուրբ Առաքելոցն՝ եկեղեցեաց Քրիստոնէից յարեւելս կոյս աղօթս կատարել, զի ի դրախտն՝ յորմէ վտարեցաքն, խնդրեսցուք յԱստուծոյ վերստին ընկալեալ լինել." եւն: Թերեւս ալ արեւելք աղօթելու սովորութիւնը ինչ ինչ տեղեաց մէջ՝ ուր նախ արեւապաշտիկ կրօնը տիրած էր, հեթանոսական ժամանակէ մնացած սովորութիւն մ'ըլլայ, որուն քրիստոնէական գաղափարք ուրիշ ուղղութիւն տուին: Հետաքրքրական է թերեւս յիշել որ ըստ Մ. Խորենացւոյ[5] "սա (Յուլիանոս) զիւր պատկերն նկարեալ ի տախտակս, յորում եւ զդիւաց ոմանց ընդ նմա, եւ հրամայէ յեկեղեցիս կանգնել յարեւելից կոյս, ասելով թէ որք միանգամ ընդ Հռովմայեցւոց տէրութեամբն հարկին՝ դոյնպէս առնեն:" Մեր նպատակէն դուրս ըլլալով աւելի եւս երկար խօսիլ այս նիւթոյ վրայ, դառնանք մեր բուն խնդրին:

---

1 Տես Lagarde, Reliq. II, p. 90, ուր կը յիշուին Տերտուղիանու (ad nation. I, 14) եւ apolog. 16) եւ Կղեմայ Աղեքսանդրացւոյ այս նիւթոյ վրայ գրած խօսքերը:

2 Որոգինէս, Վասն Աղօթից, ԼԲ:

3 Ebed-Jesus, Collectio canonum. Tract. V, 8.

4 Athanasius, Opera, ed. Colon. 1686, II p. 344: Quaestiones ad Antiochum. Quaestio XXXVIII.

5 Պատմ. Հայ. Գ, գլ. ժգ. (տպ. Վենետ. 1842, էջ 199:)

Դառնալով այժմ ասորի մատենագրութեան՝ ցայժմ միայն Լաբուբնայի գրութիւնը տեսանք որ մեր կանոնաց նախնականին վկայ եղաւ։ Այժմ պի-տի տեսնենք որ քանի մ՚այլ անվաւերականք ալ՝ այսպէս թէ այնպէս՝ կապ ունին անոր հետ։ Շատ մեծ յարգ պիտի ունենար, եթէ կարենայինք նաեւ Զգօնի Հրահատայ Պարսկի ճառերէն այս նկատ-մամբ կարեւոր կռուաններ գտնել։ Հրահատ Զգօն՝ որ 336—344 Յ. Ք. կը գրէր, կրնար ան-շուշտ տեսած ըլլալ մեր կանոնաց նախնականն. եւ մէկ երկու դոյզն նմանութիւնք ալ կարծես կ՚ու-զեն համոզել զմեզ թէ արդեամբք տեսած ալ է։ Բայց այս նմանութիւնք շատ դոյզն եւ շատ ընդ-հանուր ըլլալով՝ ապահով հետեւութիւն մը հա-նել կարելի չէ։ Յիշեցինք այսպէս վերը Քաղդէից նկատմամբ նման խօսքերն, ինչպէս նաեւ “Ջերմ„ հացով պատարագելու կանոնին նկատմամբ ըսինք թէ հաւանականօրէն կարդացած է զայն Զգօն[1]։ Թերեւս ԺԸ կանոնն որ կ՚արգելու “ի կարգի պաշտաման մնալ„ անոնց՝ որ “փոխ տայ եւ առնու վաշխ եւ տոկոսիս եւ շահէ շահս ագահութեան,„ ակն-արկուած է Զգօնի մէկ խօսքին մէջ, որ նման պա-տուէր մը կը յիշէ գրելով առաջնորդաց՝ թէ “Ա-ղաչեմ զձեզ հովիւք, մի կացուցանէք ի հօտի այդր զաշակերտս անմիտս եւ զոգէտս, եւ մի զագահս եւ որ սիրեն զվաշխառութիւն։„[2] ԼԲ կանոնն՝ որ վանք հիմնե-լու եւ կուսան ըլլալու վրայ է, շատ նման է Զգօնի մէկ խօսքին, (Ճառ Զ, § 5.) բայց անշուշտ այս նմանութիւնը հայ խմբագրին արդիւնքն է, վասն զի ասորին չունի յիշեալ կանոնը։ Նոյնպէս կարծես Թ կանոնին սա խօսքը “Կատարումն ամենայն գրոց ընթերցցի աւետարանն իբրեւ զկնիք պատուական„

---

[1] Տես վերը՝ էջ 27 եւ 38 եւն.։

[2] Ճառ Ժ, § 5 (տպ. Կ. Պոլ. էջ 198 = ed. Wright, p. 197.)

կ'ուզէ յիշեցընել Զգօն սա խօսքովը.¹ “Քանզի ոչ էին ընթեռլ կտակարանքն՝ որ տուան Մովսիսի, մինչեւ եկին հասին այս վերջին կտակարանքս, զի այն առաջին [է, քանզի նախ ի] վերոյ աւետարանեցաւ եւ ի ներքոյ թլփատութեան հաստատեցաւ„ (կնքեցաւ)։ Կանոն Ը կը պատուիրէ քառասուն օր պահել, “քանզի եւ ինքն Տէրն մեր՝ տէր տօնէն (Հայ՝ “տէր տօնից եւ տարեկանաց„) պահեաց զխ. տիւ եւ զխ. գիշեր, եւ Մովսէս եւ Եղիա՝ որ զգեցեալ էին զայս խորհուրդ, պահեցին եւ նոքա զքառասուն քառասուն օր, եւ ապա փառաւորեցան։„ Կարծես ասոր նմանողութեամբ յօրինած է Զգօն իր “Օրինակ պահոց„ ճառին այն մասն (Գ, § 2), երբ պահոց օրինակ կը բերէ՝ բաց ի Տեառնէ մերմէ, որ “տէր ճոշջօ„ է², ճիշդ այս կարգաւ զՄովսէս եւ զԵղիա³, եւ կը վերջացընէ նոյն հատածը նման վերջաւորութեամբ։ — Ասոնք եւ այլ այսպիսի մանր նմանութիւնք՝ թէեւ հաւանական ընեն թէ արդեամբք տեսած ըլլայ Զգօն մեր կանոնները, բայց որոշ հետեւութիւն հանել չենք կրնար՝ այս նմանութեանց շատ տկար ըլլալովն։

Աւելի որոշ կերպով կապ մը կը գտնենք մեր սորւոյն եւ ուրիշ երեք սորի անվաւերականաց հետ, որ են վկայաբանութիւն Բարսամեայ, Վարդապետութիւն Շմաւոնի եւ Թուղթ Յակոբայ, եւ այն մանաւանդ վերջնոյս հետ։ Ասոնցմէ առաջինն այն յարգն ալ ունի՝ որ կրնայ ցուցընել թէ կանոնայս նախնականն ունէր արդեամբք ներածութիւն

---

¹ Ճառ Բ, § 6. (տպ. Կ. Պոլ. էջ 27 — ed. Wright, p. 28.)

² Ճառ Գ, § 6. (տպ. Կ. Պոլ. 52 — ed. Wright, p. 51.)

³ Հմմտ. տպ. Կ. Պոլ. էջ 46—47 (= ed. Wright, p. 46) “Պահեաց Մովսէս պահս սրբութեամբ ի ժամանակի՝ մինչ էլ նա ի լեառն, եւ զօրացաւ պահօք իւրովք քառասուն քառասուն աւուրքս։ . . . Ի նմանութիւն պահոցն Մովսիսի պահեաց Եղիա՝ այր հզօր . . . Եւ սոքա երկոքին պահօք իւրեանց կատարեցան։„

մը՝ թէեւ ըլլար այն շատ համառօտ եւ թէ ամե-նահին ժամանակներն արդէն պէսպիսութիւն մը մտած էր ձեռագրաց մէջ, այսպէս՝ ժամանակա-գրութեան նկատմամբ։

Բարսամեայ վկայաբանութեան վերջը կ՚ըսուի թէ Բարսամիա եպիսկոպոս էր Ուռհայի՝ Հռոմայ Փաբիանոս քահանայապետին օրերը, եւ թէ "զձեռն քահանայութեան" ընդունած էր Աբբշեղա-մայէ, որ աս ալ ընդունած էր Փղոտէն, եւ վեր-ջինս՝ Անտիոքայ Սրապիոն եպիսկոպոսէն, իսկ Սրապիոն՝ Հռոմայ Զեփիրիանոս քահանայապետէն. (— այս ամէնը կ՚աւանդէ արդէն Լաբուբնա.[1] —) եւ կը կցէ քանի մը քահանայապետաց յաջորդու-թեան ցանկը մինչեւ "Աննոս" (= Գինոս), "որ ընկալաւ (զձեռնադրութիւն) ի Սիմոնէ Վկիմէ," եւ յետոյ՝ թէ Սիմոն ալ ի Տեառնէ միւս առաքելոց հետ։ Այստեղ կը գտնենք փոքրիկ ծանօթու-թիւն մը, որ մեր "Վարդ. Առաք." գրութեան հետ կապ ունի, եւ զոր կը դնենք հոս դէմ առ դէմ։

| ՎԿԱՅԱԲ. ԲԱՐՍԱ-ՄԵԱՅ<br>(Cureton, anc. syr. doc. p. 72.) | ՎԱՐԴ. ԱՌԱՔ.<br>(Ներածութեան սկիզբն, եւն։) |
| --- | --- |
| "Իսկ Աննոս (= Գինոս) ընկալաւ (զձեռն քահանա-յութեան) ի Սիմոնէ Վկիմէ, եւ Սիմոն Վկէմ (Կեփաս) ընկալաւ ի Տեառնէ մերմէ ընդ այլ առաքելովք ընկերա-կցօք իւր, յառաջ քան զհամբա-րձմանն վերանալոյ Տեառն մերոյ առ Հայր իւր ի յերկինս, որ ամսոյ չորս ի Խզիրան ամսոյ, որ է ամ իններորդ թագաւո-րութեան Տիբերեայ կայսեր, ի | "Յամին երեքհարիւրերորդէ երեսներորդէ իններորդէ իշխա-նութեանն Յունաց, ի թա-գաւորութեանն Տիբերեայ կայսեր Հռոմոց, որ ամսր չորս էր Մարգայ (Խզիրան) ամսոյ, յառաջ քան զհամբարձումն՝ որ է կատարումն պէնտա-կոստէից . . . եկին ի լեառն ձիթենեաց . . . եւ անդէն ի ժամ մեծին առաւօտուն կիւրակէին ամբարձեալ |

[1] G. Phil. p. 52—53 = Հայ՝ էջ 50—51։

հիւպատոսութեան Հռուփոսի եւ Հռուբեղինոսի, որ էր ամ երեք հարիւր եօթանասուն եւ Գ. քանզի յամին երեքհարիւրերորդի իններորդի եղեւ ծագումն Տեառն յաշխարհի, ըստ վկայութեանն զոր գտաք ի հաւատարիմ մատենի գիւտնաց, որ ոչ վրիպէ յամենայնի զոր ցուցանէ։„

զձեռն իւր Տեառն՝ եդ ի վերայ գլխոյ մեռանան աշակերտացն իւրոց, ընթերցեալ նոցա զաղօթեան թագաւորութեան եւն . . . : (կան. Թ) Ցաւուր միաշաբաթոջ ծագեցաւ (Քրիստոս) աշխարհէ . . . . : (կան. Ժ) Արացեն տաւն յիշատակի վերջմանն նորա որ Հայր էր ե-[illegible]։„

Տարակոյս չկայ որ այս երկու հատածներն շատ սերտ նմանութիւն ունին իրարու հետ՝ մինչեւ իսկ մանր բացատրութեանց մէջ՝ ինչպէս “Ծագեցաւ աշխարհի,„ այսինքն՝ յայտնեց Քրիստոս իւր անձն աշխարհի, եւ “վերացեալ առ Հայր իւր փառաւորեալ„ որ Ժ կանոնին վերջաւորութիւնն է։ “Աւր չորք էր Խզիրան ամսոյ„ կը հաստատէ Հայոյն եւ Cur. ձեռագրին ընթերցումն, ինչպէս նաեւ Տիբերեայ թագաւորութեան տարին կը հաստատէ՝ թէ Հայն այստեղ պահած է հնագոյն ընթերցուածն։ Ամբողջն կշռելով՝ կը համոզուինք որ Թարսամեայ Վկայաբանութեան հեղինակը տեսած կ՚երեւայ մեր կանոնները, թէեւ էական կէտ մը կայ մտադրութեան, այն է ժամանակագրութեան տարբերութիւնը։

Ինչպէս վերը յիշեցինք, Թիքսըրոն Լաբուբնայի եւ “Վարդապետութեան Առաքելոց„ բարեկարգութեան տարբերութեան հետ՝ նշանակած էր նաեւ ժամանակի տարբերութիւնը[1], որ արդեամբք ալ գոյութիւն ունի այժմու բնագրաց մէջ։ Սակայն ճիշդ այս ժամանակաթիւնն է որ երկու գրոց ալ հնագոյն ձեռագրաց մէջ շատ աղաւաղութիւն կրած կ՚երեւայ։ Լաբուբնայի Պետրբուրգեան ձեռագիրն, որ Զ դարէն կ՚ըսուի, տարեթիւը “343 իշխանութեան Յունաց„ կ՚ընթեռ-

[1] Տես վերը՝ էջ 101—102, ծան.։

նուն (= 32 Յ. Ք.) զոր քննիչք ուղղեցին ըստ հայ թարգմանութեան՝ 340, որով համեմատ կ'ըլլայ Եւսեբեայ։[1] Այսպիսի տարեթուոյ աղաւաղութիւն մ'ալ կրած է “Վարդ. Առաք.„ վասն զի նախ ասորի ամենէն ընտիր Cur. ձեռագիրը, զոր Գիւրըթօն հրատարակեց, եւ զոր Լանտ գիտնականը Ե դարէն կը դնէ, պարզապէս “յամին 39„ կ'ընթեռնու, զոր պէտք ենք ուղղել հայուն ընթերցուածոյն եւ գրել՝ 339, որ կը հաստատուի ուրիշ ասորի ձեռագրէ մ'ալ. (Cod. Add. 14, 173։) Ընդհակառակն Փարիզեան ձեռագիրը (L) բոլորովին ուրիշ ընթերցում ունի՝ “յամին 342 . . . որ աւր 14 էր„ (փխ. “4„) կարդալով։ Բար-Հեբրէոսի մէկ կոչումն (Nomocanon, cap. V, sect. III) թէեւ ուղղագոյն ընթերցուածն ունի համեմատ հայոյն, բայց նաեւ լուսանցագիր տեղեկութիւն մ'որ “342, որ աւր 14 էր„ կը գրէ։ Վերջապէս թէ շատ հին է այս տարեթուոյ տարբերութիւնը՝ կրնանք տեսնել Բարսամեայ վկայաբանութեան յիշեալ տեղէն, որ “աւր չորք էր Խզիրան ամսոյ„ պահած է, բայց բուն տարեթիւը “341„ կարդացած է։ Ասով գոնէ այն ցուցուած կ'ըլլայ՝ որ կարելի է թէ Լաբուբնայի եւ կանոնացս նախնականին մէջ տարբերութիւն չկար ժամանակագրութեան։

Սակայն միտ դնենք որ Բարսամեայ Վկայաբանութեան հեղինակը բոլորովին ուրիշ աղբիւր մը կը յիշէ՝ “հաւատարիմ մատեան„ մը, որմէ գտած կ'ըսէ Քրիստոսի ծննդեան տարեթիւը, այն է “309„ սելեւկեան տարին. անկէ պիտի ըլլան նաեւ “Հռուփոսի եւ Հռուբեղինոսի„ հիւպատոսութեան տարիները. — այս ամէնը չունին ո՛չ Լաբուբնա եւ ո՛չ “Վարդ. Առաք.։„ Այժմ կը թողունք այն խնդիրը թէ ի՛նչ պէտք է հասկընալ այն “հաւատա-

[1] Տես Tixeront, p. **92—93**. Zur Abgar-Sage, **10**, n. **2**.

րիմ մատեան դիւանաց„ գրութիւնը[1]. բայց պէտք ենք մտածել թէ կարելի չէ՞ որ Բարսամեայ բովանդակ այն մասն՝ որ նմանութիւն ունի “Վարդ. Առաք.„ գրութեան, առնուած ըլլայ այն “Հաւատարիմ մատենէն:„ Այս դիպաց մէջ՝ որ շատ լաւ կարելի է, պէտք է ըսել որ կամ երկու գրութիւնքս ալ միեւնոյն աղբիւրը գործածած են, եւ կամ գոնէ որ Բարսամեայ Վկայաբանութեան աղբիւրն այն է, որուն հետ այսպէս կամ այնպէս կապ ունի մեր ասորի գրութիւնը:

Երկրորդ ասորի անվաւերականն՝ զոր հոս պէտք չենք զանց առնել յիշելու, է “Վարդապետութիւն Սիմոնի Վիմի„ կոչուածն, զոր հրատարակած է Գիւրըլթոն[2]: Այս անվաւերականին վերջերը կը պատմուի թէ երբ Ներոն բռնել տուաւ զՊետրոս, վերջինս կոչեց իւր “Անոսս„ (= Լինոս) սարկաւագն, եւ “արար զնա եպիսկոպոս ի տեղի իւր ի Հռովմ: Եւ զայսոսիկ ասաց ինքն Շմաւոն, եւ դարձեալ զայլ մնացեալսն՝ որ էին իւր, հրամայեաց Անոսսի՝ ուսուցանել առաջի ժողովրդեանն, եւ ասէ. Ընդ հին կտակարանս եւ ընդ նորս՝ զայլ ինչ գիրս մի՛ ընթեռնուցուք առաջի ժողովրդեանն՝ որ չէ արժան: Իսկ իբրեւ հրաման ետ կայսրն ի խաչ հանել զՇմաւոն„ եւն: Այստեղ Շմաւոնի բերանը դրուած իբրեւ վերջին մի միակ խօսքն ուրիշ բան չէ, բայց եթէ բառացի ընդօրինակութիւն մեր ասորւոյն Լ (Ասոր. Ժ) կանոնին, որ է “Կարգեցին առաքեալքն զի մի՛ ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի այլ գիրք, բայց Հին կտակարանք եւ Մարգարէք, եւ Աւետարան եւ Գործք առաքինութեանց նոցա:„

Աւելորդ չէ այստեղ յիշատակել որ ճիշդ

---

[1] Այս մատեանն է Պիղատոսի “Յիշատակարանք„ (տես Tischendorf, A. Evang. Apoc. p. 212.) որուն վրայ այլուր կը խօսինք:

[2] Cureton, anc. syr doc. p. 40.

այս Լ կանոնն ի վկայութիւն կոչած է Փիլաստրիոս՝ որ մեռած է 387ին իբրեւ եպիսկոպոս Բրիքսիայի, եւ որ ուզած է Եպիփանու Հերեսութեանց վրայ գրածին նման գործք մը յառաջ բերել լատինական եկեղեցւոյ մէջ իր "Գիրք Վասն Հերեսութեանց" մատենովը, որ սակայն աննշանակ է Եպիփանու գործքին համեմատութեամբ։ Արդ Փիլաստրիոս Հերեսութեանց կարգին մէջ իբրեւ ՁԸ կը դնէ Անվաւերականներր կարդալը. եւ յիշելով թէ շատ աղանդք աւելի այսպիսի գրութիւններ կը կարդան, կը յաւելու.[2] "Վասն այսորիկ կարգեցին Առաքեալքն եւ յաջորդք նոցա, զի մի՛ այլ ինչ ընթերցցի ի կաթուղիկէ եկեղեցւոջ, բայց Օրէնք եւ Մարգարէք եւ Աւետարանք եւ Գործք Առաքելոց, եւ ԺԳ թուղթք Պաւղոսի, եւ այլ եւս եւթն, Պետրոսի՝ Բ, Յովհաննու՝ Գ, մի՝ Յուդայ եւ մի՝ Յակոբայ, եւ այս եւթանեքին կցեալ են ի Գործս Առաքելոց։" Նմանութիւնր շատ ակներեւ է. բայց առեղծուած կը մնայ մեզ թէ ուր կրնայ Փիլաստրիոս տեսած ըլլալ այս տարրի կանոնր։ — Անցողակի յիշենք որ անկանոնական գրքեր կարդալու արգելքը յաճախ կը յիշեն եկեղեցական մատենագիրք։ Այսպիսի ընթերցումն արգիլեց Լաւոդիկէի ժողովն.[3] Նաեւ "Սահմ. Առաք." եւ Յունական Առաքելական Կանոնք կը հրամայեն արտաքսել այնպիսին՝ որ այս կարգի գրքեր կը տարածէ[4]։ — Այս միջանկեալէն ետքը դառնանք երրորդ ասորւոյն, եւ այն երկու գրութեանց ի մասնաւորի, զորոնք միայն հայերէն լեզուաւ առջեւնիս ունինք եւ որոնց վրայ կ'արժէ քիչ մ'երկար խօսիլ։

---

[1] Այս կոչումն ի մէջ կը բերէ Գիւրըլթոն (Cur. p. 170), որ զայն առած է Փաբրիկիոսէն (Fabricius, Cod. Apocr.. Test. p. 749.)

[2] Migne, Patrologiae cursus. Ser. lat. XII, p. 1199. S. Philastrii liber de Haeresibus. LXXXVIII: Apocryphi.)

[3] Կան. ԽԹ եւ Կ. (Hefele, I, 774 եւն։)

[4] Հմմտ. Hef. I 818, 826. Pitra, I 324 եւն։

## 5.

Թէ Լաբուբնա եւ թէ Մանաւանդ մեր ասորի մատենագիրը կը նկարագրեն իբր թէ առաքեալք եւ աշակերտք սերտ թղթակցութեան մէջ էին եւ իրարու կը գրէին պատասխանները։ Այն կարգին մէջ կը յիշուէր թէ պէտք է կարդալ նաեւ "զոր ինչ գրեաց Յովսէփոս յեբրայեցւոց," եւ ըսինք թէ հաւանականօրէն Պատրոնիկէի զրոյցը Յակոբու անունը կը կրէր։ Այժմ կրնանք ըսել նաեւ թէ Յակոբայ անուան ներքեւ շրջող գրութիւններէն ուրիշ մ'ալ տեսած էր ասորին, որ է փոքրիկ անվաւերական մը։ Այս անվաւերականը հայերէն լեզուաւ կը գտնուի,[1] եւ այս վերնագիրը կը կրէ. "Թուղթ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղէմի առ Կոդրատոս, զի ցուցցէ նմա թէ զինչ եառ Տիբերիոս կայսր վասն Հրէիցն որ[ի]խաչ հանին զՔրիստոս։" Թէեւ շատ համառօտ գրութիւն մըն է այս նոր անվաւերականն, բայց նաեւ այս համառօտ գրուածին մէջ բաւական նշանաւոր կապակցութեան կէտեր կը գտնենք մեր կանոնաց-մատենին հետ։

"Վարդ. Առաք.," իւր միջանկեալ՝ այսինքն այն մասին մէջ, որ կանոններէն ետքը եւ աշխարհաց ցուցակէն յառաջ կը գտնուի, կը խօսի իբր թէ ժամանակակից առաջին դարուն՝ Հրեայ քահանայից եւ անոնց որդւոց դարձին վրայ։ Նախ կը գրուի թէ "Նաեւ Նիկոդեմոս եւ Գամաղիէլ գլխաւորք ժողովրդեանն," կու գային առաքելոց քով ի ծածուկ եւ "հաւատային նոցա վարդապետութեան.," բայց թէ ասոնք եւ թէ այլ քահանայք որոնք "գային ի ծածուկ եւ խոստովանէին

---

[1] Անվաւերականս կը գտնուի Վենետկոյ Ա. կանոնագրոյն (Թիւ 318) մէջ։ Շնորհակալութեամբ պէտք եմ յիշել որ Մեծ. Հ. Յովհ. Վ. Թորոսեան խաւրած է ինձ անվաւերականէս ընդօրինակութիւն մը։

զՔրիստոս,„ Հրապարակաւ խոստովանել չէին ուզեր. (— "վասն զի սիրէին զգլխաւորութիւն ժողովրդեանն, ոչ կարէին խոստովանել յայտնապէս.„ —) եւ կը յաւելու ասորին թէ մոռցան Ս. Գրոց խօսքը թէ Աստուած սրտագէտ է, եւ "ոչ հաճոյ էին կամակորութիւնք առաջի նորա:„ Միայն քահանայից որդւոցմէ ոմանք առաքելոց յորդորանօքը թողլով ակնածութիւնն՝ համարձակ քրիստոնէութիւն ընդգրկեցին եւ առաքելոց յարեցանն եւ ասոնք են "Յուդայ եւ Ղեւի եւ Փեսի եւ Յովսէփ եւ Յուստոս՝ որդիքն Անանիայ եւ Կայիափայ եւ Աղեքսանդրոսի քահանայիցն:„ Արդ "Վարդ. Առաքելոց„ գրութեան այս մասն՝ որ ասորի անվաւերականի մը դրոշմը կը կրէ յայտնապէս, շատ սերտ յարաբերութիւն ունի Յակոբայ թղթոյն հետ, վասն զի այս ամէնը կայ նաեւ հոն: Յակոբ խնդրելէն ետքը Կոդրատոսէն՝ որ գրէ իրեն թէ Տիբերիոս Հրէից դէմ ինչ ըրաւ Պիղատոսի Յիշատակարանն առնելէն ետեւ, կը պատմէ իւր վիճակին իրերը, գրելով թէ "գիտացեն եւ հեռաւորք զնենգութիւն Հրէից, որ ոչ հաւատացին, բայց Փիլիպպոս, եւ Սենիկոս եւ Յուստոս եւ Ղեւի եւ Աֆրէ (— յայտնապէս = "Փեսի„ մեր կանոնացմատենին. —) եւ Յուդայ, դպիրք անուանիք Հրէիցն, հանդերձ այլովք ընկերօք իւրեանց. եկին դարձեալ առ իս եւ խոստովան եղեն զՔրիստոս, եւ ընկալան զմկրտութիւն, եւ ահա մատեանն է գրոց մարգարէից ընդ որդիս ժողովրդեանն Եբրէանց. (— այս վերջինն ալ ունի "Վարդ. Առաք.„ գրելով նոյն աշակերտաց համար բառ առ բառ նոյն կերպով՝ թէ "եւ մաքառէին ընդ վարդապետս Հրէից ի գրոց մարգարէից[1].„ —) բայց Գամաղիէլ[2] աւագ

---

[1] Դրինք ըստ ասորւոյն. Հայն ծոխաբան է եւ կ՚ըսէ. "վիճէին նոքա ընդ վարդապետս Հրէիցն եւ մատնչէին, բանային դնէին առաջի ի մարգարէական գրոց„ եւն:

[2] Գամաղիէլ՝ "Վարդապետ Հրէից„ (հայն "քա-

քահանայից նոցա՝ ոչ ուրանալով ուրանայ զՔրիստոս իբրեւ զորդիս ազգի իւրեանց յայտնապէս եւ ոչ խոստովանելով խոստովանի այժմ իբրեւ զմեզ:„ Ուստի այն գոյներով ներկայացուած է Գամաղիէլ՝ որպիսի կը նկարագրէ նաեւ "Վարդ. Առաք:„ Այս կտորէն եաքն, որ երկու գրոց իրարու հետ աղերս ունենալն անժխտելի կերպով կ'ապացուցանէ, կու գայ երկուքին մէջն ալ վերջաբանական կտոր մը, որ կը ստորագրէ քարոզութեան արդիւնքն, ինչպէս կը ցուցընէ հետեւեալ համեմատութիւնը։

| ԹՈՒՂԹ ՅԱԿՈԲՈՒ | ՎԱՐԴ. ԱՌԱՔ. |
|---|---|
| "Մանաւանդ զի եսես (Գամաղիէլ) թէ զկնի վերանալոյն Տեառն մերոյ առ Հայր իւր, որդեօ Թադէոս առաքելոյն նորա ընդ ամենայն տեղիսն, իբրեւ | "Իւ ձեռնադրութեամբն քահանայութեան՝ զոր ընկալան նոքա ի Տեառնէ, Թադէոս վաղվաղակի ժողովա-ցեալն առաքելոցն ընդ ամենայն տեղիսն... — (Վերը) |

հանայապետ Հրէից„ կը յիշէ նաեւ Լաբուբնա (G. Phil. p. 3, 14 — Հայ՝ 4, 13,) որ Անանայ եւ Կայափայ որդիքն այսպէս կը յիշէ (G. Phil. 11, 23 = Հայ՝ 13, 27) "ածին առաջի նորա զԱնեա որդի Անանայ քահանայի եւ զԳոբոդեա որդի Կայիափայ եւ զՑաադա որդի Աքաթսաղոմայ զգլխաւորս եւ զհրամանատարս Հրէից:„ Այստեղ կը տեսնուի, որ անուանց մէջ Լաբուբնա թէ "Վարդ. Առաք.„ գրութենէն եւ թէ Յակոբայ նամակէն բաւական կը տարբերի։ Միւս դրուի "Անանայ„ անուան, որ շատ աւելի նման է Յակոբայ թղթոյն "Աննայ„ ձեւին. — այսպէս ունին նաեւ հայերէն շատ ձեռագիրք "Վարդ. Առաք.„ գրութեան, — քան AB ձեռագրաց "Անանիա„ գրելուն։ Իսկ "Կայափա„ կամ "Կայիափա„ անուան առթիւ միտ դնել կու տայ Գիւրըթոն. (Cur. p. 171.) "Յակոբիտեանց մէջ տիրող կարծիք մ'եղաւ թէ Կայիափա՝ որուն անունն էր Յովսէփ, (տես Tillemont, Mém. pour servir à l'Hist. Eccl. I, p. 14.) նոյն անձն էր Յովսեպոս պատմագրին հետեւ թէ դարձած է ի քրիստոնէութիւն. (տես Ասեմանի Bibl. Or. II, p. 165.) "Մեղու„ գրքին մէջ (գլ. ԽԴ) կը կարդամ հետեւեալը. "Բայց Կայիափա՝ որ դատապարտեաց զՏէրն մեր, է Յովսեպոս. եւ անունն Բարաբբայ կոչէր Յովսէփ։„ — Հոս կրնանք յաւելուլ որ նոյն աւանդութիւնը կայ նաեւ ինչ ինչ հայ հեղինակաց քով. այսպէս Մխիթար Այրիվանեցի պատմագիրն (Պատմ. տպ. Պետր. 1867, էջ 37) պատմչաց շարքին մէջ կը դրէ "Յովսեպոս, որ է Կայիափայ։„

զլոյս արեգականն որ սփռեալ է ընդ ամենայն արարածս. եւ ահա երկրպագի ամենայն հեթանոսաց եւ փառաւորէ ամենայն լեզուաց. եւ է յետոյ խորհրդոյ Մովսէսի եւ որդւոյն Եզրոյ, զոր ետ մեզ, եւ խափանեաց զոհս ի տանէ խաչահանուացն, զի եբարձ ի նոցանէ զքահանայութիւնն եւ ետ մեզ. եւ է նայ ընդ երկրպագուս իւր, եւ ոչ թողու զնոսա՝ մինչեւ կատարած այս աշխարհ.[1] որոյ չիք կատարումն եւ սկզբան նորա՝ զայս զոր դու ինքնին գիտես։»

Աւետարանեցաւ յամենեսեան եւ փառաւորեցաւ յամենեցունց, եւ ընկալան ամենայն տիեզերք զվարդապետութիւն նոցա . . . Եւ հեթանոսք ամենայն որ բնակեալ էին յաշխարհս հեռաւորս լուեցին եւ դադարեցին եւ հաւանեցան քարոզութեան աւետարանին։ — (Ներսէս.) Եւ զոր օրհնակ ի վերնատունն յայտնեաց Տէրն աշակերտացն զխորհուրդ սուրբ Մովսէսի եւ որդւոյն Եզրոյ՝ [ի փրկութիւն ընդունելով ի թագաւորել լուսոյն յաւիտենից . . .։] — Իսկ եղեւ հաւատարիմ եւ ընդունելի (վարդապետութիւն առաքելոց) յամենայն կողմանս՝ յակնարկել Տեառն թէ Ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս՝ մինչեւ կատարած այս աշխարհ։

Այսչափն՝ զոր յառաջ բերինք Յակոբայ Թղթէն, կը բաւէ մեր նպատակին համար։ Բայց՝ ինչպէս մտադիր ընթերցողը իմացած պիտի ըլլայ, այս փոքրիկ անվաւերն ոչ միայն մեր կանոնաց նախնականին հետ կապ մ'ունի, այլ նաեւ Հայոց համար ուրիշ կողմանէ մ'ալ։ Երկու գրութեանց ալ թարգմանիչը միեւնոյն անձը կ'երեւայ, որնաեւ՝ ինչպէս յետոյ պիտի ցուցընենք, թարգմանիչն է Լաբուբնայի։ Այս կարգ մ'անվաւերականք մէկ թարգմանչի ձեռքէն ելած են, որոնց կարգէն է անշուշտ չորրորդ մ'ալ՝ զոր աչքին առջեւն ունէր Յակոբայ Թղթոյն յօրինիչը։ Այս չորրորդն է Պիղատոսի Թուղթն եւ իր առջեւ եղածներուն "Յիշատակարանքն", զոր կ'ակնարկէ Յակոբայ

---

1 Այս կոչման վրայ տես վերը՝ էջ 31։

թուղթն իւր առաջին մասին մէջ գրելով.... «Այժմ յայտնի եղեւ նենգութիւն նոցա (Հրէից) առաջի Պիղատոսի դատաւորի եւ խոստովան եղեն Աննայ եւ Կայիափայ եւ Բենիամին եւ Նախմայէլ գլխաւորք ժողովրդեանն իւրեանց, թէ որպէս ետուն կաշառ պահապանացն որ պահէին զգերեզմանն Տեառն մերոյ՝ հանդերձ Արիստիդէսիւ եւ Անատոլիւ՝ զի թողցեն զոր ինչ տեսինն. նաեւ ինքեանք իսկ պահապանքն խոստովան եղեն զայս թէ արդարեւ առին կաշառ, զի մի ասիցեն թէ յարեաւ Քրիստոս ի մեռելոց։ Երբեւ ի վերայ եկաց Պիղատոս ճշմարտութեան բանիցս այսոցիկ՝ հրաման ետ զի արգելցեն զդահիճսն ի բանդ։ Եւ զի հազարապետ էր Պիղատոս՝ կայսեր, գրեաց եւ եցոյց զամենայն՝ զոր գործեցին հրեայքն ընդ դատաստան ընդ Տեառն մերոյ...։ Փոյթ լիցի քեզ այսուհետեւ եղբայր մեր զի լուիցես եւ ցուցցես ինձ թէ զինչ հրաման տայ կայսրն վասն այդորիկ, զի ահաւասիկ առ ձեզ է արքայ Իտալիայ։»

Այս խօսքերուս մէջ ամփոփուած է անվաւերականի մը բովանդակութիւնն, զոր ունինք ձեռքերնիս նաեւ հայերէն թարգմանութեամբ, որ բաւական յաճախ կը գտնուի ճառընտրաց մէջ ալ։ Հայերէնին մէջ վերնագիրն է.[1] «Յիշատակարանք որ եղեն վասն Քրիստոսի առաջի Պոնտացւոյ Պիղատոսի իշխանին Հրէաստանի.» եւ որուն կը կցուի երկրորդ մ'ալ, որ է «Թուղթ Պիղատոսի դատաւորի՝ զոր գրեաց յաղագս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ առաքեաց առ Տիբերիոս կայսր ի Հռովմ քաղաքն» եւն։ Ինչ ինչ ձեռագրաց մէջ անջատ կը գտնուին այս երկուքն ալ,[2] իսկ այլոց մէջ ի միասին։ Յակոբայ թղթոյն յօրինիչն ի

---

1 Հմմտ. Ձեռ. մեր Մատ. Թիւ 2, Թղ. 40ա1—55ա2. Ձեռ. Թիւ 257 (հին Թիւ՝ 67Ա) էջ 49—56. Թիւ 224 (հին Թիւ 8) Թղ. 389—393։

2 Այսպէս միայն Թուղթն ունի՝ Թ. 257. Թիւ 224 միայն առաջինը։

Հարկէ այս անվաւերականին ասորերէնն ունէր իր առջեւ։ Ասորերէնէ է նաեւ հայերէն թարգմանութիւնն, ինչպէս յայտնի կը տեսնենք լեզուէն ու ոճէն. նաեւ Ղուկասու (ԻԳ, 46) "Հայր, ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ" խօսքն ասորերէն պահուած է հայերէնին մէջ՝ այսպէս[1]. "Բարբառեցաւ Յիսուս ի ձայն մեծ եւ ասէ. [illegible] [illegible] (աղաւաղեալ, եւ ըլլալու է՝ [illegible] = [illegible] որ թարգմանի՝ "Ի ձեռս քո յանձն առնի հոգի իմ։" Այս անվաւերականն՝ թէեւ բաւական տարբերութեամբք՝ կը գտնուի նաեւ յունարէն, որ կը կրէ ճշդիւ "Յիշատակարանք" (ὑπομνήματα) յորջորջումն վերնագրին մէջ, եւ զոր Թիշէնտորֆ հրատարակած է "Acta Pilati, A" անուանելով[2]։ Իսկ Պիղատոսի թուղթը կը համապատասխանէ այն երկու կտորներուն՝ զոր Թիշէնտորֆ Anaphora Pilati եւ Paradosis Pilati անուամբ հրատարակած է։[3] Մեր ծրագրէն դուրս է աւելի երկար ծանրանալ այս կէտիս վրայ։ Բայց որովհետեւ "Յիշատակարանք" սերտ կապ ունին նաեւ ի մանաւորի թարգմանչին կողմանէ այս մեր անվաւերականաց հետ, կը խոստանանք զայն առանձին գրութեամբ ի լոյս հանել։ Այն ժամանակ առիթ կ'ունենանք կրկին դառնալու այս կէտիս, այսինքն Յակոբայ թղթոյն եւ "Յիշատակարանաց" մէջ եղած կապակցութեան։

Յակոբայ թղթոյն վրայ կը մնայ կէտ մ'ալ շօշափել, այն է վերնագրութիւնը՝ "Թուղթ զոր առաքեաց Յակոբոս առ Կոդրատոս։" Զո՞վ կ'ուզէր

---

[1] Թիւ 2, թղ. 45բ։

[2] Հմմտ. C. Tischendorf, Evangelia Apocrypha. Lipsiae 1876, pp. 210—286։ Acta Pilati A. Այս վերջնոյս մէջ յիշեալ խօսքը կը գտնուի՝ էջ 248, բայց քիչ մը տարբեր՝ "ի ձեռս քո" ընթեռնլով՝ մինչդեռ հոս [illegible] բուն "ի վերայ քո" կը նշանակէ։

[3] Tischendorf, Evangelia Apocrypha, p. 435—455։

Հասկընալ անվաւերագիրն այս անուան ներքեւ։ Անշուշտ կրնանք ըսել որ անվաւերագրին միտքն էր այն Կոդրատոս որ կը յիշուի իբրեւ ժամանակակից աշակերտաց առաքելոց՝ Եւսեբիոսի Եկեղեցական պատմութեան մէջ,[1] եւ այն՝ իբրեւ լի մարգարէական շնորհիւ։ Նոյն Եւսեբիոս նաեւ գլուխ մը նուիրած է Կոդրատեայ՝ որ ինչպէս Արիստիդէս՝ ջատագովութիւն մը գրեց մատոյց Ադրիանու։ Եւսեբեայ այս տեղն է ըստ նախնեաց թարգմանութեան[2]. "Հեդրիանոս (Ադրիանոս) կալաւ զկնի նորա (Տրայանու։) Նմա գրեաց Կոդրատոս խօսս նաճակէ (ἀπολογία) վասն հաւատոց մերոյ եւ մատոյց նմա, եթէ մարդք չարք հնարս խնդրէին աշխատ առնել եւ չարչարել զժողովուրդս մեր. եւ մինչեւ ցայս օր ժամանակի են խօսք նոցա առ եղբարս բազումս՝ որ են առ մեզ, զի նմանէ մարթեմք մեք

---

1 Եւսեբ. Եկեղ. Պատմ. Գ. գլ. լէ. "Ցայնցանէ իսկ որ առաքինացան յաւուրս նոցա՝ էին Կոդրատոս (Κοδράτος) հանդերձ դստերովքն Փիլիպպոսի, զի զնոցանէ ասի թէ ունին նոքա շնորհս մարգարէութեան,, ըստ հայ թարգմանութեան՝ որ շատ ճիշդ չէ. (տպ. Վենետ. 1877, էջ 223.) եւ կրկին կը յիշուի Փիլիպպոսի դստերաց եւ Ամմիայի անուանց հետ. (Ե. գլ. ժէ։)

2 Եւս. Եկղ. Պմմ. Դ, գլ. Գ. (տպ. Վենետ. 1877, էջ 240—1։) Կոդրատոսի այս ջատագովութիւնն այժմ կորսուած է, զոր տեսած էին Եւսեբիոս եւ Հերոնիմոս. (De vir. illustr. c. 19.) մանաւանդ թէ նաեւ Եւսեբիոս Թեսաղոնիկեցի Զ դարուն. (Հմմտ. Hergenröther, III. Per. I. § 54.) Տես Ջատագովխօսվրայ նաեւ Nirschel (Patrologie, I. p. 201) որ այսչափ կրնայ միայն աւանդել՝ թէ Կոդրատոս առաքելոց աշակերտ եւ եպիսկոպոս էր Աթէնքի յամէ 125, եւ թէ վկայական մահուամբ կնքած կ'ըսուի իւր կեանքը։ Կոդրատեայ Ջատագովութիւնն դեռ անգիւտ է, բայց Արիստիդեայն՝ որ ցայժմ հայերէն հատակտորով ծանօթ եղած էր (S. Aristidis philosophi Atheniensis Sermones duo. Venet. 1878) եւ նիւթ եղած էր բանասիրութեան քննութեանց, այժմ ամբողջովին գտնուեցաւ ասորերէն լեզուաւ, եւ գտնուեցաւ նաեւ որ յունարէնէն ալ մեծ մաս մը կայ Յովասափու եւ Բարղաամու պատմութեան մէջ մուծուած. (Հմմտ. J. R. Harris, The apology of Aristides ed. and Transl. with app. by J. A. Robinson, Cambridge 1891.) որուն վրայ բազմաթիւ գրութիւնք հրատարակուեցան։

*տեսանել զօրինակս լուսաւոր խորհրդոյ անձն այսմիկ եւ զմիամտութիւն հաւատոյն առաքելոյն։ Եւ նոյն ինքն ցուցանէ վասն հին ժամանակաց իւրոց այսու բանիւք ի պատմելն իւրում այսպէս, եթէ “Գործք Փրկչին մերոյ հանապազօր հաստատուն կային, զի ողջ եւս էին այնոքիկ որ բժշկեցանն, եւ այնոքիկ՝ որ յարեանն ի մեռելոց. զի ոչ միայն երեւելով երեւեցան այնոքիկ որ բժշկեցանն եւ յառնէին, այլ միշտ կենդանի էին, ոչ միայն մինչդեռ յաշխարհի էր Փրկիչն մեր, այլ եւ յետ փոխելոյ նորա յաշխարհէ աստի՝ կենդանի էին ժամանակս բազումս, այսպէս զի եւ մինչեւ ի մեր ժամանակս կացին մնացին ոմանք ի նոցանէ։” Բայց զայս այսպէս ասաց եւ Արիստիդէս, այր հաւատացեալ՝ յուսմանէ աստի մերմէ. ըստ նմանութեանն Կոդրատոսի արար նամակս վասն հաւատոցս մերոց եւ մատոյց Հեդրիանոսի. եւ սոյն այս գիրք դտանի մինչեւ ցայս օր ժամանակի առ բազումս։” Ցայս վայր Եւսեբիոս, որ քիչ մ'ետքն ալ կը յիշէ Կոդրատոս եպիսկոպոսն Աթենացւոց՝ գրելով.[1] “Կոդրատոս եղեւ նոցա եպիսկոպոս յետ վկայելոյն Պուպղիոսի. եւ վկայէ ի վերայ Կոդրատոսի թէ ի ձեռն փութոյ պնդութեան նորա եկին ժողովեցան ցրուեալքն եւ արծարծեցան հաւատք նոցա։”*

*Այսպէս անշուշտ ջատագովն Կոդրատոսն է՝ որուն ուղղել կ'ուզէ ասորի անվաւերագիրն իրեն յօրինած փոքրիկ թուղթը. որմէ կրնանք հետեւցընել թէ այն ջատագովութիւնն կարդացած է։ Ցակոբայ եւ Կոդրատոսի թղթակցութեան ժամանակագրական անյարմարութիւնն այս կարգի գրութեանց անսովոր բան մը չէր։*

*Բաւական կը համարինք փոքրիկ անվաւերականիս նկատմամբ այսչափն, որով ցուցընել ուզեցինք նաեւ անոր եւ մեր կանոնաց մէջ եղած սերտ*

---

[1] Եւսեբ. Պատմ. Եկեղ. Դ. գլ. ԻԳ. (տպ. Վենետ. 1877, էջ 297.)։

կապակցութիւնն։ Այս պատճառաւ ալ մեր կանոնաց Հրատարակութեան վերջը կցած ենք այս փոքրիկ անվաւերականն ալ՝ հանդերձ անոր գերմ. թարգմանութեամբն իբրեւ Յաւելուած Ա։ Իսկ Յաւելուած Բ կը բովանդակէ ուրիշ անվաւերական մը՝ Կանոնք Ադդէի, որուն վրայ եւ անոր մեր կանոնաց հետ ունեցած աղերսին նկատմամբ այժմ պիտի խօսինք։

---

Ամէն ամբողջական կանոնագրոց մէջ այժմ կը գտնուի կանոնական հաւաքածոյ մ'ալ, որ գոնէ Օձնեցւոյն օրով շատ ծանօթ ըլլալու չէր. վասն զի անոր հաւաքման մէջ մտած չէ։ Սովորաբար կանոնագրոց սկիզբները կը գտնուի այն։ Այսպէս է օրինակի համար մեր Մատ. Թ. 44 եւ այլ օրինակաց մէջ, ուր երրորդն է ի կարգին, այսինքն՝ մեր կանոններէն եւ "ի ձեռն Կղեմայ" կոչուած Յունական Առաքելական Կանոններէն ետքը, բայց "Փիլիպպոսի" կանոններէն յառաջ։ Արդ այս կանոնները պերճահնչիւն տիտղոս մը կը կրեն, որ է "Սահմանք եւ Կանոնք Թադդէոսի (= Ադդէի) առաքելոյ ի գալն նորա յՈւռհա քաղաքն" եւն։ Այս տիտղոսէն ետքը կու գայ փոքրիկ յառաջաբանութիւն, յորում կ'ըսուի թէ ինչ առթիւ Ադդէ այս կանոնները դրած է։ Այս յառաջաբանութիւնը կ'արժէ հոս ի մէջ բերել.[1] "Սահմանք եւ կանոնք Թադդէոսի Առաքելոյ ի գալն Նորա յՈւռհա քաղաք եւ լուսաւորել զնոսա մկրտութեամբ աւազանին. ուր ձեռնադրեաց Եպիսկոպոսս եւ քահանայս եւ սարկաւագունս եւ հաստատեցան Վարդապետք եւ ընթերցողք, եւ եղեւ պայծառութիւն եկեղեցւոյ Աստուծոյ եւ սեղանոյ։ Կարգեցաւ գնալ անտի զի քարոզեսցէ եւ այլոց քաղաքաց. եւ կոչեաց ժողովեալ

---

[1] Ձեռագիրք շատ մեծ տարբերութիւնք կը ցուցընեն, որոնք կրնան տեսնուիլ մեր Հրատարակութեան մէջ։

էր զԱգգէ կերպասագործ. ժողովեցան ամենքեան հարցանել նմա զկարգս եկեղեցւոյ եւ զկրօն Քրիստոնէութեան եւ նա պատմեաց նոցա կարգաւ ըստ հրամանի փրկչին:„

Պէտք չենք այս յառաջաբանին իմաստի անկապակցութեան վրայ շատ ծանրակշռութիւն դնել եւ անըմբռնելի գտնել որ Ուռհայեցիք իրենց դառնալէն ու մկրտուելէն եւ Ադդէի եպիսկոպոսներ, քահանաներ եւ սարկաւագներ ձեռնադրելէն եւ վարդապետներ ու օրէնսդրութիւններ հաստատելէն ետքը դեռ նոր պէտք կը զգան հարցընելու Ադդէի “զկարգս եկեղեցւոյ եւ զկրօն քրիստոնէութեան.„ եւ Ադդէ այս վերջին վայրկենին միայն կարգադրութիւններ ընելու առիթ կը գտնէ: Այս կարգի անհետեւողութիւնք ցանցառ չեն այս տեսակ անվաւերական գրութեանց, որոնք այնպէս շատ փոյթ չունին իրենց յօրինած կեղծիքները գոնէ յարմարցընել այն ժամանակին:

Այս ամենը մէկդի թողլով ալ՝ յայտնի է նոր կեղծիքիս՝ այն է Ադդէի կանոններ դրած ըլլալու զրոյցին՝ աղբիւրը: Ով որ քիչ շատ տեղեակ է Արգարու եւ Ադդէի զրուցին եւ անոր վրայ նորագոյն ժամանակի քննութեանց սփռած լուսոյն, չի կրնար անգիտանալ որ այս նոր կեղծիքն ալ նոյն զրոյցին մէկ նոր զարգացումն կամ ճիւղաւորութիւնն է՝ ինչպէս կան ուրիշ շատ մը ճիւղաւորմունք: Կանոններս յօրինելու շարժառիթն ալ Լաբուբնայէն է: Թէ Ադդէ (ըստ յետնագոյն ժամանակի զարգացման՝ Թադէոս) Ուռհա եկած ու դարձուցած է այն քաղաքն ու շրջակայքն, թէ իրեն տեղ դրած է զԱգգէ (ըստ հայ աւանդութեան՝ Ադդէ) “կերպասագործն.„ — այս ամենն ուղղակի Լաբուբնայէն է: Թէ վերջին վայրկենին՝ երբ Ադդէ իրեն յաջորդ ձեռնադրած էր զԱգգէ եւ “ժողովեալ էին առ նա նախարարք եւ գլխաւորք քաղաքին[1]„ եւն,

1 G. Phil. 40, 17 = Հայ՝ էջ 38, 14:

պատշաճ դատած է Ագդէ իբրեւ վերջին կտակ երկար խրատ մը խօսիլ (— այս խրատը Լաբուբնայի քանի մ'էջը կը գրաւէ, եւ ինչպէս տեսանք՝ անոր մէջ կ'ապսպրէ Ագդէ Առաքելոց կանոնները պահել, —) այս ալ Լաբուբնայէն է։ Բայց Ագդէի կանոնաց յօրինիչը չէ գոհ եղած այս խրատով. այլ անոր տեղ կանոններ պատշաճ տեսեր է դնել, եւ այսպէս Աբգարու եւ Ագդէի զրոյցն ընդարձակած քիչ մը. վասն զի երբ "կացոյց փոխանակ իւր զԱգդէ կերպարանագործ„. եւ "ժողովեցան ամենեքեան հարցանել նմա զկարգս եկեղեցւոյ եւ զկրօնն քրիստոնէութեան,„ այն ատեն — ճշդիւ Ագդէի վերջին խրատին տեղ — "նա պատմեաց նոցա կարգաւ ըստ հրամանի Փրկչին„ այն կանոններն՝ որ կը յաջորդեն թուով ԻԹ, կամ ըստ այլ ձեռագրաց՝ որ պէսպիսութեամբ կ'աւանդեն կանոնաց ձեւն ու թիւը, ԼԴ։

Յայտնի է ուրեմն կեղծիքին բուն աղբիւրն, որմէ բնական էր որ կանուխ թէ ուշ այսպիսի կանոններ յերիւրէր սորի անվաւերագիր մը, որմէ թարգմանուած է հաւանականաբար Հայերէնը։ Սակայն Ագդէի զրոյցն ասկէ աւելի ալ զարգացած կը գտնենք։ Նախ վերոյիշեալ Յառաջաբանին մէջ պատմուածը թէ Ագդէ "Եղծակործանս„ դրաւ՝ արդէն Ագդէի զրուցին զարգացումն է։ Լաբուբնա՝ որ իւր այժմու կերպարանաց մէջ Ագդէի եւ Աբգարու զրուցին Դ դարու վերջերն ունեցած վիճակը կը դնէ մեր առջեւ, այսպիսի բան չի գիտեր։ Ըստ Լաբուբնայի՝ Ագդէ դարձուց ի քրիստոնէութիւն Ուռհա, Խառան եւ ընդհանրապէս Միջագետք[1] եւ նաեւ Հռոմէական պետութեան սահմանէն անդին, որմէ կու գային կ'աշակերտէին եւ կ'ընդունէին իրմէ լոկ "զձեռն երիցութեան։„[2] Ագդէ իւր դար-

[1] Հմմտ. G. Phil. 18, 20 (= Հայ՝ էջ 19, 5—7։) 35 4 (= Հայ՝ էջ 32, 13.) եւն։
[2] G. Phil. 37, 1 եւն. (= Հայ՝ էջ 34, 8 եւն։)

ձուցած տեղերն եկեղեցիներ կը շինէր եւ "կարգեալ ի Նոսա Եբէյանո եւ Տորէանտփանո եւ Գրակարտացո [1]:" Միայն երբ մահամերձ էր (կամ ըստ Հայոյն՝ յարեւելս երթալու կը պատրաստուէր,) կոչեց "զամենայն ժողովուրդս եւ զիշխանս որ էին ի քաղաքին, եւ կարգեաց առաջի նոցա է կորփ Եպիսկոպոսոսբեան յիւրում տեղւոջ զԱպդէ (= զԱգգէ) կէրպատափորթ: [2]" Այնուհետեւ՝ ըստ ասորւոյն՝ մեռաւ Ագգէ յՈւռհա, իսկ ըստ Հայոյն՝ գնաց յարեւելս քարոզելու: Ուստի Դ դարուն վերջերն դեռ անծանօթ էր զրուցին այն զարգացումն՝ որուն համեմատ Ագգէ շրջակայ երկիրներուն համար եպիսկոպոսներ ձեռնադրած ըլլայ. ըստ այսմ Ագգէի կանոնաց յօրինողին պատմածը շատ աւելի նորագոյն զարգացում մըն է, եւ ամէնէն կանուխ իսկ դնելով՝ Ե դարէն յառաջ չէ յերեւան եկած:

Լաբուբնա նաեւ Ագգէի համար պարզապէս կ'ըսէ թէ "կացոյց քահանայս եւ առաջնորդս յամենայն աշխարհիս Միջագետաց" — միայն հայն է որ այս խօսքը շատ ծոխացուցեր է [3], — եւ մինչեւ անգամ թէ՝ վասն զի երբ Աբգարու յաջորդին հրամանաւ Ագգէի ոտքերը խորտակեցին՝ "վաղվաղակի մեռաւ փութապէս եւ ոչ ժամանեաց ձեռնադրել զՓլոտ" իրեն յաջորդ. այնպէս որ Փլոտ ստիպուեցաւ երթալ "յԱնտիոք եւ ընդունել անդ զձեռնադրութիւն քահանայութեան ի Սրապիոնէ ե-

[1] G. Phil. 40, 8 եւն. (= Հայ՝ էջ 38, 5 եւն:)

[2] G. Phil. 40, 17 (= Հայ՝ 38, 14 եւն.) "Եպիսկոպոսութեան" տեղ Ասորին ի հարկէ "տոտՆորք Ե- Հրամանափար" կ'ըսէ:

[3] Հմմտ. G. Phil. 50, 1, իսկ Հայն (46, 17—47, 5.) ծոխացուցած այսպէս. "Եւ հնազանդեցան ամենայն Միջագետք եւ ամենայն կողմանք Արեւելից ընդ ձեռամբ Ադէի՝ ըստ վարդապետութեան զոր ընկալաւ յԱդէէ առաքելոյ. ծանդէ յայնմ ժամանակի մայր քաղաքաց Եդեսիա Ուռհայ ամենայն աշխարհին կողմանցն Արեւելից. վասն զի ի նա նախ քարոզեցաւ աւետարանն Քրիստոսի. եւ անդէ ընդունէին զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան ամենայն Արեւելք:"

պիսկոպոսէ յԱնտիոք քաղաքէ։„[1] Իսկ մեր կանոնաց յօրինիչն աւելի եւս զարգացած կիտէ զրոյցն. այսինքն նախ՝ ըստ գլխաւորաբար Հայ աւանդութեան՝ զԱդդէ ոչ թէ յՈւռհա մեռած կը պատմէ, այլ գնացած յԱրեւելս քարոզելու։ Սակայն աւելի եւս յառաջ գացած կը գտնենք զրոյցն. վասն զի կանոնացս հաւաքիչն արդէն գիտէ զրոյցին այն նոր զարգացումն ալ՝ թէ Ադդէ նախ երթալով ի Հայս՝ ձեռնադրեց "Զաքարիա„ անուն աշակերտ մ'եպիսկոպոս. որուն կը կցուի ուրիշ ճիւղաւորումն ալ, այսինքն՝ այն որ Ադդէ կ'երթայ նաեւ Կապպադովկիա եւ հոն կը ձեռնադրէ եպիսկոպոս զԹէոփիլոս. — երկուքն ալ շատ նորագոյն զարգացմունք։ Մեր կանոնաց յօրինիչն ի վերջոյ կցած է յիշատակարան մը, յորում կ'ըսէ թէ այն "Զաքարիա„ աշակերտն է որ Ադդէի այս կանոնները գրի առնելով աւանդած է յետնոց։ Արդ թէ՛ Զաքարիայի եւ թէ՛ Թէոփիլոսի նկատմամբ զրոյցը շատ ուշ ծագած ըլլալու է։ Նաեւ այն գլխաւոր յիշատակարանն՝ որ Ադդէի ի Հայս գալն եւ ի Շաւարշան նահատակութիւնը կը պատմէ, եւ որուն նախնականն արդէն Ե դարուն ծանօթ էր Հայոց եւ թարգմանուած Սամուէլ եպիսկոպոսէն,[2] դեռ եւս չի գիտեր Զաքարիա աշակերտին միջնադէպն, ինչպէս նաեւ ոչ ալ յետագայ հնագոյն պատմիչք, օրինակի համար Խորենացի՝ որ Ադդէի արեւելք երթալուն եւն զրոյցը կը պատմէ՝ դէպքերը ծայրաքաղ ընելով։[3] Զաքարիա կը գտնենք առաջին անգամ այն փոքրիկ գրութեան մէջ որ կը պատմէ Ադդէի եւ Սանդխտոյ նշխարաց գիւտին՝ զրոյցը Կիրակոս միայնակեցի ձեռօք[4], որ Յովհաննու Մանդակունւոյ օրով գիշերը տեսիլ տեսնելով գտած կ'ըսուի սրբոց գերեզմանն։

---

[1] G. Phil. 52, 9—12 = Հայ՝ էջ 49, 21—50, 2։
[2] Ալիշանու ձեռին մէջ լոյս տեսած՝ Սոփերք, Ը (տպ. Վենետ. 1853) էջ 1—58, հմմտ. նաեւ էջ 59—83։
[3] Խոր. Բ, գլ. ԼԴ։
[4] Տես Սոփերք, Ը, էջ 85—102։

Այս զրուցին մէջ կ'ըսուի թէ "պատանի մի բարձր Հասակաւ եւ գեղեցիկ երեսօք„ երեւնալով Կիրակոսի կ'ըսէ. "Կիրակոս, որ տեսերդ՝ Խորայէլ է, եւ որ ի վերայ դորա՝ Ես եմ [illegible], եւ գիր ի վերայ իւրաքանչիւրումն է, եւ արձանդ որ ընդդէմ կայ՝ անդ գտանես [illegible]„ (Ադդէ.) Սակայն այս գրութիւնն ուշ ժամանակի սրբախօսական մըն է, որուն ինչ արժէքն ունենալն մեր ծրագրէն դուրս է քննել: Ի Հարկէ Մ. Խորենացի (Բ. գլ. լդ) կարդացած է Սրբոցս նախարաց գիւտի պատմութիւն մը, վասն զի կը յիշէ "[illegible] յայտնել նախարաց երկոցունց եւ փոխել յ[illegible][1]„ Խորենացւոյ այս խօսքն առիթ տուած է Չամչեանի[2] նախարացս գիւտի ժամանակն Ե դարուն կէսերը մղելու: Բայց այն ամէնն այժմ պէտք է ծայրէ ծայր նորէն քննել. քննադատութեան նորագոյն արդիւնք կը ստիպեն առ այս: Եւ արդեօք նաեւ այստեղ նշան մը չունի՞նք պնդելու թէ Խորենացւոյ գրքին այս (ընդմիջարկեալ՞) խօսքը Եօթներորդ դարէն յառաջ չէր կրնար գրուիլ: Խորենացի նշխարքները "յ[illegible]„ փոխադրուած կ'ըսէ իրեն ժամանակները, ("[illegible] . . . : „) Բայց արդ "[illegible] Ս. Գրիգոր Հռչակաւոր եկեղեցին "ի վերայ պողոտային Վաղարշապատ քաղաքի„ յարդարելով "զվայրսն [illegible] . . . գեղեցկադիր յօրինուածով բարձր պարսպաւ„ շինեց Ներսէս Գ. Շինող (իբր 640—661:)[3] Պէտք չէ՞ ուրեմն ըսել որ այս ժամանակէն եկած է "աստ ուրեմն„ բառե-

---

[1] Այսպէս պէտք է գրել եւ ոչ "յառապարն„, ինչպէս ունի տպագրութիւնը:

[2] Տես Պատմ. Ա, էջ 584—586:

Սեբէոս, տպ. Պետր. էջ 189—1, 150—1 եւն: [illegible] եկեղեցւոյն վրայ տես ընդարձակագոյնս Ալիշան, Արարատ, (տպ. Վենետ. 1890) § 120, էջ 244—246 եւ էջ 201 եւ 208 Վաղարշապատու "Առապար„ին վրայ: Այս եկեղեցւոյն եւ իւր մնացորդաց վրայ տես նորերս նաեւ Տ. Յ. Սարգիսովսկի, Էջմիածնի Աւետարանը թրգմ. Հ. Բառն. Վ. Պիլէզիկճեան (Վիեննա, 1892) էջ 9—14:

րով բացատրուած ժամանակը։ Եթէ հարազատ է այս խօսքը, կ'ունենանք նոր ապացոյց մ'ալ այն կարծեաց, զոր մօտերս յայտնեց հայագէտ ուսուցչապետն Գարիէր։ Ասով նաեւ Նշխարաց գիւտին պատմութիւնն — որ յայտնապէս կեղծանուն է, — Է դարէն շատ ետքը գրուած ըլլալու է։ Նշանաւոր է վերջապէս որ շատ ուշ կը գտնենք Զաքարէ աշակերտ մը յիշատակուած պատմչաց քով. այսպէս Ուխտանէսէն[1], որ Ադդէի եւ Սանդխտոյ հետ նահատակուած կը դնէ. “Զենոնոս եւ Զաքարէ եւ Զարմանդուխտ„. եւ աւելի որոշ Միքայէլի Ասորւոյ “Ցաղագս քահանայութեան„ գրութեան Հայոց աշխարհի առաքելոց շարքին մէջ — (Բարթուղիմէոս, Թադէոս, Յուդա Յակովբայն, Սիմոն որդի Յովսեփու, Եղիշէ եւ Խադ, Թէոփիլոս՝ ձեռնադրեալ յԱդդէէ ի Կեսարիա, Ադդէ կերպասագործ (Ագգէ) եւ Զաքարէ են. —) իբրեւ ութերորդ յիշուած է “Զաքարէ՝ զոր ձեռնադրեաց յԱրեւելս փոխան ինքեան, եւ ասաց՝ զսա ետու ձեզ վարդապետ, զոր ելից հոգին Տեառն։„[2]

Այս խնդրոյս վրայ այսչափ երկար խօսիլը նախ քան բուն մեր խնդրին անցնիլն, — այն է ցուցընել որ Ադդէի այս կանոնքն Հետեւողութիւն են մեր “Կարգ. Առաք.„ կանոնաց, — ըստ ինքեան աւելորդ էր։ Եթէ ուրիշ որեւէ նշան չգտնուէր՝ բաւական էր հայեցուածք մ'արձակել այս կանոնաց վրայ, եւ եկեղեցական բարեկարգութեան նաեւ միջակ հմտութեամբ կը տեսնուէր անմիջապէս՝ որ ո՛չ թէ Ադդէի կամ առաջին դարուն կրնան ըլլալ, այլ անոնց մեծ մասն առ առաւելն հինգե-

---

[1] Ուխտանէս Ա, գլ. խ. (տպ. Վաղարշապատ 1871) էջ 54։

[2] Միքայէլ Ասորի (տպ. Երուսաղէմ 1871) էջ 32–33։) Հետաքրքրական էր տեղւոյս ասորերէն բնագիրը տեսնել, — որ դժբախտաբար լոյս տեսած չէ դեռ, — եւ անշուշտ շատ տարբեր ըլլալու է։ Թարգմանիչն այս մասերն կերպարանափոխ ըրած ըլլալու է։

բոլոր դարու կրնար գրուած ըլլալ: Եւ սակայն ճշդիւ Զաքարիայի այս պատմութիւնն Չամչեանէն[1] սկսեալ ամենափոքր գրութեանց մէջն իսկ կը գտնենք: Զաքարիայի եւ իր ընկերաց զրոյցն իբրեւ էական մասն է Հայ եկեղեցւոյ պատմութեան այն երեքդարեան անջրպետը լեցընելու, որ կը բաժնէ Ս. Գրիգորի Լուսաւորչի ձեռօք Հայոց լիակատար դարձը՝ առաքելոց ժամանակէն եւ ի մանաւորի Ադդէէն: Օրինակի համար Աբէլ արքեպ. Մխիթարեանցի Հայ եկեղեցւոյ ժողովոց պատմութեան առաջին գլուխը կը գրուէ[2] "Թադդէոս Առաքեալ նախալուսաւորիչ" իբրեւ "առաջին կանոնադիր Եկեղեցւոյս մերոյ," եւ ուր դրուած են՝ քիչ տեղ համառօտութեամբ՝ Ադդէի կանոնքս իբրեւ հարազատ անդրանիկ կանոնք Հայ եկեղեցւոյ: Նաեւ նորագոյն ժամանակներս այս կանոնք առնուած կը տեսնենք իբրեւ ապացոյց Առաջին դարու Հայ եկեղեցւոյ նաեւ գրաւոր պատմութեան մը գոյութեան:

Վերջին գրութիւնք ի հարկէ աւելի զգոյշ են այս մասին: Այսպէս Հ. Բարսեղ Վրդ. Սարգսեան Ագաթանգեղեայ գրոց քննութեան մէջ խօսելով Զաքարիա եւ ընկերաց զրուցին վրայ կը գրէ.[3] "իսկ Հայ. եկեղեցւոյ ժողովոց Հաւաքածոյէն մէջ Թադէոս Առաքելոյն վերագրուած 29 Ցօդուածով Օրէնսդրութիւն մի եւս կայ, որուն գրողն է Զաքարիա Սիւնեաց առաջին եպիսկոպոսն, ձեռք ըստ վկայութեան յիշատակարանին . . . : Արդ, այս Օրէնսդրութիւնն պէսպէս կանոններ կը սահմանէ եպիսկոպոսայ, քահանայից եւ ժողովրդեան համար, ուստի՝ եթէ չէ անհարազատ, յայտնի

---

[1] Պատմ. Ա, էջ 295—299:

[2] Տես Արարատ, 1873, էջ 401—406. եւ առանձին գրքոյկ՝ (Պատմ. ժողովոց Հայ. Եկեղ. Վաղարշապատ 1874) էջ 9—18:

[3] Ագաթանգեղոս եւ իր բազմադարեան գաղտնիքը, Վենետ. 1890, էջ 185:

ապացոյց է այդ ժամանակի Հայ. եկեղեցական Դասակարգութեան կամ Նուիրապետութեան մի» եւն։ Շատ իրաւացի է «Եբէ չեցէ անհարազատ» թէութիւնը, վասն զի առ առաւելն Ե դարու յօդուած կցկտուր անվաւերական մ'այսպիսի Ա դարու նկատմամբ մթին խնդրոյ մէջ որեւէ կշիռ չունի։ Քիչ մ'ետքը խօսելով Բուզանդայ մէկ խօսքին վրայ, (— ուր կ'ըսուի թէ «ի թագաւորութենէ Տրդատայ Առաքելոյ եւ նորուն յելից եւ ի Մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեան Գրիգորի» արդէն «ի ձեռն այլոցն գրեցաւ.» —) կը գտնենք սա դիտողութիւնը.[1] «Թէպէտ Թադէոս Առաքելոյն Պատմութենէն դուրս՝ ամբողջ գրաւոր երկասիրութիւն մի հասած չէ դժբախտաբար ձեռքերնիս, սակայն մէկ կողմէն յանուն Առաքելոյս՝ Նորա Զաքարիա աշակերտին յետոյ գրուած ԻԹ յօդուածով Սահմանադրութիւնն . . . իսկ միւս կողմանէ ալ այլեւայլ յիշատակարաններէ հանուած բազմաթիւ եպիսկոպոսաց անուանքն իրենց պատմութեամբ հանդերձ . . . կը թուին երաշխաւորել մեզ այնպիսի եկեղեցական պատմութեան գոյութիւնը։»

Արդ անշուշտ ոչ ոք ըսելիք ունի այն կարծեաց թէ Բուզանդայ յիշեալ խօսքէն կրնայ հանուիլ սա եզրակացութիւնը թէ Ադդէէն մինչեւ Գրիգորի օրերը ներկայացընող պատմութիւն մը — մէ՞կ թէ շատ գործեր՝ այն խնդրէն դուրս է, — կ'երեւայ թէ ծանօթ էր Ե դարու։ Միայն թէ այսպիսի եզրակացութեան նեցուկ մ'ամենեւին չի կրնար ըլլալ Ադդէի Սահմանադրութիւնն, որ շատ ուշ ծանօթացած անվաւերական մըն է, եւ է հետեւողութիւն մը «Վարդ. Առաք. կանոնաց։» Այս բանս՝ զոր արդէն յիշած էինք յիշեալ գրոց մեր մատենախօսական ակնարկին մէջ[2], այժմ պիտի պարզենք

---

[1] Անդ, էջ 275։

[2] Հմմտ. «Հանդէս Ամս.» 1891, թ. 8, էջ 247։ Տես նաեւ վերը՝ էջ 3։

մանրամասն համեմատութեամբ այն կանոնաց աղբիւրներուն :

Եթէ լաւ զննենք "Զաքարիայի" յիշատակարանը, կը տեսնենք որ այս կեղծ կանոնաց յօրինիչն եւս ո՛չ դիտաւորութեան ջանացած է ծածկելու իւր գլխաւոր աղբիւրը, որ է "Վարդ. Առաք." գրութիւնն։ Իրեն՝ ինչպէս նաեւ բոլոր իւր ժամանակակցաց եւ նաեւ յետնոց առ հասարակ՝ մտաց մէջ ամենեւին տարակոյս մը ծագած չէ թէ "Վարդ. Առաք." անվաւեր գործք մըն է։ Եւ որովհետեւ այն սուրբ կանոնները Ադդէի — ուստի իւր Զաքարիայի ուսուցչին — անուամբ ծանօթ էին իրեն (— տեսանք որ սուրբ Լ ձեռագիրը "Վարդապետութիւն Ադդէի" կը յորջորջէ մեր "Վարդապետութիւն Առաքելոց" գրութիւնն ու կանոնները. —) պատճառ մը չէ տեսած ծածկելու իւր այս աղբիւրը, այլ մանաւանդ թէ յայտնապէս ազդարարած է թէ պէտք է պահուին նաեւ "Ադդէի Վարդապետութեան" կանոնները։ Այս մասին շատ որոշ են "Զաքարիայի" յիշատակարանին խօսքերը, ինչպէս կ'երեւայ, այս ԼԳ կանոններէն ետքը "Զաքարիայի" կցած յիշատակարանէն այսպէս, "Իբրեւ կարգեաց զայս սուրբ Առաքեալն Թադէոս (= Ադդէ), ասէ ցժողովուրդն. Հարք եւ եղբարք որք Տեառն ետուք զանձինս, այս յեղ յինէն օրէնք եւ այլ որ յետ յետ լինելոց են։ Արդ հաստատուն կացէք յամենայնի զոր լուարուք յինէն. մի անցանէք ըստ սահմանս ըստ այսմ, զի ձեզ բարի լիցի եւ երկայնակեացք լինիցիք. եղիցի ձեզ յիշատակ բանս այս եւ մի մոռանայք յաղօթս ձեր. եւ զայլ կարգաւորութիւնն ուսուցէ ձեզ Ադդէ (= Ադդէ) զամենայն զոր լուաւ յինէն ըստ կարգին՝ զոր կարգեցին եղբարք եւ առաքեալք Տեառն. պահեսջիք խաղաղութեամբ ի փորձանաց չարին. խաղաղութիւն ընդ ձեզ։ Զայս Օրէնսդրութիւն եւ Զաքարիա աշակերտ առաքելոյն Թադէոսի (= Ադդէի)

փրկեցէ՝ որդիս լուսոյ ի նմանէ՝ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս ։„

Կը տեսնենք ուրեմն որ անվաւերագիրն այս յիշատակարանովս կ՚ուզէ մեզի իմացընել՝

1. Որ իւր յառաջ բերած ԼԳ. կանոնք իրր թէ ըլլան Ադդէէ՝ վերջին վայրկեաններուն տուածները, երբ կը պատրաստուէր Արեւելք երթալու ։ — Այս կէտը Լաբուբնայի մէկ կտորին հետեւողութիւնն է՝ ինչպէս տեսանք ։

2. Բայց Ադդէ անձամբ գրած չէ զանոնք, այլ տուն տուած "Զաքարէա աշակերտին„ որ գրած է՝ "որպէս լուայ ի նմանէ ։„ — Ըսինք որ Ադդէ ըստ նախնական զրուցին Եդեսիա մեռած է, եւ զրոյցը իւր անուամբ կանոններ չի գիտեր. իսկ Զաքարէա աշակերտին պատմութիւնն նոյն զրուցին հայկական կերպարանափոխութեան ուշ ժամանակի զարգացումն է ։ Իսկ "Զաքարիայի„ գրած կանոնք Հազիւ Ե դարու կրնան ամենէն կանուխ գրուած ըլլալ, եւ իրենց աղբիւրն է մեր "Վարդ. Առաք.„ կանոնները ։ Զայս կը խոստովանի նոյն ինքն Զաքարիա, երբ

3. Ադդէի բերանը կը դնէ սա խօսքը թէ "ըստ կարգաւորութեան„ Ադդէ պիտի սորվեցնէ ձեզի, զոր "լուաւ յինէն ըստ կարգին՝ զոր կարգեցին Եղբարք եւ Առաքեալք Տեառն ։„ Ադդէ այստեղ կը յանձնարարէ այն "կարգք եւ օրէնք„ զոր "կարգեցին Առաքեալք եւ եդին հաստատութեամբ„ յԵրուսաղէմ ։ Եւ անոր համար պէտք տեսած է նոյն իսկ յիշատակարանիս մէկ խօսքը նմանցընել Առաքելոց կանոնաց նման խօսքին ։ Երբ Ադդէ կանոնները անմիջապէս դնելէն ետքը կ՚ապացուցէ թէ "Այս ձեզ յինէն օրէնք եւ այլ որ յետ ձեր լինելոց են„, աչքին առջեւ ունի Առաքելոց կանոններուն անմիջապէս կից սա խօսքն "Եւ արդ զայս ամենայն՝ զոր ինչ կարգեցին եւ եդին Առաքեալքն, ոչ եթէ անձանց իւրեանց միայն կարգեցին, այլ եւ այնոցիկ որ

ջնջ ծ–րեանց լքնելոց են։„ Այս տողն արդէն ամենեւին կարօտ չէ այլ եւս մեկնութեան։ Ասոր յաջորդ խօսքն ալ Լաբուբնայէն է։

Ցիշատակարանէս դուրս ալ բուն իսկ կանոնները նուազ հաժողիչ չեն, երբ մտադիր աչքով քննենք զանոնք եւ համեմատենք "Վարդ. Առաք.„ գրութեան կանոններուն հետ։ Այս համեմատութիւնը կը ցուցընէ որ Ադդէի կանոնաց մեծ մաս մը հետեւողութիւն է այն "այլ կարգաւորութեան„ զոր "կարգեցին եղբարք եւ Առաքեալք Տեառն„ ինչպէս կը տեսնենք յաջորդովս։

| ՎԱՐԴ. ԱՌԱՔ. | ԿԱՆՈՆՔ ԱԴԴԷԻ |
| --- | --- |
| 1. (կան. Ա.) Կարգեցին Առաքեալք. եթէ յորժամ յողջմ– լոն եւ երկիր պագանեն աստուածութեան ընդ ωրե–ելո կոցյեն ... այսու գիտացուք թէ յարուելս կոյս արժան է յաղօթս կալ„ եւն։ | 1. (կան. Թ.) "Դարձեալ ասէ Առաքեալն (Ադդէ.) Ցորժամ ի մի վայր ժողովին հաւատացեալքն յողո–մո ի տուն Աստուծոյ, զայլ ինչ մի խօսեսցին ..., բայց միայն զաղօթսն կոցյեն ընդ ωրե–ելո՝ ձեռս ի վեր ամբարձեալս՝ խնդրելով զարդարութիւն եւ Արքայութեան արժանանալ„ եւն։ |
| 2. (կան. Գ, Դ) "Կարգեցին Առաքեալքն... "Թէ ––ր չորեքշաբթոա է պահօ եղեօյ (Ասոր. եղիցի պաշտօն„) զի ի նմա գուշակեաց եւ յայտնեաց Տէր կենարար զխորհուրդ չարչարանաց իւրոց եւ մատնութեան եւ դատաստանի եւ խաչելութեան եւ մահուան եւ յարութեան՝ աշակերտացն իւրոց՝ եւ տրտմեցան Առաքեալքն...„ — "Կարգեցին ... եթէ Ո–րբոռ եղեօյ է պահօ եւ է փրփմոա– բե–ն (Ասոր. «եղիցի պաշ– | 2. (կան. ԻԸ.) "Չորեքշաբթի եւ ուրբաթի արժան է պահել։ — Արժան է պահել եւ աղաւթել, զի ––––րե չորչորանոց ծրէւն մերոյ են. փրփմոմ ի–ւ. յիշել զնորա կամաւոր խոնարհութիւնն գոհանալով զնմանէ որ եկն եւ փրկեաց զմեզ իւրով կամաւոր չարչարանաւքն. պահել ժնջեցնն ժամ։„ |

տուան„), վասն զի զոր ինչ աստացաւն յաւուր չորեքշաբաթու ... յաւուր ուրբաթու կատարեցաւ ... պահել լիցի մինչեւ յիններորդ ժամն„

3. (Կան. Ը։) «Կարգեցին Առաքեալքն ... եթէ պենտեկոստեան օր պահս կարգեսցեն ... յառաջ քան զաւուրն չարչարանաց փրկչին մերոյ, եւ ապա արասցեն զաւուրն չարչարանաց պատուէ Տեառն եւ տօն յարութեան փրկչին ... քանզի եւ ինքն իսկ Տէր մեր Քրիստոս տէր տաւնից եւ տարեկանաց„ եւն։ — (Համմտ. Կան. Բ «... յամենայն կիւրակէի եղիցի տօն եւ պաշտօն„ եւն եւ Կան. Ե. «աւր չորեքշաբթի եղիցի տօն եւ պաշտօն„ եւն.)

4. (Կան. Ի) «Կարգեցին Առաքեալքն ... եթէ ի կարգէ քահանայութեան ընդրեալքն, անարատքն որ սուրբ ի մարմնայէ իցեն (Համմտ. Կան. ԻԱ) ... «եւ չերթան զկնի արծաթոյ շահից եւ ձեռք իւրեանց սուրբ են ի կաշառոյ ...„ (առաջնոց եւ կարգէ եկեղեցւոյ հմտագէտ ...) ի քահանայապետութիւն կացուսցեն... — (Կան. ԻԲ) «... ամբարտաւանք եւ հպարտք եւ սէգք եւ մնապարծք եւ ատեցողք, արբեցողք, ուսումնատեացք եւ քնէածք եւ յոյլք եւ նախանձոտք չարեաց ... ցոփասէրք անողորմք, եւ կռուողք եւ

3. (Կան. ԻԹ։) «Զսուրբ Քառասնորդական պահեսցեն ամենայն քրիստոնեայք սրբութեամբ որով է չորեքշաբթի եւ ի կիւրակէի։ Յորժամ յաւուր չարչարանաց Տեառն հասցեն, ժպրհել մի՛ ոք իշխեսցէ յայն աւուրս՝ այլ տրտում ըստ Տեառն մերոյ տրտմութեամբ անդադար աղաւթեսցեն, եւ ապա զկիւրակէն զատկին տօնեսցեն ցնծալով ընդ յարութեան Տեառն մերոյ, աղաւթիւ փառաւորել զնա՝ որ փրկեացն զմեզ յարութեամբն իւրով„ եւն։

4. (Կան. Գ.) «Հրաժարեսցի Եպիսկոպոսն ի ձեռնադրութենէ ագահաց եւ տխմարացն, ցոփասիրաց եւ վատամտաց, յափշտակողաց եւ ի շնացողաց եւ յայլ վատթարագործաց. զայնպիսիսըն մի՛ ձեռնադրել եւ մի՛ բարկացուցանել զԱստուած։ — (Կան. Ա.) «Եպիսկոպոսն եղիցի անարատ, պարկեշտ, ուսուցող, մի՛ երկբան, մի՛ արծաթասէր, մի՛ կռւող եւ արբեցող, մի՛ գօշաքաղ, մի՛ հարկանող, մի՛ կաշառառու, մի՛ հակառակող, այլ հեզ ... առնել արժանաւոր ձեռնադրութիւն այնոցիկ որ հաւատացեալ են գրոց, կարգաց ե-

գեցին Առաքեալքն ... Եւ
Թէ հոյ պատարագին յորժամ
ատար եկեղեցի. է նմին ատար
նւյն է տեղւոյն եւ մի լիցի
իշխանութիւն զկնի աւուրց
հանել:»

պատարագին յորժամ ատար
զպատարագն մատուցանէն՝ է
նմին ատար եկեղեցին խաչա-
պես գրոշմամբ» եւն:

Այս համեմատութեանց վրայ երկար խորհրդածութիւններ ընել կարծենք աւելորդ է: Բազմաթիւ նաեւ բառական նմանութիւնք բառ բառականին կը ցուցնեն որ Ադդէի կանոններուն յօրինիչը գոհ եղած չէ միայն իր Ցիշատակարանին մէջ յիշել այն «կարգն՝ զոր եդին եղբարք եւ առաքեալք Տեառն», այլ նաեւ զայն յաճախ գործածած իր յօրինած կանոններուն մէջ: Միայն կէտ մը մտադիր ընել կու տանք: Ով որ թէ այն Ցիշատակարանն եւ թէ կանոնքս լաւ զննած է, մտադիր եղած է անշուշտ որ Ադդէի կանոնին յօրինիչը շատ տեղ «Վարդ. Առաք.» կ'երեւայ թէ կը գործածէ Հայերէն Թարգմանութեամբ: Արդէն Ցառաջաբանին այն կէտը թէ Ադդէ «կամեցաւ գնալ անտի (յՈւռհայէ) զի քարոզեսցէ եւ այլոց քաղաքաց», Աբգարու եւ Ադդէի զրուցին հայկական կերպարանափոխութեան համեմատ է, եւ դժուարաւ կրնար հոս Ասորի բնագրի մը մէջ այսպէս գտնուիլ: Նաեւ կանոնաց մէջ օրինակի համար այն խօսքը որ Դշ. եւ Ուր. օրերը կը հրամայէ «պահել մինչեւ ցիննն ժամն» բառ առ բառ առնուած է «Վրդ. Առաք.» Դ կանոնին Հայերէնէն, ուր այս խօսքը նոյնպէս կանոնին ամենէն վերջը կը գտնուի: Ասորին ասոր տեղ «եղիցի պաշտաւն յիններորդ ժամու» կ'ըսէ, որ բոլորովին տարբեր բան է:[1] Ադդէի Բ կանոնին վերջերն այն համեմատութիւնն որ եթէ Մովսէս «անարատ» կը պահանջէր որ ըլլան զոհամատոյց քահանայք, որչափ եւս առաւել պէտք են նորոյ ուխտին երիցունք ըլլալ, առ-

[1] Տես վերը՝ էջ 59—60:

նուած է “Վարդ. Առաք.„ ԺԲ կանոնին հայերէնէն, որ Հայ խմբագրին մէկ յաւելուածն է, ուստի տարբերէնին մէջ չկայ։ Այս եւ այլ նշանք կը ցուցընեն որ Ադդէի կանոնք այժմու ձեւովն՝ որ մնած է Հայ կանոնագրոց մէջ, Հայ խմբագրի մը ձեռքէն ելած են եւ չեն անփոփոխ թարգմանութիւն ուրիշ լեզուէ մը։ Սակայն ասկէ չենք կրնար անշուշտ հետեւցընել որ Հայն բոլորովին ինք իրմէ յօրինած է զանոնք։ Այս վերջինս դժուարաւ կրնայ ընդունուիլ, այլ հաւանականօրէն ունէր Հայն իւր առջեւ այս կարգի գրութիւն մը՝ զոր այլափոխած եւ որմէ ձեւած ու յօրինած ըլլալու է այժմու կանոնքն։ Եթէ ուղիղ ըլլայ մեր այս կարծիքն, — զոր միայն իբր ենթադրութիւն յառաջ կը բերենք եւ աւելի մանրամասն հետազօտել մեր ծրագրէն դուրս կը համարինք, — պէտք է ընդունիլ որ ասորական գրութիւն մ'ըլլալու էր այն՝ զոր գործածած է Հայն կամ ուղղակի կամ հին Հայ թարգմանութեամբ։

Զիարդ եւ իցէ՝ այս ենթադրեալ նախնական հաւանօրէն ասորի գրութիւնը Ե դարուն կրնար անշուշտ գրուած ըլլալ, վասն զի՝ ինչպէս տեսանք, “Վարդ. Առաք.„ Դ դարուն վերջերն իբր 380ին ի լոյս ելած էր, սակայն կանոնացս այժմու հայերէնն եւ ո՛չ Ե դարէն կրնանք համարիլ. ինչպէս կը վկայէ նաեւ այն պարագայն որ “Վարդ. Առաք.„ կանոնաց հայերէնը՝ որ Ե դարու վերջին տարիներէն է հազիւ, տեսանք գործածուած Ադդէի կանոնաց խմբագրողէն։ Իսկ թէ ե՞րբ հաւաստեաւ լոյս տեսած են Ադդէի կանոնք այժմու ձեւին մէջ, առ ժամս չենք կրնար ըսել։ Բայց թերեւս չսխալինք ընդունելու որ Օձնեցիէն յառաջ դեռ եւս ծանօթ չէին անոնք՝ գոնէ առհասարակ, վասն զի՝ եթէ ծանօթ ըլլային, անշուշտ Օձնեցի զանոնք ալ առած կ'ըլլար իւր Կանոնագրոց հաւաքման մէջ, որուն մէջ առնուած չենք տեսներ, ըստ

այսմ նաեւ չենք գտներ այժմու կանոնագրոց մէջ Անդրէի կանոնաց "տիտղոսներ„ կամ նիւթերու համառօտ գլխացանկ մը, զոր Օձնեցի իւր հաւաքման ամէն կանոնաց սկիզբն կցած է, եւ որուն մանաւանդ ուշադիր ընել կու տայ իւր Յիշատակարանին մէջ գրելով թէ "գլուխս անձնիւրոց համառօտել բանիւք ի սկզբան անդ նախակարգեցաք, զի անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ ընթերցողն:„ Եւ այսպէս ալ կը գտնենք այն կտորներուն սկիզբն տիտղոսներ, զորոնք Օձնեցի առած էր իւր հաւաքման մէջ:

Այսչափով բաւական պարզած կը կարծենք Անդրէի կանոնաց խնդիրը: Մեր գլխաւոր նպատակն էր զանոնք համեմատել "Վարդ. Առաք.„ կանոնաց հետ եւ ցուցընել թէ վերջինս է աղբիւր առաջնոյն մէկ մեծ մասին: Կան կտորներ ալ հնագոյն ժողովներէն, բայց գրեթէ միշտ ապագայ եղանակաւորութեամբ: Օրինակի համար Անդրէի Գ կանոնը՝ այն որ կը հրամայէ զերեսնամեայն միայն քահանայ ձեռնադրել, կրկնութիւն է Նէոկեսարիոյ ԺԱ կանոնին վճռին,[1] միայն թէ այն վերջին կտորը թէ յիսնամեայ եղողը չի կրնար ձեռնադրուիլ, ուրիշ աղբիւրէ ըլլալու է: Ե կանոնն՝ այն է եկեղեցւոյ սեղանին նկատմամբ հրամայուածը շատ նման կը հնչէ Ս. Սահակայ մէկ կանոնին:[2] Կրկին կանոնքն Ժ եւ ԺԱ՝ որ եկեղեցականաց ձեռնադրութենէ յառաջ եւ վերջն ըրած յանցանաց վրայ է, առնուած են ուրիշ ժողովոց կանոններէն:[3] Արդէն աստի իսկ կը տեսնուի որ կանոնացս մնացեալ մասն այլեւայլ աղբիւրէ յառաջ եկած է: Այստեղ աւելորդ կը համարինք ասոնց վրայ աւելի մանրամասն խօսիլ: Քանի մը բան ալ արդէն մեր

1 Hefele I, 249 = Հայ. կան. ՊՂԱ:
2 Համմ. Հայ կանոնագիրք՝ ՌԼԹ:
3 Համմ. Նիկիոյ՝ Ժ եւ Նէոկեսարիոյ Թ կանոնը (Hefele I, 413 եւ 248.) եւն:

հրատարակութեան ծանօթութեանց մէջ նշանակած ենք ։

Չենք խօսիր այստեղ այն ձեռագրաց վրայ՝ զոր գործածած ենք Ադդէի կանոնաց մեր հրատարակութեան եւ անոր համեմատութեանց մէջ. վասն զի գրեթէ միեւնոյն ձեռագիրները գործածած ենք ասոր համար՝ ինչ որ ձեռքերնիս ունէինք “Վարդ. Առաք.„ կանոններուն համար, որոնց վրայ յետոյ ի կարգին պիտի խօսինք համառօտիւ ։

Այստեղ պէտք ենք կնքել մեր հետազօտութիւնքն “Վարդ. Առաք.„ գրութեան ուրիշ հնագոյն գրութեանց հետ ունեցած կապակցութեան վրայ ,; այնու մանաւանդ որ հայերէն գրութեանց հետ ունեցած աղերսին նկատմամբ յետոյ պիտի խօսինք ի կարգին ։ Հոս կրնանք ի վերջոյ միայն միտ դնել տալ որ այժմու հայ կանոնագրոց կարգ մը կանոնական գրութիւնք՝ որոնք այլ հանգամանօք դեռ եւս խտիւ քննուելու կարօտ են, այսպէս կամ այնպէս կապ մ'ունին մեր կանոնաց հետ ։ Այսպէս օրինակի համար Մակարայ՝ Երուսաղէմի հայրապետին անունը կրող “կանոնական թղթին„ մէջ՝ որուն ի Հայս ուղղուած ըլլալը կ'աւանդուի, կը գտնենք իբրեւ եօթներորդ ի կարգին հետեւեալ կանոնը.[1] “Եւ որպիսի աւրինակաւ նուէրք սրբութեան յաւրինեսցի՝ հանել է սեղանն ընդ հացն ջերմ բաժ Առաքելոցն աւանդութեան ։„ Այս “Առաքելոց աւանդութեանն„ ինչպէս յայտնի է՝ մեր կանոնաց ԼԱ կարգադրութիւնն է, որ վճռած էր “եթէ հաց պատարագին՝ յորժամ առնուն եփեսցէ, ի նշխարն առնուն ելցէ ի սեղան ։„ Այս “ջերմ„ հայ նուիրելու հրամանին վրայ արդէն առիթ ունեցանք քանի մ'անգամ խօսելու ։ Այն կեղծ կանոնադրութեան մէջ՝ որ ըստ վերնագրին “Եփրեմայ արդիւնակատար կրաւնաւորի . . . ի կուսութեան ճառէն„ քաղուած է,

1 Հմմտ. Հայ կանոնագիրք՝ ՆԿԲ ։

կը գտնենք իբրեւ երկրորդ կանոն այս կարգադրութիւնը թէ ով որ Դշ. եւ Ուր. չպահէ՝ պատիժ կրէ, “իսկ եթէ ամբարտաւանութեամբ կամ արհամարհելով շաբաթական պահոցն, Գ. ամ ապաշխարեսցէ„ եւն[1], — ճշդիւ այնպէս՝ ինչպէս կանոնագրոց վերջերը կցուած ուրիշ կեղծ կանոնական կտորի մը մէջ՝ որ “ի Սոկրատայ„ կը յորջորջուի, կը գտնենք սա խօսքերը.[2] “Եւ որ շաբաթելական սահմանս կանոնաց քայքայեսցեն, որպէս պատուիրեցին թէ ի Դշաբաթոջ յՈւրբաթոջ հաստարակաց հաւատացելոց ուխտ պահոց եղիցին: Եւ որք լուծանեն զհրամանս առաքելականս . . . պատժապարտեսցին„ եւն: Վերջապէս ուրիշ կեղծ կանոնադրութեան մը մէջ ալ՝ որ “Սահմանք Կանոնադրութեան Երանելոյն Գրիգորի Աստուածաբանի Նաձիանձու եպիսկոպոսի„ վերնագիրը կը կրէ, կը կարդանք այնպիսի խօսքեր՝ որ կարծես մեր կանոնները կ'ակնարկեն: Այսպէս “Գրիգորի„ Դ կանոնը կը դրովէ զանոնք՝ որ են “. . . անհաւանք մնացեալ առաքելականք կանոնական սահմանացն՝ զոր բրով դաւանեալ ունի եկեղեցի, եթէ աւր Ծննդեան եւ Յայտնութեան Փրկչին մերոյ ի միասին տաւնեսցի ի Զ.ն յունուարի ամսոյ.„[3] (—– Հմմտ. մեր գրութեան Կան. Է:) Նոյն “Գրիգորի„ Լ կանոնին մէջ ալ կ'ըսուի ի միջի այլոց[4] “. . . Պահք որբոյ պասեքին Խ աւր՝ հանդերձ շաբաթու եւ կիւրակէին, որպէս կանոնեցին Առաքելքն Տեառն եւ սուրբ տիեզերական ժողովն„ եւն: — Ասոնք՝ ինչպէս ըսինք, ամբողջութեան համար կը յիշենք հոս. մեծ արժէք մը չունին առհասարակ խօսելով, եւ ոմանք անշուշտ գրաւոր կանոն մը չեն ակնարկեր, այլ ընդհանուր աւանդութիւն մ'որ այն սովորութիւնքն

---

1 Կանոնագիրք՝ ՊԻԲ:
2 Կանոնագիրք՝ Հոծ. ԽԴ. (Չեռ. Թ. 44, Թղ. 169բ:)
3 Անդ՝ ՆՀԱ:
4 Անդ՝ ՆԴԷ:

Առաքելոց կ՚ընծայէր: Բայց սատի այս գրութիւնք դեռ շատ կարօտ են հետազօտութեան: Միայն նշանակութիւն կրնայ ունենալ Մակարայ անուամբ եղած յիշեալ կանոնն, որուն անուամբ եղած Կանոնագրութիւնն թերեւս յէականս հարազատ գործ մ՚ըլլայ: Բայց այս խնդիրները մեր քննութեան շրջանակէն դուրս կը մնան:

## 6.

Իրաց հանգամանքը կը բերէր որ այս կանոնաց հաւաքածոյն՝ որ արդէն իր ծագման ժամանակներն այսչափ մեծ ընդունելութիւն գտած էր Դ դարու անվաւերականաց քով, եւ որ յաջորդ դարու մէջ հայերէն թարգմանութեան ալ արժանի տեսնուած էր, իր յարգը՝ իբրեւ բնիկ առաքելական կարգադրութեանց հաւաքածոյ՝ չկարենար դիւրաւ կորսնցընել յաջորդ դարերուն մէջ ալ: Եւ արդեամբք ալ միշտ իբր վաւերական գործք մեծ ճոխութիւն ունեցած է եւ գործածուած թէ շատ մ՚ասորի կանոնագրութեանց, թէ ի մասնաւորի Եբեդ-Յեսուայ եւ Բար-Հեբրէոսի կանոնագրոց հաւաքման մէջ, եւ թէ յետոյ նաեւ ուրիշ լեզուներու ալ թարգմանուած, այսպէս՝ արաբերէն եւ եթովպացերէն:

Անշուշտ մեր հաւաքածոյից Բ կանոնը՝ կիրակի օրը պահելուն նկատմամբ՝ առջեւն ունի Եսուբուխտ Պարսից մետրոպոլիտը (իբր Թ—Ժ դար[1]), որուն "Եկեղեցական Կանոնագրութիւնք" գրութենէն այս նիւթոյ նկատմամբ մէկ կանոնը յառաջ կը բերէ Եբեդ-Յեսու իր հաւաքման մէջ՝ ճիշդ մեր ասորւոյն Բ կանոնին կից:[2] Նոյն Թ դարու մէջ

[1] Տես այս անձին եւ իր գրութեան նկատմամբ՝ Ass. B. O. III, 195, 269, 279 եւ 351.

[2] Ebediesus, Collectio canonum etc. ed. A. Mai, Script. vet. nova collectio. Tom. X, Romae 1838, p. 84 (բնագիրը՝ էջ 248.) Ճառ Ե, գլ. Ե:

տպրող եւ կանոնական հաւաքածոյք մ՚ընող Գաբրիէլ մետրոպոլիտ Բասորայ[1], իւր հաւաքման մէջ գործածած է մեր կանոններն, ինչպէս կ՚իմանանք նաեւ Եբեդ-Յեսուայ մէկ կոչմանէն,[2] որ այն խնդրին թէ պարտակա՞ն են աշխարհականք Առաքելոց շաբաթն պահք պահել թէ ոչ, ի մէջ կը բերէ Գաբրիէլի մետրոպոլտի որոշումն, որ կ՚ըսէ թէ աշխարհականք պարտական չեն, բայց կրօնաւորք կը յորդորուին պահել։ Անկէ վերջը կը կցէ Գաբրիէլ նաեւ այս տողերը. "Վասն որոյ եւ ոչ պահելոյ պարտք ենոնցա, որպէս վասն Ուրբանոսի եւ Զորեպիսկոպոսի գոյ վասն նոցա կանոն Առաքելոց ճշաշակելոյ զմիս։" "Կանոն Առաքելոց" անուան ներքեւ կոչումն եղած է մեր գրութենէն. (տես Կան. Գ։) Եբեդ-Յեսու քիչ մը յառաջ ի մէջ կը բերէ նոյն նիւթոյն վրայ նաեւ Յովհաննու Բար-Աբգար պատրիարքին մէկ կանոնը[3], որ ուրբաթ օրը միս ուտելն արգիլելով կ՚ըսէ "Եւ որ արհամարհիցէ զայսուիկ եւ անցանիցէ զկանոնաւ Առաքելոց, արհամարհեալ լիցի։" Սոյն այս պատրիարքին՝ որ Ժ դարուն կ՚ապրէր, "Վասն Սեղանոյ եւ Ս. Հաղորդութեան" տուած ԻԸ կանոնները հրատարակած է Ասեմանի՝ Եբեդ-Յեսուայ ասորական մատենագրաց ցանկին ծանօթութեանց մէջ, ուր կը գտնուին նաեւ այլ տեղեկութիւնք սոյն անձին եւ իւր գրութեանց վրայ։[4] Այս կանոններուն վեշտասաներորդն մեր ասորական ԼԱ (Ասոր. ԻԷ) կանոնն՝ որ "ջերմ" հացիւ պատարագել կը պատուիրէ եւ որուն վրայ վերը խօսեցանք, ի մէջ կը բերէ՝ թէեւ առանց Առաքելոց անունը տալու՝ այսպէս[5]. "Հանգոյ թուե-

---

[1] Տես A s s. Bibl. Or. III, p. 202, 203, 269, 279 եւ 351։

[2] Ճառ Ե, գլ. ԺԹ. (M a i, p. 89 եւ 253։)

[3] Ճառ Ե, գլ. Ժ. (M a i, p. 85 եւ 249—250։)

[4] Տես A s s. Bibl. Or. III, pp. 232—254։

[5] Bibl. Or. III, p. 243, ուր Ասեմանի կցած է սոյն նիւթոյ վրայ քանի մը դիտողութիւններ։

ցաւ Հոգւոյն սրբոյ եւ հրաման տուաւ զի մի՛ եփեսցի հաց (պատարագի) վասն երկուց աւուրց, կամ պահեսցի մասն ինչ ի հացէն եւ մատուսցի վասն այնր եւ վասն վաղուի աւուր, եւ մի՛ մատուսցի սրբութիւն (պատարագ) վասն երկուց աւուրց: Եւ որ յանդգնեսցի եւ արասցէ զայս՝ խափանեսցի յաստիճանէն բանիւ Տեառն:„

Ճիշդ այս ԼԱ կանոնը (— բայց ոչ թէ բառնիւթոյն միայն՝ ինչպէս ըրած է Բար-Աբգար յիշեալ կանոնին մէջ, —) յառաջ կը բերէ նաեւ Դիոնեսիոս Բար-Սալիբի, եպիսկոպոս Ամթայ, որ ԺԲ դարու ասորի նշանաւոր մատենագիրներէն է:[1] Ասեմանի յառաջ կը բերէ ասորի ձեռագրէ մը Բար-Սալիբեայ գրութեանց ցանկը.[2] — ուր ի միջի այլոց կ'ըսուի թէ գրած է "Ընդդէմ Հայոց եւ սովորութեանց նոցա, յորում եւ վասն սկզբան այնր ազգի եւ ծագման ծիսից նոցա. ընդդէմ նոցին Հայոց ընդարձակագոյն ինչ թուղթ Բար-Շուշանայ գրեալ կայ ի Գիրս Ցուցմանց:„ Ցանկին մէջ ուրիշ գրութեանց հետ կը յիշուի նաեւ "Համառօտումն Առաքելական Կանոնաց:„ Այս համառօտման մէջ առնուած էին անշուշտ մեր կանոններն ալ. վասն զի նոյն անուանէն զատ Բար-Սալիբի կոչուածն կ'ընէ մեր ասորի ԼԱ կանոնն իւր "Մեկնութիւն Պատարագի„ գրութեան մէջ (գլ. է) այսպէս.[3] "Կարգեցին Առաքեալքն, որպէս գրեալ է ի կանոնս, եթէ հաց պատարագի յորում աւուր եփեսցի, ի նմին աւուր ելցէ ի սեղան եւ ոչ յետ աւուրց՝ որ չէ արժան:„ Կոչուածն բառ առ բառ նոյն է ԼԱ կանոնին ասորի բնագրին հետ, որուն վրայ վերը խօսեցանք: — Անշուշտ մեր կանոններն ալ առած է նաեւ Ամրուս որդի Մաթէի Տիրկանացի,

---

[1] Տես կենսագրութիւնը՝ Ass. Bibl. Or. II, pp. 516—211:

[2] B. O. II, 210—211:

[3] A. O. II, 183:

որուն գրութեան մէջ հաւաքուած են "Սահմանադրութիւնք, Արէնք եւ Կանոնք Առաքելոց." [1] ինչպէս կը գուշակենք Ասսեմանեայ խօսքերէն, որ կ'ըսէ թէ այս մասը կը սկսի Քրիստոսի համբարձմանէն ետքը Առաքելոց ըրածները պատմելով եւ դրած կարգադրութիւնքն յիշելով, եւ ինչպէս կը հետեւցընենք նոյն հեղինակին "Մագդալ" կամ "Աշտարակ" կոչուած գրքին նիւթերէն, որուն մէջ կը խօսուի Արեւելքի աշխարհիս ազնուագոյն մասն ըլլալուն վրայ եւն, եւ որուն վերջին գլուխն է ցանկ մ'այն աշխարհաց՝ ուր առաքեալք քարոզելու գացին։[2] Վերջապէս Եղիա Դամասկացի գործած է կանոնաց մատեանս, որմէ գրեթէ բառ առ բառ կ'օրինակէ Աջգէի վերաբերեալ մասը՝ գրելով.[3] "Աջգէ, աշակերտ Աջգէի, կոչեաց, քրիստոնեայս արար, աշակերտեաց եւ առաջնորդեաց կողմանցն Գեբաղայ, եւ Պարսից եւ Խուժաստանի մինչեւ ցսահմանս Ճենաց եւ մինչեւ ցԳոգ եւ Մագոգ." ուր միայն "Գեբաղ" կը գտնենք գրուած՝ մինչ "Վարդ. Առաք." Գեղջ ունի. տարբեր չէ "մինչեւ ցսահմանս Ճենաց," (բուն Սնդաց) ըսելն ուր մեր ասորին "մինչեւ ցսահմանս Հնդկաց" կ'ըսէ։

Այսչափն ալ բաւական է ցուցընելու կանոնաց ունեցած մեծ ճոխութիւնը. բայց ի հարկէ շատ աւելի կրնայինք այս մասն ճոխացընել, եթէ դիւրութիւն ըլլար ասորական շատ մը կանոնական գրութիւնքն ու հաւաքմունքն աչքէ անցընելու։ Միջին դարերու ասորի գրականութեան մեծագոյն մասն դժբախտաբար անտիպ է կամ ձեռագրաց մէջ պահուած՝ այլեւայլ գրատանց մէջ, որով դիւրաւ մատչելի չեն ամէն բանասիրի։ Մենք շատանանք այստեղ յիշելով միայն երկու կանոնական

---

1 Ass. Bibl. Or. III, 584 եւն։
2 B. O. III, 587։ Տես նաեւ II, 509։
3 Տես Ass. Bibl. Or. IV, p. 16։

հաւաքածոյքն, այն է Բար-Հեբրէոսի եւ Եբեդ-Յեսուայ գործքերն, որ արդեամբք ալ մեզի համար ամենէն աւելի արժանի են ուշադրութեան։

ԺԳ դարու մէջ ծաղկող ասորի նշանաւոր մատենագիրն Գրիգոր Աբուլփարագ կամ Բար-Հեբրէոս,[1] որ նախագահ էր Արեւելից՝ ասորի եկեղեցւոյ մէջ, եւ որ ծանօթ է գիտնոց նաեւ իբրեւ պատմագիր, շատ յաճախ գործածած է այս ասորի անվաւերականն իւր այլեւայլ գրոց մէջ։ Իւր ժամանակագրութեան մէջ օգտիւ զետեղած է մեր կանոնաց-մատենին վերջին պատմական մասէն կտորներ. այսպէս Ագգէի նկատմամբ եղած կտորը բառ առ բառ օրինակած է՝ գրելով.[2] "Զկնի Ագդէի աւետարանչի՝ Ագգէ աշակերտ նորա. սա խոյրս կերպասի գործէր արքայի, եւ սկսաւ քարոզել յամենայն Պարսկաստան, յԱսորեստան եւ ի Հայս եւ Մարս եւ ի Բաբէլ եւ Խուժաստան եւ ի Գեղս մինչեւ ցսահմանս կողմանց Հնդկաց։" Այս կտորին բառացի նոյնութեան վրայ կրնայ համոզուիլ ամէն ընթերցող համեմատելով զայն "Վարդ. Առաք." գրութեան վերջին մասին՝ Ժ կտորին հետ։ Ի մէջ բերուած կտորէն եւքը կը պատմէ Բար-Հեբրէոս Ագգէի նահատակուիլն՝ ըստ պատմութեան Լաբուբնայի։

Անշուշտ մեր ասորւոյն վերջին մասին Գ կտորն առջեւն ունի Բար-Հեբրէոս կամ գոնէ իւր աղբիւրը, երբ Թովմայի նկատմամբ կը գրէ նոյն՝ ժամանակագրութեան մէջ.[3] "Թովմաս առաքեալ, առաջին քահանայապետ Արեւելից։ Գէբր ֆարոշաւ-բէան Աստֆերաց որբոց ուսուցանէ եթէ աստուածային առաքեալն Թովմաս զառաջինն ի կողմանս Արեւելից լսելի արար զաւետարան Քրիստոսի յերկրորդ ամի վերացման Տեառն, յորժամ անց անտի

---

[1] Տես Ass. Bibl. Or. II, pp. 244—321 եւն։

[2] Տես Ass. B. O. IV, p. 15—16։

[3] Ժամանակագրութիւն, Գ, 1. (Ass. B. O. IV, p. 33

երթալ ի Հնդիկս, քարոզեաց զանազան ազգաց՝ Պարթեւաց եւ Մարաց եւ Պարսից եւ Կարմանաց եւ Բակտրիացւոց եւ Մարգաց եւ Հնդկաց։„ Քանի մը կէտեր կը ցուցընեն որ այս “Գիրք քարոզութեան Առաքելոց„ գործքին մէջ զրոյցը քիչ մ'աւելի զարգացած է քան “Վարդ. Առաք.„ գրութեան պատմածը։

Սակայն մեզի համար աւելի ծանրակշռութիւն ունին Բար-Հեբրէի իր կանոնական նշանաւոր հաւաքածոյից մէջ մեր կանոններէն առած կտորները, որով մեր կանոնաց մեծ բազմութիւն մը կը գտնենք նոյն հաւաքման մէջ անցած։ Բար-Հեբրէի այս կանոնական գրութիւնը “Կանոնագիրք Եկեղեցւոյն Անտիոքայ Ասորւոց„ տիտղոսը կը կրէ, եւ է ժողովածոյ այլեւայլ կանոնադրութեանց։ Այս գործքը՝ զոր Ալոյսիոս Ասսեմանի թարգմանած էր ի լատիներէն, Անճելոյ Մայի ծիրանաւորն իւր շատ անգամ յիշուած մատենին մէջ[1] հրատարակած է՝ թէեւ այս մասն առանց ասորերէն բնագրին, մինչ Եբեդ-Յեսուայ գործքը հանդերձ ասորի բնագրաւ ի լոյս հանած էր։ Բար-Հեբրէոս իւր գրութեան ներածութեան մէջ կը յայտնէ[2] թէ “յեկեղեցական իրս զհետ գնացի զԱռաքելական կանոնաց՝ որ յութ գիրս Կղեմայ եւ ի Վարդապետութեան Ադդէի (Didascalia Addaei) եւ յընդհանրական ժողովս աւանդեալ են։„ Թէ այս “Վարդապետութիւն Ադդէի„ առութեամբ մեր ասորի գրութիւնը կը հասկընայ Բար-Հեբրէոս, բաւական էր — եթէ նաեւ L ձեռագիրը չըլլար ծանօթ, — համեմատել նոյն գրութեան մէկ

---

[1] Ecclesiae Antiochenae Syrorum Nomocanon a Gregorio Abalpharagio Bar-Hebraeo syriace compositus et a Josepho Aloysio Assemano in latinam lingnam conversus: (A. Mai. Script. vet. nova collectio, Tom. X, Pars II, pp. 3—268.) Ամբողջը Ժ԰ գլխոյ բաժնուած է։

[2] Անդ, էջ 8a.

*ուրիշ տեղն,¹ ուր խօսելով տօներու կարգին եւ կիւրակի օրերը սուրբ պահելու վրայ, յառաջ կը բերէ — "Ի Վարդապետութենէ Ադդէի առաքելոյ, որ մին էր յեօթանասնից„ սա խօսքը. "Յամի 339 Յունաց, որ աւուր չորք էր Յունիսի եւ լրումն պենտէկոստէից, յորժամ փառաւոր առնէին առաքեալք զԱստուած ի վերնատանն, ուր կերան զՋատիկ, էջ ի վերայ նոցա Հոգի սուրբ եւ ուսոյց նոցա զկարգս եւ զօրէնս, եւ նոքա կարգեցին զայնոսիկ՝ այլոց որ միաբանէին քարոզութեան նոցա։„² Այս տողերը համառօտութիւն են մեր "Վարդ. Առաքելոց„ գրութեան ներածութեան, որմէ առնուած են առաջին եւ վերջին տողերը նաեւ բառ առ բառ։ Այսպէս նաեւ բովանդակ գրութեան մէջ մեր ասորի կանոններէն եօթն հատ կը գտնենք ի մէջ բերուած, եւ այն՝ մեծաւ մասամբ բառ առ բառ եւ սովորաբար "Ադդէի„ վերնագրով, ինչպէս կան. ԻԸ (Ասոր. ԻԵ) թագաւորաց բեմ ելլելուն վրայ,³ կան. ԻԷ (Ասոր. ԺԸ) մարտիրոսաց յիշատակը տօնելու⁴ նկատմամբ։ Ուրիշ կանոնաց մէջ նշանակուած է նաեւ մեր ասորի կանոնաց իրենց կարգին մէջ ունեցած տեղը, որ սովորաբար նոյն է քիչ տարբերութեամբ՝ ասորի ձեռագրաց կարգին հետ՝ մինչ անմիաբան է ի հարկէ հայոյն, որ կանոնաց կարգը շատ փոխեր է։ Այսպէս "Ջերմ„ հաց մատուցանելու կանոնը (որ ԼԱ է ըստ հայոյն, եւ ԻԷ ըստ ասորւոյն,) ի մէջ բերուած է իբրեւ "Ադդէի առաքելոյ՝ ԻՋ։„⁵ — առաջին կանոնը, որ կը հրամայէ արեւելք դառ-*

---

1 Գլուխ Ի, հատած՝ գ։

2 Այստեղ լուսանցքի վրայ գրուած է "Վարդապետութիւն Ադդէի առ Եդեսացիս եւ առ այլս. յամի Յունաց 342, ի 14 Յունիս ամսոյ, յաւուր միաշաբաթւոջ որ էր լրումն պենտակոստէից, ի լուսնականն Յունիս ամսոյ, յ13 արեւային Մայիսի։„

3 Բար-Հեբր. գլ. Բ, հատած գ։

4 Անդ, Գլ. Ջ, հատած ա։

5 Անդ, Գլ. Դ, հատած ա։

նայ աղօթելու, ի մէջ բերուած է քիչ մը համառօտութեամբ՝ իբրեւ “Ադդէի՝ Ա.„[1] — Աւետարանն իբրեւ “կնիք„ միւս գրոց կարդալու կանոնը (Թ՝ ըստ Հայոյն եւ Ը՝ ըստ Ասորւոյն) կոչուած է ի վկայութիւն իբրեւ “Ադդէի Առաքելոյ՝ Ը.„ եւ վերջապէս եկեղեցւոյ մէջ սաղմոսելու կանոնը (ԻԹ = Ասոր. ԺԹ) ի մէջ բերուած է իբրեւ “ԺԸ„ կանոն Ադդէի:[2] — Մեր հրատարակութեան մէջ իւրաքանչիւր տեղն դրած ենք Բար-Հեբրէոսի կոչմունքը զոր BH կը նշանակենք:

Ինչպէս կը տեսնենք՝ Բար-Հեբրէոս Ադդէի անուամբ տեսած է կանոնաց-մատեանս. միայն երկու տեղ “Առաքելոց„ վերնագրով յիշուած են մեր Ասորւոյն Բ եւ Ջ կանոնները,[3] բայց այս անուանակոչութիւնն իբրեւ անյատուկ եւ ընդհանուր մտօք գործածուած է. այնպէս որ նոյն վերնագրոյն ներքեւ կցուած է նաեւ Առաք. Ցունական Առաքելական կանոնաց եօթներորդը: Մանաւանդ թէ “Վարդապետութիւն Առաքելոց„ (Doctrina Apostolorum) անուամբ ի մէջ բերուած կը գտնենք “Կղեմայ„ ընծայեալ Առաքելական կանոններէն մին.[4] — կը գտնուին կոչմունք նաեւ Didascalia եւ Diataxis Apostolorum անվաւերական գրութեանց:[5] Բար-Հեբրէոսի մեր կանոնները “Վարդապետութիւն Ադդէի„ կոչելը չէ կամայական կամ շփոթութիւն, այլ այնպէս կարդացած էր իւր առջեւն եղած օրինակին մէջ, եւ այսպիսի Ասորի ձեռագիր մ'ալ հասած է մեզ եւ տպագրուած Լակարտէն, որուն վրայ տեղն է այժմ համառօտիւ խօսելու:

---

[1] Անդ, Գլ. Ե, հատուած ե:
[2] Անդ, Գլ. Է, հատուած ը:
[3] Անդ, Գլ. Ե, հատուած դ:
[4] Անդ, Գլ. Բ, հատուած գ, որ խօսքն է սարկաւագուհեաց պաշտամանց վրայ՝ որ անծանօթ է մեր Ասորի գրութեան:
[5] Հմմտ. Բար-Հեբր. Գլ. Է, հատուած գ, է, թ:

Լակարտի հրատարակութեան հիմն առնուած է Փարիզի Ազգային մատենադարանին մէջ գտնուած ասորի հնագոյն ձեռագիր մը, (Սէն-Ժէրմէնի Թիւ 38, ըստ ցուցակի ասորի ձեռագրաց նոյն գրատան՝ Թիւ 62։[1]) Այս ձեռագրին համեմատ հրատարակած է Լակարտ նախ Կղեմայ անուամբ ութ գրքեր[2], որոնց առաջինը կը կրէ սա վերնագիրը. "Գիրք Առաջին Կղեմայ՝ որ կոչի Կտակարան (διαθήκη) Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, բանք զոր խօսեցաւ առ սուրբ առաքեալս յետ յառնելոյն ի մեռելոց։„ Կղեմայ անուամբ այս ութ գրքերէն առաջին վեցն այժմ մեր նպատակէն դուրս կը մնայ։ Մեզի կարեւորն է այժմ այն միայն որ Կղեմայ անուամբ վերջին երկու գրքերն ուրիշ բան չեն բայց եթէ մեր ասորական այս կանոնք եւ ասոնց նման յունական Առաքելական կանոնք։ Կղեմայ իբրեւ եօթներորդ գիրք կը գտնենք ձեռագրիս մէջ մեր "Վարդապետութիւն Առաքելոց„ գրութիւնն, որ սակայն սա վերնագիրը կը կրէ.[3] "Դարձեալ ի գրոցն Վարդապետութեան Ադդէէ առաքելոյ, այն՝ որ աշակերտեաց եւ ուսոյց զՈւռհայեցիս եւ զամենեսին որ ի Միջագետս.„ (— ուստի այս վերնագիրը կարդացած է Բար-Հեբրէոս եւ այն գրիչն՝ որ այս նկատմամբ լուսանցագրութիւն մը կցած է Բար-Հեբրէոսի յիշեալ խօսքին, ինչպէս քիչ մը վերը տեսանք։ —) Եւ այս Ադդէի վերնագրութիւնը գրչի վրիպակ չէ, վասն զի նոյնը կրկնուած է նաեւ կանոններուն ծայրը դրուած վերջաբանին մէջ, որ է՝ "Կատարեցաւ Վարդապետութիւն Ադդէէ

[1] Տես Catalogue des manuscrits syriaques et sabéens (mandaites) de la Bibliothèque Nationale, ed H. Zotenberg. Paris 1874, Nr. 62, p. 22. — Լակարտի հրատարակութեան վրայ տես նաեւ վերը՝ էջ 15, ուր եղած մէկ շփոթութիւնը պէտք է ուղղել ըստ հետագայից։

[2] P. Lagarde, Reliq. I pp. 1—61։

[3] Reliq. I, p. 32—44.

ԱՌԱՔԵԼՈՅ:» Այս մասին կը յաջորդեն՝[1] իբրեւ ութերորդ գիրք Կղեմայ՝ Յունական Առաքելական կանոնք — որոնք մեր կանոնագրոց մէջ «ԵՐԿՐՈՐԴ Առաքելական կանոնք» կը յորջորջուին — այսու վերնագրաւ. «Գիրք ութերորդ Կղեմայ, Սահմանադրութիւնք կամ Հրամանք Առաքելոց՝ որ առաքեցան ազգաց ի ձեռն Կղեմայ. Կանոնք Եկեղեցականք:» — Այսուհետեւ կը յաջորդեն ուրիշ քանի մը կտորներ, — այսպէս՝ Ժողով ՁԹ եպիսկոպոսաց ի Կարքեդոն քաղաքի Ափրիկեայ յաւուրս Կիպրիանոսի,[2] Թուղթք Կիպրիանոսի առ Կուինտոս եւ Փիլոս,[3] գրութիւն մը Պետրոսի եպիսկոպոսի Աղեքսանդրեայ «վասն անկելոցն ի հալածանս»[4] եւ վերջապէս Հարցմունք Ագդէի երիցու եւ Պատասխանիք Յակոբայ եպիսկոպոսի Ուռհայի, — եւ կ'աւարտի մատեանը:[5]

Ձեռագրիս նկատմամբ կը մնայ միայն ըսել թէ Կիպրիանու երկրորդ թղթէն ետքը կայ սա յիշատակարանը.[6] «Կատարեցաւ թուղթ սրբոյն Կիպրիանու առ Փիլոս եպիսկոպոս վասն մկրտութեան մանկանց. կատարեաց զայսուիկ ժողովն որ ի Կարքեդոն Ափրիկիոյ՝ ՁԹ եպիսկոպոսացն որ յաւուրս սրբոյն Կիպրիանոսի եպիսկոպոսի եւ վկայի, որք ի Հռոմայեցւոց բարբառոյ թարգմանեցան ի յունարէն, եւ այժմ ՅԱՄԻՆ 998 ՅՈՒՆԱՑ (= 68: Յ. Ք.) ի յունականէն (թարգմանեցան) յասորերէն:» Նոյնպէս նաեւ Ագդէի երիցու հարցմանց մասին մէջ[7] Յակոբայ՝ Ուռհայի եպիսկոպոսի՝ անուան գիմացը լուսանցքի վրայ առաջին ձեռքէն գրուած է սա գրութիւնը «ԱՅՆ՝ ՈՐ ՅԱՄԻՆ

1 Reliq. I, pp. 44—61.
2 Reliq. I, 62—87.
3 Reliq. I, 88—98.
4 Reliq. I, 99—116.
5 Reliq. I, 117—144.
6 Տես Reliq. I, 98, 20—26.
7 Հմմտ. Reliq. I, 117.

998 Յունաց։„ "Վարդապետութիւն Առաքելոց„ գրութեան վերջաբանին կից եղած տեղեկութենէն[1] կ'իմանանք ձեռագրիս գրչին անունը այս յիշատակարանին մէջ. "Ամենայն ոք որ ընթեռնու, աղօթս արասցէ վասն Աբրահամու սարկաւագի եւ գրչի ի Կաբունիս գեղջէ„ Ասորւոց։ Յաջորդ կտորէն ալ յառաջ բուն գրչէն գրուած են սա բառերը "Տէր սուրբ Մարկոս„ եւ յետոյ նորագոյն ձեռքէ մը՝ "Այս մատեան է աբբայի Տեառն Աթանասոյ եպիսկոպոսի։„ Լակարտի Հրատարակութեան 143 եւ 144 էջերը լի են թերիներով եւ վերջը՝ պակասաւոր, վասն զի պակասաւոր է նաեւ ձեռագիրը։

Այս ձեռագիրն — որուն ընթերցուածքները մեր հրատարակութեան մէջ նշանակուած են L տառով — տեղ տեղ բաւական տարբեր ընթերցումներ ունի Գիւրըթոնի հրատարակութենէն։ Հայ ընթերցողաց համար աւելորդ կը համարինք այս տարբերութեանց վրայ խօսիլ հոս, մանաւանդ որ յընթացս գրութեանս առիթ ունեցանք եւ կ'ունենանք քանի մը գլխաւոր կէտերը մատնանիշ ընելու։ Այսպէս յիշեցինք որ թէ՛ այս L ձեռագիրն եւ թէ՛ M (— Եբեդ-Յեսուայ ժողովածոյից օրինակը) փոխած են[2] Ժ կանոնին մէջ Համբարձման տօնին օրը, (որ է "Ծ աւր յետ յարութեան„) եւ սովորականին դարձուցած ("Խ աւր յետ յարութեան։„) Սակայն ընդհանրապէս խօսելով L նոյն ընթերցուածներն ունի Գիւրըթոնի ձեռագրին հետ, մինչ M ամենէն աւելի տարբերութիւններ ունի։ Բաց ի այժմ իսկ յիշուած տարբերութենէն՝ տեսանք վերը նաեւ որ M շատ նշանաւոր կանոն մը (Կան. Է.) որ Յունուար 6ին կը հրամայէ կատարել Յայտնութեան տօնը, փոխած է ըստ յետագայ սովորու-

---

[1] Այս եւ յաջորդ յիշատակարանք կը գտնուին՝ Reliq. I, 44, n. 14, 15.

[2] Տես էջ 48։

*թեան, ըստ որում Դեկ. 25ին Ծննդեան տօնը կատարել կը պատուիրէ։*[1] *Աշխարհաց ցուցակին մէջ "Ադդէ" առաքելոյն անունը* M *փոխած է ի "Թադդէոս", ինչպէս նաեւ Հայն կրած է նոյն տեղն այս փոփոխութիւնը։ Բաց աստի երեք կանոնաց կարգն այլափոխուած է* M *ձեռագրին մէջ, այնպէս որ* Ը *կանոնը* M*ի մէջ* Ժ *թիւը կրէ,* Թ *կանոնին ընդհակառակն՝* Ը *եղած է, եւ* Ժ *կանոնը՝* Թ*։ Աւելորդ կը համարինք ուրիշ շատ մեծ տարբերութիւնքը հոս յիշել, այլ միայն քանի մը խօսք ըսել նոյն օրինակին կամ Եբեդ-Յեսուայ հաւաքածոյից վրայ։*

*Եբեդ-Յեսու ԺԳ դարու ամենէն նշանաւոր մատենագիրներէն մին է Ասորւոց* († 1318 Յ. Ք.) *եւ էր մետրապոլիտ Ծոբայ եւ Հայոց աշխարհի։ Իւր բազմաթիւ գրութեանց մէջ նշանաւոր է "Ցուցակ եկեղեցական գրոց" Ասորւոց,*[2] *ուր մինչեւ իւր ժամանակն իրեն ծանօթ ասորի ինքնագիր եւ թարգմանեալ գրութիւններն ի մի հաւաքած է ցանկի մը վերածելով ըստ անուանց մատենագրաց, եւ որուն վերջին գլուխը* (ՃԻԸ) *կը բովանդակէ իւր իսկ գրութեանց ցանկը։ Այս իւր գրութեանց մէջ նշանաւոր է նաեւ կանոնական հաւաքածոյ մը, որուն վրայ Ասսեմանի շատ ընդարձակ խօսած է իւր ծանօթութեանց մէջ։*[3] *Ամբողջ կանոնական հաւաքածոյն հրատարակեց յետոյ Անճելօ Մայ ծիրանաւորն ասորի բնագրաւ եւ լատիներէն թարգմանութեամբ Աղոյսիոսի Ասեմանեայ*[4] *(այն հատորին Ա մասին մէջ, որուն երկրորդ մասն ալ Բար-Հեբրէոսի կանոնագիրքը կը բովանդակէ։)*

---

[1] *Տես վերը՝ էջ* 67։

[2] *Հրատարակեալ հանդերձ ծանօթութեամբք եւ լատիներէն թարգմանութեամբ՝* Ass. Bibl. Or. III, pp. 1- -362.

[3] B. O. III, 325—362.

[4] A. Mai, Script. vet. nova collectis, Tom. X, (Romae 1838) Pars I, pp. 1—331. Ebediesus, Collectio

Ներեդ-Ցեառայ այս “Ժողովածոյ կանոնաց„ գրութիւնը, որուն վրայ վերն արդէն խօսեցանք, երկու անհաւասար մասի կը բաժնուի։ Նախ կու գայ՝ աւելի իբր ներածութիւն կարծես երկրորդ մասին՝ “Համառօտութիւն Առաքելական կանոնաց,„[1] որմէ ետքը գրուած է բուն գիրքը “Ժողովածոյ կանոնաց սինհոդոսականաց,„[2] որ Ժ ճառի բաժնուած է։ Ներեդ-Ցեառ յիշեալ “Համառօտութեան„ մէջ իբրեւ առաջին կտորը գրած է մեր այս “Վարդ. Առաք.„ գրութիւնը՝ երեք մասի անջատելով։ Առաջին մասն կը կազմեն բուն կանոններն, որ կը սկսին այս վերնագրաւ. “Յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, միոյն Աստուծոյ ճշմարտի. կարողութեամբն Աստուծոյ հզօրի եւ անյաղթի, որ սովոր է ցուցանել տկարացն եւ տգիտաց, սկսայ՝ ես խոնարհագոյնս քան զամենեսին՝ գրել զկանոնս եւ զկարգս եւ զԱւրէնս՝ զոր եդին Առաքեալք եւ սուրբ աշակերտք Տեառն մերոյ, որ աշակերտեցին զամենայն կողմանս աշխարհի։„ Հոս կը յաջորդեն մեր ասորի կանոնք՝ առանց այն նախաբան ներածութեան, որ կը գտնուի այս կանոններէն յառաջ, վասն զի Ներեդ-Ցեառ չէ առած զայն իւր հաւաքածոյից մէջ՝ թէեւ վերջին պատմական մասերն առած է։ Կանոններէն ետքը — որ կ՚աւարտին սա վերջաբանով. “Կատարեցան կանոնք, զոր եդին սուրբ Առաքեալք ի կարգաւորութիւն սրբոյ եկեղեցւոյ.„[3] — գրուած է միջանկեալ պատմական մասն՝ “Առաջին տարածումն քրիստոնէական վարդապետութեան„ վերնագրին ներքեւ,[4] որմէ ետքը կու գայ վերջին մասն, այս-

---

Canonum synodicorum etc. Լատիներէն թարգմանութիւնը կը գրաւէ 1—168 էջերը, իսկ ասորերէն բնագիրը՝ 169—331։

[1] Անդ՝ էջ 1—23 եւ Ասոր. 169—186։
[2] Անդ, էջ 23—168, եւ Ասոր. 186—331։
[3] Անդ, էջ 5, Ասոր. 171։
[4] Անդ, էջ 5 եւն։

ինքն՝ աշխարհաց ցուցակը այսու տիտղոսիւ.[1] «Պատմութիւն աշխարհաց՝ որ ընկալան զքարոզութիւն առաքելոց,» որուն ծայրն՝ իբրեւ վերջաբան մեր ամբողջ կանոնաց-մատենին՝ կայ սա տողը. «Կատարեցաւ առաջին ժողովն Առաքելոց:»[2] Անկէ ետքն եկած Յունական Առաքելական կանոնք ի ձեռն Կղեմայ՝ իբրեւ Առաքելոց «երկրորդ ժողովոյ» գործք ներկայացուած են:

Մայի այս հրատարակութեան ընթերցուածքն մեր քննութեան եւ յաջորդ հրատարակութեան մէջ M տառով նշանակուած են: Մայի ընդարձակ ներածութենէն[3] կ'իմանանք որ Ալոյիսիոս Ասսեմանի իւր թարգմանութեան համար երկու ձեռագիր գործածած է, առաջինը (cod. syr. vatic. 14, այժմ 129) որ Նբեդ-Յեսուայ գործոյն առաջին կէսն եւ երկրորդին սկիզբն ունէր, գրուած է 1557ին Յ. Ք. իսկ երկրորդը (cod. syr. vat. 4, այժմ 130) գրուած է 1332ին Յ. Ք. բայց սկիզբը պակաս է: Ալոյիսիոս Ասսեմանի կը յաւելու թէ 1753ին Վատիկանի գրատունը տեսած է ուրիշ նորագոյն՝ բայց գեղեցկագիր եւ ամբողջական ձեռագիր մ'ալ, զոր յետոյ այլ եւս չէ կրցած գտնել նոյն գրատան մէջ. սակայն Մայ կը յաւելու թէ ինքը գտած էր զայն նոյն գրատան մէջ, եւ այն ձեռագիրն հիմն առած է իւր հրատարակութեան, եւ վերջապէս կը յաւելու թէ չորրորդ ձեռագիր մ'ալ կայ Յովսէփ Սիմոն Ասսեմանեայ թողուցածներուն մէջ (թիւ 98, այժմ cod. syr. vat. 355.) շատ գեղեցիկ գրչութեամբ, որ սակայն Նբեդ-Յեսուայ գործոյն միայն առաջին մասը կը բովանդակէ:[4] Առաջին երկու ձեռագրաց վրայ ընդարձակ ծանօթութիւն

---

[1] Անգ, էջ 7, Ասոր. 173:

[2] Անգ, էջ 8, Ասոր. 175:

[3] A. Mai, Script. vet. etc. X, pars I, pp. I—XXXII, մասնաւորի՝ p. IIIff.

[4] Այս ձեռագրին վրայ տես Մայի յօրինած ցուցակը (Script. vet. etc. V, pars II, p. 38.)

*տուած է արդէն Յօվս. Սիմ. Ասեմանի իւր յաճախ յիշուած գործոյն մէջ՝ դնելով անոնց յիշատակարանները եւս։*[1]

*Ինքնին կը հասկցուի որ Եբեդ-Յեսու մեր կանոնները նաեւ այլուր գործածած է։ Այսպէս նոյն կանոնաց ժողովածոյքին մէջ կրկին անգամ ի մէջ բերուած կը գտնենք մեր Բ, Գ, Դ կանոնները բառ առ բառ,*[2] *ընդհակառակն Ա կանոնը բաւական փոխուած։*[3] *Մեր հրատարակութեան մէջ անոնք ալ յիշուած են։*

*Կը մնայ այժմ միայն քանի մը խօսք ըսել Գիւրըլթոնի հրատարակութեան վրայ, որ ամէնէն ընտիրն է, վասն զի նաեւ ամէնէն հին ձեռագրի մը համեմատ եղած է հրատարակութիւնը։ Գիւրըլթոնի հրատարակածն է ըստ ձեռագրին թիւ* 14, 644 (*Թղ.* 10 *եւն.*) *Բրիտանական թանգարանի,*[4] *— տար ընթերցուածքը նշանակած ենք* Cur. *համառօտութեամբ, — բայց նաեւ համեմատած է նոյն թանգարանէն ուրիշ ձեռագրի մը հետ ալ, որ է*

---

[1] Տես Ass. B. O. III, 332—335։ Առաջինը կը կրէ այս յիշատակարանը. "Օգնութեամբն Տեառն մերոյ եւ Աստուծոյ աւարտեցաւ այս մատեան յաւուր Հինգշաբաթի յեօթնեւտասն ամսոյն առաջնոյ Քանուն օրհնելոյ՝ ամին Յունաց 1868 (= Յ. Ք 1557, Դեկտ.) ... ընդ հովանեաւ եւ ընդ պաշտպանութեամբ երանելւոյն եւ փառաւորին Սան Փրանչէսկօ ... յօրհնեալ քաղաքին Բոզայն, որ վաթսուն մղոնաւ հեռի է ի մեծ եւ նշանաւոր քաղաքէն Գոյա (Goa) ... ես աղքատ եւ թշուառական Յովսէփ՝ անուամբ եպիսկոպոս եւ մետրապոլիտ„ եւն։ — Երկրորդ ձեռագրին յիշատակարանը, որ կրնայ ծառայել նաեւ Մայի հրատարակութեան վերջը (էջ 168, Ասոր.՝ 331.) այսպէս է. "Օգնութեամբ Տեառն աւարտեցաւ ... յաւուրն հնդետասաներորդի Օգոստոս ամսեան՝ յամին Յունաց 1643 եւ Արաբացւոց՝ 731 (= 1332 Յ. Ք) ի քաղաքին Պաղտատ .... Գրեաց զայս այր մեղաւոր եւ ամուլ՝ ազգին Քրիստոնէից՝ Սոյէփ Բար-Իսա Բար-Աբտալմասիհ Բար-Բարհէհ ... գրեաց զայս վասն քահանայապետին նշանաւորի ... իմաստնոյն Որմզդայ Բար-Ցեսուա Բար-Քամիս։„

[2] Համմ. Ճառ Ե, գլ. է (էջ 84.) Ե, գլ. ժ (էջ 85.) եւն

[3] Ճառ Ե. գլ. ը (էջ Ասոր. 248։)

[4] Cureton, anc. syr. doc. 167.

թիւ 14, 531 — այս վերջնոյս ընթերցուածքն՝ որչափ կրցանք իմանալ Գիւրըթոնի տուած տեղեկութիւններէն, նշանակած ենք CA համառօտութեամբ։

Այս կրկին ձեռագրաց վրայ կարեւոր գիտելիքը կրնան տեսնուիլ Րայթի (Wright) հրատարակած ցուցակին մէջ։[1] Առաջինը (Cod. Add. 14,644) ըստ Րայթի[2] մագաղաթեայ՝ $9^3/_8 \times 6$ մատնաչափ մեծութեամբ ձեռագիր մըն է 94 թղթով, որոնցմէ ոմանք վնասուած են. իւրաքանչիւր էջ 27—35 տող ունի՝ գրուած այնիւ, կանոնաւոր, Եդեսացւոց ձեռքի գրչութեամբ Ե կամ Զ դարէն. միայն երկու թուղթ (թղ. 44, 45) աւելի նոր գրչութիւն են եւ կրկնագիր։ Ձեռագրիս ժամանակին նկատմամբ, զոր Րայթ Հինգերորդ կամ Վեցերորդ դարէն կ'ըսէ, նման կարծիք յայտնած է ուրիշ գիտնական մ'ալ՝ Լանտ (Land) որուն գործքը վերն յիշելու առիթ ունեցանք։ Լանտ իւր "Ասորական անտիպ գրութիւնք„ անուն չորեքհատոր գործին առաջին մասին սկիզբը[3] գրած է երկար ներածութիւն մ'ուր Բրիտանական Թանգարանի ասորի ձեռագրաց վրայ կը խօսի, եւ ի վերջոյ ասորերէն տառերու վրայ հնագրախօսական դիտողութիւններ կը դնէ՝ գրեթէ ժամանակագրօրէն մեր առջեւ դնելով ասորերէն տառերուն առած պէսպէս ձեւերն, եւ մեկնելով իւր բանծները բազմաթիւ գունատիպ ու ճշգրտապատկեր նկարներով ասորի ձեռագրաց եւ տառերու։ Այս մասին մէջ քանի մ'անգամ կը յիշէ[4] այս Cur. ձեռագրին իբրեւ Հինգերորդ դարու վերջերէն

[1] W. Wright, Catalogue of the syriae manuscripts in the British Museum acquired since the year 1838. Lond. 1870—72. Vol.—III.

[2] W. Wright, Catalogue, III, p. 1083 (Nr, 936.)։

[3] J. P. N. Land, Anecdota Syriaca Tom. I: Symbolae Syriacae. Lugduni Batav. 1862 XII 214+73 pp. Fac. lithogr. I—XXVIII։ Տախտակները տպուած են ի Լոնտոն՝ 1858ին։

[4] Land, I, 61—62, 65.

եղած գրչութիւն մը, եւ դրած է նաեւ սոյն ձեռա-
գրէն ճշգրտապատկեր նկար[1] մը շատ գեղեցիկ ու յաջող՝ ամբողջ 6 տող (10×3 cm. մեծութեամբ), ուր կը տեսնուի ձեռագրին գեղեցիկ Estrangelā տառով գրուած ըլլալը։ Տախտակին մէջ գրուած կտորն է ասորւոյն ԺԲ կանոնը եւ յաջորդին սկիզբը։ Ձեռագիրը — մտադիր ըսել կու տայ Լանտ՝ — ունի արդէն ԷՋ-ՌԷ- եւ 8 ՌդՌ-Վ ՌԵՐՌԵՐ-- բաժնուած է, որով կը տեսնուի թէ այս սովորութիւնք արդէն հինգերորդ դարուն ծանօթ էին։ Կանոնաց կարգը նշանակուած են ասորի թուանշաններով եւ ոչ թէ տառերով, թէեւ Գիւրըթոն այս վերջնոցս փոխած է՝ անշուշտ տպագրութեան դիւրութեան համար։[2] — Աւելորդ է ըսել թէ ինչ մեծ յարգ ունի ձեռագիրս եւ իւր ընթերցմունքն, այնու որ գրեթէ այն ժամանակէն է՝ որ ժամանակ հայ թարգմանութիւնք կրած է երկրորդ խմբագրութիւն մը փոփոխութեամբ։ Այս պատճառաւ այս թիւ 14, 644 (= Cur.) ձեռագիրն առած ենք հիմն՝ ըստ հրատարակութեան Գիւրըթոնի՝ մեր ալ յաջորդ ասորերէն բնագրին հրատարակութեան, ինչպէս նաեւ գերմաներէն թարգմանութեան, եւ ասոր հետ գլխաւորաբար համեմատած ենք հայերէնն, եւ վերջնոյս նախնական թարգմանութիւնը վերականգել ջանացած։

Երկրորդ ձեռագիրը (cod. add. 14, 531), զոր մենք CA համառօտութեամբ կը նշանակենք՝ որչափ որ կրնանք սոյն ձեռագրին տարբեր ընթերցմունքը գիտնալ Գիւրըթոնի հրատարակութենէն, քիչ մ'աւելի ուշ գրուած է, այսինքն՝ ըստ Րայթի՝ Է կամ Ը դարուն։ Յիշեալ գիտնականը կը նկարագրէ[3] այս ձեռագիրն իբրեւ մագաղաթեայ

---

1 Land, I, Tab. III, Nr. 7, (464—501.)
2 Տես նաեւ Cur. cyr. doc. p. XI.
3 W. Wright, Catalogue, II. p. 738 (Nr. 769.)

գրչութիւն 9⁵/₈×6⁵/₈ մատնաչափ մեծութեամբ եւ 159 թղթէ բաղկացած, ամբողջը 16 թերթ, բայց իւրաքանչիւր թերթն ձեռագրին առաջին մասին մէջ (թղ. 1—68) 7 թուղթ ունի, իսկ երկրորդ մասին մէջ (թղ. 69—159) 9 թուղթ: Ամէն էջ երկու սիւնի բաժնուած է եւ 26—34 տող ունի գեղեցիկ ու Estrangelā գրով [illegible] կամ Ո-[illegible] դարու: Ձեռագրիս ընթերցուածքն ընդհանրապէս նոյն են Cur. ձեռագրին հետ:

Առանձին կանոններ կը գտնուին ի հարկէ այլեւայլ ասորի ձեռագրաց մէջ ի մէջ բերուած: Գիւրըթոն[1] կը յիշէ որ ասորի բնագրին Բ, Գ, Դ եւ ԺԴ կանոնները ի վկայութիւն կը բերուին Բրիտանական թանգարանին Cod. Add. 17, 193 ձեռագրին մէջ (թղ. 37), ինչպէս նաեւ ասորի բնագրին Ժ կանոնը նոյն թանգարանին Cod. Add. 14, 609 ձեռագրին 123ᵃ թղթին լուսանցքին վրայ:[2] Այս կոչմունք պարզապէս "Ի կանոնաց Առաքելոց„ վերնագիրը կը կրեն:

Ցայս վայր մեր բոլոր դիտողութիւնքն "Վարդապետութեան Առաքելոց„ ասորի բնագրին վրայ էր, ըստ որում քննեցինք եւ տեսանք ընդհանրապէս այս ասորական մատենին հեղինակն, գրութեան ժամանակը, կրած խմբագրութիւնները, անոր յարաբերութիւնն ուրիշ ասորի հնադոյն անվաւերականաց հետ, ինչպէս նաեւ ունեցած յարգն յետագայ ասորի մատենագրութեան մէջ, եւ վերջապէս մեզի ծանօթ ասորի բնագրին հրատարակութեանց եւ ձեռագրաց վրայ կարեւոր

---

1 Cureton, p. 168, l. 30. Անշուշտ այս կոչումը կը համկըննայ նոյն գիտնականը քիչ մը վերը (էջ 167) գրելով կանոնաց մատենիս նկատմամբ ընդհանրապէս թէ "Գտայ զայս ի վկայութիւն կոչուած Cod. Add. 14, 173 ձեռագրին մէջ, ի Թղ. 37, իբրեւ "Կանոնք Առաքելոց„ Տպագրութեան սխալ մըն է անշուշտ այս երկու թուերու փոքր տարբերութիւնը՝ Cod. Add. 14, 193 եւ 14, 173:

2 Cur. p. 170, l. 15.

երեւցած տեղեկութիւնները։ Ասով աւարտած կ՚ըլլան մեր հետազօտութիւնքն ասորի բնագրին նկատմամբ, որ է քննութեան առաջին եւ կրնանք ըսել գլխաւոր մասը, որ գրութեանս ինչ ըլլալը ցուցուց մեզի։ Այժմ կը մնայ անցնիլ Հայերէն բնագրին եւ տեսնել անոր ներքին արժէքն եւ ունեցած արտաքին յարգը, որ մեր հետազօտութեանց երկրորդ գլխաւոր մասը կը կացուցանէ։

## 7.

Որչափ ալ ջանացինք ցայս վայր մեր քննութիւնքն ամփոփել միայն ասորի մատենագրին եւ իւր գրութեան վրայ եւ առ ժամս հետազօտութեան շրջանակէն դուրս թողուլ Հայերէն թարգմանութիւնը, բոլորովին անտեսել կարող չեղանք նաեւ Հայկականը։ Ընթերցողն եթէ ի մի ամփոփէ այլեւայլ կանոնաց քննութեան առթիւ՝ նաեւ Հայերէն թարգմանութեան նկատմամբ՝ մեր ըսածները, կրնայ բաւական պայծառ գաղափար մը կազմել Հայոյն ունեցած արժէքին եւ անոր կրած այլեւայլ փոփոխութեանց ու Հայ մատենագրութեան վրայ ըրած ազդեցութեան վրայ։ Սակայն որովհետեւ մեր գլխաւոր նպատակն է բաց ի ասորի սկզբնագրէն, մանրամասն քննել նաեւ Հայերէն թարգմանութիւնն եւ այնպէս հանել ի լոյս համեմատութեամբ բազմաթիւ ձեռագրաց եւ բնագրին, անհրաժեշտ կը համարինք այս եւ յաջորդ հատուածոց մէջ ընդարձակօրէն հետազօտել Հայերէն թարգմանութեան ժամանակն ու՝ եթէ հնար է՝ հաւանական թարգմանիչն, անոր կրած երկրորդ խմբագրութիւնն եւ անոր ունեցած տարբերութիւնքն ասորի բնագրէն, ուրիշ գրութեանց վրայ ունեցած ազդեցութիւնն եւն։

Եթէ գրութեանս մի միայն Հայերէն լեզուն քննենք եւ համեմատենք մեսրոպեան Հայերէն

*լեզուի հետ, կը տեսնենք որ հետեւեալ եզրակացութիւնք ինքնին կը ծագին շատ մեծ հաւանականութեամբ։*

1. *Հայերէն թարգմանութիւնն ասորի սկզբնագրէ մը հայերէնի փոխուած է, որով՝ թէեւ ցանցառ՝ կը գտնուին ասորի բնագրին հետքերն հայերէնին մէջ։ Բայց երկրորդ անգամ խմբագրուելով՝ լեզուին մէջ քանի մը յետմեսրոպեան խորթութիւնք մնացած են։*

*Թարգմանութիւնն եղած էր ճշգրիտ եւ հաւատարիմ — թէեւ բառ սովորութեան նախնեաց՝ յաճախ ճոխաբան քան բնագիրն, զոր աւելորդաբանութիւն սովոր ենք կոչել։ Ճշդրտութիւնն այնչափ էր նախնական թարգմանութեան մէջ՝ որ շատ բան բառական եղանակաւ իսկ թարգմանուած է, զոր սխալ թարգմանութիւն պիտի համարէինք անշուշտ, եթէ տեղեակ չըլլայինք նախնեաց թարգմանական ոճոյն։*

2. *Թարգմանութիւնն անշուշտ Ե դարու առաջին կէսէն է։*

3. *Բայց այս նախնական թարգմանութիւնն քիչ մ'ետքը կրած է նոր խմբագրութիւն մը, եւ կերպարանափոխ եղած՝ գլխաւորաբար այլեւայլ յաւելուածներ առնելով։ Խմբագրիչն՝ որչափ կ'երեւայ՝ նոյն իսկ Հայ կանոնագրոց առաջին յօրինողն է՝ Ե դարուն վերջին տարիներէն։*

4. *Նախնական թարգմանութեան հազիւ հետքերը կրնանք գտնել այլ գրութեանց մէջ, բայց կրնանք այժմ վերականգնել օգնութեամբ ասորի բնագրին։ Ե դարու վերջերուն եւ յաջորդ դարուց ինծի ծանօթ բոլոր Հայ գրութիւնք՝ որ այս կանոններէն կոչումն կ'ընեն, շատ սակաւ բացառութեամբ՝ երկրորդ խմբագրութիւնն առջեւնին ունեցած են։*

*Այս եւ ասոնց յարակից խնդրոց վրայ պիտի խօսինք հետ զհետէ։*

Նկատմամբ առաջին կէտին՝ կ'ենթադրենք թէ ծանօթ է ընթերցողին Ե դարու առաջին կիսուն կամ ճշդագոյն եւս մեսրոպեան լեզուին եւ նոյն դարուն վերջին տարիներն արդէն յերեւան ելող կամ յետ-մեսրոպեան լեզուին տարբերութիւնը: Այս տարբերութիւնն այնչափ մեծ է մեսրոպեան կամ՝ ինչպէս սովորութիւն եղած է նաեւ կոչել՝ "ոսկեդարու" լեզուաւ գրուած մատեաններու եւ յետմեսրոպեան գրոց մէջ, որ վարժ աչքի մը քանի մը տողն իսկ բաւական է վճռելու գրութեան մ'որ լեզուի կարգին վերաբերիլը: Յայտնի է նոյնպէս որ մեսրոպեան լեզուին մէջ ուրոյն խումբ մը կը կազմեն ասորերէնէն եղած թարգմանութիւնք, որոնց լեզուն՝ թէեւ մեսրոպեան դպրոցի համեմատ՝ բայց շատ առանձնայատկութեամբք ճոխացած է, կրնանք ըսել՝ կերպ մ'ասորական գոյն առած է: Եփրեմայ, Զգօնի, Եւսեբեայ Եկեղ. Պատմութեանն, Լաբուբնայի, եւ նաեւ շատ աւելի անխառն լեզուաւ Մարութայի գործոց թարգմանութիւնքն, եւ այլ շատ գրութիւնք լեզուի սեպհական գոյն մ'ունին եւ ուրոյն ցեղ մը կը կազմեն:

Այս եւ այլ լեզուի սեպհականութեանց վրայ հոս չենք կրնար խօսիլ, բայց ենթադրելով այս ամէնն ընթերցողաց ծանօթ, կը յաւելունք որ մեր այս ասորի գրութեան հայերէն թարգմանութիւնն ալ կը վերաբերի վերջին ցեղին, որուն իբր ներկայացուցիչ յիշեցինք Եփրեմայ գրութիւնքն, Զգօն եւն: Այսու հաստատուած կ'ըլլանք նաեւ որ գրութիւնս ասորի բնագրէ մը թարգմանուած է, թէեւ այս ինքնին իսկ կը հասկցուէր, քանի որ ասորերէն միայն գոյութիւն ունէր "Վարդ. Առաք." իւր այժմու կերպարանաց մէջ:

Ասորերէնէ թարգմանուած գրոց մէջ ասութեանց շարք մը կայ, որոնց գրեթէ առանց բացառութեան այս կարգի ամէն գրութեանց մէջ

կը հանդիպինք։ Այսպիսի ասութիւնք մասամբ գուցէ յատուկ էին Հայոց աշխարհի հարաւակողմին գաւառաց, որոնց վրայ ի մասնաւորի ազդեցութիւն ունէին Ասորիք. բայց անշուշտ մեծ մաս մ'ալ ասորի գրականութեան արդիւնք է, որուն կ'ընդելանային նախնիք Եդեսիոյ դպրոցին մէջ եւ ասորի գրոց ընթերցմամբ եւ թարգմանելու ատեն։ Այսպէս կամ այնպէս՝ այս կարգ մը բացատրութեանց գործածութիւնն այնպէս հաստատուն է, որ երբ հայերէն թարգմանութեան մը մէջ տեսնենք ասոնցմէ մին կամ միւսը, կրնանք հետեւցընել թէ ինչ էր ասորի բնագիրն այն տեղ, եւ թէ միեւնոյն բացատրութիւնը նոյն կերպով թարգմանուած է ընդհանրապէս ուրիշ նոյն ցեղի թարգմանութեանց մէջն ալ։

Գալով մեր գրութեան՝ առիթ ունեցանք արդէն յիշելու եւ երբեմն մեկնաբանելու ասոր սեպհական քանի մ'ասութեան կերպերն, որոնք պարզապէս թարգմանութիւն են յասորւոյն։ Ի միջի այլոց լուսաբանեցինք՝ բաց ի "կարգ եւ կանոնք" ասութենէն, հետեւեալ բացատրութեան կերպերը. "Աչ փոհոնոյութեան" փխ. ձեռնադրութիւն, "Դէտ եւ հրամանատար" փխ. եպիսկոպոս, "Գործք եւ Խոստովանութեանց" փխ. Գործք Առաքելոց. Քրիստոս "տէր տանէջ" այսինքն՝ հիմնադիր տներու եւն,[1] զորոնք հոս կրկնել աւելորդ կը համարինք։ Ի մասնաւորի երբ կը համեմատէինք այս կանոններն եւ Լաբուբնայի եւ այլ ասորի գրութիւնքն, պատեհ ունեցանք յիշելու եւ համեմատելու շատ մ'այլ ասութիւնք՝ որ ասորի բնագրին ազդեցութիւնը կը կրեն։ Կանոնագմատեններս մէջ կը գտնենք՝ օրինակի համար՝ հետեւեալ բացատրութիւնքն, զորոնք արդէն Լաբուբնայի հետ համեմատեցինք, եւ որոնք սովորա-

---

1 Տես էջ 43—45 եւն։

կան են այս ցեղի նաեւ այլ գրութեանց. «Զկնի վերանալոյն Քրիստոսի առ Հայր իւր յերկինս փառաւորեալ.» (= Համբարձման, հմմտ. ܣܠܩ վերանալ = համբառնալ յերկինս.) — «Զոր ինչ ուսուցանէին բանիւք՝ զնոյն եւ արդեամբք ցուցանէին առաջի ամենայն ուրուք,» այսինքն՝ կատարէին (բառական թարգմանութիւն ասորւոյն՝ ܥܒܕ.) — Քրիստոս «յաւուր միաշաբաթոյ ծագեցաւ աշխարհի,» այսինքն՝ ինք զինքն յայտնեց. (բառական թարգմանութիւն ասորւոյն՝ ܕܢܚ) — «Նա զմարդիկ խաբէ եւ ոչ զԱստուած, այն որ ոչ հաւատային կամակորութեամբ առաջի նորա,» այսինքն՝ որուն դէմ հնարագիտութիւնք չեն զօրեր. այս վերջինն՝ ինչպէս նաեւ նախընթաց՝ ասութեանց վրայ արդէն խօսեցանք վերը:[1] Ամբողջութեան համար յիշենք նաեւ հետեւեալները. «Ընկալաւ վաղվաղակի քարոզութիւն աւետարանին ընդ ամենայն տիեզերս.» — «...որով պարգեւորէին արդարք,» այսինքն՝ պսակաւորէին (ܟܠܝܠ):[2] — «Որք միաբանին ճշմարիտ ուսման (եւ) հաւատարիմ վարդապետութեան նոցա,» այսինքն՝ արժանահաւատ վարդապետութեան (= ասոր. ܡܗܝܡܢܐ հաւատացեալ, արժանահաւատ, հաւատարիմ.) — «Եթէ իցէ ոք երկմիտ ի հաւատս եւ չիցէ ճշմարիտ ի պաշտաման Տեառն,» այսինքն՝ հաստատուն, հաստատահաւատ (= ասոր. ܫܪܝܪܐ). ուստի հետ պէտք է համեմատել հետեւեալ խօսքն ալ. «Զմիտս ակն ունիցիք ընդունելի լինել հաւատոց ձերոց ընդ ճշմարիտ,» այսինքն՝ հաստատեալ, — «Որք կեցեալ են հաւատով» եւ այլ բազմաթիւ նմաններ:[3]

---

[1] Տես վերը, էջ 28 եւ 94—95:

[2] Տես ասոնց նկատմամբ նաեւ վերը՝ էջ 195:

[3] Շարադասութեան մէջ ասորի բնագրին ազդեցութեան օրինակ յիշենք սա նախադասութիւնը. «Ածէին զմտաւ թէ զիարդ քարոզեսցեն զաւետարանն Քրիստոսի յաշխարհս հեռաւորս եւ յօտարաձայնս, զոր ոչ գիտէին զլեզուս նոցա, եւ ասէին այսպէս եթէ՝ Զզաւրութիւնս սքանչելեաց եւ

Անշուշտ այսչափն ալ ինքնին կրնայ համոզել զմեզ որ մեր գրութեան ալ լեզուն չի տարբերիր արդեամբք Լաբուբնայէն, Զգօնէն եւն։ Եթէ քիչ մ'աւելի նուազ կը նշմարենք տարի գրական ազդեցութիւնն մեր կանոնաց լեզուին վրայ, պատճառն այն է որ երկրորդ խմբագրութիւն մը կրած ժամանակ՝ լեզուն ալ փոփոխութիւններ կրած է, եւ ապահովապէս շատ մ'ատրական գոյն ունեցող ոճեր դուրս մնացած են այն միջոցին։ Ապահովութեամբ կրնանք ըսել օրինակի համար որ Ը (Ասոր. Է) կանոնին մէջ թարգմանուած էր նախնաբար տարբույն այն խօսքը թէ "Եւ Մովսէս եւ Ահարոն՝ որ զգեցեալ էին զայս խորհուրդ, զքառասուն քառասուն աւուրս պահեցին.„ եւ միայն խմբագրին կանոնիս այս մասերը բոլորովին կերպարանափոխ ընելովը դուրս ինկած է հայերէնէն։ Եւ որովհետեւ երկրորդ խմբագրիչն այլ եւս մեսրոպեան անխառն լեզուն չէր գրեր, իւր գրչէն ներս սպրդած են հոս հոն քանի մ'ասութիւնք, որ այնչափ ընիկ մեսրոպեան չեն եւ բաւական խորթ "ոսկեդարու„ լեզուին, ինչպէս՝ "զմիմեանս հոգալ եւ խորհրդածել.„ — "ուրախութեամբ ողջունեսցեն.„ — "ցոփացեալք.„ — "դարձեալ ի կերակրոյ . . . պճնաւորեալ նմանեցայ․․ հրեշտակաց. — "մինչեւ ցգետն մեծ որ որոշէ ընդ սահմանս Քորքորունին„ (որ հնոյ խորթ՝ բայց յետմեսրոպեանց բաւական յաճախ եզակի ասութիւն մըն է փխ. "բարբարոսաց.„) եւ նմաններ։

Այսպիսեաց յետսամուտ ըլլալն անկէ ալ յայտնի է որ գրեթէ ամէնն ալ այնպիսի մասանց մէջ կը գտնուին՝ որ յաւելուած են եւ որոնց համապատասխանող կտորներ չկան ի հարկէ տարի

---

զնշանս եւ զբժշկութիւնս զոր տեսաք զՏեառն՝ յուսացեալք եմք ի սուրբ անուն նորա զի առնէ ի ձեռս մեր առաջի ազգաց աւտարաց. բայց զոր ոչ գիտեմք զլեզուս նոցա, զիարդ կարեն նոքա լսել մեզ՝ զոր ոչ գիտեն զլեզուս մեր, եթէ ոչ անուամբ առնեմք զնշանս„ եւն։

սկզբնագրին մէջ: Շատ բան ալ որ յայտնապէս յետաստնուած է եւ արդիւնք խմբագրին՝ չենք միշտ իբրեւ խորթութիւնք լեզուի, այնու որ ուրիշ գրութեանց մէջ ալ կը քիչ շատ կը գտնուին: Օրինակի համար՝ Բ կանոնին բուն նիւթն է հրամայել որ կիւրակի օրն աստուածեղէն պաշտօն կատարուի: Հայ խմբագրիչն կրկնապատիկ ընդարձակեր է կանոնին վերջն՝ աւելցընելով ուրիշ կանոններէն նիւթեր եւն, որոնց մէջ աչքի կը զարնէ "Աւարտումն եւ գլուխ ամենեցուն կարգացն աւետարանն:" Այս մասին յետաստնուած եւ խորթ բլալն անմիջապէս աչքի կը զարնէ, երբ համեմատենք Թ կանոնին՝ ուրկէ առնուած է յիշեալ խօսքը. "Կատարումն ամենայն գրոց ընթերցն աւետարան:" Նախնական թարգմանութեան եւ երկրորդ խմբագրութեան լեզուի տարբերութիւնն ակնյայտնի կը տեսնենք հոս մեր առջեւ, թէեւ զուտ լեզուի տեսակէտով՝ կրնար թերեւս առաջինն ալ այս ցեղի գրութեանց մէջ երեւալ, եթէ միայն ուղիղ են նման ընթերցմունք՝ զոր կրնանք բերել ի համեմատութիւն:[1]

Վերջապէս քանի մը խորթ ասութիւնք ալ երկբայական կը մնան, վասն զի ոմանք տարակուսական ընթերցմունք են, եւ այլք ապահով աղաւ-

---

[1] Հմմտ. օրինակի համար՝ Մարութաս (Ի վկայս Արեւելից. տպ. "Սոփերք," Ի. էջ 56.) "կարգաւոր գծիրս," եւ այլուր: — Շատ ուամկական կը հնչէ մեր կանոնաց ընելը "Ո՞վ . . իմացուցանէ թէ անուամբ Քրիստոսի . . . ստանէ զպսակին նշանս.," բայց հոս նախ խնդրական է ընթերցումն եւ թերեւս "ո՞վ . . . ցուցանէ" էր նախնաբար. բաց աստի համեմատելու է Եփրեմայ ընելը (Մատենագրութիւնք, տպ. Վենետ. 1836 Ա, էջ 379) "իմացոյց նմա:" — Խմբագրին յաւելուածն է Ջ կանոնին մէջ աւելցընելը թէ հնոյ ուխտին մէջ "զինուորական յետոյ չիշխէր ոք մերձենալ," ի սեղանն. բայց այս՝ քիչ մը թերեւս խորթ երեւցող՝ ասութիւնն արդէն Բուզանդայ քով կը գտնենք գործածուած. (Դ, գլ. դ, տպ. Վենետ. 1832 էջ 69, 12.) "մինչդեռ ես զինուորական յետոյ յինքեան բերէր:" Աւելորդ կը համարիմ յիշել քանի մը նմաններ ալ:

աղութիւնք: Նկատելով որ Հայ բնագիրք սովորաբար ինչ աղաւաղութեամբ մեզի հասած են, զարմանք չէ այսպիսիներ գտնել կամ գոնէ ենթադրել այսպիսի փոքրիկ գրութեան մը մէջ, ինչպիսի է մեր "Վրդ. Առաք." մատեանը: Ը կանոնին վերջին՝ օրինակի համար՝ երկայն յաւելուած մը կցած է խմբագրիչն: Ի մէջի այլոց կ'ըսուի հոն՝ թէ Եղիա "չարաչարեալ ազատակէր յերկինս." սակայն յայտնապէս աղաւաղութիւն մ'ըլլալու է այս բառն, եւ ուղղագոյնն է "փառաւորեալ՝ ազատակէր," ինչպէս ունի B ձեռագիրն՝ համեմատ ատրւոյն: Ուրիշ օրինակ մը յիշելու համար՝ Յովհաննէս Մկրտիչ "կենդանայր" կ'ըսուի ԺԳ կանոնին մէջ, որ ակնյայտնի աղաւաղութիւն է, մինչեւ անդամ երկու ձեռագիրք (E, F) "կենդանոյր" կ'ընթեռնուն:[1] Արդէն շատ աղաւաղ է մեր ձեռքն հասած հայերէն բնագիրն, ինչպէս կը համոզուի ամէն մէկն, եթէ ակնարկ մ'արձակէ մեր հրատարակութեան ծանօթութեանց, ուր մանրամասն նշանակուած են ձեռագրաց տարբեր ընթերցմունք: Շատ մեծ աղաւաղութիւն կը տեսնուի ի մասնաւորի անուանց մէջ. օրինակի համար հայերէն այժմու ձեռագիրք կ'ընթեռնուն "Արիստարքոս, Ն–Ծէոս" փխ. "Արիստարքոս Ն– Մնէոս," եւ այսպիսիներ:

Գրչաց անմտադրութեամբ յառաջ եկած աղաւաղութեանց ակնյայտնի օրինակ մ'ունինք գրութեանս վերջերէն, ուր կ'ըսուի թէ Ադդէ առաքեալն քարոզած ըլլայ Պարսից, Մարաց եւն աշխարհներն եւ նաեւ "Խուժաստան եւ Գեղը:"

---

[1] Այսպէս նաեւ Ղեւտ. ԺԸ, 13 խօսքին տեղ կը կարդանք (կան. ԼԳ) "մի յայտնեսցես . . . փեսայորդւոյ քո," բոլորովին անճահ, մինչ պէտք էր կարդալ ". . . մօրեղբօր քո:" — կան. ԺԳ կը կարդանք. "Օրինակէր Մովսէս եւ Ահարոն զհանդերձեալսն լինելոյ փոփոխումն ստուերագրին.," որ անշուշտ աղաւաղութեամբ մթարուած խօսք մըն է: — "Ոչ յորեքին յայտնապէս խոստովանել զՔրիստոս," փխ. "ոչ յամեքին.," ինչպէս կը պահանջէ ասորին, եւ այլ շատ նմաններ:

Հոս "Գեղք" (= Γῆλαι ասոր. ܓܠܝ̈) Կասպից ծովու հարաւային արեւմտեան եզերքը բնակող ազգի մ'անունն է, զոր կը յիշեն Ստրաբոն եւ այլք։[1] Հայ գրիչք այս անունը շփոթած կ'երեւան երբեմն նոյնահնչիւն "գեղ, գիւղ" բառին հետ, մինչեւ անգամ իբրեւ պարզ գոյական նկատելով, ինչպէս որ B ձեռագիրն եւ Ս. Խաչի կանոնագիրքն պարզապէս "եւ գի–ղէ" կ'ընթեռնուն, G "գեղք" իսկ A "գեաւղք։"

Այս պատճառաւ քանի մը նորանշան թարգմանութիւնք, զորոնք կը գտնենք Հայերէնին մէջ եւ որոնք թերեւս կրնային հաւանականութեամբ թարգմանչին գրչէն ելած համարիլ, կարելի է որ լոկ աղաւաղութեան արդիւնք ըլլան։ Անշուշտ քանի մը բան ալ արդէն իսկ ասորին այն բնագրին մէջ՝ զոր Հայը կը գործածէր թարգմանելու ժամանակ, աղաւաղեալ ըլլալու էր։ Շատ մ'անուանց նորանշան կերպարանքն թէ հայ եւ թէ ասորի ձեռագրաց մէջ ասոր նշան պէտք ենք համարիլ։ Մեր բաւծն աւելի լուսաւորելու համար պէտք կը համարինք քիչ մ'աւելի երկար խօսիլ այս մասին վրայ՝ ի մէջ բերելով քանի մ'օրինակներ։

Կանոնացս վերջը կցուած աշխարհաց ցուցակին մէջ կ'ըսուի թէ Մարկոսի ձեռօք քրիստոնէութիւն ընդունեցան Աղեքսանդրիա, Թեբայիս, Եգիպտոս, եւ "ամենայն աշխարհն Պեղո–ոխոն մինչեւ ի սահմանս Հնդկաց։" "Պեղո–ոխոն" անունը հոս գրենք ըստ ասորի CA ձեռագրին, այլք (Cur. եւ M) այլայլութեամբ մ'աւանդած են անուանս ձեւը, եւ ձեռագիր մ'ալ (L) այս խօսքն ամենեւին

---

1 Ստրաբ. ԺԱ (ed. Casaub. p. 503, ed. Amst. 1707, p. 769 եւ Nr. 4.) Պլինիոս Զ, 16, 48, կը յիշեն նաեւ Քսենոփոն, Պղուտարքոս եւ այլք։ Այս ազգը կը բնակէր Իրանի Գիլան գաւառը, զոր յիշուած կը գտնենք Սոյն կալիսթենեայ Հայ թարգմանութեան մէջն ալ (տպ. Վենետ. 1843, էջ 110, 4. Հմմտ. Ուսումնասիրութիւնք Սոյն-կալիսթենեայ, տպ. Վիեննա 1892, էջ 187—8։)

չունի։ Արդ կ՚երեւայ թէ սոյն անունը Հայն արդէն իւր առջեւն ունեցած բնագրին մէջ աղաւաղեալ գտած է ܦܠܘܛ ձեւով, որով "Փիւղոն" կամ նման ձեւով տառադարձուած է Հայերէնին մէջ եւ Հայ ձեռագրաց մէջ անթիւ պէսպիսութեանց մատնուած։[1] — Ադդէի համար կ՚ըսուի թէ քարոզեց "մինչեւ ցսահմանս Հնդկաց, մինչեւ Գոգ եւ Մագոգ։" Զարմանալի եղանակաւ Հոս Հայերէն թարգմանութեան մէջ կը գտնենք "մինչեւ ցսահմանս Գդաց։" Արդեօք արդէն թարգմանչին բնագրին մէջ Գութք կը յիշուէին Հոս Հնդկաց տեղ, թէ՝ "Հնդկաց" անուան աղաւաղութիւնն են "Գդաց" (CF), "Գիդաց" (B) "Գըդաց" (ADE) ձեռագրաց ընթերցմունքը։ — Պաւղոսի աշակերտաց շարքին մէջ, — ուր Հայ թարգմանութեան մէջ Տիտոս եւ Ոնեսիմոս ալ կը յիշուին, որոնք ասորւոյն մէջ չկան, — կը կարդանք "Արիստարքոս որ էր ի Լիւստրայ։" Բոլոր Հայերէն ձեռագիրք այսպէս կը կարդան, ուստի այս անուան աղաւաղութիւնք թերեւս արդէն թարգմանչին ժամանակէն է։ Ասորին է "Երաստոս (կամ ըստ M ձեռագրի "Արիստոս"): Ըստ Գրծ. Առաք. (ԺԶ, 1) Տիմոթէոս էր ի Լիւստրայ. իսկ "Երաստոս" կը յիշուի միայն Տիմոթէի հետ (ԺԹ, 22,) ինչպէս մտադիր կ՚ընէ Գիւրըլթոն։ — Ասոնցմէ յառաջ ալ Սիմոնի Պետրոսի քարոզութեամբ դարձած կ՚ըսուին "Իտալիա, եւ Սպանիա եւ Բրիտանիա եւ Գաղիա։" Անտարակոյս որ արդէն այսպէս Բուրիթոնիա[2] (ܠܒܝܬ ܩܘ.;ܩܘ) գտած էր թարգմանիչն, վասն զի նաեւ ասորի ձեռագիրք պէսպիսութեամբ մը կ՚ընծայեն անուանս ընթերցուածն, եւ արդէն Հայոյն շատ կը նմանի

[1] AB եւ Տիրոյեանցի եւ Ս. Խաչի ձեռագիրք ունին "Փիլիոնի", D.G.L. Փիլոնի. F. Փիւղոնի։

[2] Այսպէս A C D E F ձեռագիրք եւ G L ալ "Բուրիտանիա", միայն B "Բրիտանիա" կ՚ընթեռնու, որ անշուշտ գրչի մը սրբագրութիւնն է։

CA ձեռագրին ընթերցուածքը։ Ասեմանի այս անունս կը կարծէր թէ հոս տեղ միջուածովս ըլլայ "Բիւթնիա․" զոր ուղղեցին Գիւրըթոն եւ յետոյ Փ․ Սմիթ՝ "Բրիտանիա" թարգմանելով։

Եթէ այս ամէնը կը ցուցընէ որ Հայ թարգմանիչն արդէն ինչ ինչ բան աղաւաղ գտած էր իւր բնագրին մէջ, կան քանի մը տեղեր ալ որոնք թերեւս անով կրնան ամէնէն աւելի մեկնուիլ որ թարգմանիչն ոչ այնչափ յաջող կերպով թարգմանած էր զանոնք․ կամ գոնէ այնպէս կ'երեւան առաջին տեսութեան։ Օրինակի համար կ'ըսուի սորւոյն մէջ թէ Անդրէաս առաքեալէն քրիստոնէութիւն ընդունեցան "Նիկիա եւ Նիկոմեդիա եւ աշխարհն Բիւթանիացւոց եւ Գոթացւոց" (ըստ Cur. եւ M. ձեռագրաց․) Սակայն՝ ինչպէս Փ․ Սմիթ (Thes. Syr. I, 693) մտադիր ընել կու տայ, հոս խօսքն Բիւթնիոյ, Նիկոմեդիոյ եւ Նիկիոյ վրայ ըլլալով՝ շատ աւելի նախամեծար ընելու է L ձեռագրին ընթերցումն, որ ունի "աշխարհն Բիւթանիացւոց եւ Գաղատիոյ Ներքէն։" Այս "Ներքէն" բառն ասորերէնին մէջ շատ դիւրաւ կրնար գրչագրի մը ձեռօք շփոթուիլ "Գոթիա" անուան հետ (ܐܠܕܐ Ներքէն, ܬܠܕܐ Գոթացւոց աշխարհ։) Զինչեւիցէ Հայ թարգմանիչն չէ ընթերցած "Գաղատիա" անունն, այլ Cur. եւ M ձեռագրաց ընթերցուածն ܬܠܕܐ, բայց եւ ոչ ալ թարգմանած ըստ սովորական հայերէնին՝ Գոթք կամ Գութք կամ գոնէ վերջապէս "Գոթիա" կամ "Գոթացւոց աշխարհ․" այլ՝ որչափ կ'երեւայ՝ վարանած է թարգմանիչն այս աղաւաղման նկատմամբ եւ ուրիշ հնարք չէ գտած, բայց եթէ գիր առ գիր տառադարձել եւ գրել՝ "աշխարհն Բիւթանիացւոց եւ Գատրիացէք։"[1]

---

[1] Այսպէս A ձեռագիրն. BD եւ Ցիր. "Գատրիտացէք․" C Կուտրիացէք, F Գիւտրիացէք եւ G եւ Գուտէացւոց։

Թերեւս կրնայինք հոս յիշել նաեւ այն որ այս տեղէն քիչ մը յառաջ կը գտնենք «ամենայն Սուրիա եւ Կիլիկիա եւ Գաղատիա» թարգմանուած, եւ ենթադրել թէ Սուրիա թարգմանչին գրչէն վրիպած բառական տառադարձութիւն մ'ըլլայ ասորերէն անուան (ܣܘܪܝܐ) փխ. «Ասորիք» սովորական ձեւին։ Այս մեկնութիւնն ըստ ինքեան շատ լաւ կարելի էր. բայց կ'երեւայ թէ Սուրիա հոս անմտադրութեան արդիւնք չէ բոլորովին, վասն զի ուրիշ տեղ ալ կրկնուած կը գտնենք, ինչպէս պիտի յիշենք քիչ մ'ետքը։

Եթէ հայ խմբագրողին մուծած փոփոխութիւնքն ի բաց հանենք, որ այնչափ դժուարին չէ՝ որչափ թերեւս երեւնայ, մնացեալ թարգմանութիւնն այնպէս ճշգրիտ է, որ առանց մեծ դժուարութեան կրնանք վերականգնել այն ասորի ձեռագիրը, ուրկէ թարգմանուած է հայն։ Կարելի է մինչեւ անգամ որոշել այն դէպքերն՝ որոնց մէջ թարգմանիչը քիչ մ'ազատ վարուած է, օրինակի համար ճոխաբան աւելորդաբանութեամբք բացատրելով ասորւոյն պարզ խօսքը,[1] — որոնք շատ անգամ Հայերէնի ոգւոյն համեմատ կը պահանջուին իսկ, — երբեմն աւելի համառօտելով եւ մեկնելով ասորի բնագիրը[2] եւն։ Բայց սոնք շատ ցանցառ դէպքեր են, որոնց ոմանք ալ թերեւս աւելի իրաւամբք խմբագրողին վերագրելու է քան նախնական թարգմանութեան։ Ինքնին յայտնի է վերջապէս որ այն ասորի ձեռագիրն, ուրկէ հայն թարգմանուեցաւ, ունէր տեղ տեղ տարբերու-

---

[1] Օրինակի համար՝ «հնչիւն բարբառոյ» (Ասոր. «ձայն» լոկ.) — «կարգեցին եւ եդին», ուր Ասոր. միշտ պարզապէս «եդին» է. — «յաւուր միաշաբաթոջ յամենայն կիւրակէի» — «գլուխ եւ սկիզբն տաւնից», եւ այլ անթիւ պէսպիսութիւնք։

[2] Զոր օրինակ՝ Կան. ԺԵ «...որ սուտ երդնու եւ սուտ վկայէ» փխ. Ասոր «...որ երդնու եւ սուտ եւ վկայէ զվկայութիւն անաւրէնութեան» եւ նմաններ։

թիւններ այժմու ծանօթ ասորի ձեռագիրներէն, եւ թէ այս տարբեր ընթերցմունք շատ անգամ աւելի ճիշդ ու ընտրելի են քան ասորի ձեռագրացը։ Բայց ասոնց վրայ չենք ուզեր հոս խօսիլ, վասն զի յընթացս քննութեան շատ անգամ առիթ եղաւ եւ կ'ըլլայ յիշատակելու զասոնք, եւ վասն զի մեր հրատարակութեան կից ծանօթութեանց մէջ կրնան այս եւ այլ նման կէտերն ինքնին տեսնուիլ։

Այստեղ կը կնքենք գրութեանս Հայ թարգմանութեան լեզուին նկատմամբ մեր դիտողութիւնքն, վասն զի այսչափն իսկ բաւական է որոշ գաղափար մը տալու համար թարգմանութեանս լեզուին ու նկարագրին եւ նաեւ կրած փոփոխութեանց վրայ, որոնց վկայ է նոյն իսկ լեզուն։ Այժմ պիտի անցնինք մեր վերը հանած հետեւութեանց երկրորդ կէտին, այն է թարգմանութեան ժամանակն ու հաւանական թարգմանիչը քննելու։

## 8.

Հնագոյն Հայ թարգմանութեանց նկատմամբ դժբախտաբար այնչափ սակաւ տեղեկութիւնք հասած են մեզի, որ եւ ոչ կրնանք փորձել անոնց թարգմանչաց անունն ու որոշ ժամանակը գտնել։ Պատմութիւնն աւանդած է մեզ շատ մը սիրելի անուններ այն անձանց, զորոնք Հայ գրականութեան հիմնադիրն առաքած է Եդեսիա եւ Բիւզանդիոն ուսանելու եւ թարգմանելու։ Այս թարգմանութեանց գոնէ մեծ մաս մ'ալ բարեբախտութեամբ հասած է մեզի՝ որչափ ալ այլայլութիւններ կրած ըլլան յընթացս այսչափ դարերու։ Այս դարուս առաջին կիսուն լեզուական նոր գիւտք ցուցուցին որ այս առաջին թարգմանչաց գրութիւնքն այնպիսի լեզուի առանձնայատուկ դրոշմ կը կրեն, որ անհնար է այսուհետեւ վարժ աչքի մ'այս ժամանակի թարգմանութիւնք

յետագայից հետ չփոթել։ Ասով շատ թարգմանութեանց ժամանակը մերձաւորապէս կ'որոշուի. բայց թէ իւրաքանչիւրն ո՛ր տարին եւ ո՛ր թարգմանչին արդիւնքն է, խնդիր մըն է, որ՝ առ հասարակ խօսելով՝ դեռ եւս մթութեան մէջ թաղուած է մեզի համար։ Գալով մեր գրութեան՝ արդէն քիչ մը յառաջ ըսինք որ լեզուէն միայն դատելով՝ ապահովապէս Ե դարու առաջին կիսուն կը վերաբերի, եւ այն ասորական ճիւղին, որոնք անշուշտ Եդեսիա ուսանող թարգմանիչներէն փոխադրուած են հայերէնի։ Քանի մը լեզուական նշաններ, զորոնք յընթացս քննութեան կրնար տեսնել ընթերցողը, մեր մտաց մէջ կը զարթուցանեն այն գաղափարն ալ որ հաւանօրէն միեւնոյն թարգմանիչը մէկ ձեռքով թարգմանած է այս կարգ մ'անվաւերականներն՝ Լաբուբնա, Վարդ. Առաք., Թուղթ Ցակոբու եւն։ Աւելի յառաջ երթալ եւ թարգմանչին անունն կամ թարգմանութեան տարին որոշել ճշդութեամբ, նաեւ մեր գրութեան համար կարող չենք։ Միայն թէ կրնանք այս ամէն հետեւութիւնքն, զոր լեզուէն առեալ հանեցինք, հաստատել նաեւ այլուստ՝ քննելով գրութեանս ըրած ազդեցութիւնը հայ հնագոյն մատենագրութեան վրայ։

Եթէ չենք սխալիր, արդէն Կորիւն տեսած է մեր գրութիւնն, եւ այն ի հարկէ նախնական թարգմանութեամբ։ Գոնէ շատ դժուար է մեր այս կանոնաց-մատենին վերջին մասերուն ակնարկութիւն չհամարիլ Կորեան մէկ խօսքը։ Մեսրոպայ վարուց յառաջաբանական մասին մէջ կը յիշուին Ս. Գրոց մասունքն հետ զհետէ, եւ ապա կը կնքուի յառաջաբանն այս նախադասութեամբ (էջ՝ 6) “Ունիմք եւ զկանոնական յաջորդեալ յառաքելոցն անուն զշնորհապատում գրեալսն, եթէ որպէս մեծարեալք ի միմեանց, գովեալք ըստ ճշմարիտ հաւատոյն եւ ըստ աւետարանագործ կրօնից, մինչ-

ցայսօր ժամանակիս նովին սովորութեամբ վարին:„ Այստեղ կ'իմանանք նախ որ Կորիւն Առաքելոց "Կ-- Նանայեան.... Գրեալ„ որոշումներն ունէր իր առջեւ, որոնք նաեւ իր ժամանակ կ'արժէին, վասն զի բատ իրեն՝ Առաքելոց մահուանէն ետքն մինչեւ իր ժամանակ "նովին սովորութեամբ վարին„ եկեղեցիք: Շատ պարզ կ'երեւայ մեզի այս խօսքիս մէջ ակնարկութիւն մ'այս "Առաքելական„ կանոնաց (— Յունական Առաքելական կանոնաց հաւաքումն այս միջոցին հազիւ թէ ունէր գոյութիւն. —) որոնք՝ ինչպէս կը տեսնենք Շահապիվանի ժողովքի կանոնաց մէջ արդեամբք իբր բուն Առաքելոց սահմանադրութիւնք կը նկատուէին: Այս մերենթադրութիւնն հաստատութիւն կ'առնու նաեւ այնու որ Կորեան այս խօսքը շատ նման կը հնչէ "Վարդ. Առաք.„ գրութեան համանման կտորին, ուր կ'ըսուի թէ Առաքեալք ամէն կողմն քարոզեցին եւ "հաւանեցուցանէին, աշակերտէին եւ ուսուցանէին... եւ կատարեցան բարի անուամբ . . . եւ այսպէս երթեալ զհետ վարդապետութեան նոցա աշակերտք նոցա մինչեւ ցայսօր եւ ոչ եղեւ փոփոխումն կամ յաւելուած ինչ ի քարոզութիւն նոցա:„ Երկու խօսքերն իրարու հետ համեմատելով՝ կը տեսնենք որ միեւնոյն գաղափարին արտայայտութիւն են այլեւայլ ձեւով:

Եթէ ուղիղ է մեր այս կարծիքն, երկու բան կը հետեւի ասկէ: Նախ հայերէն թարգմանութիւն եղած էր արդէն իբր 440էն յառաջ որ շատ լաւ կը յարմարի առաջին աշակերտաց Եղեսիա երթալու ժամանակին, եւ երկրորդ՝ Կորիւն իր առջեւն ունէր Նախնական թարգմանութիւնն, վասն զի ճիշդ յիշեալ խօսքը նոր խմբագրողն այլափոխած է, եւ այս այլափոխեալն այնչափ համեմատ չէ Կորեան ակնարկածին. այսպէս՝ "մինչեւ ցայսօր„ ատացուածն եղած է "մինչեւ ի վախճան աշխարհիս:„

Անշուշտ մեր կանոնները տեսած է նաեւ Եղիշէ, եթէ վաւերական է իր անուան կրող "Վան

յիշատակաց մեռելոց ի կանոնաց գրոց» ճառը. (տես Եղիշէ, Մատենագրութիւնք, Վենետ. 1859, էջ 357։) Այնտեղ կը կարդանք սա տողերը. «Յայտնի են օրէնք եւ հաստատեալ ի ձեռն օրինագրին Մովսիսի եւ այլոց Մարգարէից. Իսկ կանոնականք են յետոյ Առաքելոցն փոխանն, եւ ետուն իշխանութիւն վարդապետաց եկեղեցւոյ, զի ակնաղբիւրն իցեն Մովսէս եւ Մարգարէք եւ Առաքեալքն անկողք զմարդիկ առողջ հաւատովք հաւատոյ։» Պէտք է քննել ճառիս հարազատ ըլլալը կամ ոչ. բայց յամենայն դէպս այս տողերը գրողն Առաքելոց անուամբ կանոններ կարդացած էր։

Ամէնէն նշանաւորն է մեր քննութեան համար այն կէտն որ այս միջոցէն իբր ութ տարի ետքը գումարուած ազգային ժողովն ի Շահապիվան (447—8 Յ. Ք.) մեր կանոններն ոչ միայն ունեցած է իրեն առջեւ, այլ նաեւ զանոնք շատոնց ծանօթ եւ ի զօրութեան կ'ենթադրէ, եւ իւր կանոններն իբրեւ անոնց համեմատ ուզած է դնել։ Ասողիկ եւ Վարդան[1] միեւնոյն բառերով անցողակի կը յիշեն թէ գումարած ըլլայ Յովսէփ տեղապահ՝ ժողով մ'ի Շահապիվան։ Այս տեղեկութիւնն անշուշտ առնուած է նոյն իսկ կանոնագրքէն, որուն մէջ

---

1 Ասողիկ Բ, գլ. բ (տպ. Պետրբ. 1885 էջ 78) ... «Քահանայ ոմն Յովսէփ անուն, որ լեալ էր աշակերտ մեծին Մեսրոպայ, ի գաւառէն Վայոցձորոյ ի գեղջէն Հողոցիմայ։ Եւ հրամանաւ Վարդանայ նստուցին յաթոռ կաթողիկոսութեան ամս Բ։ Սա արար ժողով ի Շահապիվանի, ուր շարադրեաց կանոնան կարգեցին։» Վարդան (տպ. Վենետ. 1862, էջ 53) «Եւ զաւուրքն Յովսէփ ձեռնադրեն կաթողիկոս, որ արար ժողովս ի Շահապիվանս, ուր շարադրեաց կանոնն կարգեցին։» Բաւական այլապ է ժողովոյս յիշատակութիւնն «Մանիփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի Պատմութեանն» մէջ (տպ. Մոսկ. 1861, էջ 40) «Այս Անանիա՝ ի հասանել նեղութեանն ի Յազկերտէ ի վերայ քահանայից եւ իշխանացն Հայոց, էր ընդ նոսա։ Սա յետոյ գնաց ի ժողովն Շահապիվանի, ուր էր Յովհան Մանդակունի, եւ արարին կանոնս եկեղեցւոյ։» — Այս վերջին գրութեանս մէջ (էջ 18) կը գտնենք «գլուխ եւ հրամանատար» ասութիւնն՝ որ մեր կանոնաց յատուկ ասութիւն մըն է։

պահուած կը գտնենք բարեբախտութեամբ այս ժողովոյն վճիռներն եւ անոր կից յառաջաբանական տեղեկութիւն մը, որ կը պատմէ ժողովոյն գումարման պարագաները։ Այս մեծայարգ յիշատակարանն կը գտնուի ամէն կանոնագրոց մէջ՝ Ս. Սահակայ կանոնադրութեանց ետեւը, եւ դեռ եւս լոյս տեսած չէ ամբողջովին եւ առանց կրճատման,[1] եւ ոչ ալ ըստ արժանւոյն քննուած եւ իրեն արժէքն ի լոյս հանուած։[2] Մեր քննութեան համար այն արժէքն ունի յիշատակարանս, որ կը ցուցնէ թէ ինչ մեծ յարգ կ'ընծայէին ի Շահապիվան ժողովքի նստած նախնիք ասորական մատենիս, զոր հիմն առած էին իրենց կանոնադրութեանց։ Բնական է որ այս կէտիս վրայ երկար ծնալով՝ մանրամասն ցուցընենք մեր այս կանոնաց-մատենին ազդեցութիւնն Շահապիվանի կանոնաց վրայ։

Շահապիվանի ժողովոյ կանոնքը կանոնագրոց սկիզբն եղող գլխակարգութեան մէջ "Կանոնք միաբան Հայոց, գլուխս Ի" վերնագիրը կը կրեն, ինչպէս նաեւ բուն կանոնագրոց մէջ ի կարգին "Հայոց կանոնին Գլուխք Ի" տիտղոսիւ նշանակուած են. կանոնաց նիւթոյ բովանդակութենէն ետքն ալ սա ծանօթութիւնը կրելով. "Եդեալ միաբանութեամբ աւագ Հայոց յեւթներորդի ամի վախճանելոյն Սրբոյն Սահակայ կարգեցան կանոնքս այս։" Երկար պատմական ծանօթութիւն մը կայ սկիզբն, որ կը պատմէ թէ երբ եւ ինչու դրուեցան կանոնները։ Ճոխաբան ներածութեամբ սկսելով կը պատմէ թէ ինչպէս Սահակայ եւ Մեսրոպայ

1 Ժողովոյս վրայ համառօտ տեղեկութիւն եւ կանոնաց նիւթը միայն կու տայ Չամչեան (Պատմ. Հայ. Բ. էջ 16—18)։ Հրատարակուեցան կանոնները նաեւ Արարատ թերթին մէջ. (տպ. Վաղարշապ. Է տարի 1874, Թ. 1, էջ 7—13), բայց համառօտուած միայն։

2 Այս նկատմամբ ծանօթ է ինձ միայն հանգուցեալ Հ. Յովսէփայ Գաթըրճ. քննութիւնքն հայ կանոնագրոց հետազօտութեան մէջ, որուն մէկ մասն մեր այս հետազօտութեանց վերջը պիտի դնենք իբր յաւելուած։

մահուանէն ետքը «եղծումն եւ քայքայումն կարգաց եւ աւրինաց որոց եկեղեցւոյ» զօրանալով Հայոց աշխարհին մէջ՝ վեր ի վայր շրջեցաւ Հայոց երկրի բարեկարգութիւնն, «մանաւանդ զի չէր ի ժամանակին յայնմիկ իշխանութիւն եւ տէրութիւն ի ձեռն ազգին Մամիկոնէից, զի ղուղեալ եւ նուաճեալ եւ հնազանդեալ էին համբարձելոյ Պարսկային թագաւորութեան։» Երբ դեռ կենդանի էր Վարդան Մամիկոնեան համազգայն իւրովք հանդերձ,» գումարուեցաւ այս մեծ ժողովն «յեղեալ կէտն ի Շահապիվանս ի բանակատեղն թագաւորացն Հայոց ի ժամս նորաբեր տաւնին, եւ լինէր այս ի ԺԶ (ուղիղ՝ Ժ[1]) ամի թագաւորութեանն Յազկերտի Պարսից արքայի եւ Վասակայ Սիւնեաց մարզպանութեանն Հայոց եւ Վահանայ... եւ Վրվայ Խոսխոռնեաց մաղխազութեանն։» Ժողովոյ ներկայ էին եպիսկոպոսունք, եւ բազմաթիւ երիցունք եւ սարկաւագունք, եւ «իշխանք, գաւառապետք, ...ազատք, նախարարք» ե.ն.։ Բազմաթիւ անուանք կը յիշուին այս մասին մէջ[2]. եւ որոնք կը խնդրէին եպիսկոպոսներէն թէ «զեղեալ կարգն սրբոյն Գրիգորի եւ զՆերսէսի եւ զՍահակայ եւ զՄաշտոցի դուք այդրէն հաստատեցէք, եւ մեք ախորժելով յանձին ունիմք» ե.ն., եւ թէ մէկը չպահէ կարգադրութիւնն՝ «պատուհասեսցի եւ տուգանս տացէ։»

Ժողովոյն գործունէութեան ծրագիրն ալ ամփոփուած է յիշատակարանիս ներածութեան

---

[1] Վ. Հ. Յովսէփ Վրդ. Գաթրճեան կ'ուղղէ այս ԺԶ ընթերցումն՝ իրաւամբք Ժ ընթեռնլով։ Յազկերտ Բ ըստ ուղղագոյն ժամանակագրութեան (տես Nöldeke, El-Tabari, etc. 435) գահ ելաւ 438ին (4 Օգոստ.) եւ իշխեց մինչեւ 457, երբ Յուլիս 30ին իրեն յաջորդեց Որմիզդ Գ։ Յազկերտի ԺԶ տարին (= 454) Վարդան եւ իւր ընկերք կենդանի չէին, եւ ոչ ալ հնար էր այսպիսի ժողով մը գումարել։ Աւելի եւս աղաւաղ է Արշարունի հրատարակած բնագիրը՝ ԻԶ դնելով տարեթիւը։

[2] Արշարունոյ հրատարակած բնագրին այս հետաքրքրական մասը կը պակսի մեր ձեռագրին մէջ (Թիւ 44.) ընդհակառակն Արշարունի եպիսկոպոսաց թիւը քանի միայն կը դնէ։

վերջին այսպէս. “Եւ զայս ասացեալ քահանայապետացն եթէ Անկիւրիայնն եւ Նիկիայնն հաստատեալ կացցէ՝ որպէս եւ էն իսկ, եւ մեք հնազանդ եմք. բայց որ ինչ պիտոյ է ի Շահապիվան ի նոյն ժողովս եւ մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ՝ հաստատեցաք. ապա կարգեցին եւ եդին այսպէս„. եւ կը յաջորդեն կանոնները։ Ուրեմն մեր Շահապիվանի ժողովական նախնիք կ՚ուզէին նախ հաստատել կրկին անգամ իրենց ցայնվայր պահած կանոնագիրքն, որ կը բովանդակէր զԱնկիւրիայնն (= “զՎարդ. Առաք.„) եւ “զՆիկիայնն„ այսինքն Նիկիոյ եւ անոր կից յաջորդ ժողովոց ի մասնաւորի Եփեսոսի որոշմունք, որոնք՝ ինչպէս գիտենք, մաս կը կազմէին Հայոց կանոնական իրաւանց։ Երկրորդ անգամ կ՚ուզէին նոր կանոններ դնել “ի Շահապիվան„ այն “Անկիւրիային„ եւն կանոնաց։ Ի՞նչ էր այս “Անկիւրիայնն„ որ այսպէս հանդիսական դիպաց մէջ Հայոց քով ի զօրութեան եղող կանոնական իրաւանց կարգը՝ կը դասուի։ Ոչ այլ ինչ՝ բայց մեր սարքի մատեանն՝ որուն կանոնքն Առաքելոց անունը կը կրէին եւ իբրեւ այնպիսի կը նկատուէին՝ ինչպէս յԱսորւոց նոյնպէս եւ ի Հայոց, որոնց քով պէտք էր որ շատոնց թարգմանուած ծանօթ ըլլային անոնք՝ ժողովէս — ուստի 448 տարիէն — շատ յառաջ։ Այս բանս կը տեսնուի Շահապիվանի ժողովոյն կանոնաց նաեւ վերնագրոյն մէջ, որ կրկնութիւն մըն է ժողովոյն ծրագրին։ Վերնագիրս է. ‘Սահման եւ կանոն զոր եդին վարդապետք Հայոց ի Շահապիվան Անկիւրիային եւ Նիկիային կանոնաց հաստատութեան։„

Արդէն յայտնի է որ արդեամբք “Վարդ. Առաք.„ օրինակ եղած է կանոնացս հաւաքչին։ Միեւնոյն յատուկ աւութիւնք կը կրկնուին Շահապիվանի ժողովոյն եւ “Վարդ. Առաք.„ գրութեան մինչեւ անգամ վերնագրին մէջ, ինչպէս կը տեսնուի սա համեմատութենէն, որ ի հարկէ լիակատար չէ։

Աւելի երկարել համեմատութիւնս աւելորդ համարեցանք ։ Այսչափն ալ կը ցուցնէ որ միեւնոյն ատութիւնք կը յեղյեղուին երկուքին մէջ ալ, որ շատ անգամ լոկ լեզուի նմանութենէն աւելի արժէք ունին, օրինակի համար վերնագրաց նոյնաբան սկզբնաւորութիւնը ։ Որչափ ալ փոքրիկ ըլլան այս եւ այսպիսի նմանութիւնք, շատ անգամ մեծ զօրութիւն ունին գրութեանց իրարմէ կախումն ունենալը հաստատելու ։ Օրինակի համար յինքեան մեծ բան չէ Շահապիվանի կանոնաց սա նախադասութիւնը՝ "Արժան եւ իրաւ է վարդապետաց . . . յամենայն ժամ յաւրէնս Տեառն խորհել ի տուէ եւ ի գիշերի," որ կը կրկնուի նաեւ Ա կանոնին մէջ. — "Պարտ էր նմա յամենայն ժամ յաւրէնս Տեառն խորհել ի տուէ եւ ի գիշերի ։" — Եւ սակայն կրնանք պնդել թէ Ս. Գրոց այս կոչումն ուղղակի "Վարդ. Առաք." գրութեան ԻԹ կանոնէն առնուած է եւ ոչ ուրիշ տեղէ ։ Յիշեալ կանոնը կը հրամայէ Դաւթի սաղմոսներն ամէն օր ըսել եկեղեցւոյ մէջ, "որպէս եւ ասէ (Դաւիթ) . . . յԱւրէնս Տեառն խորհեցայ ի տուէ եւ ի գիշերի . սաղմոս ասացից" եւն ։ Իսկ արդ "Վարդ. Առաք.," այս՝ ինչպէս նաեւ ասոր կից Ս. Գրոց կոչմունքն ազատ եղանակաւ եւ բաղադրելով ի մէջ բերած է ։ Եթէ Շահապիվանի կանոնն ուղղակի Աստուածաշնչէն առնուր կոչումը, բոլորովին տարբեր պիտի ըլլար, այսինքն կամ (Սղմ. ՁԷ, 2) "ի տուէ կարդացի եւ ի գիշերի առաջի քո" եւ կամ (Սղմ. ԾԴ, 18) "Յերեկոյս, ի վաղորդայն եւ ի հասարակ աւուր պատմեցից եւ ասացի եւ լուիցէ ձայնի իմում ։" — "Վարդ. Առաք." բաղադրեր է այս երկու խօսքերն, որոնց վերջնոյն "պատմեցից" ըսելն ըստ Եօթանասնից եւ հայ թարգմանութեան, եղած է "խորհեցայ" (ܐܗܓ) ըստ ասորական թարգմանութեան Աստուածաշնչի ։ Այս փոքրիկ կոչումն ուրեմն միայն բաւական է հաստատելու թէ Շահապիվանի կանոնք կախումն ունին

մեր "Առաքելական"էն կամ "Վարդ. Առաք." գրու-
թենէն։

Բայց բարեբախտաբար միայն այս փոքր ցուց-
մանց վրայ յենուլ պէտք չունինք։ Շահապիվանի
Հարք լիութեամբ կատարած եւ իրենց առաջադրու-
թիւնն՝ "ի կարգին Առաքելական կանոնաց" յօրինել
իրենց կարգադրութիւնքն։ Եթէ աչքէ անցընենք
իրենց վճռած կանոնները, կը գտնենք որ անոնցմէ
բաւական մաս մ'արդեամբք ուրիշ բան չէ, բայց
հաստատել, մեկնել ու լրացընել մեր ասորական
կանոններն, ի հարկէ շատ անգամ բառ առ բառ
օրինակելով ասորի կանոնները։ Շահապիվանի ԺԲ
կանոնն ընդհանրապէս եւ շատ տեղեր նաեւ Բ——
—— Բ—— նոյն է մեր գրութեան ԺԹ եւ ԻԳ կա-
նոնաց հետ, որ մէկի մէջ ամփոփուած են։ ԺԳ
կանոնին սկզբան մէկ մասը լիովին առնուած է մեր
կանոնաց վերջինէն (ԼԳ) որ խնամութեան աստի-
ճանաց վրայ կը խօսի։ Աստուոյն ԺԲ կանոնն կը
գտնենք վերստին Շահապիվանի ԺԶ եւ այլ կա-
նոնաց մէջ, ինչպէս նաեւ ասորւոյն ԺԵ կանոնը
Շահապիվանի Ը — Ժ կանոնացնիւթ տուած է՝ որոնք
ընդարձակ ճոխացումն են առաջնոյն։ Վերջապէս
Շահապիվանի ԺԵ կանոնն կ'ամփոփէ յինքեան մեր
գրութեան ԺԹ, ԻԳ եւ Լ կանոններն, ինչպէս որ ԺԶ
կանոնն է համառօտ մեր գրքին Ի եւ ԻԳ կանոնաց։

Աւելորդ չէ այս կանոններն իրարու հետ հա-
մեմատել դէմ առ դէմ՝ թէեւ բաւ կարի համառօտ
կերպով։ Համեմատութիւնս կարեւոր է այնու որ
բաց ի մատենագրական տեսակէտէ, ունի նաեւ
իրաւաբանական-պատմական արժէք, ցուցընելով
Շահապիվանի մեծագումար ազգային ժողովոյ շատ
վճռոց աղբիւրն, որոնք հայ կանոնագրոց մասը կը
կազմեն եւ այսպէս իբրեւ կանոնական որոշմունք
նկատուած են։ Աւելորդ է ըսել որ այս համեմա-
տութիւնս մերձաւորապէս լիակատար է. ուրիշ
նմանութիւններ ալ կարելի է գտնել ի հարկէ։

| ՎԱՐԴ. ԱՌԱՔ. | ԿԱՆՈՆՔ ՇԱՀԱՊ. |
| --- | --- |
| 1. "Կարգեցին առաքեալքն եւ եգին հաստատութեամբ թէ . . . հրաման տուեալ քահանայութեան եւ երիցանց կարգի [illegible] [illegible] եւ զոր կապեննն կապեալ կայցէ մինչեւ հնազանդեսցի առաջնորդին . . . որ կապեցաւն՝ ընկալցի ախորժելով զկապանսն . . .:„ — (Պատմական մասն) "Մի հոգի սուրբ խաւսեցաւ յամենեսեան, եւ մի ճշմարտութիւն քարոզեցաւ, եւ մի հաւատք պատմեցան եւ միոյն Աստուծոյ անունն աւետարանեցաւ յամենեսեան եւ փառաւորեցաւ յամենեցունց . . .„ եւն: — (Կան. ԺԹ) ". . . միաբանութեամբ ամենեցուն արասցեն՝ զոր ինչ կամին, զի մի լիցի տրտմութիւն եւ հերձուածք. . ., [illegible] որպէս եւ փրկիչն ասէ թէ Ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ իմ եմ ի մէջ նոցա:„ | 1. (Կան. ԺԸ) "Եթէ վարդապետի ուրուք զաշակերտ կամ զժողովրդական կամ զքահանայ նզովեալ իցէ կամ բանադրեալ կամ կապեալ բանիւ վարդապետութեամբ, այլոց տեղեաց վարդապետ կամ եպիսկոպոս կամ երէց մի՛ իշխեսցէ զանիծեալն աւրհնել եւ զբանիւ կապեալն լուծանել . . ապա խաղաղասէր վարդապետն բարեսէր խրատու բարեխաւսութիւն արասցէ հնազանդեցուցանել ընդ բուն վարդապետաւն. վասն զի մի է տէր ամենեցուն, մի հաւատ, մի մկրտութիւն եւ մի պատուիրանք են առ ամենեսեան եւ միում յուսոյ ակն ունիմք: Պարտ է զնոյն միաբանութիւն պահել յամենայն եկեղեցիս. [illegible] Զի է [illegible] ամենեցուն ըստ տէրունական բարբառոյն թէ Յայսմ ծանիցեն զձեզ թէ իմ աշակերտք էք, յորժամ միաբան իցէք եւ զմիմեանս սիրիցէք:„ |
| 2. (Կան. ԼԳ) Կարգեցեն առաքեալն եւ եգին հաստատութեամբ . . . . բայց որպէս [illegible] արարիչն Աստուած թէ [illegible] . . . . եւ ասէ. | 2. (Կան. ԺԳ. "Որ զազգական կին առնէ, այս պղծութիւնք եւ գարշանք . . . . [illegible] մեծ [illegible] ի կենարարէն թէ [illegible] |

զանաստուած ի քահանայ-
ութենէ եւ մի խառնեսցի
ի պաշտաւն եկեղեցւոյ. եւ
եթէ ժողովրդական ոք իցէ՝
մերժեսցի ի բաց։„

5. (Կան. ԼԲ)՝ Կարգեցին
առաքեալքն ... եթէ ոք
ի կարգէ պաշտաւնէից եւ
յուխտէ եկեղեցւոյ. եւ [illegible]
[illegible] լինել, բարոյ
գործոյ ցանկայ. համարձակ
լիցի, [illegible] ի տեղիս
տեղիս [illegible]
[illegible],
ի կերակրոյ պատկեշտանալ,
ի զինուորական զգեստուէ
հեռանալ, պճղնաւորեալ
նմանեսցի պաշտաւնէիցն
հրեշտակաց Աստուծոյ եւ
զուարթնոց երկնից ...: —
(Կան. ԺԸ) "... որ [illegible]
[illegible]
[illegible] եւ շահի շահս [illegible]
[illegible] ... մի կացցէ
ի կարգի պաշտաման քահա-
նայութեան ...„ — (Կան.
ԻԱ) — "... որ լոկ են ի
ստացուածոց եւ սոսկ ի
մամոնայէ, եւ չերթան զկնի
[illegible] եւ ձեռք
իւրեանց սուրբ են ի կաշ-
առոյ եւ միտք իւրեանց
սուրբ եւ յստակ ի չարու-
թենէ„ եւն: — (Կան. ԻԲ)
"... ամբարտաւանք եւ
հպարտք եւ [illegible] եւ անա-
պարծք, եւ ատեցողք, արբե-
ցողք, [illegible] եւ
[illegible] եւ յոյլք եւ նա-
խանձոտք չարեաց, եւ ցան-
կացող չարեաց եւ պատուա-
սէրք, [illegible], եւ [illegible],
եւ ցոփասիրոք, եւ [illegible]

լուծցի, ... եւ ի կարգէ
պաշտաւնէից ի բաց կացցեն
...։„ — (Կան. Ժ) "Որք
լոկ դիւթեն եւ ոչ կա-
խարդեն, եթէ այր եւ եթէ
կին՝ ի դիւթութեան գացին
... զան արբցեն ...։„

5. (Կան. ԺԱ)՝ Եթէ ոք
ի հաւատս կացցէ կամ
[illegible]
[illegible] եւ զսրբութիւն
պահել եւ կենաց յաւի-
տենականաց հասանել, ընդ
ընկերս կացցէ ընդ ճշմարիտս
եւ ընդ միաբանակեացս, եւ
միմեանց շահեսցին սիրովն
Քրիստոսի ...: Մի լիցի
սովորութիւն միայն լինել,
ապա զխորդ կարեն գիտել
զկարգ եւ զպայման հաւ-
ատոյ ... մարդ կատարեալ
եւ [illegible],
որ միայնակեաց կամի լինել
եւ [illegible] եւ հարեգա յու-
թիւն յանձն առնուլ, կա-
նոն զայս կալցի: [illegible]
[illegible] եւ [illegible]
[illegible] պահանջել, զզբա-
պարտապանին վաղվաղակի
դարձուցանել: Որդիք մարդ-
կան մինչեւ յե՞րբ էք [illegible]
[illegible]. ոչ մերկեալ [illegible]
[illegible] առնեղեալ սրտով,
ունեցի ժոյժ յարենէ հեղ-
ձուցելոյ, ի պոռնկութենէ,
ի շնութենէ ի գողութենէ
յագահութենէ, յարծաթասիրու-
թենէ, ի սուտ երդմանէ, ի
սուտ խօսելոյ, ի բանսար-
կութենէ, յարբեցութենէ, յոր-
կորստութենէ, յանձնա-
կամութենէ, ի կամակո-
րութենէ, ի [illegible], ի
[illegible]. մի հպարտ, մի
[illegible], մի ամբարտաւան,

[illegible] եւ անգութք, անո-ղորմք, եւ կռուողք, եւ ոխակալք, [illegible] եւ [illegible] եւ որ ինչ նման է սոցին, մի՛ մերձեսցին ի պաշտաւն քահանայութեան„ եւն։

6. (Կան Իե) "... Մի՛ ոք անարգեսցէ եւ անկսա-նեսցէ եւ արհամարհանաւք կալցի զքահանայն, [illegible] ... ։„ — (Կան. Ի) "... Ի կարգէ քահանայ-ութեան [illegible], որ սուրբ ի մամոնայէ իցեն, աւրինաց եւ կարգի եկե-ղեցւոյ հմուտք. [illegible] ... ի [illegible] ...։ — (Կան. ԻՁ) ".. եթէ թիւրեսցի եւ աչառիցէ երե-սաց, ... մի՛ եւս կացցէ ի կարգի դատաւորութեան ... զի ոչ իմացաւ զգը-րեալսն աստուածային ձե-ռամբ յաւրէնսն Մովսէսի թէ մի՛ խոտորեցուսցես զի-րաւունս ի դատաստանի, [illegible]։„

մի՛ յերգս լկտեաց, մի՛ ի հապտանս, մի՛ ի վայրապար ծաղր, մի՛ յաշհուր, մի՛ զրկող, մի՛ տրտնջող, մի՛ [illegible], մի՛ [illegible]. մի՛ շատախօս, մի՛ խաւսել զումեքէ եւ մի՛ լսել, ... մի՛ [illegible], մի [illegible] մի՛ [illegible]„ եւն։

6. Կան. ԺԶ.) "... [illegible], Եթէ (Ե—) [illegible] եւ [illegible], եւ միայն նա-խանձաւոր սրբութեան եւ աւրինացն է, [illegible] ...։ Եպիսկոպոսն կամ երէցն որ վասն այսց իրաց կաշառս առցեն եւ կամ զինչ եւ է իրաց ... եւ կամ աչառանաւք առնի-ցեն եւ ոչ զճշմարտութիւնն ընտրեսցեն ..., ըստ գրե-ցելոցն թէ կաշառ կուրա-ցուցանէ զսիրտս իշխանաց. եւ դարձեալ՝ [illegible] ... Նզովեալ լիցին եւ [illegible] ...։„

Աւելորդ կը համարինք այս համեմատու-թեանցս նկատմամբ այլ եւս դիտողութիւններ կցել։ Այս տեղերը հարեւանցի իսկ համեմատելով՝ կը համոզուինք որ Շահապիվանի Հայրք արդեամբք հաստատել եւ լրացընել ուզած են զ"Առաքելական„ կամ՝ ինչպէս իրենք իսկ կը մեկնեն՝ "Առաքելոց„ կանոնները։ Նշանաւոր է մանաւանդ ամուսնու-թեան ատրճանաց կանոնը (ԺԳ) որ բոլորովին համեմատ է մեր "Առաքելականին„ ԼԳ կանոնին՝

ի մասնաւորի խնամութեան աստիճանք մինչեւ «չորրորդ զարմն» դնելով՝ աննման յետոյ,[1] եւ կցելով ի վերջոյ թէ այն կարգադրութեան հակառակն ընելն՝ ընդդէմ է այն «օրինացն զոր Հռոմայեցին . . . օրէնք Աստուածայինն:» Նշանաւոր է նաեւ այն կողմանէ որ Շահապիվանի այս կանոնը կրնայ առնուած ըլլալ նոյն Յոյներէնէն եւ այն՝ արդէն խմբագրեալ հայերէնէն, վասն զի ասորւոյն մէջ չկայ կանոնս, եւ նախնական հայն ալ անշուշտ շատ տարբեր էր: Այս կէտին վրայ քիչ մ'ետքը կրկին պիտի դառնանք:

Այժմ կրնանք ապահովապէս ըսել որ ասորի կանոննաց-մատեանս թարգմանուած եւ իբրեւ վաւերական ճանչցուած եւ յարգուած էր ի Հայոց շատ տարիներ ալ յառաջ քան այս 448 թուականն: Սակայն որչափ տարի յառաջ դնելու ենք արդեօք: Շահապիվանի ժողովն այս կողմանէ ալ կռուան մը կու տայ մեզի: Կ'իմանանք անկէ որ «Առաքելական» շատոնց ի զօրութեան էր Հայոց քով, բայց Սահակայ եւ Մեսրոպայ մահուանէն ետքն շատերն սկսած էին անտես ընել զայն եւ զնիկիականն, որով առիթ առաւ ժողովքը հաստատելու եւ

---

1 Նշանաւոր է այս կէտն՝ որ խնամութեան աստիճանն մինչեւ «ցչորրորդ զարմն» կ'որոշէ, եւ զոր բառ առ բառ առած է Շահապիվանի կանոնն: Յայտնի է որ Հայ եկեղեցւոյ մէջ յետոյ շատ աւելի խստացած է բարեկարգութիւնն այս մասին մէջ եւ մինչեւ «ցեօթներորդ զարմն» ընդարձակուած է արգելքն որ մինչեւ մեր օրերն իսկ Հայոց մեծ մասին քով կ'արժէ: Սակայն թէ հնագոյն ժամանակներն այնչափ խիստ չէր Հայ եկեղեցւոյ այս արգելքը, կը վկայեն ոչ միայն մեր կանոնն եւ Շահապիվանի ժողովն, այլ եւ շատ մ'այլ յետագայ կանոնք որ նմանողութիւն են մեր կանոնին եւ որոնք այս կէտին նկատմամբ եղած որոշումն ալ առած են անկէ: Յիշենք օրինակի համար որ նաեւ Մխիթար Գոշ իւր Դատաստանագրոց մէջ (Մասն Ա, գլ. ճԼ, հրտ. Բաստամեան, էջ 219 եւն) ճիշդ այս կանոնին հետեւողութեամբ կանոն մ'առած է եւ այն տեղ միայն քայլ մ'աւելի յառաջ գացած է՝ խնամութիւն որոշելով մինչեւ «չորրորդ եւ հինգերորդ զարմն» զոր իւր յաջորդ (գլ. ճԹ) կանոնին մէջ մեկնել կը ջանայ:

մատուցանելու "զեղեալ կարգն . . . զՍահակայ եւ զՄեսրոպի։„ Ասութեան կերպն այնպէս կը ցուցնէ որ Մեսրոպայ կենդանութեան օրով արդէն ճոխութիւն ունէին կանոններս. որով գոնէ 438 թուականէն բաւական յառաջ՝ եւ գոնէ Ե դարու առաջին քառորդին վերջերը թարգմանուած ըլլալու էին ի Հարկէ յԱսորիս առաքուած աշակերտներէն։

Մեր ունեցած սակաւ աղբիւրները թոյլ չեն տար որ համարձակինք աւելի յառաջ երթալ եւ որոշ տարեթիւ մը գտնելու աշխատիլ։ Անհնար է նոյնպէս թարգմանչին անունն գտնելու աշխատիլ։ Կորիւն[1] ասորական թարգմանութեանց համար երկու թարգմանիչ կը յիշէ՝ զՅովսէփ եւ զԵզնիկ, որոնք ըստ հրամանի իրենց ուսուցչաց թարգմանեցին շատ բան, եւ յետոյ անցան Կ. Պոլիս, ուստի դարձան հանդերձ "Նիկիական եւ Եփեսոսական կանոնօքն„ (430էն քիչ վերջը։) Թէ մեր "Առաքելականն„ ալ "Նիկիականին„ հետ — որուն հետ անբաժին կը յիշեն Ղահապիվանի հարք, այս միջոցին՝ ուստի 430էն յառաջ՝ թարգմանուած էր, շատ հաւանական կ՚երեւայ։ Բայց ի հարկէ անհնար է հետեւցընել թէ Յովսեփայ եւ Եզնկայ թարգմանութեանց այն կարգին, զոր կը յիշէ Կորիւն յիշեալ խօսքին մէջ, պէտք է վերագրել նաեւ մեր կանոնները։ Ասորիք եւ ի մասնաւորի՝ Եդեսիա հայ ուսանողաց ահագին բազմութիւն կար ամէն ժամանակ, որոնցմէ շատերն անշուշտ թարգմանութեամբ ալ կը պարապէին։ Հայ ուսանողաց հոգածու էին նաեւ սուրբ եպիսկոպոսք Եդեսիոյ։ Այս-

1 Կոր. (տպ. Վենետ. 1833, էջ 20—21.) "Դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս Ասորոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ, . . . եւ երկրորդն Եզնիկ անուն՝ յայրարատեան գաւառէն ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս, հայերէն գրեալս դարձուսցեն։ Իսկ թարգմանչացն հասեալ՝ ուր առաքեցանն, կատարեալ զհրամանն եւ ըստ պատուոյն հօրն տուեալ՝ անցեալ գնացին ի կողմանս Յունաց„ եւն։

պէս Սահակայ եւ Մեսրոպայ ժամանակակիցն Ռաբուլաս, որ նամակաւ իսկ ազդարարեց անոնց Թէոդորի գրութեանց հայերէն թարգմանութիւնքն ու բրած վնասները,[1] "նաւահանգիստ աստուածեղէն գիտութեան էր . . . վասն Ասորւոց, Հայոց եւ Պարսից՝" խօսելով ասոր Աղեքսանդր կենսագրին հետ։ Այնտեղ կը յիշուի նաեւ որ "ի նմին քաղաքի ի հին ժամանակաց կանգնեալ էին աստուածեղէն դրդմամբ դպրոցք ասորի լեզուի յօգուտ մերձաւոր աշխարհաց," որոնց մէջ այս միջոցին ամենէն աւելի օգտուողն էր Հայոց երկիրը. բաց աստի կը յիշուին Եդեսիոյ մէջ զատ զատ ասորի, հայ եւ պարսիկ դպրոցներ։[2] Ասորագէտ թարգմանչաց անշուշտ մեծ գունդ մ'ունեցած ենք, որոնց գործոց նշխարք միայն ծանօթ են մեզ այժմ. եւ այն՝ ոչ շատ ժամանակէ ի վեր յերեւան ելած, որ եւ դեռ պիտի ելլեն անշուշտ։

Արդէն ցայսօր ծանօթ ասորերէնէն եղած թարգմանութիւնք՝ որչափ լեզուի միեւնոյն խմբին պատկանին, այնպիսի պէսպիսութիւն կը ցուցընեն լեզուի եւ թարգմանութեան ոճոյ, որ անհնար է քանի մ'անձանց միայն վերագրել զանոնք։ Կրնանք մինչեւ անգամ ասորերէնի ազդեցութեան աստիճաններն որոշել եւ դասաւորել։ Եւսեբեայ, Եփրեմայ եւ Զգօնի կրած ասորական ազդեցութիւնն այնպէս սաստիկ է, որ անկարելի է ընդունիլ թէ անոնք ելած ըլլան այն գրչէն որ հայերէնի վերածեց զԼաբուբնա. բայց նաեւ վերջինս դեռ շատ ենթակայ է այն ազդեցութեան քան՝ օրինակի համար՝

1 Հմմտ. Ռաբուլասայ գրութիւնք, թրգմ. ի գերմաներէն Կ. Պիքքէլի (G. Bickell, Sämmtliche Prosa-Schriften des Bischofs Rabulas von Edessa. Kempten 1874, p. 162։)

2 Անդ, էջ 223 եւ 224։ Հրատարակիչը կը յիշէ թէ Հայոց դպրոցը կը յիշուի Եփեսոսի Չարաժողովոյն արձանագրութեանց մէջ, որ լոյս տեսաւ ասորերէն. (G. Hoffmann, Verhandlungen der Kirchenversammlung zu Ephesu» etc., Kiel 1873, p. 12.)

*Մարութայի գործքերն, որ չքնաղ Հայերէն մ'ունին, որուն մէջ հազիւ տկար ազդեցութիւն կը կրնանք նշմարել։*

*Այս աստիճանաւորութեան մէջ մեզի կ'երեւայ թէ "Վարդ. Առաք." միջնոյն կը վերաբերի, եւ այն հաւանականօրէն Լաբուբնայի թարգմանչին արդիւնքն է՝ վերջնոյս հետ հայերէնի թարգմանուելով։ Լեզուի այս նմանութիւնն բաւական յայտնի է, զոր կրնան ընթերցողք տեսնել այն համեմատութեանց մէջ, զոր վերը յառաջ բերինք, երբ Լաբուբնայի եւ մեր կանոններուն իրարու ունեցած աղերսը կը քննէինք։[1] Բրիտանական թանգարանի նշանաւոր ձեռագիրն ալ՝ որ [illegible] է, անբաժին ունի երկու գործքերս, ըստ որում Լաբուբնայի անմիջապէս կը յաջորդէ "Վարդ. Առաք." եւ այսպէս ալ հրատարակեց Գիւրըթոն։ Այս պարագային շնորհիւ է թերեւս որ ասորի ձեռագրաց ոմանք մեր կանոններն "Վարդ. Ադդէի" անուամբ միայն գիտեն, ինչպէս վերը յիշեցինք։ Այսպէս կից գտած էր հաւանականօրէն նաեւ Հայ թարգմանիչն եւ ի միասին Հայերէն թարգմանած։ Գոնէ հաւանական նշան մ'ունինք այսպէս ընդունելու, քանի որ միեւնոյն անձին մատը կը տեսնենք՝ Լաբուբնայի եւ մեր կանոնաց մէջ եղած քանի մը կարեւոր փոփոխութեանց վրայ։ Այս կէտը կարեւոր կռուան մը նկատելով մեր կարծեաց, հարկ կը համարինք քիչ մ'ընդարձակօրէն պարզել խնդիրը։*

*Լաբուբնայի թարգմանիչն, որ այնպէս հաւատարիմ է իւր բնագրին եւ յաջողակ միանգամայն, իւր թարգմանութեան վերջերն այլ եւս չէ կրցած հաւատարիմ՝ մնալ ասորւոյն՝ երկու կէտի մէջ եւ*

---

*1 Տես էջ 84—100, ի մասնաւորի 89 եւն։ Բաց աստի մեր այս քննութեան վերջը կցուած Յաւելուածին մէջ կրնան այս նմանութիւնք ակնյայտնի տեսնուիլ այն տախտակէն, որուն մէջ Լաբուբնայի. "Վարդ. Առաք." գրութեան եւ Յակոբայ թղթոյն համեմատական կտորները դէմ առ դէմ նշանակուած են։*

բնագրի հաւատարմութիւնը զոհած է ազգային աւանդութեան չհակառակելու համար։ Այս կէտս մանրամասն պարզած ենք Լաբուբնայի մեր համառօտ քննութեան մէջ։[1] Նախ կը տեսնենք որ հոն Եդեսիոյ առաքելոյն Ադդէ անունը պահուած է հաւատարմութեամբ, բայց անոր աշակերտին Ագգէի անունն փոխուած է ըստ ազգային աւանդութեան յԱդդէ,[2] այնպէս որ Ադդէ եւ Ագգէ միեւնոյն անունը կը կրեն երբեմն միեւնոյն էջի մէջ առանց զանազանութեան, եւ միայն յետինք՝ ինչպէս Խորենացի՝ Ադդէն ալ փոխած են՝ հետեւելով Եւսեբեայ՝ ի Թադէոս, որով նախնական Ադդէ եւ Ագգէ եղած են յետնոց Թադէոս եւ Ադդէ։ Արդ այս փոփոխութիւնը կը գտնենք նաեւ "Վարդ. Առաք.„ գրութեան վերջին մասին մէջ։ Ուռհայի եւ շրջակայից դարձը (հոծ. Թ) կը տրուի Ադդէի՝ համեմատ ասորւոյն, (թէեւ շատ ձեռագրաց մէջ աղաւաղուած է ըստ յետին աւանդութեան եւ եղած՝ Թադէոս.) բայց նաեւ Ժ հատածին մէջ Պարսից Մարաց, Խուժաստանի եւն դարձը տրուած չէ Ագգէի՝ ինչպէս կը պահանջէ ասորերէն բնագիրը, այլ ըսուած է թէ անոնք դարձած ըլլան "յԱդդէ (= յԱգգէէ) կերպարանագործէ յաշակերտէ Ադդէի (ձեռագիրք աղաւաղութեամբ՝ Թադէի) առաքելոյ, որ բժշկեաց զԱբգար թագաւոր Ուռհայի։„ Երկու թարգմանութեանցս ալ միակերպ փոփոխութիւնը միեւնոյն նպատակաւ է եւ մէկ ալ ձեռքէ։ Արդէն "Ադդէ կերպարանագործ„ սեպհական ասութիւնն է Հայ Լաբուբնային,[3] որ այսպէս կը փոխէ ի հայերէն՝ ասորւոյն Ագգէի տուած "յօրինիչ մանեկաց„ (կամ լաւ եւս "դիպակաց„) վերադիրն,[4] զոր նաեւ Խորե-

---

1 Հմմտ. Zur Abgar-Sage, p. 37, եւ 45—47։

2 Տես՝ Լաբուբնա (տպ. Վենետ. 1868) էջ 46, 13—18. 49, 3, 19 եւն. Հմմտ. Zur Abgar-Sage, p. 37 եւ n. 6։

3 Լաբուբնա, էջ 32, 14։

4 Տես այս նկատմամբ Zur Abgar-Sage, 38—39 եւ Հանդէս Ամս. 1889, Թ. 4, էջ 66։

նացի բոլորովին ճշդութեամբ չէ ընդօրինակած՝ "մեռաքսագործ„ գրելով (Բ. գլ. ԼԳ.)

Երկրորդ եւ նշանաւորագոյն փոփոխութիւնն ըրած է Լաբուբնայի հայ թարգմանիչը գրութեան վերջին մասին մէջ Ադդէի մահուան նկատմամբ տորւոյն բոլոր պատմածները կերպարանափոխելով, այսինքն՝ տորւոյն պատմածը թէ Ադդէ յեղեսիա մեռաւ եւ թաղուեցաւ, — որ հակառակ է ազգային աւանդութեան, — փոխելով Ադդէի ––ղէ–որ––Բէ–ն յԱրէ–եւ–, որմէ ի հարկէ կը հասկցուի նաեւ ի Հայս։[1] Օրինակի համար տորին կ'ըսէ "Հիւանդացաւ յՈւռհա եւ ել յաշխարհէս յայսմանէ„ այսինքն մեռաւ. հայը փոխած է՝ "Եւ յետ այսր ամենայնի կամեցաւ Ադէ առաքեալ (գնալ) ի կողմանս արեւելից.„[2] եւ այսպէս յառաջ։ Հայն իւր նպատակին հասնելու համար պէտք տեսած է բառ առ բառ եղանակաւորել Ադդէի մահուան նկատմամբ բոլոր ըսածները, փոփոխելով, դուրս թողլով կտորներ եւ յաւելլով մանր խօսքեր։ Մինչեւ անգամ տորւոյն նշանակած Ադդէի մահուան ամսոյն անունն ու օրը պահած է իբրեւ ժամանակ Ադդէի մեկնելուն յՈւռհայէ եւ Արեւելք երթալուն։[3] Միով բանիւ ազգային աւանդութեան ամէն հակառակ բան հեռացուցած է, թէեւ առանց զայն մանրամասն ընդմիջարկութեան պատմելու։ Արդ իր այս մասը կը տեսնենք նաեւ "Վարդ. Առաք.„ գրութեանս մէջ։

Ասորին վերջին մասին մէջ Աջջէի՝ Ադդէի աշակերտին՝ առաքելական գործունէութիւնը կը գծէ այս շրջանակաւ "Պարսք. [եւ Պարթեւք,[4]] եւ

---

1 Այս նկատմամբ ընդարձակագոյնս տես Zur Abgar-Sage, 45—47։

2 Լաբուբնա, էջ 38, 8։

3 Լաբուբնա, էջ 45, 20։ Վերջին փոփոխութիւնն է՝ էջ 49, 19։

4 Միայն հայը ունի «եւ Պարթեւք» որ հարազատ կ'երեւայ եւ ըլլալու է նաեւ տորի նախաբնագրին մէջ։

ամենայն Ասորեստան Եւ Հայք եւ Մարք . . . Խուժաստան„ են։ Սակայն այս մասն հակառակ էր հայ աւանդութեան, որուն համեմատ Հայք ոչ թէ Աքքէէն ընդունած էին քարոզութիւնն, այլ անոր ուսուցչէն Աջջէէն։ Ասոր ճարը գտեր է թարգմանիչը դիւրութեամբ՝ “Եւ Հայք„ անհաճոյ բառը ջնջելով. (— “Պարսք եւ Պարթեւք եւ ամենայն Ասորեստան Եւ Մարք„ են։ —) Բայց որպէս զի Հայք բոլորովին անյիշատակ չմնան, եւ դարձեալ իւր սիրած աւանդութիւնը նաեւ հոս յայտնելու համար, նախընթաց հատածին մէջ, ուր իւր սիրելույն Աջջէի գործունէութիւնը կը նշանակուի, նոյնպէս փոքրիկ յաւելուած մ'ըրած է։ Այն տեղ ուր ասորին կ'ըսէ թէ Ադդէէն դարձան “Ուռհա եւ ամենայն գաւառք որ զնովաւ յամենայն կողմանց եւ Ծոբա (= Մծբին) Եւ Արաբ Եւ ամենայն հիւսիսի եւ կողմանք որ զնովաւ եւ հարաւ եւ ամենայն սահմանակիցք Միջագետաց.„ — որուն մէջ Միջագետք եւ իւր մերձաւոր շրջակայք կը հասկընայ, — հայն փոխած է հետեւեալ կերպով . . . “Ուռհա եւ ամենայն քաղաքք որ շուրջ զնովաւ, Մծբին եւ Արաբ եւ սահմանակից Միջագետաց, Հայք Եւ ամենայն հիւսիսի եւ հարաւ։„ Այս փոքր յաւելուածով նախ ազատած է իւր սիրական աւանդութիւնն եւ դարձեալ ասորւոյն “եւ ամենայն հիւսիսի„ ասութեան ընդարձակագոյն իմաստ մը տուած։ Լաբուբնայի մէջ գոհ եղած էր պարզապէս յԱրեւելս տանելով զԱդդէ. այստեղ աւելի որոշ յայտնած է որ ազգային աւանդութեան ջերմ պաշտպաններէն է ինքն, եւ թէ այս աւանդութիւնը կը նոյնանար անոր հետ՝ որ Ադդէի վկայութիւնը կը դնէր ի Հայս “ի գաւառին Շաւարշան, որ այժմ կոչի Արտազ.„ — աւանդութիւն մ'որուն յիշատակը պահած է Խորենացի (Բ, գլ. ԼԳ.) եւ զոր թարգմանիչն առջեւն ունէր անշուշտ բաւական տարբեր ձեւի տակ քան զոր կը գտնենք Սոփերք-ի հրատարակութեան մէջ՝ որ

յայտնապէս յետագայ փոփոխութիւններ կրած է, եւ որուն կ'արժէ առանձին ուսումնասիրութիւն մը նուիրել։[1]

Այս ամէնն մէկ կողմանէ ապահովապէս տարակոյս մ'այլ եւս չեն թողուր թարգմանչին միեւնոյն անձն ըլլալուն եւ մէկ ձեռքէ թարգմանելուն երկու գրութիւնքն ալ, (— անշուշտ նաեւ այլ գրութիւններ, օրինակի համար՝ հաւանականօրէն Յակոբայ թուղթը եւ թերեւս նաեւ Պիղատոսի "Յիշատակարանքն.") — միւս կողմանէ կրնայ ընթերցողաց մտաց մէջ այն գաղափարը յառաջ բերել իբր թէ ազատ թարգմանիչ մ'ըլլայ որ շատ փոյթ չունի բնագրին հաւատարիմ գտնուելու։ Սակայն վերջինս ճիշդ չէ։ Ղաբուբնա միայն այս դիպաց մէջ զոհած է բնագրին հաւատարմութիւնն, բայց այլուր ծայրէ ծայր շատ ճիշդ եւ շատ յաջող թարգմանիչ է։ Նոյնն ըսելու ենք նաեւ "Վարդ. Առաք." նախնական թարգմանութեան նկատմամբ։ Նախնական կ'ըսենք, վասն զի դժբախտութեամբ մեր մատեանն Ղաբուբնայի բախտն ունեցած չէ, որ որչափ ալ աղաւաղութիւններ ունենայ, յընդհանուրն անփոփոխ հասած է մեզ։ Իսկ մեր մատեանն՝ իբրեւ կանոնաց-մասեան՝ որ գործնական արժէք ալ ունէր, զերծ մնացած չէ երկրորդ խմբագրութենէ մը, եւ այն արդէն Ե դարուն վերջին տարիները։ Ահա այս կարեւոր կէտն է, զոր պիտի քննենք մեր յաջորդ հատածին մէջ։

---

1 Սոփերք, Ը (տպ. Վենետ. 1853, էջ 1—58. Հմմտ. նաեւ էջ եւ 59--83։

# 9.

Այս մատեանն ունեցած է նշանաւոր բախտ մը։ Մէկ կողմանէ ամենամեծ ճոխութիւն իբրեւ կանոնական գրութիւն, եւ միւս կողմանէ ամենամեծ աղաւաղութիւն՝ նոյն իսկ անոր համար որ կանոնական արժէք ունէր։ Այս երեւոյթս սովորական է նաեւ այլ ազգաց գրականութեանց մէջ։ Կանոնք գործելու ուղեցոյց ըլլալով չէին կրնար շատ դիպաց մէջ իրենց նախնական կերպարանքը լիովին պահել, երբ ընթացս ժամանակաց այլ կարգեր եւ սովորութիւններ տիրող կ'ըլլային։ Այս դիպաց մէջ կամ մոռացութեան մէջ կ'իյնան հնագոյնք կամ շատ անգամ փոփոխութիւններ կրելով կը յարմարցուին ժամանակին հանգամանաց։ Թէ այսպիսի փոփոխութիւններ կրած են այս կանոնները նաեւ Ասորւոց քով, առիթ ունեցանք յաճախ յիշելու։ Ամենէն նշանաւորն է այն որ երբ Եբեդ-Յեսու իւր կանոնագրոց հաւաքածոյից մէջ առնել ուզած է այն կանոններն ալ, ամենամեծ փոփոխութիւն մ'եղած է՝ ամբողջ ներածութիւնը դուրս մնալով կամ արդէն մնացած ըլլալով։

Հայերէն թարգմանութիւնն աւելի մեծ փոփոխութիւն կրած է՝ ամբողջովին ենթարկուելով Երկրորդ խմբագրութեան, որուն մէջ՝ ինչպէս բնական էր, քիչ փոփոխութիւն կրած են Ներածութիւնն եւ վերջին պատմական մասն, այլ Կանոններն եղած են բուն առարկայ խմբագրութեան։ Թէեւ ընթացս քննութեանս շատ անգամ առիթ եղաւ յիշել այս փոփոխութիւնքն ու տարբերութիւնքն, հարկ է որ հոս աւելի մանրամասն քննենք զանոնք։

Ասորերէն Գիւրըլթոնեան ձեռագիրն արդէն Հինգերորդ դարուն վերջերը գրուած ըլլալով՝ մեզի նշանաւոր կռուան մըն է զանազանելու այն յաւելմունքն որ եղած են նոյն հինգերորդ դարուն սկիզբներն եղած հայերէն թարգմանութեան վրայ։

Նոյն իսկ Թարգմանութեան լեզուն ու ասորական գոյն մ'ունեցող ոճը մեծապէս կը նպաստէ յաջորդ փոփոխութիւններն յերեւան հանելու, ինչպէս վերը բացատրեցինք։[1] Բայց նաեւ եթէ ուշի ուշով զննենք այն մասերն որ հայն ասորականէն տարբեր ունի, անմիջապէս աչքի կը զարնէ թէ այն տարբերութեանց որը նախնական եւ արդէն Թարգմանչին ժամանակէն է եւ որը յետասմուտ է. այնպէս անկասկած են շատ անգամ այն յետին յաւելուածք եւ իրենց յետասմուտ ըլլալուն դրոշմն իրենց ճակտին վրայ կը կրեն։ Քանի մ'օրինակներ մեր այս ըսածը պիտի ապացուցանեն։

Քիչ մը յառաջ դէմ առ դէմ դրինք մեր գրութեան ԼԳ կանոնն եւ անկէ փոխառեալ Շահապիվանի ԺԳ կանոնն՝ որ մինչեւ չորրորդ զարմ կը հրամայէ պահել խնամութեան արգելիչ առտիճանը։ Ըսինք ալ որ միայն հայն ունի այս մասն։ Արդ այս կանոնն այն ձեւով՝ զոր առջեւնիս ունինք, չի կրնար գրութեանս նախնականին վերաբերիլ։ Նախ որ բոլոր հարազատ կանոնաց քանի մ'անգամ մեծութիւնն ունի, որուն մեծ մասը կը կազմէ Ղեւտականին եւ Երկրորդման Օրինաց մեծ կտորի մ'ընդօրինակութիւնն. (Ղեւտ. ԺԸ, 1—20 եւ Երկ. ԻԷ, 29։) Ս. Գրքէն այսպիսի խօսքեր նաեւ բոլորովին անկասկ եղանակաւ ներս խառնելն է սովորութիւն խմբագրողին։ Բաց աստի բոլոր հարազատ կանոնք կը սկսին այսպէս. "Կարգեցին Առաքեալք ... եթէ ...„ եւ կը դրուի արգելքն կամ պատուէրը։ Այստեղն ընդհակառակն է. "Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ Որպէս ի սկզբանէ զուգեաց ամուսնութեամբ զմարդն ... Նոյնպէս ստեղծանել ե- հաստատել հրաման առաքելական սրբութեամբ զուգել յամուսնութիւն.„ եւ Ս. Գրքէն երկար

[1] Տես վերը՝ էջ 171—174։

կոչումներ ընելէն ետքը՝ կը դնէ խօսքը «Սոյնպէս եւ սահմանեալ(է) առաքելական կանոնաց։» Միտ դրուի «առաքելական կանոնաց» բացորոշ խոստովանութեան, յորում խմբագրողը յայտնապէս կ'ըսէ թէ «առաքելական կանոն» մ'ունեցեր է իւր առջեւ եւ զոր իւր յօրինած երկայն կանոնին նիւթոյն վկայ կը կոչէ։ Թէ ինչ ձեւ ունէր այս նախնականը՝ դժուար է ստուգութեամբ ըսել, բայց կրնանք գուշակել։ Բայց թէ այժմու ԼԳ կանոնը լոկ խմբագրութիւն է, այլ եւս խնդրոյ տակ չի մնար։

Հայն անշուշտ համառօտ բան մ'ունեցած էր առջեւն եւ հաւատարմութեամբ թարգմանած։ Այս նախնականն առջեւն ունեցած են նաեւ Շահապիվանի հարք իրենց ԺԳ կանոնին Նախնականին մէջ։ Նախնականին կ'ըսենք դիտմամբ, վասն զի նաեւ Շահապիվանու այժմու ԺԳ կանոնն՝ ինչպէս նաեւ այլք, նման խմբագրութիւն կրած են միեւնոյն ոճով եւ հետեւապէս միեւնոյն ձեռքէն, որով մեր ԼԳ կանոնին նաեւ խմբագրէն աւելցած կտորները կը գտնենք Շահապիվանի ԺԳ կանոնին մէջ։ Նոյն երեւոյթն տեսնելով նաեւ հնագոյն կամ Ե դարու Հայոց քով ի զօրութեան եղող մինչեւ անգամ ընդհանուր ժողովոց — Նիկիոյ, Եփեսոսի, Անկիւրիոյ, Սարդիկեայ, Անտիոքայ, Ղաւոդիկեայ եւ Գանգրայ — կանոնաց մէջ, ինքնին կը հետեւի՝ որ ինչպէս վերջնոցս փոփոխութիւնքն Ե դարուն վերջերն առաջին հայ կանոնագրոց նոր խմբագրութեան ժամանակ եղած են,[1] միեւնոյն ժամանակ եւ միեւնոյն խմբագրէն կրած ըլլալու է նաեւ մեր մատեանը յիշեալ փոփոխութիւնքն։ Այս բաժնիս առիթ կ'ունենանք օրինակներով ալ հաստատել։

---

[1] Այս խնդիրն երկարօրէն յուզել այստեղ՝ մեր նպատակէն դուրս կը համարինք։ Թէ Ե դարուն վերջերն հայ կանոնագիրք մը խմբագրուած է՝ ապացուցած է հանգուցեալ Հ. Յովսէփ Վ. Գաթրճեան իւր Կանոնագրոց ձեռագիր քննութեան մէջ։

Այժմ կրնանք այս մի միայն օրինակէն ալ արդէն սա եզրակացութիւնքն հանել։ Նախ՝ Հայն ունէր ստուգիւ այնպիսի սարի բնագիր մ՚իր առջեւ, որ ինչ ինչ տեղեր այժմու սարիէն աւելի բաներ կը բովանդակէր։ Երկրորդ՝ բայց այժմու հայերէնին աւելի ունեցած շատ կտորներն — մեծ մասամբ Ս. Գրոց կոչմունք եւ ընդօրինակութիւնք այլ կանոնաց — չկային նախնական թարգմանութեան մէջ։ Այլ երրորդ՝ սոնք մուծուած են Ե դարու վերջերն եղած երկրորդ խմբագրութեան ժամանակ, երբ կանոնքս հայ կանոնագրոց մէջ մտան, նոյն իսկ այն կանոնագրոց խմբագրին ձեռքէն։ Երեք եզրակացութիւնքն ալ արդէն ցայս վայր ի մէջ բերուած շատ ապացոյցներով հաստատուած են. բայց նաեւ յաջորդներովս ալ աւելի նեցուկ կ՚առնուն։

Շատ անգամ առիթ ունեցանք ի մէջ բերելու կախարդութեան վրայ խօսող կանոնն (ԺԵ.) որ հաւատարիմ թարգմանութիւն մըն է։ Բայց վերջին նախադասութիւնն յաւելուած մը կրած է այսպէս. “մի՛ խառնեսցի ի պաշտաւն եկեղեցւոյ, [illegible]„ Արդ այս վերջին խօսքը չի կրնար նախնականին վերաբերիլ, վասն զի կանոնս կախարդութեան հետամուտ եկեղեցականաց վրայ է, եւ անոր համար սարին ալ չունի այս վերջին խօսքը։ Եւ արդէն այս վերջաբանութիւնն առնուած է յունական Առաքելական կանոններէն, օրինակի համար ԶԳ “... [illegible]„[1] Այս վերջաւորութիւնն կը գտնենք նաեւ այլուր թէ օտար եւ թէ հայ կանոնագրութեանց մէջ։ Օրինակի համար Կարնոյ ժողովոյն Դ կանոնը զայս բառ առ բառ օրինակած է։ Մեզի համար ծանրակշիռն այն է որ յունական

[1] Համմ. Hefele, I 820։ Հայն է կան. ՀԸ (= կանոնագիրք ՃԺԲ։

*Առաքելական կանոններէն այս փոխառեալը առաւելն խմբագրողին ձեռօք հոն կրնար մտնել, աւելի կանուխ ստուգիւ ոչ, բայց աւելի ուշ կարելի է, քանի որ նոյն կանոններն ուշ ծանօթացան թարգմանութեամբ։*[1]

*Սակայն ճիշդ այս Յունական Առաքելական կանոնաց հայերէն թարգմանութիւնն է որ մեր կանոնաց մատենին Նախնականն իւր առջեւն ունեցած է եւ որմէ զարմանալի եղանակաւ ամբողջ կանոնն մ'ունի փոխ առած։ Յիշեալ թարգմանութիւնն՝ որ Ը դարուն արդէն կար, որով Օձնեցւոյ կանոնագրոց հաւաքածոյից մէջ կրցաւ մտնել, եւ որ հաւանականրէն արդէն Ե դարուն վերջերը թարգմանուած էր, շատ աղաւաղ վիճակի մէջ է՝ եթէ համեմատենք բնագրին հետ։ Բնագրին վերջին կանոնը, որ Ս. Գրոց կանոնը մեր առջեւ կը դնէ,*[2] *չենք գտներ այժմու հայերէնին մէջ։ Անոր փոխարէք իբրեւ ՁԳ կանոն (= կանոնագիրք՝ ԺԺԱ։) մտած է հոն մեր ստորի Ւ կանոնը (Ասր ԻԳ։) Բայց այն որ յիշեալ տեղը դրաւ մեր կանոնն, բարեբախտաբար իւր առջեւն ունէր հայերէն Նախնական թարգմանութիւնն, որ բոլորովին նման է ստորւոյն, մինչեւ այժմու հայերէնին մէջ անճա-*

---

1 *Կ'երեւայ թէ արդէն խմբագրողն Ե դարուն վերջերն առջեւն ունէր զասոնք թարգմանուած. վասն զի բաւական գործածած է զանոնք։ Այսպէս բաց ի յիշեալ տեղէն՝ կը գտնենք նաեւ երկու տեղ։ ԺԹ կանոնին մէջ կ'ըսուի թէ եկեղեցւոյ պաշտօնեայք միաբանութեամբ ընեն իրենց պաշտօնն եւ ոչ անմիաբանութեամբ, եւ կը կցուի սայսեալուածը հայերէնին մէջ.* «[illegible]» *Արդ այս խօսքը շատ նման է Յունական Առաքելականաց համանման կանոնին* (Hef. I 811) *վերջաւորութեան* «... [illegible]» *Վերն առիթ ունեցանք այս կանոնիս եւ վերջաւորութեանս վրայ խօսելու. — Շատ նման է նոյնպէս ԻԵ կանոնն՝ որ ստորւոյն մէջ չկայ, Յունական Առաքելականաց Ծ (Կանոնագիրք ՁԴ) կանոնին հետ, զոր քիչ մ'ետքը դէմ առ դէմ պիտի դնենք։*

2 *Տես* Hefele, I 827.

նաչելի ըլլալու չափ փոխուած է կանոնս։ Ցաջորդ համեմատութիւնը կը ցուցընէ այս բանս։

## 1. ԱՍՈՐԻՆ

(Կան. ԻԳ)

«Կարգեցին Առաքեալքն եթէ լիցին հրամանատարք ի վերայ երիցանց որք են ի գեաւղս, զի երեւեսցի գլուխ ամենեցուն, զի ի ձեռն նորա խնդրեսցին ամենեքեան. քանզի եւ Մովսէս այսպէս շրջէր ի տեղւոջէ ի տեղի եւ հրաման տայր։»

## 2. ՆԱԽՆԱԿԱՆ ՀԱՑՆ

(Կան. ԶԳ. Ցունական.)

(«Կարգեցին[1] Առաքեալք եւ եդին հաստատութեամբ եթէ) լիցին գլխաւորք եւ հրամանատարք ի վերայ երիցանց եկեղեցեաց որք են ի գեաւղս եւ յագարակս, զի եւ երեւեսցի գլուխ եւ առաջնորդ ամենեցուն, զի ի ձեռն նորա խնդրեսցին ամենեքեան. քանզի եւ Մովսէս այսպէս շրջէր ի տեղւոջէ ի տեղի (եւ[2] ոչինչ առնոյր ի տանէ պաշտաւնէից նոցա եւ յընչից նոցա եւ ոչ տրտմեցուցանէր զնոսա, այլ) այց առնէր եւ կարգէր եւ հրաման տայր։»

## 3. ԱՑԺՄՈՒ ՀԱՑՆ

(Կան. Ի, Խմբագրեալն։)

«Կարգեցին Առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ [ի կարգէ քահանայութեանն ընտրեալքն, անարատքն, որ սուրբ ի մանկութենէ իցեն եւ աւրինաց եւ կարգի եկեղեցւոյ հմուտք, եթէ եւ յանարգաց ոք իցէ, ի քահանայութիւն եւ ի գլխաւորութիւն կացուսցեն՝ միջնորդ լինել ընդ մարդիկ եւ ընդ Աստուած. զի] երեւեսցի գլուխ եւ առաջնորդ ամենեցուն, զի 'ի ձեռն նորա խնդրեսցի [չարութիւն եւ բարութիւն, մեղք եւ արդարութիւն] յամենեցունց, զի [դէտ եւ հովիւ է իբրեւ զ]Մովսէս[, զի] շրջէր եւ կարգէր եւ հրաման տայր [ըստ մարգարէութեանն Եզեկիէլի։]»

---

1 Այս սկզբնաւորութիւնը խնդիր չկայ որ այսպէս էր Նախնականին մէջ, ինչպէս խմբագրեալն ալ կը վկայէ։ Կանոնիս հաւաքողը դուրս թողուցած է եւ գրած այսպէս. «Եպիսկոպոսք դէտ լիցին», եւն։

2 Այս փակարծեալն անշուշտ յետսամուտ է եւ ոչ թէ Թարգմանչին յաւելուածն։

Ահա մեր առջեւ ակնյանդիման դրուած երեք բնագրաց օրպիսութիւնն։ Նախնականն ինչպէս կը տեսնուի համեմատութեամբ՝ բոլորովին համեմատ է ասորւոյն, թէեւ հայ թարգմանչաց յատուկ բոլոր ճոխաբանութիւնը կը ցուցընէ այլեւայլ աւելորդաբանութեամբք, որմէ՝ ինչպէս վերը յիշեցինք, զուրկ չէ նաեւ այս հայերէն թարգմանութիւնն։ Ասով կը մեկնուին սա կրկնաբանութիւնք. "կարգեցին եւ եդին համապատասխանեամբ„ . . — գլխաւորք եւ հրամանատարք . . . ի գեաւղս եւ յագարակս . . . գլուխ եւ առաջնորդ . . . շրջէր ի տեղւոջէ ի տեղի . . . այց առնէր (որով տառի ܣܕܪ բային կրկին նշանակութիւնքն բացատրուած են) կարգէր եւ հրաման տայր։„ Այս ճոխաբանութիւնքն սովորական են ամէն հայ՝ մանաւանդ տառի գրոց թարգմանութեանց, որով գրութեանս նախնականին յատուկ չեն։ Ցայսմ մասին նշանաւոր է Զգօնի հայերէն թարգմանութիւնն։

Իսկ ի՞նչ կերպարանաց մէջ կը գտնենք խմբագրեալ հայերէնը։ Ինչպէս չակերտի մէջ առնուած կտորները կը ցուցընեն, ամբողջ կանոնն ընդհատուած է այլեւայլ յաւելուածներով որոնց մեծ մասն ուրիշ տեղէ առնուած չէ, բայց եթէ նոյն իսկ այս տառի մատենին ուրիշ տեղերէն, ինչպէս են "ընտրեալքն, անարատքն, որ սուրբ ի մանկութենէ իցեն„ եւ "ուրինաց եւ կարգի եկեղեցւոյ հմուտք„ խօսքերն, որ ԺԹ եւ ԻԱ կանոններէն են։ Այստեղ կը տեսնուի որ կանոնիս նիւթն բոլորովին կերպարանափոխ եղեր է այն յաւելուածովն։ Ըստ ասորւոյն եւ ըստ նախնական հայոյն՝ կանոնը կը հրամայէ պերբետաւներ դնել, որուն վրայ երկար չենք խօսիր, վասն զի վերն առիթ ունեցանք ընդարձակ ճառելու։ Ինչպէս հոն ըսինք, անշուշտ այն պարագայէն՝ որ պետետաւք Հայոց մէջ սովորական չէին խմբագրին ժամանակ, կանոնս այսպէս փոփոխելու առիթ տուած է հայերէնին մէջ,

որմէ [illegible] դնելու հրաման մ'ամենուին կարելի չէ հեռացընել:

Սակայն պէտք չէ հեռացընել որ ամէն կանոնք ալ այսպէս կերպարանափոխ եղած ըլլան: Մեծագոյն մասն հաւատարիմ անփոփոխ մնացած է, եւ միայն այնպիսի յաւելուածներ առած, զորոնք եթէ ամբողջովին դուրս հանենք, բան մը չի պակսիր ամբողջութենէն. այնպէս անյարիր են սովորաբար այս յաւելուածք: Քիչ են այնպիսիք՝ որ բուն իսկ նիւթոյն փոփոխութիւնքն են կամ այլայլութիւնք: Այսպիսի այլայլութիւն՝ օրինակի համար՝ կրած են Կան. Գ. եւ Դ., որոնք թէեւ մէջ երկու բառով միայն փոխուած են, բայց իմաստն անով բոլորովին այլայլած է: Արիթ ունեցանք յիշելու որ այս կանոնաց մէջ ասորի բնագրին համեմատ կը հրամայուի Գրչ. եւ Սեր. օրէքը "եղեցի "դուռն" եւ այն՝ "յիններորդ ժամն:" Հայ խմբագրողն ըրած է "..եղեցի ի դուռն եւ ի տրտմութիւն." բոլորովին ջնջելով "պաշտաւն" ընելու հրամանը:

Խմբագրողին գլխաւոր գործունէութիւնն բստ այսմ յաւելուածներ ընելու վրայ է, որոնք մեծ մասամբ կամ Ս. Գրոց կոչմունք են կամ փոխառութիւնք ուրիշ կանոններէն այս ասորի մատենին կամ հին հայ կանոնագրոց մասերէն, կամ նաեւ հայ հեղինակներէն եւ ի մասնաւորի Սահակայ անուն կրող կանոններէն:

Ս. Գրքէն կոչմունք մուծանելը խմբագրողին ամէնէն սիրելի զբաղումն եղած կ'երեւայ. գրեթէ ամէն յարմար եւ անյարմար տեղ կը գտնենք այսպիսի յաւելուածներ: Բայց դժբախտութեամբ շատ անգամ այնպէս անկապ եղանակաւ մուծուած են, որ իմաստին կապակցութիւնը չխանգարելու համար պէտք ենք շատ անգամ այն ներմուծեալ կոչմունքն նախ մէկդի հանել եւ անոր նախընթաց

եւ յաջորդ նախադասութիւնքն իրարու կցել։[1] Մէկ երկու տեղ այս Ս. Գրոց կոչմունք արժէք ունին Աստուածաշնչի հայերէն թարգմանութեան համար։ Զոր օր. ԺԶ կանոնին մէջ սա վկայութիւնը կայ աւելցուած. “Զի մի՛ ոք արմատ դառնութեան ի վեր բուսեալ՝ պղծիցին նովաւ բազումք։” Այսպէս է նաեւ հայերէնն, որուն հնութեան երաշխաւոր է նաեւ Եզնիկայ այս տեղւոյ ընթերցուածն.[2] մինչդեռ տարբեր է “զի մի՛ ոք արմատ դառնութեան բուսեալ . . .” (ճշդագոյն եւս՝ “զի մի՛ արմատ դառնութեան հանցէ վերայ”) ինչպէս է նաեւ Եօթանասնից յունարէնը. (ῥίζα πικρίας ἄνω φύουσα, արմատ դառնութեան ի վեր բուսեալ։) Ընդ հակառակն ուրիշ տեղեր տարբեր ընթերցուածներ կը գտնենք պահուած՝ անմիաբան այժմու հայերէն Աստուածաշնչին։ ԻԸ կանոնին մէկ յաւելուածին մէջ կը յիշուի Սաղմոսի սա խօսքը «Թագաւոր յուսացաւ ի Տէր, յողորմութեան Բարձրելոյն նա մի՛ դղրդեսցի։” Այժմու հայ-

---

[1] Օրինակի համար Առաքեալք կ'ըսեն Հրէից քահանայից որդւոց, որոնք ի ծածուկ քրիստոնեայ կ'ուզէին մնալ եւ ոչ նաեւ հրապարակաւ խոստովանել, այսպէս. «Չէ ընդունելի առաջի Աստուծոյ [որպէս ասաց իսկ Քրիստոս եթէ Որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան՝ խոստովանեցայց եւ ես զնա առաջի Հաւր իմոյ որ յերկինս է. եւ եթէ Որ ոչ խոստովանեսցի զիս առաջի մարդկան, ուրացայց զնա առաջի Հաւր իմոյ որ յերկինսն է.] զի յորժամ էջէք ընդ եկեղեցւոյ նորա, դարձեալ երթալ հաղորդել ընդ սպանողս Որդւոյն նորա» եւն։ Բովանդակ փակագծեալն անկապ յաւելուած մըն է, զոր որոշելն՝ ինչպէս կը տեսնուի, դիւրին է։ — Այսպէս նաեւ սա խօսքը. «Ես յետ յարութեան, զոր ընկալայ Աստուծոյ ի Տեառնէ. քաղցրացուցին ես յետ կերակրոյ. ես [որպէս ասաց իսկ Տէրն մեր թէ Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի եւն եւն] ծառայս վաղվաղակի տարադրութեան առաքարանին ընդ ամենայն տիեզերս։»

[2] Համմ. Եբր. ԺԲ, 15. “Մի ոք արմատ դառնութեան ի վեր երեւեալ՝ նեղիցէ, եւ նովաւ բազումք պղծիցին։” Համմ. Եզնիկ, Բ, ԺԷ (տպ. Վենետ. 1826, էջ 173, 2) “Եւ մի՛ ոք արմատ դառնութեան ի վեր երեւեալ՝ զայլս նեղիցէ։” Ճիշդ այսպէս օրինակեր է նաեւ Օձնեցի, որ գործածած է մեր այս կանոնը. (տես տպ. Վենետ. 1833, էջ 75։)

երէնին ընթերցուածն է «. . . յողորմութենէ Բարձրելոյն նա մի սասանեսցի» (= Յունարէնին՝ οὐ μὴ σαλευθῇ.) եւ այսպէս է նաեւ ասորին։ Այս տարբերութիւնն անշուշտ խմբագրին ձեռքէն եկած է, որ աւելի մեծ փոփոխութիւն մ'ալ ըրած է։ ԻԲ (Աս. ԻԳ) կանոնին մէջ՝ որ անարժան եկեղեցականաց վրայ է, ասորին Ս. Գրքէն երկու խօսք կոչում ըրած է՝ Մատթ. ԻԳ, 12 (Համմտ. Ղուկ. ԺԸ, 14.) եւ Սաղմոսէն խօսք մը, երկուքն ալ քիչ մ'ազատ։ Հայն առաջինը դուրս թողուցեր է, իսկ վերջնոյն տեղ բոլորովին ուրիշ մը դրեր է, այսինքն՝ Մատթ. Է, 23։[1]

Խմբագրողին գործունէութեան մէկ մասն ալ է ուրիշ կանոններէն մասեր առնուլ եւ մուծանել։ Ոչ միայն ուրիշ ժողովոց վճիռներէն կտորներ կան մուծուած, այլ նաեւ՝ որ անըմբռնելի է՝ նոյն իսկ այս գրութեան միւս կանոններէն առնուած մասեր, զորոնք կրկնուած կը գտնենք այս յաւելուածոց մէջ. եւ այս կրկնութեանց պատճառն դժուար է գուշակել։ Ամէնէն գեղեցիկ օրինակն է այս կարգի յաւելուածոց Կան. Բ, որուն մէջ կրկին անգամ համառօտուած են Թ եւ ԼԱ կանոններն եւ ուրիշ տեղէ ալ քանի մը խօսք։ Այս նշանաւոր խմբագրեալ կանոնը պէտք կը համարինք դնել հոս դէմ առ դէմ համեմատուած, որուն այլեւայլ մասերը թուով նշանակած ենք եւ յաւելուածները փակագծած։

| ԿԱՆՈՆ Բ։ | ԿԱՆ. Բ, Լ եւ Թ։ |
|---|---|
| 1. «Կարգեցին Առաքեալքն եւ եդին հրամանադրութեամբ եթէ յաւուր միաշաբաթուջ [?] յամենայն կիւրակէի եղիցի տաւն եւ պաշտօն | 1. (Կան. Բ. ասորին) «Կարգեցին Առաքեալքն եթէ յաւուր միաշաբաթուջ [?] եղիցի պաշտօն |

[1] Ասորին ունի. «Պարձուցից զհատուցումն ի վերայ այնոցիկ որ պարծին» (Համմտ. Սղմ. ԼԱ, 24 «Հատուցանէ (Տէր) այնոցիկ որ առաւել առնեն զամբարտաւանութիւն.»

| | |
|---|---|
| 2. եւ խորհուրդ տէրունական մարմնոյ եւ արեան Տեառն զոր պատուիրեաց մեզ Կենարարն։ | 2. յաւել. խմբագրին. «Ի վերնատունն յայտնեաց Տէրն աշակերտացն զխորհուրդ սուրբ մարմնոյ եւ արեան իւրոյ։» |
| 3. Եւ հաց պատարագին ի նմին աւուր ջերմ եփեալ ելցէ ի սեղանն. | 3. (Կան. ԼԱ) «...հաց պատարագին յորում աւուր եփեսցի ելցէ ի սեղանն... ջերմ...։» |
| 4. եւ արժանաւորք հաղորդեսցին մի՛ արհամարհանաւք, այլ մեծաւ երկիւղիւ. | 4. յաւել. խմբագրին.[1] |
| 5. եւ դատարկացեալ եւ փափկացեալ եղիցի միաշաբաթին. որպէս պատուիրեաց Աստուած Նոյի, Աբրահամու եւ Մովսիսի. զի եւ մեզ հանգիստ լիցի յերկրաւոր աշխատութենէս, եւ յեւթներորդում դարուն ի գալստեան Տեառն յարքայութեանն յաւիտենից։ | 5. յԱծանանծեղեայ (՞)[2] |
| 6. Եւ յամենայն միաշաբաթւոջ ընթերցուածն երեք-երեք մարգարէականք եւ առաքելականք. | 6. Եւ ընթերցուած երից որբոց. |
| 7. եւ աւարտումն եւ գր- | 7. (Կան. Թ.) «...կա- |

այսպէս է նաեւ յունարէնն, մինչ զարմանալի եղանակաւ տորին հօս բոլորովին այլազգ է «...հատուցանէ ամպարշտաց զգործս նոցա։») Այս խօսքը խմբագրողը դուրս թողլով՝ անոր տեղ առած է սա խօսքը. «Ի բաց կացէք յինէն ամենեքեան որ գործէք զանաւրէնութիւն։»

[1] Յաւելուածիս նիւթն առնուած է Անտիոքայ Բ կանոնէն (տես Hefele, I 514 = Հայ կանոնագիրք ՁԻ.) Համմ. նաեւ Յունական Առաք. կան. Ձ. (Hef. I. 803 եւ n. 1 = Հայ. կան.՝ ԽԳ։)

[2] Համմ. Ագաթանգեղոս (տպ. Վենետ. 1862. Գ, էջ 498–500. ի միջի այլոց էջ 500, 2–6 «...Զի ընդ այնորիկ յեւթներորդ դարին հանգուսցէ զաշխատեալսն, որ աշխատեցան ի վեցդարեան իւրեանց ժամանակին» եւն։ Հազարամեակի վարդապետութեան նկատմամբ Համմ. Hergenröther III, Per. I, § 377։ Տե՛ս նաեւ Զգօն, Բ, § 13. (տպ. Կ. Պոլ. 1824, էջ 36։)

լուխ ամենեցուն կարդացի աւետարան.

8. Եւ մատուցի պատարագ. [illegible] եղեւ. լինելութիւն արարածոց եւ յաւուր միաշաբաթոջ [illegible] Տէր Քրիստոս [illegible] ի Պենտէկոստէիցն [illegible] Տէրն մեր [illegible] [Հայրական փառաւք] [illegible]։„

տարումն ամենայն գրոց ընթերցցի աւետարանն իբրեւ գենիք պատուական.

8. [illegible]։„

Կանոնիս հինգերորդ կտորէն՝ կրնայ իմացուիլ որ խմբագրողը հայ լեզուաւ ուրիշ գործքեր ալ գործածած է. Ագաթանգեղեայ գրքէն ուրիշ խօսք մ'ալ առած կ'երեւայ գրութեանս վերջերն ըրած յաւելուածին մէջ։ Այս խօսքն է հետեւեալը. "Բայց այլ առաքեալքն ընկերք նոցա եւ առաքելակիցք չոգան ի տար աշխարհս բարբարոսաց, յաշխարհս հեռաւորս հեթանոսաց [illegible] Աստուծոյ. [illegible]] Եւ շրջէին տեղի ի տեղւոջէ եւ քարոզէին զաւետարանն արքայութեան։ [illegible]։„] Այս յաւելուածին առաջին նախադասութիւնն է կոչումն Ս. Գրքէն (Երկ. Օր. ԼԲ, 8) որ չէ բոլորովին համեմատ այժմու հայերէնին։[1] Մնացեալ երկու նախա-

[1] Հայերէնն է. "Կացոյց սահմանս ազգաց ըստ թուոյ որդւոց Աստուծոյ.„ մինչդեռ յունականն միայն է խմբա-

դասութեանց համար ալ անշուշտ Ագաթանգեղեայ Ս. Գրիգորի Վարդապետութիւնն իբրեւ աղբիւր գործածուած է, ուր կ'ըսուի ի միջի այլոց.[1] "Որ ի բաժանել ազգայն եւ ի խառնակել լեզուացն եւ ի ցանել որդւոցն Ադամայ, կարգեաց սահմանս ըստ թուոյ հրեշտակացն Աստուծոյ." եւ "Եւթանասուն եւ երկու նահապետք լեզուաց կացեալ՝ բաժանեցան ընդ երկիրս. հաստատեալք յիւրաքանչիւր սահմանս:"[2] Յաւելուածին երկրորդ կամ վերջին մասն ալ ("Որպէս յաշտարակէն ցրուեա՛ն" էն) կ'երեւայ թէ ուրիշ աղբիւր չունի,[3] բայց եթէ Ագաթանգեղեայ մէկ ուրիշ խօսքն, որ է.[4] "Ընկալցուք զշնորհացն հուր Հոգին՝ որ այրեացն

---

գրողին տուած ընթերցուածոյն հետ՝ "... ըստ թուոյ հրեշտակաց Աստուծոյ» ընթեռնլով (...κατὰ ἀριθμὸν ἀγγέλων Θεοῦ.) իսկ տարբին ունի «ըստ թուոյ որդւոցն Իսրայէլի:» — Սակայն հայ Սաղմոսարանք հնագոյնը պահած են (ԼԲ. 11). "Կացոյց զսահմանս հեթանոսաց ըստ թուոյ հրեշտակաց Աստուծոյ:"

1 Ագաթ. տպ. Վենետ. 1862, էջ 242:

2 Ագաթ. էջ 430: Տես այսնկատմամբ Յաթեւացւոյն Գիրք Հարցմանց, տպ. Կ. Պոլ. 1729, էջ 297:

3 Մեր կանոնաց մէջ աւելցուած ճիշդ այս խօսքն ի մէջ բերուած է Հայկազնեան բառագրոց մէջ բառաբառ (տպ. Վենետ. 1836—37, հմմտ. Ժողովուրդ եւ Ցրուեմ բառերը.) եւ նշանակուած ՃՃ կամ ՃԵ տառերով այն ձեռագիրն, որմէ կոչումն ըրած են բառագրքին յօրինողք: Այս ՃԵ տառով նշանակուածն ալ է Ճառընտիր՝ Ե, որ է ՈԿԴ թուին (= 1215 Ք. Ք.) Երուսաղէմ գրուած Յովհաննէս անուն անձէ մը, եւ է Վենետկոյ Մխիթարեան Հարց մատենադարանին թիւ "1553 Դ, ե." ձեռագիրը: Դժբախտաբար չէ յիշուած թէ ինչ գրութենէ առնուած է կոչումս:

4 Ագաթ. էջ 435: Նման տեղեր կան ի հարկէ Ս. Հարց գրութեանց մէջ: Այսպէս ընդմիջարկութեան առաջին մասին համար համեմատելու է Ս. Աթանասի մէկ խօսքը (Opera, ed. Colon. 1686, II. Quaestiones ad Antiochum. Quaest. II.) եւ վերջին խօսքին համար Կիւրղի Երուսաղէմացւոյ մէկ խօսքը (Migne, XXXIII, p. 990.) Այս վերջինս այնպէս նման՝ է որ զայս պէտք էինք նշանակել իբրեւ աղբիւր խմբագրողին յաւելուածոյն, եթէ հայերէն թարգմանութիւնն՝ զոր անշուշտ կը գործածէր խմբագիրն, ճիշդ այստեղ այնպէս տարբեր չըլլար. (հմմտ. Կոչումն ընծայութեան՝ ԺԶ. — տպ. Վիեննա, 1832, էջ 277:)

եւ փլոյց զաշտարակն մոլորութեան. նոյն շինեսցէ զմեզ հիմամբք հաստատութեան հաւատոյ եւ ածցէ զմեզ ի միաբանութիւն խաչիւն իւրով։„ Իսկ կամ արդեօք Եպիփանու անունը կրող ծանէ՞ն է, որուն վրայ վերը խօսեցանք (տես վերը՝ էջ 111, ծ. 3։) Զարմանալի չէ՝ եթէ այս տեղերն արդեամբք Ագաթանգեղոսն առջեւն ունեցած ըլլար խմբագրողն, որ նաեւ ուրիշ կանոնաց վրայ բրած յաւելուածոց եւ փոփոխութեանց մէջ ուրիշ հայ մատեաններէն փոխառութեան նշաններ կու տայ։[1]

Ագաթանգեղոսէն զատ մէկ երկու տեղ ալ ի Զգօնէ փոխառեալ յաւելուածներ կը գտնենք։ Գլխաւորն է ԼԲ կանոնն, որ թոյլ կու տայ եկեղեցականաց "կուսան լինել։„ Այս կանոնիս ասորերէնը չկայ, եւ ամբողջն այնպէս խմբագրեալ է, որ նախնականը բոլորովին կորսուած է։ Յամենայն դէպս խմբագրին յաւելուածն է վերջին մասն, ուր կուսութեան օրինակ կը բերուին Մովսէս, Յեսու, Եղիա եւ Յովհաննէս Մկրտիչ՝ ճշդիւ անունք, զորոնք նոյնպէս ի մէջ կը բերէ նաեւ Զգօն իբրեւ օրինակ։[2] Ճիշդ ասոր նման նաեւ Ը կանոնին մէջ

---

1 Հ. Յովսէփ Վրդ. Գաթրճեան իւր կանոնագրոց քննութեան մէջ այս նկատմամբ այլեւայլ օրինակներ ի մէջ կը բերէ, որոնց մին յիշենք հոս։ Ղահապիվանի ժողովոյն Յառաջաբանը կը դրէ Մամիկոնէից նկատմամբ թէ. "Ղօղեալ եւ նուաճեալ եւ հնազանդեալ էին համբարձելոյ զօրութեան Թագաւորութեան„, որ նմանողութիւն է Ագաթանգեղեայ սկզբնաւորութեան ծանօթ խօսքին (տպ. Վենետ. 1862, էջ 32) «Հնազանդեցան ի ծառայութեան միոյն համբարձելոյ Թագաւորութեան Աստուածոյն։»

2 Կան. ԼԲ "... զի եւ Յեսու պաշտօնեայն Մովսէսի եւ սպասաւոր սրբութեանն, եւ Եղիայ նախանձաւորն Աստուծոյ եւ Երեմիայ մարգարէն եւ մեծ մարգարէն Մկրտիչն Յովհաննէս, սոքա ամենեքեան կուսութեամբ եւ պարկեշտութեամբ կատարեցին զկեանս իւրեանց, բռնութեամբ կալեալ յափշտակեցին զարքայութիւնն երկնից։„ — Հմմտ. Զգօն, Զ. 5 (տպ. Կ.Պոլ. 1824, էջ 115—117) "... Եւ վասն Յեսուայ դարձեալ գրեալ է թէ ի խորանէ անտի ոչ հեռանայր, եւ վրանժամուն ոչ եթէ ի ձեռն կնոջ պաշտէր ... Եւ վասն Եղիայի գրեալ է թէ էր ժամանակ որ ի լեառն Կարմելայ բնակէր եւ էր ժամանակ որ

կը գտնենք այս անձինքն օրինակ բերուած խստակեաց պահոց. — այս կտորը հայն աւելի ճոխացուցեր է քան զոր ասորին ունէր, եւ աւելի նման է Զգօնի խօսքին։[1]

Վերջապէս՝ եթէ սխալ չենք առներ, խմբագրողն իւր շատ մը յաւելուածքն բրած է, որպէս զի իւր ազգին մէջ տիրող սովորութիւնքն հաստատուին եւ քանի մը զեղծմունք բարձուին, որոնց դէմ արդէն դրուած էին Սահակայ անունը կրող կանոնք։ Այնպէս որ կրնանք ըսել թէ շատ բան լոկ Ս. Սահակայ կանոնաց նմանողութիւն է։ Մեզի բաւական ըլլայ յիշել երկու բան։

Շատ նշանաւոր է այն յաւելուածն, զոր կը գտնենք Զ կանոնին մէջ։ Այստեղ կանոնին այն

---

ի ծործորսն Քորիաթու եւ յաշակերտէ իւրմէ պաշտէր. ...առ նա յանձն զնմանութիւն զուարթնոց երկնից, նոքա իսկ զուարթունքն հաց եւ ջուր բերէին նմա ... Եւ Եղիսէ գնաց ըստ գնացս վարդապետին իւրոյ ... Եւ զի՞նչ եւս ասացից վասն Յովհաննու, զի եւ ի մէջ մարդկան անգամ ոչ բնակէր նա, եւ պահեաց զկուսութիւն զգուշութեամբ, եւ ընկալաւ զոգին Եղիայի„ եւն։ Նմանութիւնն ակնյայտնի է, եւ արդեամբք Զգօնի ամբողջ հատուածն աւելի լաւ համառօտել կարելի չէր՝ որչափ բրած է խմբագրողը։

[1] Կան. Ը. "...Զի եւ ինքն Տէրն մեր Քրիստոս տէր տաւնից եւ սարեկանաց պահեաց զխ. տիւ եւ զխ. գիշեր. նոյնպէս եւ Մովսէս ի սինէական լերինն ի ձեռն պահոցն իբրեւ սիրելի բարեկամ խաւսէր ընդ Աստուծոյ եւ մեծապէս պատիւ գտեալ յերկնաւոր արքայէն ահեղ երեսաւք արքունական աւրէնս եւ կանոնս բերելով իջանէր առ ժողովուրդն. նոյնպէս եւ նախանձաւորն Հեղիաս ի ձեռն քառասնաւրեայ պահոցն մեծամեծ նշանս եւ զաւրութիւնս գործելով՝ ապա կառավարեալ ասպատակէր յերկինս. եւ երեք մանկունքն ի ձեռն պահոցն ի մահուանէ թագաւորին ապրեցան„ եւն։ — Հմմտ. Զգօնի Պահոց ճառին մէջ նման կտորը (Ճառ. Գ, 2. տպ. Կ.Պոլ. 1824, էջ 47.) "...Պահեաց Մովսէս պահս սրբութեամբ ի ժամանակի մինչ ել նա ի լեառն եւ եկն եբեր զօրէնս ժողովրդեանն իւրոյ, եւ զօրացաւ պահօք իւրովք քառասուն քառասուն աւուրբք, եւ ընկալաւ նա զփառս առաւելս, յորժամ իջին նստան փառքն Աստուծոյ ի վերայ երեսաց նորա... Եւ ի նմանութիւն պահոցն Մովսեսի պահեաց Եղիա այր հզօր... եւ սոքա երկոքին պահօք իւրեանց կատարեցան„ եւն։ Զգօնի եւ մեր գրոց վրայ տես վերը՝ էջ 116 եւն։

մասէն վերջը թէ եկեղեցւոյ մէջ ըլլալու են քահանայք, սարկաւագունք եւ կիսասարկաւագունք, կ'աւելցընէ խմբագրողն անկասկ եղանակաւ թէ հին օրինաց ժամանակ «զինուորական զէնով չիշխէր ոք մերձենալ. նոյնպէս եղիցի յեկեղեցւոջ, եւ մի ոք վայրապար ի բեմ սրբութեան եւ ի սպաս աւրինացն մերձեսցի» եւն: Նաեւ ԼԲ կանոնին մէջ կրկնած է խմբագրողը թէ եկեղեցականք պէտք են «ի զինուորական զգեստուց հեռանալ:» Յայտնի է ուրեմն որ այս նկատմամբ զեղծումն կար Ե դարու Հայոց մէջ, եւ զինուորականք եկեղեցական աստիճանաց կը մատուցուէին դիւրաւ, այնպէս որ նաեւ Շահապիվանի ժողովն՝ որ Ս. Սահակայ կարգադրութիւնքն հաստատել կ'ուզէր, կրկնած է իւր Բ. կանոնին մէջ այս նկատմամբ որոշում մը. (Կանոնագիրք՝ ՌԴԼ:) Առոնց աղբիւրն է Սահակայ Զ կանոնն՝ որ կը պատուիրէ թէ «զոգէտս եւ զինուոր ամենեւին իսկ պարտ է որոշել ի շնորհէն.» (Կանոնագիրք՝ ՌԽԳ.[1]) եւ զոր կը կրկնէ իւր ուրիշ մէկ կանոնին մէջ (Կանոնագիրք՝ ՌՁԳ) գրելով. «Մի ոք զայսպիսի տեսչութիւն՝ զինուորաց կամ տգիտաց ումեք հաւատասցէ եւ մի մերձաւորաց իւրոց՝ շնորհուկս ինչ առնելով» եւն: Սակայն երկար ժամանակ տեւած է Հայոց քով այսպիսի սովորութիւն մ'որուն հետեւութեամբ յաջորդ ժամանակաց կանոնագրութեանց մէջ կը գտնենք այս արգելքին նմանները: Այսպէս է «Ներսէսի եւ Ներշապհոյ» Ե կանոնը (Կանոնագիրք՝ ՊԼԴ) Զ դարէն (°), ուր կ'ըսուի թէ «Երկկանայքն թէեւ գրակարդացք իցեն եւ պաշտաւնեայք, ընդ զինուորս կացցեն... Նոյնպէս եւ տգէտք մի իշխեսցեն մտից սրբոյ եկեղեցւոյ, այլ ընդ զինուորս կացցեն, եւ զհայրենի

---

1 Ս. Սահակայ կանոնք հրատարակուած են նաեւ ի Սոփերս, Բ. տպ. Վենետ. 1853 էջ 71—134: Համմտ. այս կանոնաց համար՝ էջ 73 եւն: — Բուզանդայ գրոց մէջ ալ ակնարկութիւններ կան այս նկատմամբ:

զհող եւ զջուր կալցին եւ յարքունիս հարկս տացեն եւ զորդիս ի դպրոց տացեն՝ զի ուսցին." — որ հետեւողութիւն է Սահակայ միւս կանոնին:[1] Ասով չշատանալով՝ Ներշապհոյ ուրիշ մէկ կանոնը (կան. ԺԹ = կանոնագիրք՝ ՊԼԹ) մեր "Վարդ. Առաք." գրութեան խմբագրողին աւելցուցած վերյիշեալ խօսքը բառ առ բառ ընդօրինակած է, զոր քիչ մ'ետքն ի մէջ պիտի բերենք: Յաջորդ դարուն Ներսէս Շինող իւր Դ կանոնին մէջ (կանոնագիրք՝ ՌՄԽԴ) տակաւին առիթ ունէր տրտնջելու՝ թէ "Ոմանք յուխտէն եկեղեցւոյ զկարգ եւ զպաշտաւն թողին եւ հեծելութիւն առացան." եւ կը ջանայ առոր դէմ առնուլ իւր յիշեալ կանոնովն: Վերջապէս նաեւ Սիմէոն Աղուանից կաթողիկոսն իւր Բ կանոնին մէջ պէտք տեսած էր հրամայել "Մի՛ թողացուցանել եւ ոչ տալ հրաման անարժանից եւ զինուորական մարդկան՝ եկեղեցւոյ ունել իշխանութիւն"[2] եւն. — Համեմատելու է նաեւ Սայոն Թադէի ԺԱ կանոնը (կանոնագիրք՝ ՃԼ): Նման կանոն կը գտնուի նաեւ Յունաց եւն քով, ինչպէս է Առաք. ՁԳ կանոնը:[3]

Խմբագրողին դիտաւորութիւնն յայտնի է ուրեմն յիշեալ յաւելուածին մէջ: Ուստի զարմանալի չէ որ նոյն կանոնին մէջ քիչ մ'ետքը մեկնաբանելով գրած թէ "կանոնքն դէտ եւ գլուխ . . . ժողովրդեանն." որով կանոնը յարմարցուցած կ'ըլլայ Հայոց սովորական անուանակոչութեան: Այսպէս նաեւ ԻԲ կանոնին մէջ աւելցուցած է երկար շարք մ'այն մոլութեանց,

---

1 Սոփերք, Բ, էջ 94 համմ. 88—9:

2 Կանոնագիրք, հած ԿԴ, կան. Բ. (տես Կաղանկատուացի, Պատմ. Գ, գլ. ժա. տպ. Մոսկ. 1860, էջ 246:)

3 Համմ. Hefele, I 826 — Հայ կանոնագիրք՝ ՃԺԱ, որ այսպէս ունի. "... Եպիսկոպոս կամ երէց կամ սարկաւագ զաւրականութեան պարապեալ եւ զերկոսեան կամեցեալ ունել՝ զհռոմէացւոց իշխանութիւն եւ զքահանայութիւն, լուծանել պարտ է:"

որոնց ենթակայ եղողները չէին կրնար եկեղեցական ըլլալ, զոր վերը դէմ առ դէմ դրինք Շահապիվանի ժողովոյն մէկ խօսքին հետ. եւ այս գրուած է Ս. Սահակայ նման մէկ կանոնին[1] առջեւն ունենալով, որ կը խրատէ "յանառակութենէ ի բաց փախչել, յորկորստութենէ, յարբեցողութենէ, եւ ի հակառակութենէ, ի զրկելոյ զաղքատս եւ զընկերս իւրեանց. մի կռուողս, մի հարկանողս, մի չարաւէրս. տանեսցեն զշնացողս, զգողս, զպոռնիկս, զաւազակս„ եւն: Վերջապէս խմբագրին այս սովորութիւնն՝ այսինքն կանոններն բառ կարի յարմարել տեղւոյ եւ ժամանակի սովորութեանց՝ պայծառ կը տեսնուի ԺԱ կանոնին մէջ, որ անոնց կարգէն է՝ որոնք ասորերէնին մէջ չկան:

Տեսնելով խմբագրողին գործունէութիւնն՝ ի հարկէ մեծ խնդիր մը կը ծագի մեր մտաց մէջ, թէ մի՛ գուցէ խմբագրողին արդիւնքն ըլլան այն երկու մեծ տարբերութիւնքն, զոր կը գտնենք հայերէնին մէջ. եւ սոյնք են՝ տեղափոխութիւն կանոնաց շարքին, եւ երկրորդ՝ որ ամէնէն գլխաւորն է՝ այն որ հայերէնին մէջ վեց ամբողջ կանոն աւելի կը գտնուի քան սուրբ բնագրին մէջ: Բնական էր որ խմբագրին ձեռքէն այսչափ յաւելուածներ գտնելով հայերէնին մէջ, հետեւցրնէինք նաեւ որ նոյն խմբագրողէն ըլլալու են թէ կանոնաց տեղափոխութիւնն եւ թէ այն աւելի կանոններու ներմուծումն: Սակայն այսպիսի ընդհանուր դատաստան մը շատ մասամբ յախուռն եղած կ'ըլլար ստուգիւ:

Նկատմամբ առաջնոյն անշուշտ շարքի տեղափոխութիւնք դժուարաւ կրնայ թարգմանչէն ըլլալ, որ այնպէս հաւատարիմ էր բնագրին: Բայց ստուգիւ թարգմանիչն ալ արդէն մեր այժմու սորիէն քիչ մը տարբեր կարգաւ գտած էր

---

[1] Սոփերք, Բ, էջ 95:

*կանոնները, վասն զի քանի մը կանոն աւելի գտած էր իր ասորի նախաբնագրին մէջ քան զոր ունի այժմու ասորականը: Ցամենայն դէպս հայերէնին արդի շարադասութիւնն արդէն կար Ը դարէն յառաջ, երբ Օձնեցի իր հաւաքածոյից մէջ առաւ մեր կանոնները, ինչպէս որ Օձնեցւոյն աւելցուցած կանոնաց տիտղոսներն եւ կանոնագրքին շարունակուող թուահամարք կը ցուցնեն: Վերջապէս ըստ ինքեան այլ ծանրակշիռ բան մը չէ շարքի տարբերութիւնն. ուստի աւելի մտադրութեան արժանի է կանոնաց աւելի թուով գտնուիլը: Յաջորդ ցուցակը մեր առջեւ կը դնէ կանոնաց թէ շարքի տարբերութիւնն եւ թէ անոնց թիւն կամ աւելիները:*

| Հայն | Ասորին | Հայն | Ասորին |
|---|---|---|---|
| Ա—Դ | Ա—Դ | ԺԹ | ԺԷ |
| Ե | *չունի.* | Ի | ԻԴ |
| Զ | Ե | ԻԱ | Ի |
| Է | Զ | ԻԲ | ԻԳ |
| Ը | Է | ԻԳ | ԻԱ |
| Թ | Ը | ԻԴ | ԻԶ |
| Ժ | Թ | ԻԵ | *չունի.* |
| ԺԱ | *չունի.* | ԻԶ | ԻԲ |
| ԺԲ | ԺԱ | ԻԷ | ԺԸ |
| ԺԳ[1] | *չունի.* | ԻԸ | ԻԵ |
| ԺԴ | ԺԳ | ԻԹ | ԺԹ |
| ԺԵ | ԺԲ | Լ | Ժ |
| ԺԶ | ԺԵ | ԼԱ | ԻԷ |
| ԺԷ | ԺԶ | ԼԲ | *չունի.* |
| ԺԸ | ԺԴ | ԼԳ | *չունի:* |

*1 Շատ ձեռագիրք ԺԳ կանոնին կէսէն կը բաժնեն՝ նոր կանոն սկսելով, այնպէս որ ամբողջը փոխանակ ԼԳ կանոնի ԼԴ կ'ըլլայ: Այսպէս են* AB *եւ Տէրոյենցի ձեռագիրը, այլք՝ ինչպէս* B՝ *թէեւ նոր կանոնի սկզբնաւորութեամբ („Կարգեցին Առաքեալքն,, եւն) կը սկսին այն կէտէն, բայց նոր թիւ չեն դներ: Բայց մեծ մասն (* DEF *եւ* CL) *ուղղութեամբ իբրեւ մէկ կանոն կը հաշուեն ԺԳ կանոնը, ինչպէս իմաստը կը պահանջէ, եւ ինչպէս գտած է նաեւ Օձնեցի՝ իր աւելցուցած տիտղոսներուն վկայութեամբն:*

Հայերէնին այս կարգն՝ ինչպէս ըսինք՝ Օձնեցիէն յառաջ ունենալու էր գոյութիւն։ Վասն զի այսպէս գտած է Օձնեցի եւ ըստ այսմ ալ վարուած իր հաւաքման ժամանակ։ Օձնեցի ամէն կանոնական գրութեան՝ զոր իր հաւաքածոյից մէջ առած է, սկիզբն աւելցուցած է համառօտ ցանկ մ'իւրաքանչիւր այն կանոնաց բովանդակութեան՝ իւրաքանչիւրին թուովն։ Արդ մեր կանոնաց առջեւն գտնուող ցանկը կամ տիտղոսք ճշդիւ ըստ այսմ կարգի է եւ թուով Ա—ԼԳ. (ԼԳ նշանակելով յաջորդ պատմական մասը։) Այս թիւն ձեռագրաց ընտրելագունից մէջ կարմրագիր կը նշանակուի, մինչդեռ Օձնեցւոյն հաւաքման շարունակեալ թիւր (— վասն զի նաեւ իւրաքանչիւր կանոնն իր անընդհատ թիւն ունի սկզբէն մինչեւ վերջ —) սեւագիր կ'ըլլան, եւ ըստ այսմ բովանդակ կանոնագրոց կանոնաթուոց կոչումն կ'ըլլայ կանոնագրոց սկիզբը գտնուող նիւթոց ընդհանրական ցանկին մէջ։ Թէ վերջապէս ձեռագրաց մէջ այս կարգի իրաց մէջ սխալութիւնք կ'ըլլան գրչաց անմտադրութեան պատճառաւ, յայտնի է։ Օրինակի համար Վենետկոյ մէկ ձեռագիրն այս կանոններն ԼԳ թուով կը հաշուէ՝ ոչ թէ վերը յիշուածներուն պէս ԺԳ կանոնն երկուքի բաժնելով, այլ ընդհակառակն ԺԷ կանոնն որ Հրէութենէ քրիստոնեայ եղողի մը դարձեալ Հրեայ դառնալուն վրայ է, եւ որուն վրայ վերը խօսեցանք. ասոր բովանդակութիւնն Օձնեցւոյն տիտղոսն այսպէս կը համառօտէ. "ԺԷ. Վասն ոչ ընդունել զորս ի Հրէից եւ հեթանոսաց հաւատան եւ անդրէն ուրանան։„ Հ. Գարեգին Վրդ. Զարբ. իր առջեւն եղած կանոնագրոց այս մասին կանոնաց թիւր 35 կը գտնէր (վերջինն ալ՝ որ բուն կանոն չէ, ի միասին հաշուելով,) որոնց տիտղոսները յառաջ կը բերէ։[1]) Այնտեղ մեր ԺԷ կանոնն

1 "Մատենագարան հայկական թարգմանութեանց

եղած է՝ "ԺԷ. Վասն ոչ ընդունելոյ զորս ի Հրէից եւ ի հեթանոսաց." եւ "ԺԸ. Վասն որք հաւատան եւ անդրէն ուրանան:" Առով ի հարկէ յաջորդներուն թիւը մէկ թիւ տարբերութիւն կ'ունենայ:

Վերի ցուցակէն կը տեսնուի որ հայերէնին մէջ վեց կանոն աւելի կայ, որ են Կան. Ե, ԺԱ, ԺԳ, ԻԵ, ԼԲ եւ ԼԳ: Ըստ ինքեան խօսելով ամէնէն բնականն էր հոս ընդունիլ որ խմբագրին յաւելուածն են անոնք, որոնք նոյն իսկ հինգերորդ դարու վերջերը գրուած ասորի ձեռագրին մէջ կը պակսին: Չի կրնար ժխտուիլ որ խմբագրին լեզուի գործունէութիւնը կը գտնենք ի մասնաւորի այս կանոններուն մէջ: Եւ սակայն կարելի չէ ըսել թէ անոնք ծայրէ ծայր իւր գրչէն ելած են:

Առաջնոյն այսինքն Ե կանոնին նկատմամբ արդէն ընդարձակօրէն խօսելու առիթ ունեցանք եւ տեսանք որ հարազատ է այն կանոնն. այսինքն այն նիւթոյ վրայ խօսող կանոն մը պէտք է որ թարգմանիչը գտած ըլլար իւր սկզբնագրին մէջ:[1] Խմբագիրը կրնայ ի հարկէ քանի մը յաւելուածներ բրած ըլլալ, բայց վերջապէս էական մասը հնագոյն է՝ ինչպէս ցուցուցինք: Խօսեցանք նոյնպէս վերջնոյն այսինքն ԼԳ կանոնին վրայ,[2] որ օրինակ եղած

---

նախնեաց," Վիեննա. 1889, էջ 490—491:

1 Տես վերը՝ էջ 56—59:

2 Տես քիչ մը վերը՝ էջ 203: Ըսինք հոն որ նոյն իսկ այն խօսքը թէ "Նոյնպէս սահմանեալ է ի հասարակաց հրաման առաքելական," յայտնապէս խմբագրիչ մը մատնանիչ կ'ընէ, եւ հոս օրինակ մը կ'ունենանք թէ ինչպէս կը վարուէր խմբագրիչն իւր առջեւն եղած բնագրին հետ: Թէեւ այսպէս ԼԳ կանոնն՝ որ ասորւոյն մէջ չկայ՝ ծայրէ ծայր նոր յօրինուած է. բայց սկզբան այս խօսքն եւ նաեւ վերջը կը ցուցընեն որ խմբագիրն որեւէ բնագիր մ'ունէր առջեւն, զոր ինքն իսկ կը ցուցընէ յիշելով որ այստեղ այս նկատմամբ կանոն մը՝ "առաքելական կանոն," կամ "առաքելական հրաման," մը գտած է, եւ զոր վերջը ի վկայութիւն ալ կը բերէ՝ "Նոյնպէս սահմանեալ առաքելական կանոնաց," ըսելն գրելով: — Կանոնին նիւթն ի հարկէ Ս. Գրքէն առնուած է (Ղեւտ. ԺԸ, 2—20. Երկ. ԻԷ. 20.) բայց համմ. նաեւ Ելուիրայի ԽԱ կանոնը (Hefele, I 183,

է նաեւ Շահապիվանի կանոնաց, եւ տեսանք որ իւր այժմու ձեւին մէջ միակ օրինակն է խմբագրութեան: Եւ սակայն տեսանք նաեւ որ հոս ալ թարգմանիչն այն նիւթոյ վրայ փոքրիկ կանոն մը գտած ու թարգմանած էր, եւ զոր խմբագրիչն քանի մ՚անգամ ճոխացուցեր է: Ուստի այս երկուքին վրայ հոսեղ աւելորդ կը համարինք խօսիլ:

Գալով մնացեալ չորս կանոնաց՝ ասոնք ստուգիւ աւելի եւս իրաւամբք լոկ խմբագրին կրնային կարծուիլ, եւ սակայն նաեւ ասոնց գոնէ մէկ երկուքն նախնաբար պէտք է որ գտնուէին՝ (ի հարկէ բոլորովին պարզ ու առանց յաւելուածներու) թարգմանչին գտած բնագրին մէջ: Սկսելով վերջինէն՝ առնունք օրինակի համար ԼԲ կանոնը, որ է այսպէս. "Կարգեցին Առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ ոք ի կարգէ պաշտաւնէից եւ յուխտէ եկեղեցւոյ եւ կամեսցի կուսան լինել, բարւոյ գործոյ ցանկայ, համարձակ լիցի. վասն չինելով ի տեղիս տեղիս ժողովեալ ուրինաց եւ կարգի սրբութեան զգուշացին, ի կերակրոյ պարկեշտանալ, ի գինուորական զգեստուէ հեռանալ, պճնուորեալ նմանեսցի պաշտաւնէից հրեշտակաց Աստուծոյ եւ զուարթնոց երկնից, զի եւ Ցեառ„ եւն: Վերջին մասը խմբագրին երկար մէկ յաւելուածն է՝ ինչպէս տեսանք: Այս յաւելուածն ի բաց հանելով՝ կը մնայ էական մաս մ՚որ ստուգիւ ասորի բնագիր մը մատնանիշ կ՚ընէ: Նախ լեզուն բոլորովին միաբան է նախնականին. օրինակի համար "ի կարգէ պաշտօնէից եւ յուխտէ եկեղեցւոյ„ խօսքն ասորական գունով սովորական բացատրութիւն մըն է,[1] զոր խմբագրիչը պահած է

185), Անկիւրիոյ ԻԵ (Hef. I 242), Նէոկեսարիոյ Բ (Hef. I 244) եւ Յունական Առաքելական ԺԹ կանոնները. (Hef. I 806) եւն:

1 Հմմտ. Լաբուբնա (G. Phil. 50, 9 "ուխտին ամենայն արանց եւ կանանց.„ տեղւոյս հայ թարգմանութեան վրայ տես Zur Abgar-Sage, p. 51.) Զէօն յաճախագոյն

նախնականէն, եւ նաեւ Շահապիվանի ժողովոյն կանոնաց մէջ անցուցած։ Թէ վերջապէս խմբագիրը հոս այսպէս կամ այնպէս կանոն մ'ունեցած է արդէն իր առջեւ, կը վկայէ նաեւ սա նախադասութիւնն “... համարձակ լիցի. վանս շինելով ի տեղիս տեղիս ժողովեալ„ եւն. մանաւանդ եթէ քանի մը ձեռագրաց համեմատ կարդանք. “Համարձակ լիցի վանս շինելոյ ...:„ Իմաստը նոյն է երկու ընթերցուածին մէջն ալ, այն է՝ հրաման տրուիլ վանք շինելու։ Իսկ արդ այս բանս այն ժամանակ՝ երբ խմբագիրը կը գործէր՝ Ե դարուն վերջերը (իբր 486էն ետքը), արդէն արգելուած էր եւ քաղաքին եպիսկոպոսին վերապահեալ էր վանք շինելն, ինչպէս կը գտնենք Չորրորդ տիեզերական ժողովոյ Դ կանոնին մէջ[1] եւ այլուր։ Եթէ ուղիղ է մեր կարծիքն թէ այս նիւթով կանոն մը կը գտնուէր ասորւոյն մէջ, ուրիշ կողմանէ ալ նշանակութիւն կ'ունենայ։ Թիքսըրոն միտ դնել տուած էր[2] որ Լաբուբնայի մէջ արդէն ակնարկութիւնք կան եկեղեցականաց ամուրի ըլլալուն նկատմամբ,[3] զոր ինքը կը համեմատէր յունական Առաքելական Կանոնաց միոյն հետ,[4] վասն զի

---

այսպէս ճառ Զ է “Օրինակ ուղղոյ ուխտի.„ (այս բացատրութեան նշանակութեան վրայ տես G. Bert, Aphrahat, p. 89—90 ի ծանօթութեան.) Հայն այս միեւնոյն բացատրութիւնն այս տեղ “յաղագս ուխտաւորաց„ եւ ուրիշ տեղ (էջ 119) մ'ալ “... որք յուխտաւոր դպրաց„ թարգմանած է։ Շահապիվանի ժողովոյն մէջ ալ առնուած է այս բացատրութիւնը։

1 Հմմտ. Hefele II, 509, Pitra I, 524.

2 Tixeront, Les origines etc. 116, n. 5.

3 G. Phil, 35, 12. 50, 9. (= Հայ. 32, 21 “պատուիրէր նոցա Ադդէ զգուշանալ նոցա յամենայնէ, զի լիցին սուրբ մարմնով իւրեանց„ եւն. 47, 13 “այլ գլուխք (Ասոր. ուղղագոյն՝ ուխտն) ամենայն արանց եւ կանանց շքեղք եւ զգաստք, սուրբք եւ պարկեշտք եւ [illegible] բնակէին ցնծութեամբ առանց աղտից„ եւն, որով վանականութիւնը կը ցուցընէ Ասորին։

4 Կան. ԻԷ (Hefele, I 808) = Հայ կանոնագիրք ԾԸ “Որք ի ժառանգաւորութիւն անցանեն չեւ ամուսնացեալք, հրամայեմք եթէ կամին ամուսնանալ. զդրակարդացս եւ

տարւոյն մէջ չէր գտներ այսպիսի բան մը։ Այժմ Հայերէնին օգնութեամբ կրնանք հետեւցրնել որ Լաբուբնա կրնար տարի կանոն մը նաեւ “Վարդ. Առաք.„ գրութեանս մէջ գտնել։

Աւելի դժուար է ԻԵ կանոնին նկատմամբ որոշ բան մ'ըսել։ Այս կանոնն է. “Կարգեցին Առաքեալք եւ եդին հաստատութեամբ, եթէ մի՛ ոք անարգեսցէ եւ անգոսնեսցէ եւ արհամարհանաւք կալցի զքահանայն, թէեւ կարի ոք յանարգաց իցէ։ Գիտասցէ զի զԱստուած անարգէ. զի Աստուծոյ սպասաւոր է ձեզ ի բարիս եւ համարս տալոց է ընդ ոգւոց ձերոց։ Ո՞չ գրեալ է՝ Զիշխան ժողովրդեան քո մի՛ բամբասեսցես։„ Ահա կանոն մ'որ կարծես ամէն հաւանականութիւն ունի խմբագրէն ըլլալու, որմէ է՝ ինչպէս գիտենք արդէն՝ “թէեւ կարի յանարգաց իցէ„ նախադասութիւնը։ Արդէն ալ կանոնս նորագոյն է ծագմամբ՝ համեմատութեամբ միւններուն, եւ՝ կամ խմբագրէն մուծուած եւ կամ հնագոյնն՝ եթէ կար տար տեղ՝ անհետ կորսուելու չափ փոխուած։ Վերջին դէպքն հաւանական կ'երեւայ։ Կանոնս նաեւ իւր այժմու ձեւին մէջ շատ նման է յունական Առաքելական կանոնաց միոյն (Կան. ԾԵ)։[1] Վերջին կանոնս է այսպէս՝ ըստ նախնեաց թարգմանութեան. “Եթէ ոք ժառանգաւոր թշնամանեսցէ զեպիսկոպոսն անիրաւաբար, (Յոյնը չունի “անիրաւաբար„ որ չի յարմարիր ալ, այլ լոկ ...ὑβρίζει τὸν ἐπίσκοπον)

---

զառաջնորդաց միայն։„ Յայտնի է որ ազատ էր ձեռնադրութենէն յառաջ ամուսնանալ։ Նոյն Յունական Առաք. Զ կանոնը (Hef. I 801 = Հայ կանոնագիրք՝ ԼԹ) կը հրամայէ “Երէց կամ սարկաւագ զկին իւր մի՛ հանցէ պատճառանաւք երկիւղածութեան, ապա եթէ հանցէ՝ ի բաց որոշեսցի, իսկ ի նմին յամառեալ՝ լուծցի։„ Եկեղեցականաց ամուսնութեան նկատմամբ հմմտ. նաեւ Կան. Ժ. Անկիւրիոյ (Hef. I 230), Կան. Ա Նէոկեսարիոյ (Hef. I 244) Կան. ԻԷ Եղուիրայի (Hef. 166. հմմտ. նաեւ 431.) եւ Hergenröther, III. Per. I. § 191 եւն։

[1] Hefele, I 817 = Հայ կանոնագիրք՝ ՁԴ։

*լուծցի, քանզի (գրեալ է.) Զկիսխան ժողովրդեան քո ոչ հայհոյեսցես„ (οὐ ἐρεῖς κακῶς.) — կամ վերջին կանոնէս առած է զայս հայ խմբագիրը։*

*Կը մնայ միայն ԺԳ եւ ԺԱ կանոնաց վրայ քանի մը խօսք ըսել։ ԺԳ կանոնը նախ պէտք ենք լուծել ու պարզել։ Առաջին տողէն արդէն կը սկսի խմբագիրն երկար յաւելուած մը՝ գրելով "Կարգեցին Առաքեալք եւ եդին հաստատութեամբ* Եւ խօսեցաւ Աստուած ընդ Աբրահամու եւ ասէ. Թլփատեսցի ութօրեայ մանուկ ձեր„ *եւն եւն, — որ ամենեւին կանոնի կերպարանք չունի, եւ ուր ի մէջ կը բերուի թէ մկրտութեան օրինակ էր Մովսէսի "մշտկաւ զոպայիւ„ ջուր սրսկելն, Յեսուայ՝ Յորդանանէն անցնիլն, Եղիայի նոյն գետէն անցնիլն ու վերանալը, Եղիսէի սափորն իւղով լնուլն, Յովհաննու Մկրտչի զՔրիստոս մկրտելն եւ վերջապէս Քրիստոսի Տեառն մերոյ աշակերտաց ոտքը լուանալն։[1] Այս ամէնն՝ ինչպէս գիտենք նման յաւելուածներէն, խմբագրին սիրած նիւթն է։ Ուստի ասոնք հանելով կը մնան սա տողերը. "Կարգեցին Առաքեալք եւ եդին հաստատութեամբ [....] եթէ ի ձեռն քահանայութեան կարգի՝ մանուկ ութօրեայ մկրտեսցի եւ եղիցի քրիստոսազգեաց, եւ վկայք՝ որ ոչ ունին զմկրտութիւն ջրոյն, արեամբն իւրեանց փրկեսցին։„ Խնդիրն հոս այժմ կը մնայ այն թէ այս տողե՞րն ալ խմբագրէն են թէ նախ-*

---

*1 Այս կարգի օրինակներ եւ նմանութիւններ շատ կը գտնենք Ս. Հարց գրութեանց մէջ։ Օրինակի համար՝ Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան՝ Ժ, 11* (Migne, XXXIII, p. 676 = *Հայ. տպ. Վիեննա* 1832, *էջ* 168.) *"Օրինակ առեալ զնորա որդին Նաւեայ ի բազում իրս. քանզի սկսեալ էր նա գլուխ լինել ժողովրդեանն, սկսաւ ի Յորդանան գետոյ, ուստի եւ Քրիստոս մկրտեցաւ եւ սկսաւ աւետարանել„ եւն եւն։ — Նոյն գաղափարը կը գտնենք առ Տերտուղիանու* (de Baptismo, n. 9, 10.) *Որոգինեայ՝ ի Մեկնութեան Յեսուայ (Ճառ Դ, 4.) Զգօնի (Ճառ ԺԱ, 11, 12 = տպ. Կ. Պոլ. 1824, էջ 216—219.) Շատ կարելի է որ վերջինս աչքին առջեւն ունէր խմբագիրը։*

Նախանէն հիւսած։ Արդ այս պարզուած տողերը շատ լաւ կրնային թարգմանչին տեսած բնագրին մէջ գտնուիլ։ Խմբագրին ժամանակին ալ այնչափ չէին յարմարիր "εἴκοσι . . . ἀριθμὸν ἐπισκόπων ἐκκλησιῶν" խօսքերն,[1] որ ընդհակառակն շատ լաւ կրնային Ղապհոյ հալածանաց ժամանակ գրուած ըլլալ, որուն ժամանակէն կանոններ գտանք ասոր մատենիս մէջ։ Առաջին մասն ալ որ կը հրամայէ տղոց ութօրեայ մկրտութիւն, շատ լաւ կրնայ ասորւոյն ըլլալ։ Միտ դրուի որ այստեղ հրամայուածն արեւմուտք 252ին արգիլուած իսկ էր։ Վասն զի Փիդոս կ'ուզէր որ տղաք ծննդեան առաջին օրերն իսկ անմիջապէս չմկրտուին, այլ ութօրեայ ըլլալէն ետքը. բայց Կարքեդոնի 252ի ժողովքն մերժեց այս կարծիքը։[2] Վերջապէս տղայոց մկրտութիւնը կը յիշեն՝ բաց ի Կիպրիանու նոյն նիւթոյ համբաւաւոր վիճմանէն՝ յետնագոյն ժամանակներն "Սահմ. Առաք.", Տիմոթէոս Աղեքսանդրացի[3] եւ այլ հնագոյն եւ նորագոյն Ս. Հարք։[4] Այսպէս արգելք մը չկայ, մանաւանդ թէ մեծ հաւանականութիւն կայ՝ որ կանոնիս այն էական մասը հարազատ ըլլայ եւ ոչ թէ խմբագրէն։

Ամէնէն կասկածելին է վերջապէս ԺԱ կանոնն, որուն վրայ ակնարկութիւն մ'ըրինք արդէն երբ կը խօսէինք Ժ կանոնին վրայ որ Համբարձման եւ Հոգեգալստեան տօները միեւնոյն օրը կը դնէր՝ առանց դեռ եւս զանոնք բաժնելու։ Ճիշդ հնագոյն կանոնին կից կը գտնենք ԺԱ կանոնն ասոր հակա-

---

[1] Արեւմտեան մկրտութեան նկատմամբ եղած մատենագրութիւնը տես Hergenröther, III, Per. I. § 193.

[2] Hefele, I 115. Հմմտ. Կիպրիանու թուղթ՝ Ծթ առ Փիդոս (ad Fidum.)

[3] Տես Pitra, I 203, 536 եւ 639։

[4] Հերկէնրէօթէր (Hergenröther, III, Per. I. § 192) կը յիշէ՝ Իրենէոս, Բ. 22, 4. Որոգինէս՝ Մեկն. Հռովմ. Ե, 9 (Migne, XIV, p. 1047), Մեկն. Ղուկ. Ճառ ԺԴ (Migne, XIII, p. 1385), Մեկն. Ղեւտ. Ճառ Ը. 8։ (Migne, XII, p. 496.)

ուակ նորագոյն սովորութեան համեմատ՝ այսպէս. “Կարգեցին Առաքեալք եւ եդին հաստատութեամբ եթէ ի Զատկէն մինչեւ ի քառասներորդ աւր վերացման նորա ուրախութիւն եւ ցնծութիւն եղիցի. զի աւուրք յարութեան են եւ փեսային յառագաստի. ապա յետ տասն վերացմանն պահեսցեն. եւ դարձեալ յիսներորդ՝ տաւն կատարեսցեն, իբրեւ զառաջին Զատկին՝ զառն զենցի:„ Խնդիր չկայ ամենեւին որ այս կանոնին՝ եթէ կար նաեւ թարգմանչին տեսած սարի բնագրին մէջ, հոն շատ ուշ ժամանակ մտած է, վասն զի թէեւ նիւթը պահք պահելու վրայ է, բայց արդեամբք կ'ենթադրէ Համբարձման տօնը Զատկէն քառասուն օր ետքը, եւ կը պատուիրէ որ մինչեւ Համբարձում պահք չպահուի — որ է հայ եկեղեցւոյ սովորութիւնն,[1] — բայց Համբարձմանէն մինչեւ Հոգեգալուստ պահուի եւ ապա տօն կատարուի: Ինչպէս ըսինք՝ կանոնիս Ժ կանոնէն շատ նորագոյն ըլլալուն խնդիր չկայ, եւ “Վարդ. Առաք.„ գրութեան ալ նախնականին՝ որուն կը վերաբերէր Ժ կանոնը՝ վերաբերիլ չէր կրնար: Այս կէտս հաստատուն ըլլալով հանդերձ՝ կը մնայ որոշել թէ արդեօք խմբագիրն աւելցուցած է զայս: Կարելի է այսպէս ընդունիլ, որով խնդիրը պարզ կը լուծուի: Բայց դժուարաւ կը համոզուինք սոր. կանոնիս նոյն իսկ լեզուն (օրինակի համար՝ “մինչեւ ի քառասներորդ

---

1 Հմմտ. Նիկիական եւն կանոնաց Համառօտման կան. ԿԸ (Հայ կանոնագիրք՝ ՄՂԲ) “Եթէ ոք յաղագս ճգնութեան պահիցէ յաւուր կիւրակէի կամ յաւուրս Պենտեկոստէից, նզովեալ եղիցի.„ որուն առաջին մասը առնուած է Գանգրայ ԺԸ կանոնէն: (Hefele, I, 787.) Տես նաեւ Նիկիոյ Ի կանոնը (Hef. I 430 = Հայ կան. ՄԻԴ) որ ի նշան ուրախութեան կ'արգելու “ծունր դնել յաւուր կիւրակէի կամ յաւուրս Պենտեկոստէից„: (Հայը մեկնաբանած է՝ «յաւուրս Յինանց մինչեւ ցՊենտակոստէն.») եւս առաւել պահք չպահել: Համեմատելու է ի միջի այլոց Նիկողայոս Գրամմատիկոսի Գ կանոնը, (Pitra, Spicil. Solesm. IV, p. 648) ուր Ս. Աթանասայ մէկ խօսքն ալ յառաջ կը բերուի:

—ր վէրացման . . . յետ փառաց վէրացման„) թարգմանչին լեզուէն տարբեր չէ։ Մեզի կ՚երեւայ որ թարգմանիչն այս նորագոյն կանոնն ալ գտած էր իւր սկզբնագրին մէջ, եւ այն պարագան որ այս կանոնը նախընթաց Ժ կանոնին հետ գոնէ անուղղակի հակասութեան մէջ է, կը ցուցընէ որ թարգմանիչը — եւ նոյնը կրնանք ըսել այս խնդրին մէջ նաեւ խմբագրողին համար՝ — այս կանոնն ալ գտած էր իրեն առջեւ. վասն զի եթէ իւր միտքն ըլլար կանոնս իւր ժամանակին սովորութեան համեմատ յաւելուլ կամ փոխել, այն ատեն անշուշտ չէր թարգմաներ — կամ խմբագիրը չէր պահեր — նախընթաց Ժ կանոնն, որ իրեն ժամանակին ամենեւին չէր յարմարեր։ Ուստի երկու կանոնացս անուղղակի հակասութիւնը կը ցուցընէ թարգմանչին հաւատարմութիւնն եւ նաեւ խմբագրին հաւատարմութիւնն՝ այնչափ որ եթէ չէ դուրս ձգած իրեն անյարմար կանոնն՝ անշուշտ ինք չէր նաեւ այն՝ որ ԺԱ կանոնն մուծեց։ Ի հարկէ քանի մը մանր փոփոխութիւններ՝ զորոնք դիւրաւ կը ճանչնանք, չէ խնայած հոս ալ մուծանելու։ Այսպէս են “եւ փեսայն յառագաստի„ խօսքը. նաեւ “ուրախութիւն եւ ցնծութիւն„ ասութիւնն խմբագրին սիրելի բացատրութիւններէն է. (Հմմտ. կան. Է.) իրմէ ըլլալու է վերջապէս Հոգեգալըստեան աւուր համար ըսելը թէ “իբրեւ զառաջին Զատկին՝ տօն չէնցէ։„ Այստեղ ապացուցուածն է հնագոյն դարու ագապէն (ἀγάπη) ծագած ժողովի սովորութիւնը՝ աղքատաց բաժնելու զենեալ գառն եւն, որուն վրայ ընդարձակ որոշումներ կը գտնենք Ս. Սահակայ անունը կրող կանոնաց մէջ,[1] (— զոր աչքին առջեւն ունէր անշուշտ խմբագրողն այս յաւելուածն ըրած ատեն, —) եւ յաճախ կը յիշուի նաեւ յետոյ հայ գրու-

---

[1] Սոփերք, Բ (տպ. Վենետ. 1853) էջ 97, 112 եւն։

թեանց մէջ, ինչպէս Սոյն-Թադէի Ը կանոն։ Կանոնիս մէջ խմբագրին գործածած “Միջին Զատիկ„ տօնութեան հետ համեմատելու է այլ կանոնաց տօնական նման բացատրութիւնքն, օրինակի համար Կան. ԻԹ “Գրիգորի Աստուածաբանի„ (Կանոնագիրք՝ ՆԳԷ) “տաւն յարութեան Տեառն, երկրորդ շաբթէ՝ Նոր կիրակէն„ եւն։

---

Այստեղ կը փակեմ խմբագրողին գործունէութեան քննութիւնը։ Կրնանք ըսել թէ պայծառ գաղափար մ’ունեցանք մեր խմբագրին ամէն դիտաւորութեանց եւ ըրած փոփոխութեանց վրայ։ Ի հարկէ միշտ անըմբռնելի կը մնայ որ այսպիսի գրութեան մէջ՝ որ արդէն կանոնական արժէք ստացեր էր, այսչափ համարձակ փոփոխութիւններ ըրած է ճշդիւ այն՝ որ Հայ կանոնագրոց մէջ առած է կանոններս։ Սակայն այս ազատութիւնն՝ որ բարեբախտաբար շատ քիչ Հայ թարգմանութեանց մէջ կը տեսնենք, մեր այս կանոնաց վրայ միայն ամփոփած չէ խմբագրիչը։ Ով որ հարեւանցի իսկ միայն համեմատէ այժմու Հայ կանոնագրոց մէջ գտնուած օրինակի համար Նիկիոյ, Անկիւրիոյ, Կեսարիոյ, Նէոկեսարիոյ, Գանգրայ, Անտիոքայ եւ Ղաւոդիկէի կանոնները — ճշդիւ անոնք՝ որոնք ըստ քննութեան Վ. Հ. Յովսեփայ Գաթրճեան Հայ կանոնագրոց այս առաջին խմբագրութեան կը վերաբերին, — կը տեսնէ միեւնոյն ձեւը հոն ալ, միեւնոյն յաւելուածներն, փոփոխութիւններն ընելով համարձակ՝ իբր այն թէ բոլորովին անտարբեր գրութիւն մը կը խմբագրէր։ Եւ այս միակերպ փոփոխութիւնք միեւնոյն խմբագիրը մատնանիշ կ’ընեն։

Մեր ծրագրէն դուրս է այս կէտս աւելի երկարօրէն պարզել։ Բայց եւ այնպէս աւելորդ չենք համարիր քանի մ’օրինակներ յառաջ բերել, այնու մանաւանդ որ անոնք մեր կանոնաց հետ ալ

կայ մ'ունին։ Այն իրաւամբք — պէտք ենք ըսել յոռի սովորութեամբ — որով ուրիշ կանոններէն կտորներ առած ներմուծած է մեր կանոնաց մէջ, նոյն համարձակութեամբ նաեւ մեր կանոններէն կտորներ առած դրած է միւս կանոնաց՝ նոյն իսկ տիեզերական ժողովոց որոշմանց մէջ։ Ինքն է որ օրինակի համար Նիկիոյ ժողովոյն Գ կանոնը՝ որ կը հրամայէ եկեղեցականաց միայն մայր կամ քոյր կամ հօրաքոյր եւն ունենալ իրենց բնակակից, փոխած բրած է (Հայ. կանոնագիրք՝ ՄԷ) "Վասն այնոցիկ որ մատաղաւրեայք իցեն եւ մտաւք խակք, ուսմամբ տխմարք, գործոց տգէտք, օրինաց անտեղեակք, խուսիւք յախուռն, գնացիւք սայթաքք, գինեմոլք, վաղվաղակի ոչ մերձեցուցանել ի սարկաւագութիւն„ եւն — ունենալով իւր աչքին առջեւ մեր Ի կանոնն որ կը պատուիրէր միայն "անարատքն, որ սուրբ ի մամոնայէ իցեն, օրինաց եւ գործոց եկեղեցւոյ հմուտք„ եւն ընտրել եկեղեցական աստիճանաց։ Նոյն ժողովքին ԺԷ կանոնին խօսքը[2] թէ "բազումք եկեղեցականք՝ անկեալք յագահութիւն եւ վաշխառութիւն ....պահանջեն հարիւրորդս վաշխառութեամբ„ բառ առ բառ նոյն բրած է մեր ԺԸ կանոնին հետ՝ փոխելով "Ցագահութիւն եւ ի զօշաքաղութիւն անկանին, զարծաթն իւր ի վարձու տացէ եւ տոկոսեաւք պահանջեսցէ„ եւն (— Կան. ԺԸ. "որ փոխ տայ եւ առնու վաշխ եւ տոկոսիս...„ եւ մանաւանդ Շահապ. ԺԵ "...զարծաթն ի վարձու ոչ տալ եւ տոկոսեաւք պահանջել„ եւն։) Միեւնոյն խմբագիրն է որ օրինակի համար Անտիոքայ ժողովոյն Ա կանոնին սկիզբն (— որ ըստ բնագրին ըլլալու էր. "Ամենեքին որ համարձակին լուծանել զսահման սուրբ եւ մեծ ժողովոյն Նիկիոյ, իբրեւ էր անդ... Կոստանդիանոս„ եւն[3]) փոխած է.

---

[1] Hef. I 379։
[2] Hef. I 421։
[3] Hef. I 513, Pitra I 456։

«Ամենայն որ ով եւ համարձակեսցին եւ լուծցեն զսահմանս սուրբ եւ մեծ ժողովոյն որ է Նիկիոյ ժողովոյն եւ զԱնկիւրացն:» Այս «զԱռաքելոցն» կցել բնական էր խմբագրին, որ կանոնագիրքն «Նիկիական» եւ «Անկիւրական» բաժնել ու կոչել սովոր էր՝ ինչպէս տեսանք:[1]

Եթէ մեր Ձ կանոնին մէջ տեսանք որ ազգային սովորութեան յարմարցընելու համար խմբագիրն դրած էր մեկնաբանութեամբ «Կաթողիկոսն [illegible] դէտ եւ գլուխ եւ աւրէնսդիր լիցի ժողովրդեան.» (— փխ. ըստ ոմանց «[illegible] առաջնորդ լիցի» եւն. —) նոյն մեկնաբանութիւնը կը գտնենք նաեւ ուրիշ կանոնաց մէջ մուծուած միեւնոյն ձեռքէն: Հինգերորդ դարու մէջ Հայոց քով արդէն սովորական «Կաթողիկոս» (χαθολιχὸς) վերադիրը կանոնաց մէջ շատ անգամ մուծած է խմբագիրն իբրեւ մեկնութիւն բուն «Մետրոպոլիտ» յոյն բառին[2] եւ ապա նաեւ «Պատրիարք» յորջորջման: Օրինակի համար Նիկիոյ Դ կանոնը[3] կը հրամայէ որ գաւառի մ՚եպիսկոպոսունք ընտրել կարենան եպիսկոպոսն, բայց «հաստատութիւն եղելոցն տացի ըստ իւրաքանչիւր գաւառի՝ Մետրոպոլտին.» (τὸ δὲ χῦρος τῶν γινομένων δίδοσθαι χαθ᾽ ἑχάστην ἐπαρχίαν τῷ μητροπολίτῃ.) Այս խօսքը խմբագրեալ հայոյն մէջ (Հայ կանոնագիրք ՄԸ) եղած է «...բայց զպատիւն եւ զշնորհն Գլխաւորին (= «մետրոպոլիտ» ըստ բնագրին) արժան է տալ, այս-

---

1 Տես քիչ մը վերը՝ էջ 186:

2 Արդեամբք նաեւ հին Հայոց քով կը գտնենք որ այս բառիս նշանակութիւնն այնպէս անձուկ չէր՝ ինչպէս եղաւ յետոյ Հայոց աշխարհի գլխաւոր եպիսկոպոսապետին յատկացուելով: Համմ. Ագաթ. (տպ. Վենետ. 1862) էջ 603 ուր Կեսարիոյ Ղեւոնդիոս մետրապոլիտն «կաթուղիկոս» կը կոչուի, ինչպէս նաեւ Բուզանդ (Գ, գ տպ. Վենետ. 1832) Աղուանից Գրիգորիս եպիսկոպոսին նոյն տիտղոսը կու տայ. ընդհակառակն աւելի անձուկ նշանակութեամբ Ագաթ. էջ 655, 757. Բուզանդ, Գ, ժբ. Գ, է եւն եւն,

3 Hef. I 382. Pitra I 429:

ինքն՝ քորեպիսկոպոսին, կամ եղեւ մեծ ժողովոյն։„ Նոյն Նիկիոյ Զ կանոնը[1] կը հրամայէ թէ եպիսկոպոս մը չճանչցուի "որ առանց հաւանութեան մետրոպոլիտի լեալ իցէ եպիսկոպոս․„ (εἴ τις χωρὶς γνώμης τοῦ μητροπολίτου γένοιτο ἐπίσκοπος.) — այս ալ եղած է (Հայ կանոնագիրք՝ ՄԺ․) "եթէ ոք ոչ կամօք քորեպիսկոպոսին լիցի եպիսկոպոս,„ եւն։ Անտիոքայ ժողովոյն Թ կանոնը[2] նոյնպէս կը հրամայէ որ իւրաքանչիւր նահանգի եպիսկոպոսք գիտնան որ իրենց թեմէն դուրս նահանգին վերաբերեալ իրաց մէջ "մետրոպոլիտին„ ենթարկեալ են, եւ կը կնքուի կանոնն այսպէս. "...աւելի քան զայն մի՛ արասցէ (եպիսկոպոսն) առանց մայրաքաղաքին եպիսկոպոսի, այլ եւ ո՛չ սա՝ առանց խորհրդոյ այլոց„ (...δίχα τοῦ τῆς μητροπόλεως ἐπισκόπου, μηδὲ αὐτὸν ἄνευ τῆς τῶν λειπῶν γνώμης.) Խմբագրեալ հայն այսպէս ունի այս խօսքը. "մի՛ իշխեսցէ գործել եւ ձեռնամուխ լինել արտաքս քան զկամս մայրաքաղաքին եպիսկոպոսին. եւ ո՛չ նմին քորեպիսկոպոսի՝ առանց հաւանութեան այլոց եպիսկոպոսութեան գործել ինչ։„ Նաեւ "Գրիգորի Աստուածաբանի„ Ժ կանոնին մէջ (Հայ կանոնագիրք՝ ՆՀԷ) կը գտնենք սա խօսքը. "եթէ գլխաւոր. պատրիարքն՝ այսինքն քորեպիսկոպոսն՝ ի նմին կաթեսցի յանցանս․„ բայց թէ այս մեր խմբագրին գրչէն է՝ խնդրական կը մնայ։

Եթէ մեր կանոնաց մէջ գտանք ընդարձակ յաւելուածներ, մեկնութիւններ, Ս․ Գրքէն կոչումներ խմբագրէն մուծուած, նոյնը կրնանք գտնել կանոնագրոց ամէն մասին մէջ։ Երկար փնտռել պէտք չկայ․ հնագոյններէն առաջին հանդիպած կանոն մ'անշուշտ բան մը կրած է՝ ըլլայ փոփոխութիւն կամ յաւելուած։ Ըստ բախտի բանանք կանոն մը, օրինակի համար Անկիւրիոյ ԺԳ կա-

1 Hef. I 389. Pitra I 430։
2 Hefele I 516. Pitra I 459։

նոնը, որ ըստ բնագրին է պարզապէս հետեւեալը.[1] "Քորեպիսկոպոսաց ոչ է արժան քահանայս եւ սարկաւագունս ձեռնադրել, այլ եւ ոչ քահանայից քաղաքին (— այս ընթերցուածը խնդրական է. —) յայլ գաւառի առանց հրամայելոյ եպիսկոպոսին թղթովք:„ Արդ այս համառօտ կանոնն մեր անճիշդ խմբագրին ձեռօք կրկնապատիկ եղած է աւելորդ մեկնութեամբ եւ եղած այսպէս.[2] "Քորեպիսկոպոսաց մի լիցի երիցունս կամ սարկաւագունս աւծանել, այլ եւ ոչ երիցունս ի քաղաքի ուրեք առնել կամ աւծանել առանց համարձակելոյ եպիսկոպոսին թղթով կամ բանիւք: Քանզի այն որ է գաւառս մէջն եպիսկոպոսանցն կամ է գեւղը՝ զայնպիսին կոչէ քորեպիսկոպոս. զի քորեպիսկոպոսն տեսուչ է գաւառի ըստ հռոմայն՝ առ մեծամեծսն այսինքն այն է՝ որ շտապաւան առնին, գաւառ կոչին գաւառաց եպիսկոպոսք:„ Ուրիշ օրինակի պէտք չկայ. վասն զի միեւնոյն համարձակ ձեռքը կը տեսնենք ամէն տեղ: Զարմանալի երեւոյթ մըն է որ ճիշդ այն մասեանն, որմէ եկեղեցւոյ մէջ ամենէն աւելի ճշդութիւն կը պահանջուէր իբրեւ օրինաց մատեան, այսչափ անճիշդ, կամայական կերպով կերպարանափոխուած է հայերէնին մէջ՝ արդէն այսչափ կանուխ ժամանակէն: Հայ թարգմանութեանց ընդհանուրին բախտին հակառակ՝ կանոնագիրքը պէտք ենք ըսել քիչ մատենագրական արժէք ունի՝ իւր ծայրէ ծայր կրած կերպարանափոխութեանց պատճառաւ: Խնդիրը կը փոխուի երբ հայոյն բնիկ ընթերցուածները զտենք նորերէն, որ շատ պարագայի մէջ կը յաջողի ալ:

Ի վերջոյ ներուի մեզի երկու կէտի վրայ դիտողութիւն մ'ընել: Վերը յիշեցինք[3] որ մեր թարգմանութեան մէջ կը գտնուին սա անուններ.

---

1 Hefele I 231:
2 Կան. ԺԴ = Հայ կանոնագիրք՝ ՃԼԸ:
3 Տես վերը՝ էջ 179:

«..Անտիոք եւ Սուրիա եւ Կիլիկիա» են։ Հայոյն Սուրիա ընթերցուածն է պարզապէս տառադարձութիւն սուրի ܣܘܪܝܐ անուան, մինչ մենք սովորաբար Ասորիք կ'անուանենք երկիրը։ Սակայն Սուրիա գրչէն զերծած սխալ մը կամ անմտադրութեան արդիւնք չ'երեւար. վասն զի անուան այս ձեւը ուրիշ տեղ մ'ալ գործածուած կը գտնենք կանոնագրոց մէջ, այսինքն՝ Անտիոքայ ժողովոյն վճռոց ետեւը կցուած «Խոստովանութիւն Անտիոքայ ժողովոյն» կտորին մէջ։[1] Այս «Խոստովանութեան» վերջին Եպիսկոպոսաց ստորագրութիւնք կու գան, որ կ'աւարտի այսպէս. «...յիշխանութենէ Հովտոյ-Ասորոց (= Κοίλη-Συρία, Coele-Syria, «Կղեսուր») եւ Փիւնիկեցւոց եւ ի Նախնեաց (°)[2] յԱրաբացւոց, ի Միջագետաց, եւ ի Կիլիկեցւոց եւ ի Սերիացւոց։» Այստեղ ուրեմն առաջին անգամ «Հովտայ Ասորւոց» անուանակոչութիւնն պահուած է բուն սովորականին, իսկ երկրորդ անգամ «Սուրիացի» փոխադրուած։ Եւ կամ պէտք է «ի Սերիացւոց» անունին ուղղել ընել «Իսաւրացւոց», ինչպէս յոյն վերնագիրն ունի (Pitra, I, 455 Κιλικίας, Ἰσαυρίας.)։ Երկու ընագիրքս ալ եթէ անշուշտ ոչ միեւնոյն թարգմանչին, ապահովապէս միեւնոյն խմբագրին ձեռքէն անցած են։

Գրութեանս ամէնէն վերջին՝ ուր կ'ըսուի թէ Պետրոս եւ Պաւղոս առաքեալք ի Հռոմ նահատակուեցան, բաւական երկար վերջաբան կտոր մը կայ՝ որ կը պակսի սուրբոյն մէջ, եւ անշուշտ խմբագրին յաւելուածն է։ Այնտեղ կ'ըսուի որ «Հռոմայեցւոց քաղաքն» մեծ հանդիսիւ կը կատարէ անոնց յիշատակը։ Ի մասնաւորի մտադրութիւն կը գրաւէ այս խօսքը թէ հոն շինած ըլլան «վէրջայ-

---

[1] Հայ կանոնագիրք՝ ՋԽԴ, է։

[2] «Նախնեաց» աղաւաղութիւն է «ի Պաղեստինացւոց» անուան. Հմմտ. Անտիոքայ կանոնաց վերնագիրն, ուր այս անունք ճշգիւ կը կրկնուին (Pitra I, 455.)

բանս սքանչելագործ„ („վկայարան„ կամ „մատուռն„ = μαρτύριον.[1]) Այս ամբողջ կտորէն կրնար թերեւս հետեւցուիլ որ այն միջոցին՝ երբ խմբագիրս կը գործէր, Հռոմայ մէջ պատահած դէպքերն իւր մտադրութիւնը շարժած էին. եթէ ուզենք այս ենթադրութիւնն ալ որոշ դէպքի մը կցել, կրնանք այս միջոցին՝ այսինքն 485ին Հռոմայ Ս. Պետրոսի „սքանչելագործ„[2] եկեղեցւոյն մէջ գումարուած ժողովն առնուլ, որ ակակեան խնդրոյ վրայ՝ որ նաեւ Հայոց մէջ մեծ աղմուկ յարուցած է, կը խորհէր. (Հմմտ. նաեւ 499ին Մարտ 1ի ժողովն Ս. Պետրոսի եկեղեցւոյն մէջ:[3]) Սակայն այսպիսի հետեւութիւն մը ստուգիւ չափազանց կ'ըլլար: Խմբագիրն որչափ կ'երեւայ՝ վկայաբանութեան մը ծայրէն՝ ուր այսպիսի վերջաբանք սովորական են, առած ներմուծած է այս կտորն ալ: Ի հարկէ այսպիսի հետեւութենէ մը սա օգուտը կրնայինք քաղել, որ այս խմբագրութեան տարին իբրեւ 485—99 որոշ թուերով նշանակել կրնայինք: Բայց այս օգուտն անփոխարինելի չէ. արդէն այլուստ գիտենք որ այս տարիներն եղած է Հայ կանոնագրոց՝ որով եւ մեր կանոնաց՝ կրած խմբագրութիւնը:

Այսչափ խմբագրին գործունէութեան վրայ: Թերեւս քիչ մ'ընդարձակ բանեցինք քննութեան այս մասն. բայց այս դիտմամբ էր: Մեր նպատակն էր ցուցընել թէ ինչ բախտի հանդիպած է Հայ եկեղեցւոյ կանոնաց մատեանն, եւ մեր կանոնաց քննութենէն ընդհանուր գաղափար մը կազմել տալ մնացեալ մասանց վրայ ալ: Ինչպէս ըսինք՝ խմբագրին աւելցուցած մասերը դիւրաւ կրնան զատուիլ որոշուիլ, եւ կրնանք հնագոյն թարգմանութիւնը գոնէ մեծաւ մասամբ վերակազմել: Առր

---

1 Հմմտ. Hefele I 756, 788, 789 եւն:
2 Հմմտ. Hefele II, p. 610.
3 Հմմտ. Hefele II, 625.

ջանացած ենք մեր հրատարակութեան մէջ՝ փակագծով ([ ]) նշանակելով խմբագրեալ մասերը։ Եթէ միտ դրուի անոնց՝ կը տեսնենք որ

1. Այն մասերն զոր Հայն ու Ասորին միանգամայն ունին, բոլորովին կը հաստատուին։

2. Այն մասերէն՝ զոր Ասորին չունի, մաս մը հարազատ է (— զայս ճանչնալու բաւական միջոցներ ունինք՝ յընդհանուրն խօսելով։ —)

3. Բայց մեծագոյն մասն այն տեղերուն՝ որ Ասորւոյն մէջ կը պակսին, յաւելուած են խմբագրին. (— զատոնք ճանչնալը դիւրին է, մեծ մասամբ Ս. Գրոց կոչմունք են, ուրիշ կանոններէն մուծուած կտորներ, եւն։)

Ասոնցմէ դուրս քիչ բան կը մնայ տարակուսական, մանաւանդ այն տեղերը՝ ուր Ասորին եւ Հայը քիչ մը կը տարբերին, եթէ լեզուէն եւ այլ պարագաներէն չկարենանք որոշել թէ խմբագրէ՞ն են եթէ թարգմանչէն։

Եթէ կանոնագրքէն անկախ օրինակ մը գտնուէր մեր գրութեան — որ անշուշտ այս կամ այն մատենադարանի խորշերէն կրնայ լոյս ելլել,[1] — այն ատեն նաեւ այս տարակուսական կէտերը կը պարզուին եւ կ'ունենանք բոլորովին վստահելի բնագիր մը։ Դժբախտաբար ձեռքս ունեցած բազմաթիւ օրինակաց ամէնն ալ կանոնագրքէն են, եւ նաեւ կանոնագրքէն գործածած են նախնիք՝ առ հասարակ խօսելով՝ ուր որ կոչումն կ'ընեն մեր կանոնները։ Այս կոչմանց վրայ պիտի խօսինք յաջորդ հատուածով։

---

[1] Օրինակի համար Էջմիածնի թիւ 920 ձեռագրին մէջ (Մայր Ցուցակ. տպ. Տփղիս 1863, էջ 122, յձա.) կը գտնուի գրութեան վերջին մասը՝ աշխարհաց ցուցակը, զոր ցուցակագիրն "Վիճակք Առաքելոց Տեառն„ վերնագրոյն ներքեւ դրած է։ Հետաքրքրական է գիտնալ թէ կանոնագրքէ՞ն օրինակուած հատուած մըն է այն թէ անկէ անկախ։

## 10.

Կը մնար մեզ հոս խօսիլ կանոնացս ըրած ազդեցութեան վրայ հայկական մատենագրութեան մէջ։ Բայց այս նկատմամբ նշանաւոր կէտերն արդէն առիթ ունեցանք ընդարձակօրէն հետազօտելու։ Այսպէս՝ Յակոբայ Թղթոյն եւ մանաւանդ Ադդէի կանոնաց եւ ապա Շահապիվանի ժողովոյն կանոնաց վրայ, զոր մեր կանոնաց հետեւողութիւն գտանք, եւ այն առթիւ ի մէջ բերինք այլ քանի մը կէտեր, ինչպէս Կորեան մէկ խօսքը, Յունական Առաքելական եւ այլ կանոնաց մէջ մեր գրութենէն առեալ ներմուծեալ խօսքերը եւն։ Ուստի այստեղ շատ բան չի մնար խօսելու։ Համառօտիւ պիտի խօսինք կանոնացս Ե դարէն ետքն ըրած ազդեցութեան վրայ։ Ի վերջոյ քանի մը խօսք պիտի աւելցընենք այն ձեռագրաց նկատմամբ, զոր գործածեցինք մեր հրատարակութեան համար։

Եթէ միայն կանոնագիրքը մտադրութեամբ աչքէ անցընենք, կը տեսնենք յաջորդ դարուց շատ մը — հարազատ կամ անհարազատ՝ այն ի բաց թողլով այժմ, — հայ կանոնական գրութեանց մէջ յիշատակութիւնք կամ գոնէ լռելեայն ակնարկութիւնք մեր կանոնաց։ Եւ այս չէր կրնար այլազգ ըլլալ։ Քանի որ “Վարդ. Առաք.„ հայ կանոնագրոց նաեւ հնագոյն խմբագրութեան մէջ առնուած էր իբրեւ բուն Առաքելոց կանոնագրութիւն, յաջորդ օրէնսդիրք չէին կրնար կարդացած չըլլալ զայն, եւ՝ նաեւ չգործածել։

Թողլով մեր կանոնագրոց մէջ Յովհաննու Մանդակունւոյ — անշուշտ ստութեամբ — ընծայուող քանի մը կանոնները, որոնց մէջ մէկ երկու ակնարկութիւնք կը գտնուին,[1] անշուշտ Դու-

---

[1] Հմմտ. ի միջի այլոց Ա կանոնը (Կանոնագիրք՝ ՌՃԼԶ) «ի [illegible] ոչ հրամայի պահել... պարտիմք պատուել (զշաբաթ)... զի [illegible] է [illegible]» եւն։ Յայտնի է որ մեր գրութեան Ե կանոնը կը հրամայէ որ «առ շաբաթուն եղիցի սաւն եւ պաշտաւն ...[illegible] զի [illegible]-

նոյ ժողովոյն կանոնաց յօրինիչք (— կանոնագրոց մէջ վերնագիրն է "Կանոնք Ներսէսի կաթուղիկոսի եւ Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի." —) առջեւնին ունէին մեր կանոնները, ինչպէս կը ցուցնեն քանի մը նմանութիւնք։ Դունայ այս ժողովին՝ զոր ըստ սովորական կարծեաց[1] Ներսէս Բ Աշտարակեցի գումարեց իրր 527ին եւ որուն մէջ նշանաւոր դեր մ'ունեցած կ'ըսուի Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոս, սահմանած կ'աւանդուի ԼԸ կանոններ, որոնք Օձնեցւոյն հաւաքման մէջ ալ առնուած են։[2] Այս կանոնաց մեծ մասն Սահակայ կանոններէն քաղուած է. բայց մէկ երկու տեղ ալ մեր կանոնաց հետ կապակցութիւն մը կը ցուցնէ, որչափ ալ փոքր երեւայ այն։ Այսպէս մեր գրութեան ծանօթ Ե կանոնին՝ որ շաբաթ տօն ընել կը հրամայէ, համեմատ է Ներշապհոյ Կանոն Զ (կանոնագիրք՝ ՊԼԴ) որ կը պատուիրէ թէ "Քահանայք զշաբաթու եւ զկիւրակէի պատարագ մի՛ իշխեսցեն խափանել..., այլ մատուսցեն անխափան սաղմոսիւք եւ մարգարէիւք եւ առաքելովք եւ աւետարանաւ." եւն։ Վերջին նախադասութիւնս կրկնուած է նաեւ Ը կանոնին մէջ, որ կը պատուիրէ "զկտակարանս եւ զմարգարէս եւ զառաքեալս եւ զաւետարան" ստանալ, եւ է բոլորովին համեմատ մեր Լ կանոնին, որուն վրայ առիթ ունեցանք շատ անգամ խօսելու։ Բայց նշանաւոր է մանաւանդ ԺԲ կանոնը (կանոնագիրք՝ ՊԼԹ) որ է այսպէս "Եւ մի՛ զձեւ զինուորաց հանդերձի ունել եւ ի կարգի պաշտաւնէից կալ, այլ ընդ զինուորս կացցեն. այլ

բաղխի ի մեծէ արտաքին գաւառեան" եւն։ — Հմմտ. նաեւ Մանդակ. կան. Ը (= կանոնագիրք՝ ՌՃԽԲ) Ծննդեան եւ Յայտնութեան վրայ, եւ մեր գրութեան կան. Է եւն։

1 Հմմտ. Չամչեան Պատմ. Բ, էջ 237—239 եւ 507—8։ Աբէլ արքեպ. Մխիթարեան (Պատմ. ժողով.) էջ 78—81 (տես Արարատ 1874, Թ. 2, էջ 42 եւն.) ուր կանոնաց համառօտութիւն մը միայն տրուած է ըստ Չամչեանի։

2 Կանոնագիրք՝ Հատ. ԺԸ (Կան. ՊԻԹ—ՊԿԵ)։

զձեւ եկեղեցականաց ունել իւրոյ կարգին վայել է ըստ քահանայական օրինի:„ Այս կանոնիս նիւթոյն նկատմամբ վերն արդէն խօսեցանք,[1] ուր ի մէջ բերինք "Վարդ. Առաք.„ գրութեան համեմատելի կտորներն, — այնտեղ յիշած ենք նաեւ Ներշապհոյ Ե կանոնին ուրիշ մէկ կէտն ալ: Կրնանք համեմատել նոյնպէս Ներշապհոյ Կան. ԻԹ (= ՊԾՁ) քառասնորդաց պահոց նկատմամբ՝ մեր գրութեան Ը կանոնին հետ, եւ վերջապէս նաեւ Կան. ԼԱ. (= ՊԾԸ) որ կը հրամայէ եկեղեցական իշխանութեան հնազանդիլ, որ "իշխան է կապել եւ արձակել,„ մեր գրութեան ԻԳ կանոնին հետ, որ կը հրամայէր հնազանդիլ առաջնորդին՝ նաեւ երբ "կապեալ կայցէ,„ եւ որուն վրայ նոյնպէս խօսեցանք: Սակայն այս նմանութիւնք գրեթէ աննշանակ են:

Այստեղ պէտք ենք յիշել կեղծ կանոնական գրութիւն մ'ալ՝ որուն խմբագրիչն իրեն առջեւ ունէր "զՎարդ. Առաք.„:[2] Կանոնագրոց վերջերն — Օձնեցիէն ետքը, անոր համար անոր հաւաքմանէն դուրս — մուծուած կը գտնենք "Կանոնք սուրբ ժողովոյն որ ի Թէոդուպոլիս որ այժմ կոչի Կարնոյ քաղաք:„ Այս կանոնացս սկիզբն եղած Յառաջաբանութիւնն այսպէս կը պատմէ յերբ-բեռ [illegible] պատմութիւն մը նոյն կանոնաց գրուելուն. "Սուրբ եւ աստուածասէր ժողովն որ ժողովեցան յամենայն քաղաքաց եւ յաշխարհաց Յունաց եւ ի Հռոմոց եւ ի մեծն Հռոմայ հրամանաւ մեծի թագաւորին Յուստինեայ, որ նախանձայոյզ եղեալ ուրինացն Աստուծոյ եւ որոց Առաքելոցն քարոզութեան, ժողով հրամայեաց լինել ի միջասահմանս աշխարհին Հայոց, Վրաց եւ Աղուանից, ուր ժողովեցան բազում եպիս-

---

1 Տես վերը՝ էջ 217—8:

2 Կանոնագիրք՝ Հաճ. ԾԹ. (Ձեռ. մեր Մատ. Թ. 44, Թղ. 165ա—168 բ:

կոչուսք ամենայն քաղաքաց հանդերձ կաթողիկոսաւ Հայոց Սահակաւ եւ հրամանաւ նորին թագաւորի:» Յայտնի է որ յերիւրիչը ուզած է ժողով մը գումարել տալ ի Կարին Յուստինիանոս Բ (685—695) հրամանաւ եւ Հայոց Սահակ Գ կաթողիկոսի (իբր 677—702) ժամանակ, ուր եկած ըլլան ոչ միայն Հայք, Վիրք եւ Աղուանք, այլ եւ Յոյնք եւ Հոռոմք եւ նոյն իսկ «ի մեծ Հռոմայ,» եւ այն որպէս զի «զսրբոց Առաքելոց Աւանդութիւնս եւ զսուրբ ժողովոյն Նիկիոյ եւ զՃԾ-ից որ ի Կոստանդինուպոլիս եւ զերկուհարիւրիցն որ յԵփեսոս զայն հաստատեալ, եւ նզովեալ զամենայն հերձուածողս... զաղանդն Արիոսի եւ զաղանդ Մակեդոնի եւ զբանսարկն Լեւոնի (— եւ այս՝ ըստ յերիւրողին՝ իրենք իրենց հակառակ նոյն իսկ Յոյնք եւ որք «ի մեծ Հռոմայ» կ'ըլլեն, —) եւ զամենայն հերձուածողսն. որք արտաքոյ սուրբ առաքելոցն քարոզութեան եւ սուրբ ժողովոցն են ասացեալ արտաքս ընկենուլ եւ ոչ հաղորդել ընդ այնպիսեացն. եւ թագաւորական հրամանաւ յաքսորս բնակեսցէ այնպիսի մինչեւ ցաւր մահուան իւրոյ: Եւ ժողովեցան բազում եպիսկոպոսք... եւ միաւորեցան ի հաւատս սուրբ Առաքելոցն եւ ի կանոնս սուրբ ժողովոյն, եւ որ ինչ պէտք էին՝ եդին ի լրութիւն սուրբ եկեղեցւոյ:» Թէ ամբողջ այս պատմուածքն իր այժմու հանգամանաց մէջ բոլորովին անպատմական եւ անհեթեթ կարկատանք մըն է, եւ ոչ վայրկեան մը կրնայ տարակուսուիլ: Դժուար է երեւակայել թէ ինչպէս կրնար պատմական դոյզն ծանօթութիւն ունեցող մ'այս պարագայից մէջ, — երբ մէկ կողմանէ 687ին Յուստինոս Բ մեծ բանակ մը կը խաւրէր ի Հայս եւ ինքն ալ գալով՝ Հայ իշխաններէն պատանդ կ'առնու, հետը տանելով՝ որչափ կ'երեւայ՝ նաեւ զՍահակ Գ կաթողիկոս, եւ միւս կողմանէ 692ին Կ. Պոլսոյ մէջ կը գումարուի Նշանաւոր Տրուլեան ժողովն՝ որուն

մէջ Հայոց համար կը դրուին հանրածանօթ երեք կանոնք,[1] — ստեղծել պատմութիւն մ'որուն համեմատ ո՛չ միայն Հայք, Վիրք եւ Աղուանք, այլ եւ "Յոյնք եւ Հռոմք" եւ "ի մեծն Հռոմայ" անգամ եպիսկոպոսք գան ժողով գումարեն ի Կարին, եւ այն՝ մերժեն Չորրորդ Տիեզերական ժողովն, դնեն այնպիսի կանոններ, որոնք այն ատեն բոլորովին հակառակ էին այն եկեղեցեաց սովորութեանց, ինչպէս է Ծննդեան տօնը յունուար վեցին կատարել, անապակ անջուր սրբագործել եւ այլն: Շատ իրաւամբք է անոր համար որ հայ եկեղեցւոյ ժողովոց պատմութեան մէջ զանց կառնուի այս միջոցին դնել ի կարգի այս կեղծիքը,[2] որ ապահովապէս Ը դարուն առաջին կէսէն կամ Օձնեցիէն ետքը գրուած է:

Այժմ այս ամէնը մեր նպատակէն դուրս է աւելի մանրամասն քննել: Կը բաւէ մեզի համար այս կէտը միայն որ այժմու կեղծ կանոնաց խմբագիրը գործածած է "Վարդ. Առաք." գրութիւնը, ինչպէս նաեւ Շահապիվանի կանոնադրութիւնն եւն: Այսպէս են Յառաջաբանութեան սա խօսքերը "զսրբոց առաքելոցն զկանոնսն եւ զսուրբ ժողովոյն Նիկիայ" եւ դարձեալ թէ դրին կանոններ՝ "որ ինչ պէտք էին ի կանոնսն սուրբ եկեղեցւոյ" որ առնուած են Շահապիվանի կանոնաց Յառաջաբանէն, զոր դրին "Վարդապետք Հայոց ի կանոնսն Առաքելական եւ Նիկիական կանոնաց հաստատութիւնն," եւն: Թէ մեր ասորի կանոններն առջեւն ունի կեղծագիրը, բաւական է միայն Ա կանոնը ցուցընելու, ուր կ'ըսուի. "Վասն մեծի Յայտնութեան՝ զոր կարգեցին Առաքեալքն ի Հոգւոյն սրբոյ,

---

1 Տես ի միջի այլոց՝ Պատմութիւն Տիեզերական ժողովոց, տպ. Վիեննա, 1847 եւ Չամչեան, Բ, էջ 370:

2 Հմմտ. Չամչեան, Պատմ. Բ, էջ 559—562: Իրաւամբ զանց կ'ընէ յիշել զայս նաեւ Աբէլ արքեպ. Մխիթարեանց, Պատմութիւն ժողովոց Հայ. Եկեղ., տպ. Վաղարշապատ 1874:

ի Ցունուարի Ձն կատարել մեծ առաւելութեամբ ի փառս Աստուծոյ։ Արդ եթէ ոք... այլազգ խորհիցի եւ արտաքոյ Առաքելական կանոնաց, զոր ոմանք ի Դեկտեմբերի Իե ծնունդ առնեն... այնպիսին անկցի ի կարգէն եւ յաստիճանէն մերժեսցի... զի մի արմատ դառնութեան ի վեր երեւեալ եւ նովաւ բազումք պղծիցին„ եւն։ Համեմատելու է մեր գրութեան Կան. Է, զոր շատ անգամ առիթ ունեցանք յիշելու. ինչպէս նաեւ խօսեցանք վերջին կոչման վրայ ալ (“զի մի արմատ դառնութեան„ եւն.) որ կը գտնուի նաեւ “Վարդ. Առաք.„ գրութեան այժմու հայերէնին մէջ։[1] Մեր առօրի Գ եւ Դ կանոնները յիշուած են նոյնպէս այս կեղծ կանոնադրութեան Է կանոնին մէջ, ուր կը հրամայուի Դշ. եւ Ուր. խիստ պահել, “վասն զի այսպէս պատուիրեցաւ ընդ ամենայն աշխարհի ի սրբոց Առաքելոցն եւ աւանդեցաւ մեզ„ եւն։

Զանց կ'առնենք յիշել ուրիշ քանի մ'ակնարկութիւնք, որոնք ցրիւ սփռուած կը գտնուին հայ գրութեանց մէջ, եւ երբեմն խնդրական ալ են[2], եւ կը յիշենք հօս միայն զՅովհաննէս Օձնեցի

---

[1] Տես վերը՝ էջ 210։

[2] Օրինակի համար “Վարդ. Առաք.„ գրութեան այն տեղւոյն՝ զոր վերը յիշեցինք (էջ 183) Կորեան հետ համեմատելու ժամանակ, կ'երեւայ թէ կ'ակնարկեն Ներսիսի առ Կոստանդին կայսր ուղղած թղթին սա տողերը (տես Սիբիոն, տպ. Պետր. 1879, էջ 126.) “Արդ որք ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն բանին՝ աշակերտաց իւրոց յայտնապէս ուսուցին։ Եւ նոքա դարձեալ իւրեանց աշակերտաց զնոյն աւանդեցին։ Եւ դարձեալ զնոյն աւանդութիւն գրով հաւատացելոցն։ Եւ բազում յառաքելոցն ընկալան զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան„ եւն։ — Սիոնի Հայոց կաթողիկոսի անուն կրող Կանոնաց (տես Կանոնագիրք՝ Հատ. ԼԷ, Ձեռ. մեր Մատ. 44, Թղ. 149ա) սկիզբը կ'ըսուի. “Որք պատմող աստուածային աւրինադրութեանն եղեն աշակերտք ի Տեառնէ եւ ընդհանուր տիեզերաց քարոզ, առին հրաման զբանն կենաց եւ ընկալան զպաշտօնութիւն շնորհի սրբոյ հոգւոյն իջմամբ ի նոսա՝ ուր էին ժողովեալ ի վերնատունն„ եւն. ապա կը յիշուին “կարգք եկեղեցւոյ զոր կանոնեցին սուրբ Հարքն„ եւն, այսպէս նմանելով մեր կանոնաց Յառաջաբանութեան՝ որչափ կ'երեւայ։

իմաստասէր։ Ծանօթ է որ այս շատ կողմանէ նշանաւոր կաթուղիկոսն (իբր 718—729) եղած է այն սակաւներէն, որ հոգ տարած ըլլան կանոնական գրութեանց հաւաքման։ Ինքն է որ Ե դարու վերջերը կատարուած հայ կանոնագրոց առաջին խմբագրութիւնը լրացուցած է այլեւայլ յաւելուածներով, համառօտ պատմութեամբք իւրաքանչիւրին եւ նիւթոց գլխակարգութեամբք եւ այս ամէնն հաւաքած յօրինած է կանոնագրոց նոր խմբագրութիւն մը՝ կցելով ի վերջոյ յիշատակարան մ'ալ։ Այս կանոնական հաւաքումն է հիմն այժմ գտնուող ձեռագիր ամէն կանոնագրոց, որոնք սակայն հետզհետէ շատ՝ մեծաւ մասամբ օտարամուտ՝ յաւելուածներ ու այլայլմունք կրած են. շատերուն մէջ դուրս ինկած է նաեւ Օձնեցւոյն յիշատակարանն եւն։ Այնպէս որ կանոնագրոց քննիչ մը նախ քան զամենայն պէտք է ջանալ որ բոլոր յետամուտ կտորները հանելով՝ վերակազմէ Օձնեցւոյն կանոնագիրքն, որով կ'ունենայ կուռւան մը Ը դարուն հայ եկեղեցւոյ մէջ յարգ ունեցող կանոնադրութիւնքը զատելու յետիններէն։ Իմաստասէր իւր Յիշատակարանին մէջ կ'ըսէ ի միջի այլոց.[1] „Կամեցայ զբովանդակ զառ ի Նոցանէ (այսինքն՝ ի Հարց) կանոնական սահմանեալ բան՝ ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենին ի հայրապետանոցի աստ արմատացուցանել, ուրանօր եւ զիս Աստուածային Հոգին վերակարգեաց յաթոռ Ս. Գրիգորի ի կաթուղիկոսութիւն աշխարհիս Հայոց Յովհաննէս նուաստագոյն յիմաստասիրականաց խմբից եւ ի բոլորից մեկին մնացեալ ըստ մարմնոյ յազգականաց։ Եւ ընկալեալ զայս ջան նախկին վասն հոգեկանաց իմոց զարմինս, զի ըստ հրամայողական անուանն՝ առընթեր կացցեն եւ հրամանացն գումարութիւնք. եւ եթէ սպասաւորաց բանին աստուածա-

1 Տես Ձեռ. մեր. Մատ. Թ. 14, էջ 102։ Տես նաեւ Չամչեան, Բ, էջ 395 եւն։

խոստունակ հարցն բանիւք կնքել բանիւս. երկրորդ՝ զի զուսումնասիրաց անձանց իմով աշխատութեամբ սիրով կամեցայ հանգուցանել զբազմախոյզ խնդիրս։ Քանզի փրեցաւ է սմա ոչ միայն զկանոնական համեմանել նոցա շարակարգութիւնս, այլ եւ զժամանակն եւ զղափոխան ի սոյն յայս ի ներքս ածեալ յաւելեալք. ընդ նմին եւ գլուխ անձնիւրոց համառօտեալ բանիւք է ի սկզբան անդ նախակարգեցաք. զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խնդրողն„ եւն եւն։ Եւ այս ամէնը կը գրտնենք նաեւ այժմու կանոնագրոց այն մասերուն վրայ, որ մաս կը կազմէին Օձնեցւոյն այն հաւաքման։

Արդ Օձնեցւոյն այս կանոնագրոց մէջ առաջին տեղին գրուած է “Վարդապետութիւն Առաքելոց։„ Եւ այս գրից մէջ կը գտնուի նաեւ ամէն ձեռագրաց մէջ՝ կանոնագրոց կանոնաց ընդհանուր եւ շարունակեալ թուակարգութեան Ա—ԼԴ թուականները բռնելով։ Օձնեցի պէտք չէ տեսած պատմական նախաբանութիւն մ՚աւելցընել մեր կանոնաց՝ ինչպէս սովոր է այլոց կցել, վասն զի արդէն իսկ ներածութիւն մ՚ունի “Վարդ. Առաք.„ ուստի անոր գլուխը կցած է միայն “Սկիզբն Առաքելական կանոնիս„ վերնագիր մը։ Ներածութեան լմընալէն ետքը բուն կանոնները չսկսած՝ մուծեր է Իմաստասէր իւրաքանչիւր կանոնին նիւթոյ համառօտ բովանդակութիւն, ինչպէս ըրած է միւս կտորներուն ալ։ Այս գլխակարգութիւնը նշանաւոր է այնու որ կը ցուցընէ գոնէ զայն թէ Ը դարէն ետքը նոր կանոններ աւելցած չեն մեր կանոնաց վրայ։ Այս գլխակարգութիւնը հոս յառաջ կը բերենք ըստ Ձեռագրին Մեր Մատենադարանի Թ. 44։ Ուրիշ ձեռագրաց համեմատութիւնքը նշանակել աւելորդ էր անոր համար որ մեր նպատակն է հոս միայն այն ցուցընել թէ Օձնեցի ո՛չ պակաս եւ ո՛չ աւելի թուով կանոն՝ քան զոր ունինք այսօր,

առած էր իւր հաւաքման մէջ։ Բայց աստի մեր տեսած ձեռագիրներն առհասարակ առանց մեծ տարբերութեանց ունին գլխակարգութիւնս, այպէս ABD եւ G. իսկ EF նոյն իմաստով բայց բոլորովին ուրիշ շարադրութեամբ ունին գլխակարգութիւնք. իսկ երկու ձեռագիրք (C եւ C²) աւելորդ համարած են օրինակել զայն։

"Գլուխք եւ թիւք համաւրէն կանոնական ասացուած առաքելական կանոնիս։ Գլուխք ԼԴ։

Ա. Վասն յարեւելս կոյս յաղաւթս կալ։

Բ. Վասն կիւրակէի պատարագ մատուցանել։

Գ. Վասն չորեքշաբաթու պահելոյ։

Դ. Վասն զուրբաթ պահելոյ։

Ե. Վասն շաբաթու պատուելոյ։

Զ. Վասն երիցունս եւ սարկաւագունս եւ կէս սարկաւագունս ձեռնադրելոյ։

Է. Վասն աւուր ծննդեան եւ յայտնութեան Քրիստոսի Զ յունվարի կատարելոյ։

Ը. Վասն սուրբ Զատկին յետ Խ աւուր պահելոյ կատարել։

Թ. Վասն աւետարանին ընթեռնլոյ։

Ժ. Թէ զկնի պասեքին կատարեսցեն Ծ աւր։

ԺԱ. Վասն վերացման նորա։

ԺԲ. Վասն չձեռնադրելոյ զեկամուտ ոք։

ԺԳ. Վասն աւուր ութերորդի մկրտել զմանուկ։

ԺԴ. Վասն չպաշտելոյ զպաշտաւն Տեառն, որք յերկմիտս իցեն ի հաւատս։

ԺԵ. Վասն որք ի հարցուկս երթան։

ԺԶ. Վասն որ ընդ հրեայս հաղորդին։

ԺԷ. Վասն ոչ ընդունել, զորս ի հրէից կամ ի հեթանոսաց հաւատան եւ անդէն ուրանան։

ԺԸ. Յաղագս զվաշխառուս ոչ ձեռնադրել։

ԺԹ. Յաղագս միաբանութեամբ կատարել զեկեղեցւոյ իրս առաջնորդին եւ պաշտաւնէիցն։

Ի. Վասն ոչ խոտելոյ զանարգ ի ձեռնադրել, եթէ անարատ իցէ։

ԻԱ. Վասն զանրնչաւէրն ձեռնադրելոյ։

ԻԲ. Վասն ոչ ձեռնադրելոյ զամբարտաւանն։

ԻԳ. Վասն միաբան լինել քահանայիցն։

ԻԴ. Վասն որք ոչ ունին զօծումն քահանայութեան։

ԻԵ. Վասն պատուելոյ զքահանայսն։

ԻԶ. Վասն դատաւորաց։

ԻԷ. Վասն զյիշատակս վկայիցն կատարելոյ։
ԻԸ. Վասն ի բեմ հանելոյ զթագաւորս։
ԻԹ. Վասն զսաղմոսն Դաւթի պաշտելոյ։
Լ. Վասն ոչ ընթեռնլոյ զարտաքին գիրսն։
ԼԱ. Վասն ի սուրբ սեղանն ջերմն զհացն հանել։
ԻԲ. Վասն որ կամի կուսութեամբ կեալ։
ԼԳ. Վասն որք ամուսնանայցեն։
ԼԴ. Վասն առաքելոցն թէ զոր աշխարհ վիճակեցին։„

Այս գլխակարգութիւնը բոլորովին նոյն է այժմու մեր ունեցած բնագրին հետ, որմէ կը հետեւի որ այսպէս տեսած է զայն նաեւ Օձնեցի։ Յայտնի է ուրեմն որ Իմաստասէր չէ տեսած հայերէն նախնական թարգմանութիւնն, այլ Ե դարու վերջերն եղած խմբագրութիւնն առջեւն ունեցած։

Ծանօթ է վերջապէս Իմաստասիրի ժողով գումարելն ի Դուին իբր 719ին եկեղեցական բարեկարգութեան համար եւ ԼԲ կանոններ դնելն, որոնք լոյս տեսած են նաեւ լատիներէն թարգմանութեամբ[1], եւ որոնց սկիզբն կայ Իմաստասիրին երկար “Ատենաբանութիւնն։„ Բնական էր որ ասոնց մէջ ալ տեղ տեղ մեր կանոնաց հետքերը գտնուին։ Այսպէս Ատենաբանութեան մէջ հրամայելով Շաբաթն ու Կիւրակին պահք չպահել պատճառը կու տայ սա խօսքերը. “Յայսմ աւուր Քրիստոս զմահ խափանեաց... ի սմա եւ Հոգին սուրբ առաքեալ ի Հօրէ՝ զանմեկնելին մեզ զգեցոյց մխիթարութիւն։ Ի սմին աւուր եւ զերկրորդն խոստացեալ է առնել Քրիստոսի յաշխարհս զգալուստն„ եւն.[2] — որ կը յիշեցնէ “Վարդ. Առաք.„

---

1 Յովհաննու իմաստասիրի Օձնեցւոյ Ատենաբանութիւն եւն. (Johannis Ozniensis Sermones duo, ed. A u c h e r, Venet. 1833.) կանոնները տես նաեւ Հ. Աղեքսանդր Վ. Պալճեան, Պատմութիւն Կաթողիկէ Վարդապետութեան ի Հայս. Վիեննա 1878, էջ 195—201։ Համառօտութիւն կանոնաց՝ Ջամչեան, Բ, էջ 394 եւ Աբէլ արքեպ. Մխիթարեանց, Պատմ. ժողովոց, էջ 91—95։

2 Տպ. Վենետ. 1833, էջ 34։

Բ կանոնին սա տեղերը կիւրակի աւուր նկատմամբ՝ «յաւուր միաշաբաթւոջ եղեւ լինելութիւն արարածոց եւ յաւուր միաշաբաթւոջ յարեաւ Տէր Քրիստոս ի մեռելոց եւ յաւուր միաշաբաթւոջ ծագեցաւ աշխարհի եւ յաւուր միաշաբաթւոջ ... Երեւի է վախճան աշխարհին հայրական փառօք» եւն։ Թողլով ուրիշ քանի մը փոքր նմանութիւնք՝ հոս դէմ առ դէմ կը դնենք Պաւղիկեանց դէմ եղած կանոնը՝ որ յօրինուած կ'երեւայ հետեւողութեամբ «Վարդ. Առաք.» գրութեան Հրէից դէմ ունեցած կանոնին։

Իմաստասէր՝ ԼԲ։[1]

«...Եթէ ոք իցէ որ յարեսցի ի նոսա (ի Պաւղիկեանս) եւ ի սիրելութիւն եւ ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ է զայնպիսին խոշտանկել եւ ծանր պատժաս ի վերայ ածել մինչեւ զգաստասցին եւ առողջասցին ի հաւատս։ Ապա եթէ դարձեալ վերստին ի նմին գտցին՝ զայնպիսին հրամայեմք ամենեւին հատանել եւ արտաքս ընկենուլ ... Զի մի արմատ դառնութեան ի վեր երեւեալ՝ նեղիցէ եւ նովաւ բազումք պղծիցին։»

Վարդ. Առաք.՝ ԺԶ։

«Կարգեցին Առաքեալքն ... թէ որ սիրէ զՀրեայս եւ հաղորդի ընդ նոսա կցորդ եղիցի Յուդայի ... մի մտցէ յեկեղեցի եւ մի բնակեսցի ի մէջ հաւատացելոց. ապա թէ իցէ ի միջի նոցա՝ մի թողցեն զնա, այլ որոշեսցեն եւ զատուսցեն ի բաց յինքեանց եւ մի կացցէ ի միջի նոցա, զի մի արմատ դառնութեան ի վեր երեւեալ՝ պղծիցեն նովաւ բազումք։»

Հոս պէտք չէ զանց ընել յիշելու Սիմէոնի Աղուանից կաթուղիկոսի ձեռօք Ը դարու սկիզբները գումարուած ժողովոյն կանոնադրութեան մէկ խօսքը, որ իբրեւ Առաքելոց կանոններէն առեալ յառաջ կը բերէ վճիռ մ'որ միայն ընդհանուր իմաստով նոյնութիւն մ'ունի մեր կանոնաց հետ։ Սիմէոն այն կանոնադրութեան մէջ՝ զոր յառաջ կը

---

1 Անդ, էջ 75—76։

բերէ Կաղանկատուացի,[1] երկար կը խօսի այն կէտին վրայ թէ զինուորաց եւ անարժանից պէտք չէ եկեղեցական իշխանութիւն տալ. (Հմմտ. “Վարդ. Առաք.„ կան. Զ, ԺԲ եւ ԻԲ եւ Սահակայ եւ Շահապիվանի նման վճիռները, զորոնք ի մէջ բերինք.) ապա հետեւելով մեր ԺԲ կանոնին որ կը համեմատէ հնոյ ուխտի եւ Նորոյ քահանայքն, կը գրէ այսպէս. “Զի էր օրինակ խորանն եւ քահանայք՝ Նորոյ ուխտիս եկեղեցւոյ սրբոյ, յոր վիճեէին լեալ անարժանէն կամ զինուորէն. Եւ զնոյն հրաման առաւել տիրացուցին Առաքելքն հրամանաւ Փրկչին ասելով, եթէ “Հաճոյ թուեցաւ Հոգւոյն սրբոյ եւ մեզ՝ այսպէս կարգել. Մի իշխել զինուորաց եւ անարժանից ըստ իշխանութեան արկանել զեկեղեցի, եւ որ ոք յանդգնեսցի՝ նզովեալ եղիցի:„ Այս կանոնն անշուշտ Սիմէոն յօրինած է եւ հանդարտ սրտիւ Առաքելոց բերանը դրած իբր թէ ճիշդ այնպէս կանոն մը դրած ըլլան՝ կցելով ի սկզբան “Հաճոյ թուեցաւ Հոգւոյն սրբոյ եւ մեզ„ բանաձեւն՝ զոր գիտէր Գործք Առաքելոցէն (ԺԵ, 28) գործածուած Առաքելոց Երուսաղէմայ ժողովքին վճռին սկիզբը: Բաւական էր իրեն որ Առաքելոց անուն կրող մեր կանոններուն մէջ նոյն իմաստով խօսքեր կան, ինչպէս է Զ կանոնին սա խօսքը՝ “. . . որպէս Ղեւտացիքն որ կրէին զսպասաւորութիւն (խորա-

[1] Կաղանկատուացի, Պատմ. (տպ. Մոսկ. 1860) Գ, գլ. ժա. (էջ 246—247.) “..միաբանութեամբ կրօնաւորիլ ըստ կանոնական հրամանի, մի թողացուցանել եւ ոչ տալ թոյլ անարժանից եւ զինուորական մարդկան զեկեղեցւոյ ունել իշխանութիւն, մի պոռնկորդոց, մի շնացելոց, մի սպանողաց, մի գողոց, մի ստոց եւ սուտերդմանց, մի զրկողաց եւ չարակն ագահից, մի զօշաքաղաց եւ մի ամենեւին զինուոր մարդկան հեծելոց եւ մաքսապետաց մի ոք իշխեսցէ զեկեղեցւոյ իշխանութիւնս . . . տալ այնպիսեաց. զի աստուածային օրինօք՝ զոր մատուցանէին ժողովուրդքն ի տան Աստուծոյ վասն մեղաց, զայն քահանայքն՝ անարատք մատուցանողք եւ սպասաւորք սեղանոյն վայելէին... Այլ եւ քահանայութիւնքն՝ որ անարժան վարուք իցեն՝ մերժեալ հեռասցին ի ժառանգութենէն„ եւն:

նին) եւ զնոտարական յետոյ մէջբերէ ու մերժենալ, նոյնպէս եղիցի յեկեղեցւոջ„ եւ նմաններ։ Անշուշտ Սիմէոն չէր կրնար գիտնալ որ այս տեղերը "Առաքելոց„ կանոններուն հայ խմբագրողին յաւելուածն են։

Անհնար է ի հարկէ որ հոս յիշենք այսպիսի բազմաթիւ ակնարկութիւնք եւ յիշատակութիւնք, որ կը գտնուին հայ գրութեանց մէջ։ Մեր կանոնաց ունեցած ճոխութիւնն իբրեւ Առաքելոց Օրէնսդրութիւն եւ իբրեւ առաջին հաստած հայ կանոնագրոց՝ բնական էր որ շատ գրիչներէն յիշուէր եւ ի վկայութիւն բերուէր։ Այսպէս օրինակի համար Գրիգորիս Կաթուղիկոս Հեթմոյ խնդրելովն "Դրուագ գովեստի ամենայն սրբոյն տաւնի„ ճառասացութիւնը կը սկսի սապէս.[1] "Կաթուղիկէ եւ առաքելական եւ մարգարէական եկեղեցի սուրբ ընկալաւ աւրէն եւ սահմանադրութիւն ոչ միայն ի Հարցն եւ ի նախապետ մարգարէիցն սրբոց՝ զյիշատակս սրբոց պատուել եւ տաւնել ցնծութեամբ այլ եւ ի նոյն խօս Առաքելոցն եւ ի նոցին հետեւողաց աւանդութեան առաճման եւ առքէն կանոնէ հաստատեցաւ սուրբ եկեղեցւոյ՝ պատուել զսուրբսն տարեւոր յիշատակաւ„ եւն (— վերը խօսեցանք[2] "Առաքելոց„ ԻԸ կանոնին վրայ՝ որ մարտիրոսաց տարեւոր յիշատակն ընել կը հրամայէ։ —) Վիճական բաւական սովորական գրութեան մը մէջ, — որ է "Կարգաւորութիւն սուրբ եւ ուղղափառ հաւատոյ Հայ. եկեղեցւոյ որով յամաւթ առնես զհերձուածողսն,„ եւ որ հաւաքածոյ է այլեւայլ վկայութեանց քանի վիճական խնդրոց վրայ, — ծննդեան տօնի օրուան Յունուարի 6ին տօնելուն վկայ կը գտնենք բերուած մեր Է կանոնը.[3] "Կար-

[1] Ձեռ. մեր Մատ. Թ. 257 (հին թիւ՝ 67 Ա) էջ 29։
[2] Տես վերը՝ էջ 56։
[3] Ձեռ. մեր Մատ. Թ. 324 (հին Թիւ 101) Թղ. 58ա։

գեցինք Առաքեալքն Տեառն զաւր ծննդեան Տեառն ի Զ Յունուարի (կատարել)։„

Նոյնպէս ծանօթ է “Յովհաննիսի վարդապետի Ծմնկացւոյ՝ Խրատք կանոնականք յԱռաքելոցն եւ Հայրապետաց եւ ի սուրբ Լուսաւորչին կանոնացն„ եւն գրութիւնը։[1] Թէ արդեամբք Յովհաննէս Խրատք կանոնականք “յԱռաքելոց„ ըսելով մեր կանոնները կը հասկընայ, կը ցուցընէ այն պարագան ալ որ “Կանոնք յաղագս քահանայից յԱռաքելոց եւ ի հայրապետաց սրբոց„ գլխուն ներքեւ ամէնէն յառաջ ի մէջ բերած է “Վարդ. Առաք.„ գրութեան ԻԲ կանոնը բառ առ բառ։[2] Այստեղ ալ խմբագրեալ հայերէնն ի վկայութիւն կոչուած է. քանի մը փոքր տարբեր ընթերցմունք նշանակած ենք մեր հրատարակութեան յիշեալ կանոնին ծանօթութեանց մէջ։

Առաքելոց հրամանաց եւ կարգադրութեանց յիշատակութեան յաճախ կը հանդիպինք Գրիգորի Տաթեւացւոյ “Գիրք Հարցմանց„ երկասիրութեան մէջ։[3] Օրինակի համար մեր գրութեան խմբագրին աւելցուած այն տեղը՝ զոր Ագաթանգեղոսի հետ համեմատեցինք եւ որ ՀԲ լեզուաց վրայ է, յիշուած կը գտնենք “Վասն լեզուաց„ վրայ խօսած տեղն՝ այսպէս.[4] “Եւ այս է սահման ազգաց՝ որպէս ասէ մարգարէն “Յորժամ բաժանեաց Բարձրեալն զազգս ամենայն, կացոյց սահմանս հեթանոսաց.„ այսինքն՝ զլեզուս զանազանս “ըստ թուոյ հրեշտակացն Աստուծոյ„ այսինքն՝ ըստ թուոյ Հ ազգապետացն„ եւն։ Ուրիշ տեղ մ'այլ (անվաւերականաց) ցուցակ մը կը դնէ Գրիգոր, որուն մէջ առնուած կը գտնենք “Վարդ. Առաք.„ վասն զի այս-

1 Ձեր մեր Մատ. Թ. 324, Թղ. 91 եւն։

2 Ձեր մեր Մատ. Թ. 324, Թղ. 97ա։

3 “Գիրք Հարցմանց„ Գրիգորի Տաթեւացւոյ, տպ. Կ.Պոլ. 1729։

4 “Գիրք Հարցմանց„ Հատ. Զ. Պրակ. Է, էջ՝ 297բ։

պէս կ՚ըսուի հոն.[1] “Եւ որպէս ասէ Կղէմ եւ Անանիա Դամասկացի թէ Զ գիրք այլ ընկալաք յեկեղեցի. որ է՝ Ընթերցուածն Յակոբայ. եւ Երկու կանոնք Առաքելոցն. Բանք Յուստոսի. Գիրք Դիոնիսեայ Արիսպագացւոյ. եւ Քարոզութիւնն Պետրոսի առաքելոյ:” Այս “Երկու կանոնք Առաքելոցն” են “Վարդ. Առաք.” եւ Յունական Առաքելական կանոնք՝ որ “ի ձեռն Կղեմայ” կը կոչուին: Այս խօսքը շատ նման է Մխիթարայ Այրիվանեցւոյ մէկ ցուցակին, զոր քիչ մ՚առաջը կը յիշենք:[2] — Մնացելոց մէջ ամէնէն աւելի բաղձալի էր ինծ օրինակ մ՚ունենալ “Քարոզութիւն Պետրոսի Առաքելոյ” անվաւերականնէն, որ թերեւս ոչ թէ Κήρυγμα Πέτρου, այլ “Վարդապետութիւն Շմաւոնի Կիփայի” անվաւերականն էր, զոր Քիւրըթոն[3] մեր “Վարդ. Առաք.” գրութեան կից հրատարակած է՝ այնպէս գտնելով ձեռագրին մէջ: “Բանք Յուստոսի” կոչուածն փոքրիկ անվաւերական մըն է, (զոր թերեւս ուրիշ առթիւ ծանօթացընենք ընթերցողին:) — Այս տեղէն քիչ մ՚առաջը ծննդեան տօնին վրայ խօսելով՝ մեր Կան. Է կ՚ակնարկէ գրելով.[4] “Ցառաջագոյն ամենայն ազգք քրիստոնէից սկսեալ յԱռաքելոցն այսպէս տօնէին՝ ի վեցն Յունուարի զծնունդ եւ ի նմին աւուր զմկրտութիւնն” եւն: Այստեղ Տաթեւացի հաւատարմութեամբ յառաջ բերած է մեր կանոնին իմաստը. բայց քիչ մ՚առաջը կը գտնենք նաեւ սա խօսքը “Ես անապական պատարագեմ զՔրիստոս, որպէս կանոնքն է Առաքելոց եւ Կղեմայ,”[5] որ անճիշդ է եւ

---

1 Անդ, Հատ. Է, Գլուխ ԼԸ, էջ 450:

2 Այս միեւնոյն ցուցակը կրկնուած է Վարդանայ Վարդապետի մէկ գրութեան մէջ ի Փարիզ (cod. Arm. anc. fond. 12), ուր կ՚ըսուի թէ զՔարոզութիւն Պետրոսի օրինակած ըլլայ, ինչպէս Հաղորդեց Հայագէտն Կոնիբեր:

3 Cureton, Anc. sys. doc. p. 35—41:

4 “Գիրք Հարցմանց” Հատ. Ը, Գլուխ ԻԳ, էջ 482—484:

5 Անդ, էջ 548:

կամաւոր մեկնութիւն, քանի որ "Վարդ. Առաք." միայն կը հրամայէ որ "հաց պատարագին յորում աւուր եփեցի՝ ի նմին աւուր ելցէ ի սեղան" (Կան. ԼԱ), ուր "անապակ" պատարագելուն վրայ խօսք չկայ՝ ինչպէս եւ ոչ "Կղեմայ" կանոնադրութեան մէջ։ Այլուր պահոց նկատմամբ կը գտնենք գրուած.[1] "Ամենայն ազգ քրիստոնէից պահեն զչորեքշաբաթն եւ զուրբաթն վասն խաչելութեանն՝ որ սուգ է եւ պահք" եւ թէ "ի Նորա՝ ի Չորեքշաբթի եւ յՈւրբաթ փոխեցին Առաքեալքն (զպահս), որպէս յայտ է յԱռաքելական կանոնս։" Վերջապէս տեղ մ'ալ կը գտնենք սա խօսքը.[2] "Ճշմարտութիւն է Առաքելական կանոնքն եւ Հայրապետական եւ երից սուրբ ժողովոյն։"

Ի վերջոյ յիշենք "Գիրք որ կոչի Ժողովածու . . . տպագրեալ ի սրբոց վարդապետաց,"[3] որ այլեւայլ անվաւերականներէ քաղուածոյ մըն է։ Այն տեղ մեր գրութեան բովանդակութիւնը կը գտնենք համառօտուած այսպէս. "Յետ այնորիկ առեալ զաշակերտսն իւր եւ գնաց ի լեառն Համբարձման, խրատեաց զնոսա ասելով թէ Որպէս առաքեաց զիս Հայր եւն . . . Եւ առաքեալք ասեն. Տէր, եթէ գնամ ի տարաշխարհն յօտար երկիր, մի ընդդէմ լեզուաց ու գիտեմ եւ ու նոքա զմերն եւ որպէս ընդդէմ նոյն զմեզ են զիրարն . . ."[4] եւ քիչ մ'ետքն՝ ". . . եւ յետ նորա վիճակաւ գնացեալ յիւրաքանչիւր երկիր եւ հաստատեցին զհաւատսն . . . որով եւ սուրբ հայրապետքն ժողովեցան ի Նիկիայ, եւ զառաքելականին կանոնքն երկին եւ զերրորդն Հաստատեցին։"[5] Այս եւ այսպիսի նման ակնարկութիւնք շատ կարելի է գտնել եւս հաւաքել. բայց բաւական կը համարինք զատոնք իբրեւ օրինակ յառաջ բե-

1 Անդ, Հատ. Թ, Գրակ. Ժ, էջ 652։
2 Անդ, էջ 550։
3 Տպ. Կ. Պոլիս, 1747։
4 Անդ, էջ 195։
5 Անդ, էջ 196։

*րելն, եւ յաջորդովս կը յիշենք միայն գրութիւն մ'որ կանոնական արժէք ունի, այն է Մխիթարայ Գօշի Դատաստանագիրքը։*

*Մխիթարայ Գօշի գրութիւնն*[1] *այն սակաւաթիւ գործերէն է՝ որ իրենց ամէն թերութեամբք հանդերձ մեծ արժէք ունին միշտ։ Գօշ իւր գրութիւնը յօրինած է հաւաքելով՝ ձեռքն ինկած գրութիւններէն, եւ այս հաւաքման մէկ մեծ մասը կը կազմեն եկեղեցական կանոնք, զորոնք ի հարկէ քաղած է կանոնագրքէն։ Այս պարագայից մէջ գրեթէ անհնար էր որ մեր "Վարդ. Առաք." կանոնները բոլորովին անտես ընէր։ Գօշ "Ցաղագս դատաստանաց՝ որ չիցեն քահանայ եւ երբ ինչ առնիցեն եւ կամ քահանայք անիրաւս ինչ" գլխուն մէջ*[2] *բառ առ բառ ի մէջ բերած է մեր գրութեան ԻԴ կանոնն, եւ այն՝ որ նշանաւորն է, առանց նշանաւոր տարբերութեան ընթերցուածոյ, ինչպէս կրնայ տեսնուիլ նոյն կանոնին ծանօթութիւններէն՝ ուր նշանակած ենք Գօշի տուած ընթերցմունք, եթէ նաեւ դոյզն ինչ տարբերութիւն կայ։ Այս կանոնէն ետքը աւելցուցած է սա խորհրդածութիւնը. "Եւ զայս ահա առաքելական կանոնք հրաման այսպէս դատել պարտին առաջնորդք. զի զսովորութիւն չար լուծցեն, զոր աշխարհականք առնեն — արք եւ կանայք վերակացուք լինին եկեղեցւոյ. եւ զքահանայս լռեցուսցեն զօշաքաղութեամբ վարեալս եւ ակնառութեամբ եւ այլօք ախտիւք։" Ուրիշ տեղ մը*[3] *այն է՝ "Ցաղագս դատաստանաց անարգողաց" գլխուն մէջ յառաջ բերած է մեր գրութեան ԻԵ կանոնն ամբողջ՝ ի վերջոյ կցելով սա խօսքը. "Եւ զայս դատաստան եւ որ նախ քան զնա երբեմն՝ թէեւ սակաւ ինչ՝ գրե-*

---

1 Մ. Գօշի Դատաստանագիրք Հայոց, հրտ. Վահ. Բաստամեանց. Վաղարշապատ 1880։

2 Անդ, Մասն Ա. գլ. ԻԲ, էջ 119—120։

3 Անդ, Մասն Բ, գլ. ՃԽ, էջ 331։

ցաք, այլ երկրորդ(ել) յօժարեցաք այժմ յԱռաքելական կանոնաց՝ ցուցանելոյ աղագաւ զմեծութիւն պատժոյն անարգողաց քահանայիցն:„ Յաջորդ գլխին մէջն ալ՝ որ “Յաղագս դատաստանաց դատաւորաց„ վերնագիրը կը կրէ,[1] առած է մեր կանոններէն համանիւթ կտորը՝ Կան. ԻՋ ամբողջ ի վերջոյ կցելով այս տողը. “ի դատաստանէ դատաւորացս եւ կանոնական հրամանացս ուսաք՝ մի՛ շնորհս յաստիճանս լինել„ եւն: Վերջապէս նաեւ “Յաղագս դատաստանաց ամուսնութեան եւ քանիոնութեան ազգականաց„ գլուխը[2] յօրինուած է հետեւողութեամբ մեր ԼԳ կանոնին եւ անոր համառ կ'ըսուի հոն ի մէջի այլոց “. . . Պինդ ունել զպատուէր Հոգւոյն սրբոյ ի ձեռն օրինաց եւ մարգարէից, զորս Առաքելական կանոնադրութեամբ հաստատեցին„ եւն: Գօշի քով ալ կանոնին մեծ մասն է Ղեւտականին այն կոչումն՝ զոր տեսանք մեր ԼԳ կանոնին մէջ, որմէ՝ ինչպէս վերը յիշեցինք, առած է Գօշ ազգականութեան աստիճաններու թիւը:[3] Սակայն Գօշի կանոնը բառ առ բառ ընդօրինակութիւն չէ՝ նախընթացներուն նման, այլ ազատ հետեւողութիւն՝ մէջ ընդ մէջ հիւսելով մեկնաբանութիւններ եւն:

Կը մնայ ի վերջոյ յիշել որ Մխիթար Այրիվանեցի իւր ժամանակագրութեան մէջ[4] “Գիրք Հրէից ծածուկքն„ վերնագրոյն ներքեւ կը յիշէ նաեւ սա գրութիւնք. “Սրբոյն Կղեմայ, եթէ ընդունելի է, Գործքն. Կանոնք Առաքելոցն... Բանք Յուստոսի„ եւն: Եթէ չենք սխալիր՝ այստեղ յիշուածը մեր “Վարդ. Առաք.„ գրութիւնը համարելու է, թերեւս ի միասին հասկցուի նաեւ Կղեմայն, ինչպէս Տաթեւացին կը ցուցընէ իւր վերը

---

1 Անդ, Մասն Բ, գլ. ԺՋ, էջ 332:
2 Անդ, Մասն Ա, գլ. ՃԸ, էջ 219 եւն:
3 Տես վերը՝ էջ 203—222:
4 Մխիթ. Այրիվանեցի, տպ. Պետր. 1867, էջ 33:

յիշուած ճիշդ նոյն ցուցակովն։ Այս դէպքիս մէջ Էջմիածնի Թ. 924 ձեռագրին մէջ՝ որ է Մխ. Այրիվանեցւոյ յիշեալ ցուցակին համեմատ գրուածն Մխիթարայ եւ Անանէի եւ աշակերտաց ձեռօք,[1] պէտք է փնտռել “Վարդ. Առաք.„ գրութեան հնագոյն ծանօթ ընդօրինակութիւնն, ուր թերեւս նախնական թարգմանութիւնն ալ գտնելու բախտ ունենանք։ “Մայր-Ցուցակն„[2] այս մասին լռութեամբ կանցնի։

Այստեղ կը կնքենք այս մասն ալ, որ մեր կանոնաց հայ գրութեանց վրայ ունեցած ազդեցութիւնը քննելու նուիրեալ էր։ Ասով աւարտեցինք նաեւ մեր քննութեանց երկրորդ մասն՝ ուր ի մասնաւորի կանոնացս հայերէն թարգմանութիւնը հետազօտելու ջանացինք։ Միայն հարկ կը համարինք այժմ համառօտիւ նշանակել այն օրինակները՝ զոր գործածած ենք մեր հրատարակութեան համար։

---

Մեր ձեռքը չունինք նախնական թարգմանութիւնը։ Պէտք է որ ուրեմն վերակազմելու ջանանք նախնականն այժմու ձեռագիրներէն՝ որոնք խմբագրեալը մեր առջեւ կը դնեն։ Այս ձեռագիրք առհասարակ Կանոնագիրք ըլլալով՝ որոնց մէջ առաջին տեղն միշտ մեր կանոնները կը գտնուին, դիւրին է երեւակայել որ շատ բազմաթիւ օրինակ կրնանք գտնել մեր կանոններէն։ Բայց առհասարակ խօսելով մեծաւ մասամբ այս ձեռագիրք երկու ցեղի կը բաժնուին, ընտրելագոյն եւ յոռի. առաջինք աւելի լաւ պահած են Օձնեցւոյն հաւաքումն, իսկ վերջինք բոլորովին այլայլած ամէն տեսակ յաւելուածներով եւ փոփոխութեամբք։ Գալով մեր կանոնաց՝ շատ մեծ տարբերութիւն կը տեսնուի ձեռագրաց մէջ։ Ոմանք՝ եւ այն մեր տեսածներուն

1 Տես Հանդէս, 1891, էջ 161—7։
2 “Մայր-Ցուցակ„ տպ. Տփղիս 1863, էջ 130։

մեծ մասը՝ բաւական ընտիր են այնու որ հաւատարիմ գրչութիւն են, (— այսպիսի են ABDEFG եւ La), իսկ այլք բոլորովին այլայլած ու փոփոխուած, այնպէս որ նորէն խմբագրուած են ծայրէ ծայր, միայն իմաստը պահելով՝ իսկ ուրիշ կողմանէ հաւատարմութեան ամենեւին հոգ չտանելով. (— այսպէս են՝ C եւ C² ձեռագիրք վասն զի հայ կանոնագիրքն յետոյ արդեամբք նոր խմբագրութիւններ կրած է։) Թէեւ այս վերջին տեսակները կընայինք զանց ընել մեր հրատարակութեան մէջ, բայց ամբողջութեան համար նաեւ զասոնք համեմատեցինք ծանօթութեանց մէջ։ Իսկ առաջին տեսակին մէջ DEFG ձեռագիրք իրարու հետ շատ աւելի սերտ կապ մ'ունին, վասն զի A ձեռագրէն ունեցած բազմաթիւ տարբերութեանց մէջ միակերպ են իրարու յընդհանուրն խօսելով. իսկ B միջին դիրք մ'ունի եւ ոչ շատ ընտիր է։ A ամէն աւելի ընտիրը կ'երեւայ, թէ եւ նաեւ ինքն ալ շատ մ'աղաւաղութիւններ կրած է։

Մեր գործածած 9 օրինակներէն ոչ ամէնը ձեռագիր էին բուն, այլ մէկ քանին ընդօրինակութիւնք են եւ համեմատութիւնք ձեռագրաց. ինչպէս յաջորդ ցուցակէն կ'երեւայ։

1. Կանոնագիրք մեր Մատ. Թիւ 44 (այժմ՝ 256) ողորկ ու փայլուն մագաղաթէ, մաքուր բոլորգիր գրով, գեղեցիկ գունաւոր խորանով, սկզբան նկարով եւ բազմաթիւ եզրազարդերով եւ զարդագրերով եւ կարմրագիր վերնագրութեամբք եւ սկզբնատառերով. (Թուղթք 230, մեծութիւն՝ 22, 5×17 սնդմ. գրութիւնն՝ երկսիւն, որոնց իւրաքանչիւրը՝ 16, 5×5,5 սանդիմ. տողք. 29։) Գրութեան տարին չէ յիշուած, բայց գրուած է "ի քաղաքն Ըստամբուլ ի դրանն սուրբ Նիկողայոս ու ձեռամբ թերավարժ եւ անիմաստ գրչի Աւետիս երիցու . . . ի խնդրոյ . . Ասխատագէս վարդապետի։„ Ձեռագիրս ընտիր չեղէն է եւ Օձ-

*նեցւոյ Հաւաքումն տիտղոսներով են պահած, թէեւ զուրկ չէ նաեւ յետոյ աւելցած կտորներէն։ «Վարդապետութիւն Առաքելոց» ձեռագրիս Թղ. 9բ—20ա միջոցը կը գրաւէ։*

*Այս ձեռագիրը հիմն առած ենք մեր հրատարակութեան եւ նշանակած՝* A*։ Այնպէս որ ամէն տեղ ճշդիւ այս ձեռագրին ընթերցումն գրած ենք բնագրին մէջ, ի բաց առեալ այն սակաւ տեղերն՝ ուր ծանօթութեան մէջ նշանակուած է հակառակը՝ թէ այս կամ այն ընթերցումն ուրիշ ձեռագրէ մըն է նշանակելով* A*ի ընթերցումն տարբերութեանց մէջ։*

2. *Կանոնագիրք մեր Մատ. Թիւ՝* 15 (*այժմ՝* 58) *ողորկեալ, ու փայլուն եւ հաստ ընտիր թղթի վրայ գրուած մեծ նոտրգիր գրչութիւն մը,* (*թուղթք՝* 380, *մեծութիւն՝* $27\times18$. *գրութիւնն՝ երկսիւն, իւրաքանչիւրը՝* $18\times6$. *տողք՝* 19) *կարմրագիր լուսանցագծերով, վերնագրութեամբք եւ սկզբնատառերով, ի սկզբան՝ գունաւոր կիսախորանով եւ բազմաթիւ զարդագրերով։ Ձեռագիրս՝ որ անյիշատակարան եւ անթուական է եւ* 1785*ին յիշատակ տրուած է Միաբանութեանս, նախընթացին չափ ընտիր չէ ընթերցուածոց մէջ, ինչպէս կրնայ տեսնուիլ մեր հրատարակութեան ծանօթութիւններէն, ուր* B *տառով նշանակուած է։ Մեր կանոնները կը գտնուին՝ Թղ.* 14*ա*—35*բ։*

3. *Կանոնագիրք մեր Մատ. Թիւ՝* 58 (*այժմ՝* 100) *ողորկ եւ փայլուն թուղթ, բաւական մաքուր նոտրգիր, կարմրագիր լուսանցագծերով, վերնագրութեամբք եւ սկզբնագրերով.* (*թուղթք՝* 257. *մեծութիւն՝* $21\times15,5$. *գրութիւնն՝ երկսիւն, իւրաքանչիւրը՝* $15\times5$, *տողք՝* 23։) *Անթուական այս ձեռագիրը, որ* 1838*ին մեր Մատենադարանը մտած է, յոռի ցեղին կը վերաբերի։ Բոլորովին այլափոխեալ կը գտնենք կանոններն, որոնք նոյն իմաստով շատ անգամ բոլորովին ուրիշ նախա-*

դասութիւններով կը բացատրուին։ Օձնեցւոյն Հաւաքումն աճանաչելի է այս կարգի կանոնագրոց մէջ։ Մեր Հրատարակութեան մէջ նշանակուած են ձեռագրիս տարբերութիւնքն՝ C տառով։ Մեր կանոնները կը գտնուին՝ Թղ. 2ա—16բ։

4. C ձեռագրին հետ դրիւքն ու մեծութեամբ, գրութեան կերպով եւ ըստ ներքին արժէքին նոյն է ուրիշ ձեռագիր մ'ալ, զոր այս պատճառաւ C² կը նշանակենք։ Ձեռագիրս է Կանոնագիրք մեր Մատենադարանի Թ. 62Ա (այժմ՝ 297.), որ ողորկ թղթի վրայ յոռի նոտրգիր գրչութիւն մըն է՝ կարմրագիր լուսանցագծերով, վերնագրութեամբք եւ սկզբնատառերով։ Առաջին ձեռքէն է միայն կանոնագիրքը (թուղթք՝ 167. մեծութիւն՝ 21×16. գրութիւնն՝ երկսիւն, իւրաքանչիւրը՝ 14×5. տողք՝ 26.) վասն այժմու կաշեպատ փայտէ կազմին մէջ աւելցուած է վերջը բոլորովին ուրիշ թղթէ, գրչէ եւ ուրիշ նիւթով գրութիւն մը։ Մեր կանոնները ձեռագրիս մէջ կը գրաւեն Թղ. 1ա—10ա։

Ասոնք են մեր Մատենադարանը գտնուած ձեռագիրք, որոց վրայ աւելի ընդարձակ տեղեկութիւնք տալ այժմ մեր ծրագրէն դուրս է։ Ասոնցմէ զատ համեմատութեանց մէջ առնուած են G եւ La, որոց վրայ քիչ մ'ետքն. վասն նախ պէտք է խօսիլ DEF օրինակաց վրայ։

Ինչպէս քննութեանս սկիզբը ծանուցի՝ Կանոնագրոց ձեռագիր քննութիւն մը եւ բազմաթիւ ձեռագրաց համեմատութիւնք, մասնական ընդօրինակութիւնք, դիտողութիւնք թողուցած է հանգուցեալ Վ. Հ. Յովսէփ Վրդ. Գաթրճեան, որուն քննութեան այն մասերն՝ որ մեր նիւթոյն կը հային, յիշած ենք մեր այս ուսումնասիրութեան մէջ այլեւայլ տեղեր։ Արդ այս թղթոց մէջ "Վարդ. Առաք.„ գրութեանս համար երեք ձեռագրաց տարբեր ընթերցմունք գտայ նշանակուած

մեր Մատ. թիւ 44 ձեռագրէն եղած ընդօրինակութեան մը վրայ։ Աւելորդ չհամարեցայ այս ընթերցուածքն ալ՝ որ ձեռագրաց ընտրելագոյն կարգի կը վերաբերին, նշանակել մեր հրատարակութեան համեմատութեանց մէջ՝ զանոնք D, E, F նշանակելով։ Այս ընթերցմունքն ուստի ուղղակի ձեռագրէ քաղուած չեն՝ ձեռագիրքը չըլլալով տրամադրութեանս ներքեւ, այլ Վ. Հ. Ցովսեփայ նշանակած տարբերութեանց վրայ յեցեալ են։ Արդ այս երեք ձեռագիրներէն՝

5. D տառով նշանակած ենք զայն, զոր Վ. Հ. Ցովսէփ “Մելքիսեդեկեան օրինակ„ կը կոչէ իւր քննութեան եւ համեմատութեանց մէջ, եւ որուն վրայ կը գրէ ի միջի այլոց, “Եթէ ցայժմ ձեռքերնիս պտըտող օրինակաց պէս հարիւրաւոր օրինակներ ժողվէինք, չէինք կրնար ան ծառայութեանց եւ ոչ մէկ մասն ունենալ, զորոնք մեզի կ'ընէ աս նորագիւտ մի միակ օրինակը.„ զոր Վ. Հ. Ցովսէփ համեմատած է մեր Թ. 44 ձեռագրին հետ։ “Մելքեսեդիկեան„ կը կոչէ անոր համար որ “1865 Մայիս ամսոյն վերջերը„ ընդունած էր զայն համեմատելու “արդիւնաւոր պաշտօնակից Ցարգ. Տիմոթէոս Վարդապետ Մելքիսեդեկեանէն„, որ զայն “Կարնէն՝ իր հայրենիքէն՝ մասնաւորապէս„ Վ. Ց. Ցովսեփայ անտիպ “աշխատութեան համար բերել տուած էր։„ Ձեռագիրը գրուած էր “ի թուականութեան Հայոց ՌՁԷ եւ Հոկտ. ամսոյ Ե, եւ ի մարդեղութենէն Քրիստոսի մինչեւ ցայս ամս ՌՈԼԸ, ձեռամբ ... Խաչատուր դպրին„ ուստի՝ 1638ին։

6. եւ 7. E տառով նշանակած ենք այն ձեռագրին ընթերցմունք, զոր Վ. Հ. Ցովսէփ “առաջին օրինակ Երուսաղէմայ„ կը կոչէ, իսկ F տառով զայն՝ զոր “Երկրորդ օրինակ Երուսաղէմայ„ կ'անուանէ։ Վասն զի Վ. Հ. Ցովսէփ “Ապրիլ 9ին 1866 տարւոյն„ Երուսաղէմ հանելով՝ առիթ

ունեցած է տեսնել Ս. Յակոբայ Վանաց մատենադարանին ձեռագիր երկու կանոնագիրքն, որոնց "երկուքն ալ իրարմէ տարբեր տառն, այլեւայլ գրիչներէ ընդօրինակուած, սակայն երկուքն ալ վերոյիշեալ Մելքիսեդեկեան օրինակին տեսակէն„ զորոնք սակայն չէ կրցած լիովին բաղդատել այլեւայլ պարագայից բերելով, բայց "գոնէ ամենակարեւոր բաղդատութիւնները ընել եւ երկուքէն ալ շատ մը դիտողութեան արժանի կէտեր նշանակել„ կրցած է։ Ասոնց մէջ "առաջինն„ (— ուստի մեր՝ E) ձեռագիրն է նոտրգիր հին գրեալ "ի թուին Հայոց ՌՁԵ (այսինքն՝ 1636ին) Սեպտ. ամսոյ ԻԲ ձեռամբ... Զատիկ սուտանուն դպրի որդւոյ Գրիգորի։„ Իսկ "Երկրորդն„ (— ուստի մեր՝ F) ձեռագիրն է "Նոտրագիր, նախընթացէն հնագոյն՝ աւարտեալ "ի թուին Հայոց ՌԾԸ (այսինքն 1609) Փետրուարի ԺԷ... ի վայելումն Թորոսի՝ դպրի որդւոյ Աթապէկի։„ Թէ այս E, F ձեռագիրք այժմու Երուսաղէմայ մատենադարանին մէջ ինչ թիւ կը կրեն, անծանօթ է ինձ։

Ասոնցմէ զատ մէկ երկու տեղ նշանակուած կը գտնուին մեր համեմատութեանց մէջ "Տէրոյենց„ եւ "Ս. Խաչ„ անուանք՝ որոց քով ընդհանրապէս նշանակած ենք K (= Գաթրճեան), ցուցընելու որ այն սակաւաթիւ տարբերութիւնք Հանգուցելոյն նշանակածներէն են՝ առաջինը "Յովհաննէս Տէրոյենց Պատուելւոյն քով մեծագիր„ ձեռագրէ, որ է "Նոտրագիր նոր, որուն գրութիւնը լմնցած է Հայոց ՌՄԺԶ տարին Դեկտ. 7ին„ "ի Տէր Մատթէոս յետնեալ գրչագրէ.„ իսկ երկրորդն է "Սկիւտարու Սուրբ Խաչի դպրոցին մատենադարանին մեծագիր մատեանը, նոտրագիր, 1830ին Կ. Պոլիս՝ Փիշմիշեան Միքայէլ Ամիրայի հրամանաւ... երեք ձեռագիրներէ բաղադրելով ընդօրինակուած։„ Վերջապէս մէկ երկու տեղ յիշուած է՝ ըստ K "Պորճեան„ օրինակը, որ Հռոմ նոյն մա-

տենադարանը կը պահուի, եւ որ “1634ին Թէքիրտաղ գրուած է:” — Այս վերջինք շատ ցանցառ կը յիշուին մեր համեմատութեանց մէջ:

8. Մեր հրատարակութեան համար բոլոր համեմատութիւնք եղած լմնցած էին եւ բնագիրը տպագրութեան պատրաստ էր, երբ ձեռքերնիս ինկաւ “Ծիլն Աւարայրի” թերթին երկու տետրները:[1] Աղաբէգեան “Կանոնագիրք” վերնագրոյն ներքեւ համառօտ տեղեկութեան մը մէջ կ'իմացընէ հետեւեալը. “Շատոնց էր որ մենք հետամուտ էինք ձեռք բերել մի կանոնագիրք, բայց միշտ մեր հետամտութիւնը պարապն էր ելած. վասն զի որքան Կանոնագիրք որ տեսած էինք, ոչ մէկը մի ամբողջութիւն չունէր. ոմանք թերի էին, ոմանք վատ եւ նոր օրինակուած, ոմանք էլ հատակտոր բան. վերջապէս այս անգամ մի բախտաւոր պատահմունք մեր ձեռքը ձգեց մի ընտիր եւ ամբողջ ձեռագիր Կանոնգրքի՝ բամբակէ թղթի վրայ գրած թէեւ առանց յիշատակարանի:” Ուրիշ տեղեկութիւն չի տրուիր ձեռագրին վրայ, բայց անոր բովանդակութիւնը կը գրուի մեր առջեւ՝ “Շարագրութիւն կանոնաց եղեալ եւ այս կարգ եւ չափ գլխոյն” վերնագրոյն ներքեւ,[2] ուստի կ'իմանանք որ ձեռագիրը ԾՋ հատած ունէր, որոց առաջինն է մեր “Կանոնք Առաքելականք.” իսկ վերջինն ԾՋէն ետքն անթիւ՝ “Տեառն Յովհաննու Մանտակունւոյ ի կոչումն ապաշխարութեան:” Ասկէ ետքը գրուած կը գտնենք “Վարդ. Առաք.” ըստ այնմ ձեռագրին՝ Ներածութիւնն եւ մինչեւ Կանոն Է Մարտի թերթին[3] եւ մնացեալը Ապրիլի թերթին մէջ:[4] Այս ձեռագիրն արդեամբք ընտիր

---

1 “Ծիլն Աւարայրի” Բ Տարի 1867, Թիւ Գ՝ Մարտ (էջ 126—136) եւ Թիւ Դ՝ Ապրիլ, (էջ 153—167:) Տես վերը՝ էջ 19:

2 “Ծիլն Աւարայրի” 167, Գ, էջ 129—130:

3 Անդ, Գ, էջ 131—136:

4 Անդ, Դ, էջ 153—167:

*տեսակէն է, ինչպէս կրնայ տեսնուիլ մեր հրատարակութենէն, ուր Ց տառով նշանակած ենք իւր ընթերցմունքն։*

*9. Ծանօթ է վերջապէս որ Վահան. Վ. Մինասեանի հրատարակած "Սոխակ" թերթին մէջ լոյս տեսան Կանոնագրոց վրայ քանի մը յօդուածներ։ Առաջինը ("Խօսնակի" մէջ[1])՝ որ "Կանոնագրոց" վրայ կը խօսի ընդհանրապէս՝ Մաղաքիա եպ. Օրմանեանի գրչէն, կրնանք մէկդի դնել. վասն զի նախ՝ մեր խնդրին հետ ուղղակի կապ չունի, ըստ որում "Վարդ. Առաք." կանոնաց վրայ ի մասնաւորի չ'իջնար. եւ երկրորդ՝ վասն զի յօդուածն այնպէս տարապայման անքննադատութեամբ գրուած է, որ չ'արժեր անով զբաղիլ։ Ի՞նչ յարգ կրնայ ունենալ գրութիւն մ'որուն մէջ օրինակի համար սա նախադասութիւնը կը գտնենք "Եթէ առ հասարակ քրիստոնեայ եկեղեցիներուն կանոնները քննենք, (— ի հարկէ՝* **Հնագոյն** *կանոնագրոց քննութեան առեն միայն* **Յունական** *եւ* **Ասորի** *կանոնք կրնան ի նկատի առնուիլ, եւ ո՛չ ուրիշները. —) Հայ. Եկեղեցւոյ կանոններն են, որ ամենէն աւելի* **հնաւանդ դրութեան, առաքելական հաստատութեան եւ նախնական դարե-րուն** *կերպարանը կը կրեն։" Բաղձալի էր ի հարկէ որ այս այսպէս ըլլար։ Բայց դժբախտաբար բոլոր հայ գրականութեան մէջ չկայ գիրք մ'որ աւելի* **կեղծ դրութիւններով** *խճողուած,* **քննական կերպարանափոխութեանց** *աւելի ենթարկուած եւ* **բնագրոյ աւելի անհաւատարիմ** *ըլլայ քան մեր Կանոնագիրքը։ Կարծենք մեր քննութիւնք պարզեցին օրինակի համար Հայ Կանոնագրոց առաջին իսկ կտորին "***առաքելական հաստատութիւնն***", Դ դարու* **տարի ան-**

1 Տես "Խօսնակ Հայ. եկեղեցւոյ," Հանդէս շաբաթական, 1888, Թիւ 5, էջ 73—80։ Ծանօթ է որ «Խօսնակ» դադրելով՝ սկսաւ լոյս տեսնել "Սոխակ Հայ. եկեղեցւոյ,, Հանդէս շաբաթական, (Կ. Պոլիս, տպ. Գ. Պաղտ. Հրա. Վահան Վ. Մինասեան, 1888)։

վաւերականի մը մէջ, իսկ “Հնաւանդ գրութիւնն„ Ե դարու խմբագրէ մը ծայրէ ծայր կրած կամայական կերպարանափոխութեան մէջ, որուն ենթարկուած տեսանք բոլոր միւս կտորները՝ Նիկիոյ եւ այլ ժողովոց անգամ. եւ վերջապէս մեր կեղծ գրութեան բոլոր Հայ կանոնագրութեանց վրայ ըրած ազդեցութեան մէջ տեսանք անոնց “Նախնական պարզութեան„ կերպարանքը։ Անհնար է ըմբռնել առողջ մտքի մը թէ ինչ նպատակ ունի այս կարգի տարապայմանութիւն (chauvinisme) այնպիսի խնդրոց մէջ, որոնք զուտ գիտնական ըլլալու էին, ինչպիսի է կանոնագրքի թարգմանութեան մը բնագրաց հաւատարիմ ըլլալը կամ ոչ։

Թողլով այս շեղումն՝ — որուն պատճառն այն էր որ մեր քննութեանց հետեւութեամբ հարկ էր անյիշատակ չթողուլ այս կարգի գրութեանց գոնէ մին իբրեւ օրինակ, — կ'անցնինք այժմ նոյն թերթին վերջին մասերուն, որոնց մէջ մեր “Վարդ. Առաք.„ թարգմանուած է աշխարհաբար։ “Խօսնակի„ յաջորդող “Սոխակ„ թերթին չորս թուերու մէջ գրուած է այս թարգմանութիւնն,[1] որմէ դուրս առնուած է Ներածութիւնը եւ կը սկսի բուն կանոններէն։ Անշուշտ աւելորդ նկատելով Ներածութիւնը՝ թարգմանուած ըլլալու չէ այն, եւ ո՛չ թէ որովհետեւ կը պակսէր թարգմանչին գործածած ձեռագրին մէջ։ Ծանօթ ամէն ձեռագիրք ունին զայն։ Թարգմանութիւնը վերջէն ալ կիսատ մնացած է՝ թերթին հրատարակութեան դադրելովն, ուստի կը հասնի մինչեւ աշխարհաց ցուցակին Ե կտորը։

Դժբախտաբար ամենեւին տեղեկութիւն չի տրուիր այն ձեռագրին վրայ՝ որմէ եղած է թարգմանութիւնը։ Սակայն թարգմանութենէն դատելով՝ բաւական ընտիր ձեռագիր մ'ըլլալու է այն։

---

1 Տես “Սոխակ„, 1888, թիւ 10, էջ 358—361. թ. 11, էջ 374—378. թ. 14, էջ 421—425 եւ թ. 15, էջ 436—441։

Արդ ուր որ կրնայինք ստուգութեամբ գուշակել թարգմանութեննէն անոր գործածած ձեռագրին ընթերցուածքն, զանոնք նշանակած ենք La համառօտութեամբ։ Թարգմանութիւնն ընդհանրապէս յաջող պէտք ենք անուանել եւ հաւատարիմ։ Ի բաց առնելու է քանի մը տեղերն՝ ուր քանի մը փոփոխութիւններ եղած են՝ կամ մեկնաբանութիւնք եւ կամ՝ որչափ կ'երեւայ՝ կամաւոր զանցառութիւնք։ Աւելորդ չէ յիշել քանի մ'օրինակ, որպէս զի յախուռն դատած չերեւանք, եւ որպէս զի ընթերցողն ինքնին դատէ։ Կամաւոր զանցառութիւն է օրինակի համար, երբ Է կանոնին սա խօսքը "եղիցի տաւն Ծննդեան եւ Յայտնութեան... աւր Զ Յունուարի ամսոյ ըստ յունարէն բնոյ՝„ թարգմանուած կը գտնենք,[1] այսպէս. "Ծննդեան եւ Յայտնութեան տօն... կատարուի յունուար վեցին։ Խնդագին ուրախութեամբ„ եւն։ Ինչո՞ւ դուրս մնացած է հոս "ըստ յունարէն բնոյ„ խօսքը։ Կ'երեւայ թէ թարգմանչին վնասակար երեւցած է՝ "Առաքելոց„ անուն կրող կանոնին մէջ թողուլ որոշում մը թէ Ծննդեան տօնը կատարուի Յունուար 6ին, երբ "ըստ յունարէն թուոյ„ Յունուար 6 է, որմէ գուցէ Հայ եկեղեցւոյ տօնացուցին նկատմամբ անհաճոյ հետեւութիւններ կը կարծէր ծագիլ։ Բայց սուրբ հեղինակին այս "ըստ յունարէն թուոյ„ խօսքն անվտանգ կրնար տեղը մնալ. զոր նոյնպէս անփոփոխ պահած են թարգմանիչն ու խմբագրիչը, եւ զոր կը գտնենք Ս. Եփրեմայ քով ալ, ինչպէս վերը տեսանք։[2] — Զգիտեմ կամաւո՞ր է արդեօք երբ Ժ կանոնին այն խօսքը թէ "զկնի պատեքին կատարեսցեն չէ... աւր յետ յարութեան նորա եւ արասցեն տաւն յիշատակի վերացման նորա առ Հայր„ եւն (— որով Համբարձման տօնը Զատկէն չէ... որ ետքը կը դրուի՝ ըստ

---

[1] Անդ, թիւ 10, էջ 361, կան. Է։
[2] Տես վերը՝ էջ 68։

Հնագոյն սովորութեան,[1] —) կը թարգմանուի այսպէս.[2] «Պասեքէն այսինքն յարութենէն յետոյ քառասուն օր տէրունի է, թող կատարուի տօն ի յիշատակ վերացման Տեառն» եւն, ուստի նորագոյն սովորութեան փոխելով տօնին օրուան թիւը: Ինծի ծանօթ բոլոր ձեռագիրք Հաւատարմութեամբ պահած են «յիսուն օր,» այսպէս ըլլալու է անշուշտ նաեւ La ձեռագրին մէջ, եւ թարգմանիչն ըրած կ'երեւայ փոփոխութիւնն, ինչպէս «տէրունի է» թարգմանութիւնն ալ կը վկայէ, որ մեկնաբանութիւն է, ուստի եւ ոչ մէկ ձեռագրի համեմատ:

Բաւական յաճախ կը տեսնենք մեկնաբանութիւններ աւելցած թարգմանութեան մէջ, որոնք մտցուած են փակագծի մէջ առնուիլ, որով ընթերցողը չէր կարծեր զանոնք իբր մաս բուն բնագրին: Օրինակի համար ԺԴ կանոնին վերջին խօսքը (— «եւ վկայք՝ որ ոչ ունին զմկրտութիւն ջրոյն, արեամբն իւրեանց փրկեսցին,» —) եղած է այսպէս.[3] «Իսկ վկայներ — Նահատակք — որք չեն մկրտուած իրենց արեամբ պիտի փրկուին, այսինքն իրենց արիւնն իրենց ջուր մկրտութեան թող համարուի:» Իմաստը ճիշդ է, բայց այն մեկնութիւնք պէտք չէին իբրեւ մաս բնագրին դրուիլ: ԺԴ կանոնին սա խօսքերը «...եթէ իցէ ոք երկմիտ ի Հաւատս... նա զմարդիկ խաբէ եւ ոչ զԱստուած, այն որ ոչ Հաւատայ ինքնակամութեան առաջի նորա,» թարգմանուած է[4] «...այն մարդն որ Հաւատքին մէջ թերի է եւ երկմիտ... նա զմարդիկ կը խաբէ եւ ոչ զԱստուած, որոյ առջեւ կամակորութիւնք [illegible] են:» Վերջինս շատ ճիշդ չէ. այն խօսքն ասորաբանութիւն մըն է, որ կընշանակէ՝ «որուն առ-

1 Տես վերը՝ էջ 47—48:
2 «Սոխակ», Թ. 11, էջ 374—5:
3 Անդ, էջ 376:
4 Անդ, էջ 376, ԺԴ:

ջեւ նենգութիւնք (կամ հնարագիտութիւնք) չեն գործեր„ եւ որուն վրայ վերն առիթ ունեցանք խօսելու։[1] Ի կանոնին այն խօսքը թէ "Անարատքն որ սուրբ ի մամոնայէ իցեն, ուղղինաց եւ կարգի եկեղեցւոյ հմուտք, եթէ (եւ) յանարգաց ոք իցէ, ի քահանայապետութիւն կարգեսցեն„ — թարգմանուած է մեկնողական յաւելուածներով այսպէս.[2] "Նոքա որ սուրբ եւ անարատ են մամոնայէ — ու-[illegible] եւ եկեղեցւոյ օրինայն եւ կարգաց հմուտ, եթէ անարգաց ոք իցէ — այսինքն աշխարհական թէպէտ ընտրուած եւ կոչուած չէ ի քահանայութիւն, այլ [illegible], արժանի թող լինին քահանայապետութեան„ եւն։ Իմաստն այն ըլլալու է որ բարձր պաշտամունք չսեպհականուին ազնուականաց կամ բարձրագոյն դասին։ Շատ ճիշդ չէ նոյնպէս այս միեւնոյն կանոնին վերջին խօսքին (— "զի ի ձեռն նորա [առաջնորդին] խնդրեսցի չարութիւն եւ բարութիւն, մեղք եւ արդարութիւն յամենեցունց. զի դէտ եւ հովիւ է իբրեւ զՍամուէլ զի շրջէր եւ կորչէր եւ հրաման տայր եւն —) հետեւեալ կերպով թարգմանութիւնը. "Զի Սամուէլի պէս դէտ եւ հովիւ են, պիտի շրջին նային թէ ուր կայ չարութիւն ու բարութիւն, ուր մեղք եւ առաքինութիւն. ամէն տեղ կարգադրութիւններ պիտի ընեն„ եւն։ ԻԱ կանոնին մէջ "Նորոյ ուխտիս„ թարգմանուած[3] է "Նոր-ուխտի այն է Քրիստոսի.„ քիչ մ'եւսքն ալ այն խօսքը թէ Առաքեալք այն կանոնները դրին ոչ միայն իրենց համար, այլ եւ իրենց յաջորդաց (— "...այլ եւ այնոցիկ՝ որ զկնի իւրեանց լինելոց իցեն„ —) եղած է "որք իրենցմէ յետոյ պիտի գային ի Հաւատս Քրիստոսի.„[4] եւ քիչ մ'եւսքը դարձեալ "եւ եղեն նոքա քարոզք ճշմար-

1 Տես վերը՝ էջ 94—95, 172։
2 "Սոփակ„, թ. 11, էջ 378։
3 Անդ, թ. 14, էջ 421։
4 Անդ, թ. 15, էջ 436։

տութեան ընդ առաքեալսն՝ Բանին կենաց„ խօսքը փոխագրուած է ոչ շատ յաջողութեամբ՝ այսպէս. “Եւ Բանին կենաց փարողէն Առաքելոց քարոզ եղան ճշմարտութեան:„[1]

Վերջապէս մէկ երկու տեղ ալ ուր Հայ ձեռագիրք մթարութիւն մ՚ունին եւ բաւական պէսպիսութիւն, այնչափ յաջող եղած չերեւար La ձեռագրին ընթերցումը: Օրինակի համար սա խօսքը թէ Յակոբոս “եղեւ հրամանատար եւ առաջնորդ եկեղեցւոյն որ յԵրուսաղէմ (որ) շինեցաւ ի Սիոն„ որչափ ալ աղաւաղած ըլլայ ձեռագրաց մէջ, անհնար է պատմական անտեղութեամբ թարգմանել՝ ըստ Laի “...որ եղաւ առաջնորդ եւ հրամանատար եկեղեցւոյն, որ յԵրուսաղէմ. շինեցաւ Սիոն:„[2] Այսպէս նաեւ ԺԳ կանոնին սա խօսքը “աւրինակէր Մովսէս եւ Ահարոն զհանդերձեալն (ոմանք “զհանդերձեալսն„) լինելոյ փոփոխումն ստուերագրին, հրամայէր ջրով լուանալ„ եւն, որչափ ալ աղաւաղ ըլլայ՝ դժուար է յաջողութեամբ թարգմանուած համարել այսպէս.[3] “Մովսէս եւ Ահարոն օրինակ էին այն բաներուն՝ որ պիտի լինէին յետոյ: Ստուերագրին փոփոխումը կը հրամայէր ջրով լուացուիլ„ եւն, ուր վերջին նախադասութեան իմաստն անհնար է ուղիղ համարիլ:

Այսչափը բաւական համարելով La ձեռագրին վրայ՝ կը կնքենք այսու “Վարդ. Առաք.„ գրութեան մեր գործածած ձեռագրաց վրայ խօսիլն: Աւելորդ է ըսել թէ շատ ձեռագիրք կան ամէն կողմն Կանոնագրոց՝ ուստի եւ մեր գրութեան, բայց զանոնք գործածել չէինք կրնար: Եւ կարծենք առձեռն եղած ձեռագիրքն ու համեմատութիւնքն արդէն յինքեան բաւական են խմբագրել

[1] Անդ, Թ. 15, էջ 438:
[2] Անդ, էջ 440:
[3] Անդ, Թիւ 11, էջ 375:

Հայերէնին բաւական լաւ բնագիր մ'ունենալու, որուն վրայ շատ մ'այլ ձեռագիրք դժուարաւ աւելի բան մը կրնան աւելցընել, — բայց եթէ այժմու ծանօթ կանոնագրքերէն շատ աւելի մեծ հնութիւն մ'ունենան՝ գոնէ իբր ԺԲ—Ժ դարերն հասնելով. եւ մանաւանդ եթէ երբեք կանոնագրքէն անկախ օրինակ մը գտնուի մեր կանոնաց կամ Նախնական թարգմանութիւնը։ Բայց այս վերջին կէտերս դեռ եւս լոկ բաղձալիք են։

---

Մնաց մէկ երկու խօսք ըսել Յաւելուածներուն համար գործածուած ձեռագրաց վրայ։ Առաջնոյն՝ այն է Յակոբայ առ Կոդրատոս թղթոյն համար ըսենք վերն[1] որ առաջեւնիս ունէինք մեզի համար եղած ընդօրինակութիւն մը Վենետկոյ "Ա կանոնագրքին" (էջ 318), ինչպէս նշանակուած է ընդօրինակութեան ճակատը։ Թէ այս ձեռագիրն՝ որ անթուական կ'ըսուի, այժմ Վենետկոյ Մատենադարանին ինչ թիւը կը կրէ, ծանօթ չէ ինձ։

Իսկ երկրորդին՝ այսինքն Ագդէի կանոնաց համար գործածուած են մեր Մատենադարանին վերը յիշուած չորս ձեռագիրք, այսինք Թիւ 44 (Թղ. 27ա—30բ.) Թ. 15 (Թղ. 50բ—58ա.) Թ. 58 (Թղ. 16ա—22ա) եւ Թ. 62Ա (Թղ. 10ա—14բ.)։ Հրատարակութեանս հիմն առնուած է առանցմէ առաջինը, բայց ի մասնաւորի համեմատութեամբ Էջմիածնի Մատենադարանին մէկ ձեռագրին՝ որուն "Մայր Ցուցակի" մէջ յիշուած բազմաթիւ կանոնագիրքներէն[2] որն ըլլալն մեզ յայտնի չէ, ուստի եւ ամենեւին տեղեկութիւն չունինք անոր վրայ, զոր սակայն գործածած է Աբէլ արքեպ. Մխիթարեանց իւր "Պատմութիւն ժողովոց" երկասիրութեան մէջ՝ առանց աւելի տեղեկութիւնա-

---

[1] Տես վերը՝ էջ 123 եւն։

[2] "Մայր-Ցուցակ", էջ 44—46, Թիւք՝ 721—746։

լու։[1] M տառով նշանակած ենք զայս։ Քանի մը տեղ նշանակուած են նոյնպէս N տառով ընթերցուածոյ տարբերութիւնք, որոնք (ըստ K) կը գտնուին Վենետկոյ Զ կանոնագրոց մէջ (այժմ թիւ՝ 274, Է, գ.)։ Այս վերջինս թղթեայ բոլորգիր ձեռագիր մըն է, զոր գրած է Վրթանէս անուն անձն "ի թուականիս Հայոց ՉԼԴ (= 1285 ի յապրիլն Զ եւ ի Սահմի ԻԸ։„

Այս տեղեկութիւններէն ետքն անցնինք վերջին կէտին, այն է մեր կանոնաց արաբական եւ եթովպական թարգմանութեան վրայ քանի մը խօսք ըսելու։

## 11.

Շատոնց ծանօթ էր որ "Վարդ. Առաք.„ կը գտնուի նաեւ արաբերէն խմբագրութեամբ։ Մեր քննութեան սկիզբը (տես էջ 11 եւն) յիշած ենք Կրէպ, Վանսլէպ եւ Beveridge գիտնականաց այս մասին կարծիքն, որ մատնանիշ կ'ընէին Պօտլեան եւ Վատիկանեան արաբական երկու ձեռագրաց վրայ, որոնք Լ. կանոնաց հաւաքումմ'ունէին, եւ Պիքքէլ յանուանէ յիշած էր "Գործք Առաքելոց եւ Կանոնք նոցա Լը տիտղոսով հաւաքումն, որ կը գտնուի Ասեմանեայ քով գործոյն վերջը կցուած արաբական ձեռագրաց ցուցակին մէջ։[1] Եւ արդեամբք այս վերջինն ուրիշ բան չէ, ինչպէս մեր ձեռքն եղած ընդօրինակութիւնը կը ցուցընէ։ Թէեւ ո՛չ արաբականն եւ ո՛չ եթովպականն ուղղակի գործք ունին Հայոյն հետ, անհրաժեշտ էր զատոնք ալ անտես չընել. բայց երկուքն ալ հրատարակուած չըլլալով՝ չէինք կրնար գաղափար մ'ունենալ ատոնց վրայ, բայց միայն Վանսլէպի

1 "Պատմ. Ժողով. Հայ. Եկեղ.„ էջ 9—18։
2 Ass., Bibl. Or. I, 619.

տուած համառօտ բովանդակութիւնէն։ Այժմ երկուքէն ալ օրինակ մ'ունինք առջեւնիս, եւ այն երկուքն ալ համեմատութեամբ կրկին ձեռագրի։ Արաբականը կը պարտինք Մեծ. Յովհ. Վրդ. Միւքճեանի բարեացակամութեանն, որուն միջնորդութեամբ Պր. Գէորգ Քալիթեան օրինակած է զայն կատարեալ ճշգրտութեամբ Վատիկանի Թ. 632 ձեռագրէն եւ համեմատած Պարպերինեան մէկ ձեռագրին հետ, որուն թիւը դժբախտաբար չէ նշանակուած։ Եթովպականը կը պարտինք ծանօթ հայագէտ ուսուցչապետ Կոնիբերի, որ ինքնայօժարութեամբ լուսանկարել տուած էր Բրիտանական Թանգարանին Թ. 753 եթովպական ձեռագրին այս մասերը (7 տախտակ, իւրաքանչիւրն երեքսիւնեան)։ Այս ամենուն պարտք կը համարինք հոս ալ հրապարակաւ մեր շնորհակալութիւնը յայտնել։ Առիթ ունենալով 1894 տարւոյ հոկտեմբերին Պերլին գտնուելու՝ կրցանք հոն համեմատել գոնէ Ms. Or. fol. 398 եթովպական ձեռագիրն ալ, որով երկու բնագիրքն ալ տպագրութեան համար պատրաստուեցան, եւ որ լոյս կը տեսնեն գործոյս գերմաներէն հրատարակութեան մէջ՝ հանդերձ գերմ. թարգմանութեամբ։

Մեզի Հայոցս անուղղակի միայն կապ ունին սոնք. ուստի այստեղ ամբողջութեան համար միայն քանի մը խօսք պիտի ըսենք այս խմբագրութեանց եւ սոնց ձեռագրաց վրայ։ Ինչպէս հայն՝ նոյնպէս արաբականն եւ եթովպականը Կանոնագրոց մէջ կը գտնուին, եւ այն՝ արաբականը սովորաբար Կանոնագրոց ճիշդ առաջին կտորն է հայոյն պէս, իսկ եթովպականը Կանոնագրոց հինգերորդ կամ վեցերորդ կտորն է սովորաբար։

Մեր ձեռքն եղած արաբականն ըսինք Վատիկանու Թ. 632 ձեռագրէն ընդօրինակուած է։ Վատիկանեան արաբական ձեռագրաց վրայ ման-

րամասն տեղեկութիւն տուած է ծիրանաւորն Անճելօ Մայ։[1] Թիւ 632[3] չորեքծալ թղթի վրայ գրուած ձեռագիր մըն է 226 թղթերէ բաղկացած։ Մայ այսպէս կը ցուցակագրէ առաջին կտորները․ 1 “Գործք Առաքելոց եւ կանոնք նոցա Լ․„ 2․ “Կանոնք Առաքելոց ի ձեռն Կղեմայ ԶԲ„ եւն, ուստի ճշդիւ ինչպէս կը գտնուին նաեւ Հայ կանոնագրոց մէջ։ Ձեռագրիս սկիզբը գրուած է Աղեքսանդրիայի եկեղեցւոյ եկեղեցական կանոնաց մէկ ցանկը, “զորս հաւաքեաց եւ գրեաց Մակար երէց եւ միանձն խպտի, ի վանս Ս․ Մակարի մեծի ի Սկիտիա, յամի մարտիրոսաց 940 (= 1372 Յ․ Ք․)։„ Իսկ Թիւ 623 ձեռագիրը[3] չենք կարծեր որ ունենայ մեր կանոնները․ ըստ Մայի ցուցակին անոր հինգերորդ կտորն է “համառօտութիւն կանոնաց առաքելոց եւ ընդհանրական ժողովոց„, իսկ չորրորդ կտորն է “վասն գործոյ երկոտասան առաքելոյ եւ Հ աշակերտաց։„

Արդէն այս ձեռագիրը կը ցուցընէ որ արաբականը 1372ին արդէն կար․ սակայն կ'երեւայ թէ շատ աւելի վեր կը հանէ զմեզ Վատիկանու Թիւ 149 արաբական ձեռագիրը,[4] որ մեծադիր միածալ գրութիւն մըն է 302 թղթէ՝ “բամբակեայ„ թղթի վրայ գրուած շատ գեղեցիկ գրչութեամբ, եւ այն ձեռագիրներէն է զորոնք Եգիպտոսէն Վատիկանի գրատունը բերաւ Յովսէփ Սիմոն Ասսեմանի։ Ձեռագիրս Խպտաց Աղեքսանդրիայի եկեղեցւոյ կանոնագիրքն է՝ երկու մասի բաժնուած, զոր հաւաքած է Մակար երէց եւ միանձն ի Սկիւտիա “որ

1 Angelo Mai, Scriptorum veterum nova Collectio, Tom. IV Romae 1831։ Հոս էջ 1—629 կը նկարագրուին “Ձեռագիրք Արաբականք որ կամ ի Քրիստոնէից գրեալ են եւ կամ յիրս քրիստոնէականս հային։„ Անկէ ետքը կը նկարագրուին (էջ 630—651) պարսկերէն եւ (էջ 652—670) տաճկերէն ձեռագիրները։

2 Մայ, էջ 570, Ա. 28։

3 Մայ, էջ 566, Ա. 19։

4 Մայ, էջ 275։

իբր Ժ դարուն Ց. Ք. ծաղկեցաւ„ կը յաւելու Մայի։ Ձեռագիրս, որ երկսիւնեան է, ունի նաեւ (Թղ. 2բ) Մակարի յիշատակարանն, ուր կ'ըսուի “Մակարիոս, մին յերիցանց Վանաց Ս. Յովհաննու կրտսերի յանապատին Սկիւռեայ։„ Բայց հոս խնդիր մը կայ՝ վերն յիշուած ձեռագրին եւ աստ մէջ հաւաքիչը նոյն անձն է, որ հոն Ս. Մակարի վանաց, հոս Ս. Յովհաննու վանաց միաբան կ'ըսուի։ Շատ կէտեր նոյն են, բայց հոն կ'ըսուի թէ Մակար 1372ին հաւաքեց եւ գրեց կանոնները, իսկ հոս կ'աւանդէ Մայ թէ կանոններս հաւաքած է Մակար երէց, որ Ժ դարուն Ց. Ք. կ'ապրէր։ Ցամենայն դէպս, եթէ միայն ուղիղ է Մայի աւանդածը, Ժ դարուն մնած է մեր կանոնաց արաբ խմբագրութիւնը Մակարի հաւաքման մէջ, որով այս ժամանակէն յառաջ ըլլալու է թարգմանութիւնը։

Թէ Թիւ 149 արդեամբ ունի մեր “Վարդ. Առաք.„ յայտնի է Մայի ցանկէն։ Կանոնագրոցս առաջին հատորին իբրեւ առաջին կտոր կը դրուի սա գրութիւնը. “Գործք Առաքելոց զկնի վերանալոյն Քրիստոսի Աստուծոյ եւ Տեառն մերոյ, եւ հրամանք, կանոնք եւ օրէնք որ եդան ի նոցանէ, որք յունարէն տէփղոսք կոչին, եւ են կանոնք երեսուն։„ Արդէն այս վերնագիրը ճիշդ նոյն է մեր ձեռքն եղած արաբական խմբագրութեան հետ։ Ամէն տարակոյս կը վերցուի անով որ հոս ալ կանոնները կը սկսին (Թղ. 6) կանոնով մ'որ դէպ ի արեւելք աղօթել կը հրամայէ եւ ճիշդ նոյն է մերինին հետ։ Հոս ալ մեր կանոններէն ետքը կը յաջորդեն Երկրորդ Առաքելական կանոնք սա վերնագրով՝ “Այլ կանոնք ԶԲ եդեալք յառաքելոց, յորժամ ժողովեալ էին ի վերնատանն Սիոնի, եւ աւանդեալք ի նոցանէ Կղեմայ։„ — Թիւ 153 (Մայ՝ էջ 286) կ'երեւայ թէ չունի զ“Վարդ. Առաք.„ սակայն կ'երեւայ թէ ունի Թ. 154 (Մայ՝ էջ 291) որ քառածալ 376 թղթերէ ձեռագիր

մըն է (յառաջ Վատիկանի արաբականաց Թ. 23ն էր ի կարգին։) Աստ սկիզբը պակաս է. ըստ Մայի կան հոս "Այլեւայլ Խրատք եւ Սահմանադրութիւնք ընծայեալք Առաքելոց", որոնց գլխաւորներն կը խօսին Կիրակին սուրբ պահելուն, Դշ. եւ Ուրբաթ եւ ուրիշ պահքեր պահպանելուն, աղօթից եւ եկեղեցական ձեռնադրութեանց վրայ։ Ասոնք են մերձաւորապէս "Վարդ. Առաք." գրութեան նիւթը։

Արաբական ձեռագիրք Կանոնագրոց առ հասարակ բաւական շատ են, ուստի գրեթէ ամէն մեծ մատենադարանի մէջ կրնայ գտնուիլ մեր "Վարդ. Առաք.:" Հոս աւելորդ չէ յիշել մէկ քանին։ Պոտլեան գրատան մէջ կայ՝ ըստ ցուցակի Յովհ. Ուրիի,[1] ամբողջական Կանոնագիրք մը՝ Թիւ Արաբականաց 61 եւ 62։ Առաջինը Մարտիրոսաց 1397 (= 1680 Յ. Ք.) տարին գեղեցիկ գրուած ձեռագիր մըն է 293 թղթէ, հաւաքումն Աղեքսանդրիոյ եկեղեցւոյն կանոնաց։ Աստ սկիզբը կայ "Գործք (apotelesmata) Առաքելոց եւ Կանոնք նոցա Լ.", որուն կը յաջորդեն Կանոնք ի ձեռն Կղեմայ՝ 2Բ։ — Թ. 62 (Ուրի, էջ 40) նոյն ձեռքէ շարունակութիւն է առաջնոյն կամ Կանոնագրոց երկրորդ հատորը՝ 238 թղթէ։ Թէ այս ձեռագրին մէջ ստուգիւ կայ "Վարդ. Առաք." յայտնի կը տեսնուի նոյն գրատան ուրիշ մէկ ցուցակէն, զոր հրատարակեց Նիքոլ. (1835ին։)[2] Յիշեալ ձեռագիրը հոս 36 թուահամարը կը կրէ, եւ իւր եօթներորդ կտորն է "Գիրք որքոց Առաքելոց եւ Կանոնք նոցա եւ Գործք յետ վերանալոյ տեառն մերոյ եւ Աստուծոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, եւ զոր ինչ

---

1 Bibliothecae Bodlianae codicum Manuscriptorum orientalium Catalogus . . . a Joanne Uri. Pars I. Oxon. **1787**, p. **39**ff.

2 Catalogi codicum Mss. orient. Bibl. Bodl. Pars secunda Arabicos complectens, confecit Nicoll. Oxonii **1835**, p. **32**ff.

եղին կարգեցին, է Գրոցն Կղեմայ.„ (كتاب اخبار الرسل من كتاب اكلمنطس . . .) եւ ութերորդ կտորն է "Կանոնք Առաքելոց եւ Աշակերտաց Նոցա, որ կոչին Տէփղոսէ[1]„ (التى تدعى التطلسات), զորոնք կարգեցին, կ'ըսուի, Առաքեալք օգնութեամբ Հոգւոյն սրբոյ Սիոնի վերնատան մէջ, եւ զորոնք Կղեմէս Հռոմայեցի գրեց՝ թուով ՁԱ. ըստ այսմ ճշդիւ "Վարդ. Առաք.„ եւ Կանոնք Առաքելոց ի ձեռն Կղեմայ:[2] Նոյն ցանկին Թ. 40 (էջ 41) ալ Կանոնաց հաւաքումն է 1667ին գրուած, բայց չենք գտներ յիշուած մեր կանոնները: Ուրիշ ձեռագիրք կան Բրիտանական Թանգարանն ալ[3]:

Առնցմէ մենք ունինք մէկ օրինակ մը Վատիկանու եւ օրինակ մ'ալ (համեմատեալ) Պորճեան մատենադարանաց. վերջնոյս թուականը մոռցուած է գծբախտաբար նշանակել: Նախ քան ասոնց ներքնոյն վրայ խօսք մ'ըսելը՝ տեսնենք համառօտիւ եթովպական ձեռագիրքը:

Ծանօթ է որ Եթովպացիք ալ "Ժողովոց Գիրք մը կամ Sênodos ունին: Ասոր վրայ տեղեկութիւններ տուած էր Յ. Լուտոլֆ[4], եւ նորերս նաեւ Վ. Ֆէլլ[5], վերջինս Պերլինի եւ Թիւպինկէնի

---

[1] "Տէփղոստ„ նաեւ Հայ թարգմանութեանց մէջ կը գործածուի Կանոնաց համար՝ այսպէս Կայսերաց Օրինաց մէջ:

[2] Ցուցակագիրը կը նշանակէ սա ձեռագրին մասին խօսող սա գրութիւնը, (զոր չկրցանք տեսնել.) J. E. Grabe, An Essay upon two Arabik Mss. of the Bodl. Library. and the ancient book called the Doctrine of the Apostles. Oxon. 1711, p. 59. — Կրէպի, Վանսլէպի կարծիքները տես վերը՝ էջ 11:

[3] Ցիլման նոյն գրատան եթովպական ցանկին մէջ (տես քիչ մ'եաքը) կը յիշէ Cod. Arab. Christ. XIX Musei Britanici (Catal. p. 21ff.) եւն ուրիշներ:

[4] J. Ludolf, Comment. ad Histor. Aeth. Francf. 1691, p. 301—340. (Հմմտ. Ludolf, Historia Aethiopica, III, c. 4, § 27.)

[5] W. Fell, Canones Apostolorum Aethiopice, Lipsiae 1871, p. 1—11, ի մասնաւորի՝ էջ 8—11, ուր յաջորդ կտորները մի առ մի յիշուած են:

երեք ձեռագրաց վրայ յենլով. երկուքն ալ այլեւայլ կտորներ հրատարակած են։ Այս սինհոդոսաց գիրքը մանրամասն ցուցակագրած է նաեւ Տիլման՝ Պերլինի եթովպական ձեռագրաց ցանկին մէջ[1]։ Եթովպական Կանոնագրոց մէջ սկիզբն այլեւայլ կտորներ կ'ըլլան Առաքելոց ընծայուած, որոնք են՝ ա. "Վճիռք Առաքելոց՝ թուով ՀԱ."[2] — բ. "Կանոնք Առաքելոց՝ ԾԶ."[3] — գ. "Կանոնք (Երկրորդ՝ ի ձեռն Կղեմայ) Առաքելոց՝ ՁԱ,"[4] համառօտ խմբագրութեամբ. — դ. "Այլ վճիռք Առաքելոց ՁԱ, որ Տէբտըլիսաթ (Abtelisât, համմտ. վերն արաբականը) կոչին." ի ձեռն Կղեմայ կանոնաց ընդարձակագոյն խմբագրութիւն մը.[5] — ե. "Այլ վճիռք Առաքելոց" թուով 10, բայց տասներորդը 15 մանր կանոններով, ամբողջը ԻԵ կանոն՝ քաղուած Առաքելոց Սահմանադրութեանց գրքէն (Ը, 28—45։)[6] — Ասոնցմէ ետքը կու գայ "Դիդասկալիա Առաքելոց" Եթովպականը[7] (զ.) "Այս են Գիրք Պատմութեանց Առաքելոց (= արաբ. كتاب اخبار) զկնի

---

[1] Die Handschriften-Verzeichnisse der Kgl. Bibliothek zu Berlin. Dritter Band. Verzeichniss der abessinischen Handschriften von A. Dillmann, Berlin 1878. Nr. 23 (p. 15) եւ Nr. 24 (p. 17).

[2] Պերլինի (ցուցակի Տիլմ.) Թ. 23, Թղ. 2—58բ եւ Թ. 24, Թղ. 1—56բ։ Ասոնց առաջին 23 հատը հրատարակած է Լուտոլֆ՝ յիշեալ իւր գրքին մէջ (էջ 314—328)։

[3] Թ. 23, Թղ. 56բ—66ա. Թ. 24, Թղ. 56բ—66. Հրտ. Ֆէլլ՝ իւր գրքին մէջ (էջ 13—25։)

[4] Թ. 23, Թղ. 66բ—71, իսկ Թ. 24 իբրեւ հինգերորդ կտոր ունի՝ Թղ. 93—99։ Ֆէլլ իւր գրքին մէջ այս կտորը հոս չի յիշեր։

[5] Թ. 23, Թղ. 72—85ա. Թ. 24, Թղ. 67—81ա։ Վերջինիս մէջ կայ նաեւ (Թղ. 100—105) թուղթ մը Պետրոսի առ Կղեմէս, զոր ունէր նաեւ Թ. 23։

[6] Թ. 23, Թղ. 85ա—94ա. Թ. 24, Թղ. 81ա—92։ Տես Ֆէլլ, էջ 9, ուր կ'ըսուի թէ սոյնց սորբերէնը կը գտնուի առ Մայ (Script. Vet. nova collectio, X, p. 184ff.) եւ արաբերէնի մէջ (այսպէս ի ձեռագրին Huntington 31) սա խորագիրը կը կրեն՝ "Սահմանադրութիւնք Առաքելոց վասն եկեղեցւոյ եւ քահանայութեան։"

[7] Թ. 23, Թղ. 94բ—100բ, Թ. 24, Թղ. 105ա—113ա։ Արաբականը՝ տես վերը։

վերանալոյ տեառն մերոյ եւ Աստուծոյ Քրիստոսի ղոր ֆըրեոյ Կղեմենդոս ի տեղի (փոխանակ) Առաքելոց.» (= արաբ. من كتاب اكليمنطس) ուստի ճշդիւ արաբական խմբագրութեան համեմատ. եւ արդէն անոր հետ կը նոյնանայ: — Այսկէ զատ կան՝ Է. Կանոնք Առաքելոց ՁԱ կամ Տիտղոսք, նոյն՝ բայց քիչ մ'ուրիշ խմբագրութեամբ վերը յիշուած չորրորդ կտորէն.[1] եւ Ը. Կանոնք Առաքելոց ԻԵ (տես վերը Է.) քիչ մ'ուրիշ խմբագրութեամբ:[2] Անկէ ետքը կու գան եկեղեցւոյ միւս կանոնք՝ ամբողջն ընդամէնը 28 կտոր:

Պերլինի գրատունն երկու ձեռագիր կայ այս Սինհոդոսական գրքէն, մին Ms. Or. fol. 398 (Տիլմանի ցուցակի՝ Թ. 23) եւ միւսը՝ Ms. Or. fol. 396 (Տիլմ. Թ. 24): Առաջինը կրցայ ամբողջովին ունենալ, երբ անցեալ (1894) տարւոյ վերջերն նոյն գրատունն այցելել կարելի եղաւ: «Վարդ. Առաքելոց» մասն (Թղ. $94^b$—$100^b$, սիւն 2) կրցայ մասամբ համեմատել ձեռքս եղած (Բրիտանական Թանգարանի) ձեռագրին ընթերցուածոց հետ եւ մասամբ օրինակել: Մեր այս գործոյն գերմ. հրատարակութեան մէջ դրուած է այս համեմատութեանց արդիւնքն, որ շատ կը տարբերի Լոնտոնի օրինակէն: Պերլինի կրկին ձեռագիրքն մագաղաթի վրայ մեծադիր ձեռագիրներ են՝ մեծ եւ վայելուչ եթովպական տառերով, խորագիրք եւն կարմրագիր. առաջինը՝ 233 թղթերէ (մեծութիւն 32,5×22,5. գրութիւնն երկսիւն, իւրաքանչիւրը՝ 23×8, տողք՝ 30:) Անթուական է ձեռագիրս, որ ըստ Տիլմանի ԺԵ դարէն է, իսկ ընթերցմունքը շատ կողմանէ սխալագիր: — Դժբախտաբար կարելի չեղաւ համեմատել երկրորդ ձեռագիրն ալ, որ նոյնպէս մագաղաթեայ է

1 Թ. 23, Թղ. 100բ—112ա. Թ. 24, Թղ. 113ա—127ա:

2 Թ. 23, Թղ. 112ա—121բ. (Թ. 24 չունի:) Փէլլ տար տեղ կը յիշէ «Կանոնք Առաքելոց ԾՁ.» ուրիշ խմբագրութեամբ եւ աւելի համառօտ:

258 թղթերէ եւ մասամբ թերթերը սխալ կազմուած. (մեծութիւն՝ 31,5×26,5, երկսիւն՝ ամէն մէկը 20 տող։) Խորագիրք եւն կարմրագիր են, մեծ եթովպական տառերով. ըստ Տիլմաննի իբր 120 տարուան հնութիւն ունի, եւ Թղ. 58բ կը խնդրուի աղօթել Յոսու Թագաւորին եւ Վալատտա Թագուհւոյն համար։

Եթովպական ձեռագիրք կան ուրիշ տեղեր ալ. բայց հոս յիշելու ենք Լոնտոնի այն օրինակն որ մեր հրատարակութեան հիմն առնուած է։ Արդէն Վրայթի հրատարակած "Ցուցակ Մագդաղա հաւաքման" Բրիտանական թանգարանին,[1] կը ցուցընէ որ քանի մ'օրինակք կան հոն։ Ինչպէս վերն ըսինք՝ հայագէտն Կոնիբեր բարեհաճած էր նոյն թանգարանի մէկ օրինակին լուսանկարն առնուլ տալ եւ խաւրել մեզ, եւ այս է՝ զոր հիմն առինք հրատարակութեանս եթովպական բնագրին։ Հայագէտն 1894 Ապրիլ 17 եւ Մայիս 22 թուականաւ նամակներուն մէջ կը բացատրէ որ "Վարդապետութիւն Առաքելոց" կայ նոյն գրատան Եթովպական սա ձեռագրաց մէջ՝ Ms. orient. 793 (Թղ. 130բ եւն.) 752 (Թղ. 103ա.) 795 (Թղ. 51բ) եւ 775 (Թղ. 160ա։) Ասոնց ամէնն ալ մագաղաթի վրայ գրուած են գեղեցիկ գրչութեամբ, բայց ամէնն ալ անցեալ դարու սկիզբէն կամ մէջերէն են։ Թ. 795 մեծ հատոր մըն է՝ երեքսիւնեան ամէն էջ, ուր "Վարդապետութիւն Առաքելոց" 7 էջ կը բռնէ կամ 21 սիւն, եւ ամէնէն հինն է նախընթացներէն, թէեւ ինքն ալ ԺԸ դարու սկիզբը գրուած է։ Թ. 795ի 7 էջերը լուսանկարուած ունինք առջեւնիս 1/5 պզտիկցուցած[2]։ Աւելի մանրամասնութիւնք

---

[1] W. Wright, List of the Magdala Collection etc. ZDMG 1870, p. 610ff.

[2] Հայագէտը մէկ նամակին մէջ Թ. 795 կ'ըսէր այն ձեռագիրն, որուն լուսանկարը պիտի խաւրէր. միւսին մէջ՝ թէ Թ. 753 լուսանկարել տուած է։ Ուղիղն ըլլալու է այս կամ Թ. 752, զոր կը յիշէ նաեւ Wright վերոյիշեալ ցուցակին մէջ,

անս Բոյթի Եթովպական ձեռագրաց ընդարձակ ցուցակին մէջ (W. Wright, Catalogue of the aethiopic manuscripts in the British Museum. Lond. 1877.)

Երկու օրինակ ունինք ըստ այսմ մեր ձեռքն եթովպական խմբագրութենէն։ Օրինակք Կանոնագրոց, ուստի եւ "Վարդ. Առաք.„ շատ կան եւրոպական գրատանց մէջ։ Այսպէս կայ Թիւպինկէնի համալսարանին եթովպական հաւաքման մէջ, որուն ցուցակն համառօտիւ հրատարակուած է Պոննի արեւելագիտական թերթին մէջ։[1] Կայ ուրիշ օրինակ մը Փարիզի ազգային մատենադարանին մէջ, ըստ ցուցակի Զոթէնպէրկի[2] Թ. 121 ուր կան Կանոնագրոց վերոյիշեալ կտորներն, ի մէջի այլոց (Թղ. 41 եւն) "Վարդապետութիւն Առաքելոց„ որուն խորագիրն ալ ճիշդ կը համաձայնի ունեցած օրինակս հետ, եւ որուն համար կ'ըսէ ցուցակագիրը թէ Curetonի ասորականի ուրոյն մէկ խմբագրութիւնն է։ Կայ նոյնը Փարիզի ուրիշ մէկ հաւաքման, այն է տ'Աբատիի ժողովածոյից մէջ[3]. նոյնպէս ի Հռովմ[4] եւ այլուր։ — Խպտի խմբագրութեան մը հետքը չկրցայ գտնել, թէեւ կարելի է որ գտնուի։

---

եւ որ գրուած է **1721—31**ին, եւ ունի նախ (Թղ. **103** եւն) Kalēmēntōs կամ Didascalia Apostolorum գրութիւնը, եւ (Թղ. **183**բ) Tĕmhĕrt za-aban hawāryāt կամ "Վարդապետութիւն Առաքելոց,„ Երկրորդը (Magdalla-Coll. Nr. **312** կամ **792**) գրուած է **1732—56**ի եւ է կանոնագիրք, ունենալով նաեւ ուրիշ կտորներ։

[1] Zeitschrift für die Kunde des Morgenlandes von Dr. Christian Lassen. Bonn **1844** (V), p. **164—201**: H. Ewald, die aethiopischen Handschriften zu Tübingen, էջ **179**, Թ. 7' **407** թղթէ։

[2] Zotenberg. Catalogue des manuscrits Éthiopiens (Geez et Amharique) de la Bibliothèque Nationale. Paris **1877**, p. **141**, Nr. **121**, d.

[3] Catalogue raisonné de manuscrits éthiopiens appartenant à Antoine d'Abbadie. Paris **1859**, Nr. **65**.

[4] Հմմտ. Assemani, Catalog. Cod. Mss. Bibl. Med. Palat. p. **96**, Cod. LVIII.

*Աղեքսանդրիոյ եկեղեցւոյ Ղպտիք ի հարկէ վերը յիշուած արաբականը կը գործածէին*[1]։

*Եթովպական խմբագրութեան հնութեան եւ ծագման մասին հետեւեալը կ'աւանդուի* Fethha Nagast *կամ "Գիրք Արքայից" հաւաքման ներածութեան մէջ։ Այս գիրքն, որ այլուր ալ կը գտնուի, կայ նաեւ Պոտլեան գրատան եթովպական մէջ* (*Թ*. 16), *որուն վրայ ցուցակագրողը՝ Տիլլման՝ ընդարձակ տեղեկութիւններ կու տայ*,[2] *եւ որ մասամբ հրատարակուած է*։[3] *Պոտլեան ձեռագիրն չորեքծալ* 217 *թղթէ կը բաղկանայ՝ երեքսիւնեան էջերով, գեղեցիկ գրչութեամբ* 1686—7*ին։ Ա մասին սկիզբը* (*Թղ*. 1—15) *ներածութիւն մը կայ երկու գլխի բաժնուած։ Առաջնոյն մէջ կանոնաց հաւաքման ծագման մասին խառնիխուռն կ'աւանդուի թէ Կոստանդիանոս ինքնակալը խնդրեց Նիկիայ գումարուած* 318 *եպիսկոպոսներէն որ դնեն կարգեր ու կանոններ քրիստոնէական սկզբանց համեմատ. եւ եպիսկոպոսք Աստուծոյ օգնութիւնը հայցելով՝ կազմած ըլլան Հին եւ Նոր կտակարանի կանոնական հաւաքումն։ Ասկէ ետքը կ'ըսուի թէ այս գիրքն* (*"Գիրք Արքայից"*) *յօրինած կամ հաւաքած է Իբն Էլասսալ, զոր եպիսկոպոսք յանձնեցին Կոստանդիանու որ ըլլայ հիմն եկեղեցական իրաւանց։ Այս զրուցին կարեւոր կէտն այն է որ*

---

[1] *Ղպտերէն կը գտնուին Էրէրօրք Առաքելական կանոնք, նոյնպէս Հիպողիտեայ անուն կրող կանոնք, զորոնք* **1848***ին հրատարակեց* Tattam. *Առաքելական կանոնքն հրատարակեց քանի մը տարի յառաջ նաեւ* P. Lagarde, Aegyptiaca. Göttingen **1883** p. **209—239**, *որ ունի* **71** *կանոն. էջ* **239** *կը սկսին քաղուածք Սահմանադրութեանց Առաքելոց եւն։ Ուրիշ հրատարակութիւնք եւն յիշել աւելորդ կը համարինք։*

[2] Catalogus codicum Mss. Bibl. Bodlianae, Pars VII. Codices Aethiop. digessit A. Dillmann. Oxonii **1848**, p. **24—31**,

[3] *Հմմտ*. J. Bachmann, Corpus iuris Abessinorum. I. Jus connubii. Berol. **1890**, *ուրիշ կտոր մը հրատարակած է* Fr. A. Arnold (Halle **1841**).

Իբն Էլասսալ հաւաքած է "Գիրքն Արքայից։„ Այս անձին (— տեղեկութիւն կու տայ Տիլլման —) բուն անունն է Աբու Իսխակ Բէնասսալ, ծննդեամբ եգիպտացի՝ Յակոբիտեանց աղանդէն, որ ծաղկեցաւ ԺԳ դարու սկիզբն՝ Աղեքսանդրիոյ Կիւրեղ Լակլակ (ՀԴ. երորդ) պատրիարգի օրով, եւ իւր յօրինած կանոնագիրքը կայ ձեռագրաց մէջ։[1]

Արդ յիշեալ Արքայագրոց Բ մասին սկիզբը կայ յառաջաբան մ'ալ,[2] ուր կը նշանակուին այն աղբիւրները՝ որմէ քաղուած են գրքին կտորները։ Առաջին աղբիւրը կը դրուի հետեւեալը. "Կանոնք, զոր կարգեցին Առաքեալք, յորժամ ժողովեալ էին ի Վերնատանն Սիոնի յետ վերանալոյ (Քրիստոսի) եւ իջանելոյ Հոգւոյն սրբոյ ի վերայ նոցա եւ մինչ չեւ ցրուեցեալ ի միմեանց երթալ ի քարոզութիւն։ Զայս կանոնս փոյթ յանձին կալան Մելքիտք եւ Նեստորականք Թարգմանել ի յոյն լեզուէ յարաբերէն. եւ գտանին եռս գրեալ — Յակոբիտս եւ — Ասորիս։ Առ Մելքիտս են կանոնքս թուով իբր 30. եւ կնիք (նշան) սոցա է նշանագիրն Այն„ (ع) Այստեղ իբրեւ աղբիւր յառաջ բերուածն է "Վարդ. Առաքելոց.„ յետոյ՝ իբրեւ երկրորդ աղբիւր՝ կը յիշուին Երկրորդ Առաքելական Կանոնք ի ձեռն Կղեմայ թուով 83, եւ որոնց համար կ'ըսուի թէ "զայսոսիկ Մելքիտք եւ Նեստորականք Թարգմանեցին

---

[1] Բէնասսալի մասին (Հմմտ. Տիլլման, էջ 25. ծան. k.) տես Assem. Catalogus Codicum Mss. Orient. Bibl. Palat. Metic. Florent. 1742, p. 100. իւր կանոնագիրքը (Nomocanon) կայ արաբերէն յիշեալ գրատան մէջ (Ասեմանի, անդ, թիւ 60, 61.) նոյնպէս Փարիզի երբեմն թագաւորական՝ այժմ ազգային գրատան մէջ (Catal. Mss. Orient. 1739. Cod. Arab. Christ. 121, 122.) Վատիկանի (Ass. B. O. I, 623, Cod. Arab. 10) եւ Պոտլեան գրատանց մէջ (Uri, Catalogus etc. թիւ 67, 69, 74։)

[2] Այս մասերէն շատ բան դրած է բնագրաւ եւ թարգմանութեամբ Nicoll. իւր վերը յիշուած ցուցակին մէջ (Cod. Mss. Orient. Bibl. Bodl. Catal. II, p. 41ff. տես թ. 40.)

յորաքերէն լեզու ի մեռ-մ մաքննի„ Հոս բուն եւ ծանրակշիռ կէտն այն է որ Նեստորականք կ'ըսուի թարգմանեցին, բայց նաեւ թէ յունարէնէ։ Վերջին կէտս կասկածելի է, վասն զի յունական հին խմբագրութիւն մը չէ եղած յերեւան, եւ այժմու արաբական խմբագրութիւնը շատ նշաններ ունի ասորերէն բնագրէ թարգմանուած ըլլալու։ Իսկ եթովպականը՝ տարակոյս չկայ՝ թարգմանուած է արաբականէն, եւ արդէն երկուքը միասին յատուկ խմբագրութիւն մը կը կազմեն՝ շատ մասամբ տարբեր ասորի եւ Հայ խմբագրութիւններէն։

Թէ՝ ինչպէս ասորին եւ Հայն՝ նոյնպէս արաբացի եւ եթովպական խմբագրութիւնքը շատ յաճախ գործածուած են կրօնական գրոց մէջ, կրնայ ինքնին հասկցուիլ. եւ արդէն վերոյիշեալ "Առաքելոց գիրքը„ նոյնը կը ցուցընէ։ Կը յիշուի նոյնպէս ի մէջի այլոց՝ Բէն-Տօյպ (Ben Toib) նեստորականին[1] Եկեղեցական կանոնաց հաւաքումը կամ Քրիստոնէական Դատաստանագիրքը։[2] Աս գիրքն երկու մասի բաժնուած է, որոնց առաջինն Եկեղեցական իրաց մասին է։ Արդ աստ մէջ՝ ինչպէս նիւթք կը ցուցնեն՝ գործածուած են մեր կանոնք (22 գլուխք։) Գրքիս ձեռագրին յիշատակարանը կ'ըսէ թէ "Կատարեցաւ մատեանս կանոնաց իրաւանց քրիստոնէական կրօնէից յաւուր Դշ., ի ԺԹ. ամսոյն Համլէ, յամի աշխարհիս 7178, շնորհաց՝ 262 (°), մարմնաւորութեան՝ 1678, մարտիրոսաց՝ 1402 եւ Մահմետականաց 1039 (այսպէս)... թարգմանեաց զայս Պետրոս որդի Աբդա-Սայդ„ եւն։

Վերը տեսանք որ Առաքելական կանոնքս յունարէնէ թարգմանուած կ'ըսուին։ Այս խօսքն առնելու է ընդհանրապէս կանոնագրոց վրայ, եւ ոչ յատկապէս "Վարդ. Առաքելոց„ գրութեան

---

[1] Հմմտ. իւր մասին Assem. Bibl. Orient, III, 1, p. 544.

[2] Հմմտ. Ասսեմանի, անդ, էջ 517։

արաբերէնին մասին։ Նոյն իմաստով խօսք մ'ալ կայ Վատիկանեան վերոյիշեալ ձեռագրին մէջ՝ մեր գրութեան ճիշդ ծայրը։ Այն տեղ երկար յորդոր մը եւ մեկնութիւն մը կցուած է "Վարդապետութեան Առաքելոց„ որ կը սկսի այսպէս. "Դարձեալ սկսցուք մեկնել զայս գիրս։ Իբր գտաք ի սաղմոս Դաւիթ ասել, Եթէ իջցէ օրհնութիւն յօրէնսդրէն եւ ելցէ յատուծանէ յատուծան, եւ ոչ տեսաք զայս, հարկ եղեւ մեզ փոյթ ի մէջ առնուլ Թարգմանել զսուրբ կանոնս է յունարէն լեզուէ Հռոմայոց է լեզու արաբերէն (نقل القوانين المقدسة من اللغة اليونانية الرومية الى اللغة العربية եւն։) Աւելորդ կը համարինք այս երկար մեկնութիւնը հոս պարզաբանել, որ ինչպէս ըսինք յորդորակ մըն է կանոնքն՝ ի մասնաւորի Առաքելոց տրուած կանոնները պահելու։ Յորդորակիս վերջն ալ սա վերջաբանութիւնը կայ. "Սկսարեցան կանոնք եւ Օրէնք, որ կոչին յունարէն Տիփղոսք (التطلسات), եւ են երեսուն կանոնք եւ Աստուծոյ փառք„ եւն։

Այս "Տիփղոսք„ խորագիրը յատուկ է արաբեթովպական խմբագրութեան։ Վատիկանի ձեռագրին ամէն էջին վրայ կրկնուած է այս խորագիրը تطلسات الرسل կամ Տիփղոսք Առաքելոց,„ իսկ սկիզբն որ բովանդակ Կանոնագրոց վերնագրոյ տեղ է, կը գրուի այսպէս. "Յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, միոյն Աստուծոյ, նմա փառք յաւիտեանս եւ ի վերայ մեր ողորմութիւն նորա։ Այս է Գիրք Պատմութեանց Առաքելոց ընտրելոց եւ Գործք նոցա զինի վերանալոյ Քրիստոսի Աստուծոյ մերոյ եւ Տեառն եւ զոր ինչ եդին հրամանս, կանոնս եւ օրէնս, եւ կոչին յունարէն Տիփղոսք, եւ են 30 կանոնք.[1]

[1] Պորճեան ձեռագրին մէջ հոս լուսանցագրութիւն մը կայ՝ "Այս է գիրք Օրինաց, եւ են երեսուն Օրէնք, եւ կոչին յունարէն Տիփղոսք առ Գործս (التطلسات الى السجيلات)

(هنا كتاب اخبار الابسطلين المختارين وتصرفهم بعد صعود المسيح الهنا وسيدنا وما وضعوه من الامور والقوانين والسنن Է — ԷՆ (ويسمى باليونانية التطلسات. وهى ثلثون قانون ուսք — է գրոց Կղեմայ.¹ (وهو من كتب اقليمطس) եւ ի սմա պատմի վասն առաքելոց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ կանոնք նոցա զոր կանոնեցին (կարգեցին) ժողովրդեան Աստուծոյ (Պորճ. "ժողովրդեան սրբոյ„) եւ առաքելական եկեղեցւոյ, որ գնեցաւ պատուական արեամբ նորա. եւ կարգեցին զայս կանոնս եւ եդին ի վերայ այնոցիկ, որ չոգան զկնի նոցա մտին ի հրաւէր (հաւանեցան կոչման) նոցա, եւ հաւատացին յԱստուած ի ձեռն նոցա յամենայն ազգաց եւ նաեւ ի Հրէից։ Եւ որ ինչ եդին զկնի նոցա աշակերտք նոցա՝ նշանաւորքն ի նոսա յամենայն գործս նոցա (Պորճ. "աշակերտք նոցա որ նմանող եղեն նոցա ի գործս եւ նաեւ յարդիւնս.„) եւ դարձեալ Սահմանքն (شراعهم) յԵպիսկոպոսաց նախ քան զժողովն ի Նիկիա, եւ զոր ինչ կանոնեցին նոքին իսկ Հարքն յիշեալք ի ժամանակս ժամանակս ի հաստատել զհաւատս աստուածային (— այսպէս ըստ Պորճ. —) եւ ի կարկել (եղծանել) զանհաւանս (զընդդիմա-

---

եւ է այս առաջին գիրք սահմանաց առաքելոց է վերնագրին Սէ-Ճէ, է գրոց կանոնաց „... (وهو اول كتاب كتبته الرسل من كتب القوانين)

¹ Եթովպականն՝ որ ունի արաբականին այս ընդարձակ վերնագիրն մինչեւ ցվերջը, սկիզբն այսպէս ունի. "Յանուն Հօր եւ որդւոյն եւ Հոգւոյն սրբոյ միոյն Աստուծոյ։ Այս է Սինհոդոս, Գիրք պատմութեանց Առաքելոց զկնի վերանալոյ Տեառն մերոյ եւ Աստուծոյ մերոյ Յիսուսի Քրիստոսի... զոր գրեաց Կղեմէնտոս ի տեղի առաքելոց, զոր կարգեցին յուղղութիւն եկեղեցւոյ սրբոյ, որ գնեցաւ պատուական արեամբն, եւ եդին զայսոսիկ որոց դնացին զկնի նոցա եւ եկին ի Հրաւէր (կոչումն) նոցա եւ հաւատացին յԱստուած ի ձեռն նոցա„ եւն եւն։ Շատ քիչ տարբերութեամբ ունի արաբականէն ինչպէս հոս՝ նոյնպէս գրեթէ ամէն տեղ, եւ անկէ ալ թարգմանուած է։

դարձս) եւ զանմիաբանս ճշմարտութեան, որ կոչեն յունարէն Հերետիկոսք, այսինքն Հերետութիւն (اراسيس) եւ բարձաւ որ ինչ բերէր յեղծումն աւետարանին (Պործ. “սրբոյ„) եւ այլոց գրոց„ եւն։ Քանի մ'այսպիսի խօսքերէ ետքը կը սկսի բուն գիրքը։

Արաբական-եթովպական խմբագրութիւնն ըսինք բաւական կը շեղի ասորականէն եւ Հայէն, եւ ունի 30 կանոն. մէկ երկու բան ալ տեղափոխուած կը տեսնենք։ Սկզբան Ներածութեան չեն յաջորդեր ուղղակի կանոնք, այլ վերջին մասը կամ աշխարհաց ցուցակը՝ իւրաքանչիւր առաքելոյ ունեցած գործունէութիւնն, եւ այն՝ համեմատաբար համառօտիւ. աշխարհացուցակի սպառելէն ետքը միայն կը յաջորդէ բուն Կանոնք, եւ անկէ ետքը ասորւոյն եւ Հայոյն միջանկեալ պատմական մասն, վերջինս աւելի ընդարձակ բանելով։ Մանրամասնութիւնք հոս աւելորդ են. վասն զի այս խմբագրութիւնն Հայ բնագրեն հետ ուղղակի կապ չունի։

# Ա.

## ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՑ

զկնի վերանալոյն Քրիստոսի առ Հայր իւր յերկինս, որպէս շնորհեաց նոցա առնել նշանս եւ բժշկութիւնս, եւ որպէս ընկալան առաքեալքն զպարգեւս Հոգւոյն սրբոյ եւ զկարգս եւ զկանոնս եւ զվարդապետութիւն եկեղեցւոյ սրբոյ. [որպէս եւ Պետրոս խրա-

---

Վերնագիրն ըստ ABDEFG = Առք.: Գրեթէ ամէն ձեռագիրք ուրիշ վերնագիր մ'ալ ունին "Սկիզբն առաքելական կանոնիս." C "Յառաջաբանութիւն առաքելական կանոնաց. Սահման եւ կանոն զոր եդին աշակերտքն Քրիստոսի յետ վերանալոյ փրկչին մերոյ յերկինս:" Այս վերջին՝ երրորդ՝ վերնագիրս ունին նաեւ DEFG "Սահմանք եւ կանոնք զոր եդին աշակերտքն [G աշակերտք] Քրիստոսի եկեղեցւոյ սրբոյ [F սրբոյ եկեղեցւոյ] յետ [F զկնի] վերանալոյ Տեառն:" Այս երրորդը պարզ կրկնութիւն է յետոյ իւրաքանչիւր կանոնաց սկիզբը գրուած վերնագրին: Իսկ Պերլինի ձեռ. "վասն առաքելական կանոնիս:"

‖2 Ամբողջ ներածութիւնս չունի L. — G վերանալոյ: ‖3 B ի յերկինս . . . որպէս եւ շնորհեաց . . . : — C որպէս շնորհեցաւ նոցա առնել նշանս եւն: ‖4 DEFG բժշկութիւնս եւ նշանս: ‖5 C . . . սրբոյ, զկարգս (առանց "եւ" զօ[illegible]ին.): ‖6 DEF զկանոնքս. AB զկանոնս՝ վարդապետութիւն [B վարդապետութիւնս]: ‖7 A եկեղեցոյ: —

տեալ ի ճշմարիտ վարդապետէն ուսանէր զեւթանասնեկին հեթն անգամ զմեղացն թողութիւն.] եւ թէ յոր կողմն չոգան մի մի ի նոցանէ, եւ թէ զիարդ բաժանեալ վիճակեցին զաշխարհ ամենայն ի ձեռն Հոգւոյն սրբոյ, եւ կամ յումէ եւ ուստի ընկալան գաւառքն Հռոմոց զձեռնադրութիւն քահանայութեան:

1. Յամին երեքհարիւրորդի երեսներորդի իններորդի իշխանութեան Յունաց, ի թագաւորութեան Տիբերեայ կայսեր Հռոմոց, որ աւր

---

ABC “որպէս Պետրոս . . .„ A եւ Պետրոսն. (Պերլ. “որպէս Պետրոսն:„) ‖[9] B զեօթանասնեկին եօթն. C զեօթանասնեկի եօթն, G զեւթանասնկին եւ եւթն: — C . . . թողութիւն եւ զամենայն կարգս հաւատոյ: ‖[10] A եւ յոր կողմն . . . (առանց “թէ„ ունենալու. F “եթէ„ կ'ըսէ), իսկ B “եւ յոր կողմ որ չոգան . . .„ ‖[11] Պերլ. “եւ զիարդ բաժանեալ.„ DEFG եւ եթէ զիարդ: ‖[12] BDE զաշխարհս: — A Հոգոյն: *C այս ամբողջն այլազգ ունի. “Եւ թէ յոր կողմանս չոգան իւրաքանչիւրքն ի նոցանէ, նաեւ որպէս կամ զիա՞րդ բաժանեալ վիճակեցան յիւրաքանչիւր աշխարհ եւ ընդ ոլորտս ամենայն. տիեզերաց ի ձեռն Հոգւոյն սրբոյ, կամ յումէ . . .:„ ‖[13] ABCD եւ Պերլ. “յումմէ:„ — ABC գաւառք: ‖[14] DEFG ձեռնադրութիւն . . . B զձեռնադրութիւնն քահանայութեանն:

§1. ‖[15] C Յամի: — BC երեօ հարիւրերորդի. BC զարմանալի եղանակաւ չունին “երեսներորդի„ բառը: ‖[16] ABEFG իշխանութեանն (= օրինակ Պերլինի:) — AEFG (եւ Պերլ.) ի թագաւորութեանն: ‖[17] A Տիբերիա. B Տիբերիայ . . . Հռոմոց: C . . . իններորդի իշխանութեան Տիբերեայ կայսեր Հռոմոց: — BC որ: ‖[18] AB (եւ Պերլ.) չորս:

չորք էր Մարգաց ամսոյ, յաւուր միաշաբաթւոջ՝ որ է կատարումն պենտակոստէին, ի նմին իսկ ի յայսմ աւուր եկին աշակերտքն ի Նազարէթէ Գալիլեացւոց, ուր աւետարանեաց Գաբրիէլ հրեշտակ սրբոյ կուսին Մարիամու զյղութիւն Տեառն, եկին ի լեառն Զիթենեաց, եւ Տէրն Քրիստոս աներեւոյթ տեսլեամբ ի մէջ նոցա զաւրացուցանել զնոսա եւ շնորհել զքահանայութեան ձեռնադրութիւն. եւ անդէն ի ժամուն մեծի առաւաւտուն կիւրակէին ամբարձեալ զձեռս իւր Տեառն՝ եդ ի վերայ գլխոյ մետասան աշակերտացն իւրոց՝ շնորհելով նոցա զաստիճան քա-

---

C որ եւ օր չորք էին: — AB (եւ Պերլ.) միաշաբաթոջ, C միաշաբաթոջն, որ եւս էր . . . (B չունի "որ է կատարումն„ բառերը.) ‖[19] A եւ Պերլ. "պենտակոստից.„ BC պէնտէկոստէից: — C յայնմ իսկ աւուր. DEFG ի նմին աւուր. ‖[20] C չունի "աշակերտքն:„ — AG ի Նազարեթէ Գալիլացւոց, G Գալիլեացւոց. B ի Նազարէթ Գալիլեացւոց. ‖[21] BD հրեշտակն: C հրեշտակապետն Գաբրիէլ: ‖[23] C ի լեառն Զիթենեաց եկին: — DG Տէր: C այլակերպ. "Եւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս յանկարծակի թափանցօրէն տեսլեամբ եղեւ ի մէջ նոցա՝ զարհուրեցուցանելով զնոսա. ուստի ի յառաւօտեան ժամուն . . .:„ ‖[24] B զօրացուցանել . . . զքահանայութեանն: ‖[25] DEFG զձեռնադրութիւն քահանայութեան: ‖[27] B առաւօտուն կիւրակէի: DEFG . . . ի մեծի առաւօտու ժամու կիւրակէին. C յաւուր մեծի կիրակէին: — ABCE զձեռն իւր: ‖[28] DEF Տեառնն. (C աստ տեղ "Ամենափրկիչն„ կ'ըսէ:) — G ի վերայ գլխոց. DEFG . . . մետասանեցունց. C ի վերայ գլխոց աշակերտացն իւրոց մետասանից. ‖[29] A եւ Պերլ.

հանայութեան։ [Եւ իբրեւ ընկալան նոքա զպարգեւս մեծի երիցութեանն՝ պատուէր առեալ ի կենարարէն նոյնպէս ձեռնադրել յաւծումն քահանայութեան զհնազանդեալ աշակերտսն իւրեանց. զի եղիցին քարոզք բանի աւետարանի իմում եւ սպասաւորք սեղանոյն ընդհանրական եկեղեցւոյ սրբոյ եւ մկրտել զամենայն հեթանոսս յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։]

2. Եւ յետ բանիցս այսոցիկ յանկարծակի եկն ամպ լուսաւոր եւ ընկալաւ զնա եւ վերանայր յերկինս։ Եւ արժանի եղեն առաքեալքն տեսլեան ամպոյն եւ վերացման Աստուածորդւոյն եւ նստելոյ ընդ աջմէ Հաւրն իւրոյ. եւ գոհա-

---

“շնորհելով ամենեցունց նոցա։” — AG երիցութեան։ ‖30 C այլակերպ. “իբրեւ ընկալան զիշխանութիւն մեծի երիցութեան, ապա պատուէր ետ նոցա օծանել եւ ձեռնադրել զհնազանդեալս իւրոյ աշակերտաց՝ քահանայս։” B եւ Պերլ. “օծումն” կ'ըսեն, բայց Պերլ. չունի “ձեռնադրել” բառը։ ‖33 AB եւ Պերլ. “աշակերտս.” G աշակերտսն իւրոյ։ ‖34 CDEFG քարոզ (= քարոզիչք) աւետարանին։ — B աւետարանիս իմում. (C չունի “իմում։”) ‖35 C ընդհանրականի եկեղեցւոյ. A ընդհանրական եկեղեցու։ — ABC չունին “եւ” զօդը “մկրտել” բառէն յառաջ։ ‖37 B անուն։ — Ամէն ձեռագիրք “Հօր.” — AB Որդոյ, (A եւ Հոգոյն։)

§ 2. ‖38 C յետ այսոցիկ յանկարծակի եւն։ ‖39 DEFG վերացաւ. (Պերլ. “յերկինն։”)

‖41 AB եւ Պերլ. “տեսութեան գալստեան ամպոյն”. C տեսլեանն ամպոյն, նաեւ վերացմանն։ — AB Աստուածորդոյն։ ‖42 DEF Հօրն, A Հաւր,

նային ցնծալից ուրախութեամբ եւ փառաւորէին զաստուած, (...) որպէս եւ ինքն իսկ ասէր ցնոսա [թէ Ես առաւել ուրախութիւն լիցի, յորժամ առաքեցից զՄխիթարիչ Հոգին սուրբ:] Եւ Նոքա ցնծալից բերկրութեամբ գոհանային, զի ընկալան զայն քահանայութեանն իբրեւ զՄովսէսն եւ զԱհարոն:

3. Եւ ի լեռնէն Ձիթենեաց եկեալ իջին Նոքա եւ ելին ի վերնատունն՝ [ուր վանքն իսկ էին.] ուր կերան զզատիկն տերամբն հանդերձ՝ ի տեղւոջն ուր եղեն հարցմունք աշակերտացն թէ ով իցէ որ մատնելոց իցէ զնա Հրէիցն. ի

---

B Հօր: C այս խօսքը ("եւ նստելոյ„ եւն) չունի: — C վասն որոյ գոհանային մեծաւ ուրախութեամբ եւ (— այս "եւ„ չունին AB եւ Պերլ.) փառաւորէին ...:„ ‖[44] Այս տեղ փակագծի մէջ կէտերով նշանակեցինք այն նախադասութիւնն որ դուրս ինկած է. տես վարը՝ Ծան. այս տեղւոյ: — DEF որպէս ինքն իսկ ասաց. C որպէս եւ ինքն ասաց: G ասաց ցնոսա: ‖[45] AB կ'ըսեն "լիցի.„ իսկ CDEFG "եղիցի:„ ‖[46] B... սուրբ Հոգի: ‖[47] Փխ. "բերկրութեամբ„ C կ'ըսէ՝ "ուրախութեամբ.„ DEFG ցնծային բերկրանօք եւ գոհանային: ‖[48] BCG... քահանայութեան իբրեւ զՄովսէս: — A եւ զԱհարոնն, FG եւ զԱհարոնն:

§ 3. ‖[50] "Եկեալ„ չունին DEFG. ‖[52] CF է— ուր կերան ... (C "կերին„:) — B զատիկն տէրամբ. (D սուրբ, EF Տէրամբն:) Վերջինս այլազգունի C՝ "փրկչաւ մերով„ փխ. "տերամբն հանդերձ:„ ‖[53] A ի տեղոջն, C ի տեղւոջ ընդ որում եղեն...: ‖[54] B որ մատնելոց է, C որ զնա մատնելոց է. DEFG որ մատնիցէ...: — AB Հրէից: ‖[55] A ի նմին տեղոջ,

*նմին տեղւոջ եղեն վիճմունք եւ հարցմունք, զմիմեանս հոգալ եւ խորհրդածել՝ թէ որպէս քարոզեսցեն զաւետարանն արքայութեան Տեառն ընդ ամենայն երկիր: Եւ զոր աւրինակ ի վերնատանն յայտնեաց Տէրն աշակերտացն զխորհուրդ սուրբ մարմնոյ եւ արեան իւրոյ՝ [ի փրկութիւն ընդունելով ի թագաւորել լուսոյն յաւիտենից.] սոյնպէս եւ անտի արարին խորհուրդ եւ սկիզբն քարոզել զաւետարանն արքայութեան ընդ ամենայն տիեզերս:*

4. *Եւ մինչդեռ յայսմ մաքառման էին աշակերտքն Տեառն եւ ածէին զմտաւ թէ որպէս քարոզեսցեն զաւետարանն Քրիստոսի յաշխարհս հեռաւորս եւ յաւտարաձայնս, զոր ոչ գիտիցեն*

---

C *ի տեղւոջն*: ‖56 Ամէնքը “*խորհրդածել*.„ միայն Մաղաքիա աղայի ձեռագիրն “*խորհուրդ ածել*.„ (K). ‖57 AB եւ Պերլ. “*զաւետարանն Տեառն արքայութեանն*„ (B “*արքայութեան*„.) C չունի “*Տեառն արքայութեան*„ բառերը: ‖58 ABC *ի վերնատունն յայտնեաց*: ‖60 DEFG եւ Պերլ. “...*իւրոյ՝ փրկութիւն ընդունելով*.„ (B կը կցէ “*թագաւորեալ լուսոյն* ...„ փխ. “*ի թագաւորել*.„) C *զփրկութիւն ընդունելով, թագաւորել տիեզերաց*: ‖62 B *արարին զխորհուրդ եւ զսկիզբն*. C *սոյնպէս անտի արարին սկիզբն քարոզելոյ եւն*: ‖63 AB եւ Պերլ. “*զաւետարանն արքայութեանն*:„

§ 4. ‖65 B *աշակերտք Տեառն*: ‖66 DEF կ'ըսեն “*թէ որպէս*...„ իսկ ABC եւ Պերլ. “*թէ գիտարդ*:„ ‖67 B *քարոզեսցեն* ... *զաշխարհս հեթանոսաց հեռաւորս եւ յօտարաձայնս* (ամէնքը “*յօտարաձայնս*,„ միայն A “*օտարաձայնս*:„) ‖68 C *զոր. ոչ գիտիցեն* ...: ‖69 EF *առէին այնպէս ե-*

զլեզուս նոցա. եւ ասէին պէսպէս եթէ՝ Զզաւրութիւնս սքանչելեացն եւ զնշանս եւ զբժշկութիւնս՝ զոր տեսաք զՏեառն, յուսացեալ եմք ի սուրբ անուն նորա զի առնէ ի ձեռս մեր առաջի ազգացն աւտարաց. բայց զոր ոչ գիտեմք զլեզուս նոցա, զիա՞րդ կարեն նոքա լսել մեզ, զոր ոչ գիտեն զլեզուս մեր, եթէ ո՞յր անուամբ առնեմք զնշանս եւ զբժշկութիւնս. ո՞վ ուսուցանէ նոցա եւ կամ ցուցանէ թէ անուամբն Քրիստոսի որ խաչեցաւ, առնեմք զայսպիսի նշանս եւ զմեծամեծ զաւրութիւնս:

---

թէ . . . : — AB "զօրութիւն (A զզօրութիւն) սքանչելեացն եւ զնշանս." իսկ DEFG "զզաւրութիւնս եւ զնշանս սքանչելեացն:" ||71 Փխ. "զոր տեսաք զՏեառն" (G "զՏեառնէ") BC կ'րսեն "զոր տեսաք ի Տեառնէ." C կը յաւելու "վասն որոյ յուսացեալ" եւն: ||72 C "ռամկաբար "...որ առնէ" փխ "զի առնէ:" — ABC եւ Պերլ. "առաջի ազգաց աւտարաց" (BC օտարաց). |73 Պերլ. "Բայց զի ոչ գիտեմք". B երկու անգամն ալ "զոր" ոչ գիտեմք ... զոր" ոչ գիտեն ...:" ||75 F "եթէ ո՞ր անուամբ." Պերլ. "եթէ որոյ անուամբ." C ազատ կերպով. "բայց սակայն մեք որ զլեզուս նոցա չգիտեմք, զիա՞րդ կամ ո՞րպէս ուսուցանել կարեմք թէ որով անուամբ կամ զօրութեամբ առնեմք:" ||77 Գրենք "եւ կամ ցուցանէ". G "եւ կամ ցուցանել եթէ". այլք աղաւաղած՝ A կամ իմացուցանէ. B իմացուցուցանէ նոցա կամ ուսուցանէ, DEF եւ կամ իմացուցանէ եթէ ... C այլազգ՝ "կամ ո՞վ պատմեսցէ նոցա." Պերլ. "ո՞վ ծանուցանէ կամ իմացուցանել:" — B թէ անուամբ ... C թէ անուամբն Քրիստոսի խաչեցելոյն: ||79 B զօրութիւնս. C զայսպիսի մեծամեծ նշանս. եւ . . . :

5. Եւ մինչդեռ յայսմ խորհրդի էին առաքեալքն, յոտն եկաց Սիմոն Պետրոս, վէմն հաւատոյ, հիմն եկեղեցւոյ, անդրանիկն առաքելոց, ասէ ցնոսա. Եղբարք, ոչ է մեզ գիտել զայս, թէ որպէս քարոզեսցուք զաւետարանն Քրիստոսի՝ աշխարհի. այլ հաւատամք եւ յուսամք ի հոգաբարձութիւն Նորա վասն մեր. զի խոստացաւ մեզ, թէ յորժամ ելանեմ ես առ Հայր իմ՝ առաքեմ առ ձեզ զՀոգի մխիթարութեան, եւ Նա ուսուսցէ զձեզ եւ յիշեցուսցէ

---

§ 5. ‖80 DEFG յայնմ խորհրդի. Պէրլ. "յայսպիսի հոգս էին„ կ'ըսէ, իսկ C փոխած՝ "ի մէջ այսպիսի խորհրդեան վարանեալ կային առաքեալքն...:„ ‖81 F ոտն եկաց: — G Սիմոն... վէմ...: — ABCFG (վէմն) հաւատոյ: ‖82 A հիմն եկեղեցոյ, անդրանիկն առաքելոցն: ‖83 CDEF Ե-ասէ ցնոսա: — B եղբայրք: — C ազատ. "ոչ է մեզ վայելուչ վասն այսօրիկ տրտմիլ եւ հոգալ թէ որպէս... աւետարանն արքայութեանն Աստուծոյ:„ ‖85 B լաւ եւս "յաշխարհի.„ հոս ամբողջ խօսք մը դուրս ինկած է. տես վարը՝ Ծան. այս տեղւոյ: — F Բայց (փխ. "այլ„) հաւատամք. C ազատ. "այլ պարտիմք հաւատալ խոստմանն Քրիստոսի Աստուծոյ, մինչ գնամ առ հայրն իմ, .ոչ թողից զձեզ որբս, այլ առաքեմ ի հօրէ զմխիթարիչն, այսինքն զՀոգին, որ ուսուցանէ„ եւն: ‖86 B ի հոգայբարձութիւն: ‖87 A որժամ ելանեմ, DEF յորժամ երթամ, G եթէ յորժամ երթայց...: ‖89 AB չունի "եւ„ զօդն "Նա ուսուսցէ„ բառերէն յառաջ. (B ...ուսուսցէ ձեզ զամենայն:„) — DEFG եւ յիշեցուսցէ զամենայն ինչ, որ արժան..., C... զամենայն, զոր ինչ արժան իցէ գործել եւ իմանալ կամ...:

ձեզ զամենայն ինչ, զոր արժան իցէ ձեզ իմանալ եւ գործել եւ ուսուցանել։

6. Եւ մինչդեռ Սիմոն Պետրոս խաւսէր զայս ընդ առաքեալսն եւ յիշեցուցանէր նոցա զխոստմունսն Տեառն, յանկարծակի հնչիւն բարբառոյ լսելի լինէր նոցա եւ հոտ անուշութեան բուրէր նոցա, եւ ի միջոյ բարբառոյն եւ ի մէջ նորանշան հոտոյն անուշութեան՝ որ ամենեւին անընդելական էր այսմ աշխարհի, լեզուք լեզուք

---

§ 6. ‖ 92 C եւ մինչ Պետրոս...։ — BCG խօսէր զայս։ ‖ 94 ABD զխոստմունս. G զխոստումն։ ‖ 95 AB եւ զհոտ անուշութեան բուրէր... (B չունի “բուրէր„ բառէն սկսեալ մինչեւ “նորանշան հոտոյն,„ ուստի՝ “եւ զհոտ անուշութեան, որ ամենեւին անընդելական էր...։„) — C “բուրէր„ բառէն ետքը ազատ կերպով կը գրէ· “Եւ Հոգի սուրբ իջեալ յերկնից հանգեալ եղեւ առ նոսա։ Եւ ապա լեզուք առաքելոցն իբրեւ բաժանեալք ի հրոյ սկսան խօսիլ։ Եւ իւրաքանչիւր առաքեալքն ըստ ընկալման լեզուաց պատրաստեցին զանձինս իւրեանց զի երթիցեն մի մի առ այնպիսի յաշխարհ, որ համաձայնիցի լեզուացն՝ զորս ընկալան։ Եւ ապա համաժողովեցան առաքեալքն շնորհօք սուրբ Հոգւոյն, եւ սահմանեցին կարգս, օրէնս եւ կանոնադրութիւնս ընդհանուր եկեղեցւոյ, որք համաձայնին սրբոյ աւետարանին ճշմարտութեան. եւ աւանդեցին մեզ գրով իբրեւ անջնջելի յիշատակ հաւատարիմ վարդապետութեան իւրեանց։„ ‖ 96 A ի մէջ բարբառոյն եւ ի մէջ...։ ‖ 97 Հոս միայն DEF ունին “անուշութեան„ ու “նորանշան հոտոյն„ բառերէն ետքը, միւս ձեռագիրները չունին, իսկ G նորանշան հոտոյն անուշակութեան։ ‖ 98 F անընդելական էր այսմ յաշխարհի, եւ լեզուք...։ — BC մէկ

հրեղէնք իջին առ նոսա ի Հոգւոյն սրբոյ յերկնից, եւ հանգեան ի վերայ միոյ միոյ ի նոցանէ, եւ իբրեւ զբոց յայտնապէս նստեալ ի վերայ գլխոյ նոցա. եւ ըստ լեզուին՝ զոր ընկալան մի մի ի նոցանէ, այնպէս պատրաստեցին զանձինս իւրեանս զի երթիցեն յաշխարհն՝ յայն, որ խաւսիցին զլեզուն զայն:

7. Եւ մինչ էին ի միասին գունդն առաքելական, նովին պարգեւաւք [որ տուան նոցա՝ շնորհք] Հոգւոյն սրբոյ ի նմին աւուր, եդին նոքա կանոնս եւ կարգս եւ աւրէնս ընդհանրական եկեղեցւոյ սրբոյ, որք միաբանին աւետեաց աւետարանին քարոզութեան նոցա, եւ արդար եւ ճշ-

---

անգամ ունին "եւ լեզուք,, նոյնպէս G "եւ լեզուք հրեղէնքն:„ ‖ 99 A ի Հոգոյն սրբոյ: ‖ 100 BG եւ հանգեաւ ի վերայ...: ‖ 101 AB իբրեւ բոց: — A ի վերայ գլխոյ, B ի վերայ նոցայ գլխոյ. DEFG չունին "գլխոյ:„ ‖ 104 DEFG ...զանձինս՝ զի երթիցեն... (չունին "իւրեանց.„) — B երթիցեն յաշխարհ այն, G յաշխարհն այն: — DEFG որ խաւսեսցին (B կը կցէ "զլեզուս նոցա„ փխ "զլեզուն զայն:„)

§ 7. ‖ 106 DEFG "Եւ մինչդեռ գունդք (FG գունդր) առաքելական (G առաքելականք) միաբան ի միասին էին:„ Այսպէս կ'երեւայ թէ կ'ընթեռնու նաեւ Ս. Խաչի ձեռագիրը (K.) ‖ 107 B նովին պարգեւօք որ տուա- (DEF չունին "որ տուան նոցա՝ շնորհք„ բառերը) Հոգւոյն սրբոյ ի նմին աւուր... օրէնս... (վերջինս առ G "եւ յօրէնս:„) ‖ 109 A եկեղեցոյ սրբոյ: ‖ 110 B որք միաբան... նոցա քարոզութեան, եւ արդարեւ ճշմարիտ ուսմանն... (= G արդար ճշմարիտ... վարդապետու-

մարիտ ուսմանն եւ հաւատարիմ վարդապետութեան իւրեանց։

---

[Կանոնք եւ Սահմանք զոր եդին աշակերտքն Քրիստոսի ի սուրբ եկեղեցիս յետ վերանալոյ Տեառն՝ ժողովեալք ի վերնատունն։]

8. Ա. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ՝ եթէ յորժամ յաղաւթս կան եւ երկիր պագանեն աստուածութեանն, ընդ արեւելս կացցեն. ըստ այնմ զոր ասաց փրկիչն թէ Որպէս փայլակն զի փայլատակէ յարեւելից

---

թեանն իւրեանց։) ‖[114] Ներքոյիշեալ վերնագիրը ունին ABDEF։ ‖[115] B չունի "ի սուրբ" բառը, այլ "յեկեղեցիս" կ'ըսէ (=G, որ վերջն "ի վերնատունն" կը գրէ։) Ամէնէն վերջը B կը յաւելու "Այս են կարգաւ." որ կը գտնուի նաեւ Ս. Խաչի եւ Տիրոյեանցի ձեռագրին մէջ (K)։ C ասպէս ունի ամբողջին տեղ՝ "Կանոնք առաքելականք։"

§ 8. Ա ‖[117] BC "կարգեցին առաքեալքն եւ... թէ..." իսկ G հոս եւ ամէն տեղ "սուրբ առաքեալքն" կ'ըսէ (ուստի = M) եւ չունի "յաղաւթս" բառը յաջորդ տողին մէջ։ ‖[118] B յաղօթս . . . երկիրպագանեն աստուածութեան։ ‖[119] BG ընդ յարեւելս (G կը դնէ "կայցեն" փխ. "կացցեն։") ‖[120] G յաջորդն այսպէս ունի. "ըստ այնմ որ ասաց փրկիչն թէ որպէս փայլակն զի փայլատակեալ յարեւելից երեւի մինչեւ յարեւմուտս" եւն։ Նոյնպէս C բոլորովին ազատ կերպով ունի կանոնիս առաջին կէսը՝ "Կարգեցին առաքեալքն հաստատութեամբ եւ եդին թէ յորժամ ոք աղօթք կամ երկրպագութիւն մատուցանիցէ Աստուծոյ, պարտի յարեւելից կողմն կանգնել եւ ընդ

եւ երեւի մինչեւ յարեւմուտս, նոյնպէս եղիցի եւ գալուստ որդւոյ մարդոյ: [Զի արեգակն արդարութեան Քրիստոս Որդի Աստուծոյ յարեւելից ծագեսցէ, եւ արասցէ փրկութիւն ի մէջ երկրի.] եւ այսու գիտասցուք թէ յարեւելս կոյս արժան է յաղաւթս կալ եւ երկիր պագանել արքային անմահի յաւիտենից:

9. Բ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ յաւուր միաշաբաթոջ յամենայն կիւրակէի եղիցի տաւն եւ պաշտաւն, [եւ խորհուրդ տէրունական մարմնոյ եւ արեան Տեառն, զոր պատուիրեաց մեզ Կենարարն, եւ հաց պատարագին ի նմին աւուր ջերմ եփեալ ելցէ ի սեղանն, եւ արժանաւորքն հաղորդեսցին՝

---

արեւելս երկրպագութիւն առնել՝ ըստ աւետարանին թէ որպէս փայլակն փայլատակէ„ եւն: ‖122 B “մինչեւ ի մուտս [C մուտն) արեւու:„ Այս յաջորդ “նոյնպէս„ բառը A ձեռագրին մէջ լուսանցքի վրայ աւելցուցած է ուրիշ ձեռք մը: ‖123 CDE կ'րսեն “է- գալուստ.„ (ABFG չունին “եւ„ (C գալուստն:) — A որդւոյ մարդոյ: ‖124 BCG Քրիստոս որդին Աստուծոյ: ‖125 B չունի “ի մէջ երկրի:„ ‖126 A արեւելս կոյս. C “եթէ (= G Եթէ յարեւելս...) յարեւս կոյս... աղօթել, սպասել եւ ակն ունել գալստեան նորա եւ երկիրպագանել արքային եւ անմահին յաւիտեանց:„ ‖127 G յաղօթս կալ: ‖128 B անմահին յաւիտենից:

§ 9. Բ. ‖130 G հոս եւ միշտ “միաշաբաթուջ„ եւ յետոյ “պաշտօն:„ ‖131 B տօն: C այսպէս ունի „յաւուր միաշաբաթի որ է կիրակի, եղիցի տօն եւ պաշտօն եւ կատարեսցի խորհուրդն ...:„ ‖134 B ի նմին աւուրն: ‖135 DEF “իցէ„ (°) փխ. “ելցէ.„

մի՛ արհամարհանաւք, այլ մեծաւ երկիւղիւ. եւ դատարկացեալ եւ փափկացեալ եղիցի միաշաբաթին, որպէս պատուիրեաց Աստուած Նոյի, Աբրահամու եւ Մովսիսի. զի եւ մեզ հանգիստ լիցի յերկրաւոր աշխատութենէս, եւ յեւթներորդում դարուն ի գալստեան Տեառն յարքայութեանն յաւիտենից։] Եւ յամենայն միաշաբաթօջ ընթերցցին գիրք սուրբք մարգարէականք եւ առաքելականք, եւ աւարտումն եւ գլուխ ամենեցունց կարդասցի աւետարան եւ մատուսցի պատարագ. վասն զի յաւուր միաշաբաթօջ եղեւ լինելութիւն արարածոց, եւ յաւուր միաշաբաթօջ յարեաւ Տէր Քրիստոս ի մեռելոց, եւ յաւուր միաշաբաթօջ ծագեցաւ

---

G ի նմին ջերմ աւուր ջերմ եփեալ եղջէ ի սուրբ սեղանն. C եփեալ ջերմ եւ եղցէ։ — B եւ արժանաւորք . . . մի՛ արհամարհանօք (այսպէս գրուած = C) [138] B որ (փխ. "որպէս") պատուիրեաց . . .։ ‖[139] ABG Մովսէսի։ — C ամբողջն այլազգ. "Եւ ի մարմնաւոր գործոց դատարկասցին յաւուր միաշաբաթին, որպէս ի հնումն պատուիրեաց" եւն։ — B զի եւ զմեզ . . . աշխատութեանց։ ‖[140] B "եւ յեօթներորդում" (= C որ չունի հոս "եւ։") ‖[141] DEG յարքայութեան յաւիտենից. C դարուն գալստեան Տեառն յաւիտենից։ ‖[142] G եւ յամենայն շաբաթուջ։ ‖[143] B ընթերցցին։ ‖[144] C չունի "առաքելականք" եւ յետոյ՝ "գլուխ ամենից" կ'ըսէ։ ‖[145] Տիրայեանցի օրինակը "կարդասցի աւետարանն" (K), իսկ C ". . . աւետարանն սուրբ։" ‖[146] B եւ ուսցի (այսպէս փխ. "մատուսցի") պատարագ։ — B վասն զի յաւուր շաբաթուջ (փխ. "միաշաբաթօջ"), C միաշաբաթօջն։ ‖[148] C Տէրն մեր,

աշխարհի, եւ յաւուր միաշաբաթոջ ի պենտակոստէից վերացաւ Տէրն մեր յերկինս եւ յաւուր միաշաբաթոջ երեւի ի վախճան աշխարհիս [հայրական փառաւք,] երկնաւորական հրեշտակաւք։

10. Գ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ աւր չորեքշաբաթու ի պահս եղիցի. զի ի նմա գուշակեաց եւ յայտնեաց Տէրն կենարար զխորհուրդ չարչարանաց իւրոց եւ մատնութեան եւ դատաստանի եւ խաչելութեան եւ մահուան եւ յարութեան՝ աշակերտացն իւրոց. եւ տրտմեցան առաքեալքն։

---

G Տէր մեր, B չունի նաեւ “Տէր„ բառը։ ‖149 DE ...միաշաբաթոջն ծագեցաւ, G ...ծագեցաւ յաշխարհի. C լոյս ծագեցաւ։ ‖150 B ի պէնտէկոստէից. C չունի այս բառը, բայց ինքը միայն պահած է սա նախնական խօսքը կարգալով “եւ յաւուր միաշաբաթոջ վերացաւ Տէրն մեր յերկինս„ զոր չունին ABDEFGL, ուստի թերի են, ինչպէս կը ցուցընէ ասորին։ ‖152 C երեւի վախճան... (չկայ “ի„ նախդիրը). A “վաղճան„ կը գրէ։ ‖153 B չունի “հայրական„ բառը։ — BCG փառօք։ — DEFG երկնաւոր (= C եւ երկնաւոր հրեշտակօք), B երկնային հրեշտակօքն. “երկնային„ ունին նաեւ Ս. Խաչի եւ Տիրոյենցի ձեռագիրք (K)։

§ 10. Գ. ‖156 B օր (չորեքշաբաթի). C յօր...։ — BFG ...չորեքշաբաթի պահս եղիցի„ (առանց “ի„ նախդրի, նախդիրս չունի նաեւ DE։) ‖158 F կենարարն. DE այլազգ “յայտնեաց Տէրն ըզկենարար խորհուրդ,„ իսկ C “յայտնեաց կեանքն մեր Քրիստոս զխորհուրդ։„ ‖160 C ...մահուան եւ թաղման եւ յարութեան...։ ‖161 G տրտմեցան

[Արդ եղիցի ի պահս եւ ի սուգ եւ ի պաշտաւն եւ յաղաւթս ցնծութեան եւ ուրախութեան:]

11. Դ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ ուրբաթ եղիցի ի պահս եւ ի տրտմութիւն. վասն զի զոր ինչ ասացաւն յաւուր չորեքշաբթւոյն վասն չարչարանաց փրկչին մերոյ՝ յուրբաթուն կատարեցաւ, յորժամ շարժեցան արարածք ամենայն եւ խաւարեցան լուսաւորք ի յերկինս. պահեալ լիցի մինչեւ ցիններորդ ժամն:

12. [Ե. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ աւր շաբաթուն եղիցի

---

առաքեալք, C ...առաքեալքն. ուրեմն եղիցի ի պահս...: ‖162 DEFG Արդ եղիցի պահս եւ սուգ եւ պաշտօն [G պաշտաւն]. B եղիցի պահս... պաշտօն: (C “ի սուգ եւ ի տրտմութիւն„ կ'ըսէ:)

§ 11. Դ. ‖165 G թէ ուրբաթ...: C եթէ օր ուրբաթու: B եթէ ուրբաթն եղիցի սուգ, տրտմութիւն եւ ի պահս. (A եղիցի պահս եւն. DEF եղիցի ի պահս եւ ի սուգ. G եղիցի պահս եւ սուգ եւ ի տրտմութիւն:) C “եղիցի ի պահս, ի սուգ եւ ի տրտմութիւն.„ իսկ ձեռագիրք Ս. Խաչի եւ Տիրոջենց (K) “ուրբաթն եղիցի սուգ եւ տրտմութիւն եւ ի պահս: ‖167 G յաւուր չորեքշաբաթւոջ: AB ...չորեքշաբաթոջ. B վասն զի զոր ինչ ասացաւ անդ յաւուր չորեքշաբաթոջ: ‖168 B յաւուր ուրբաթուն կատարեցաւ, C յուրբաթում: ‖169 G ամենայն արարածք: ‖170 B լուսաւորքն, C լուսաւորք, որք ի յերկինս...: — F պահեալ լինի. C ...եղիցի: ‖171 B ի յիներորդ ժամն. C ապա “մինչեւ ցերեկոյի ժամն եւ ապա պաշտօն ցնծութեան կատարեսցի.„ L խաւարեցան լուսաւորք յերկինս մինչեւ ցիններորդ ժամն. ապա պահեալ լիցի:

տան եւ պաշտաւն ընդ ամենայն տիեզերս, եւ եղիցի յիշատակ ամենայն մարտիրոսաց. պատարագ մատուսցեն ի նմա քահանայքն եւ ուրախութեամբ սաղմոս ասասցեն. վասն զի կարապետ է մեծի արքային գալստեան. պարտ է ամենայն սրբոցն ուրախ լինել ընդ առաջ Քրիստոսի:]

13. Զ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ եղիցին երիցունք եւ սարկաւագունք որպէս Մովսէսն եւ Ահարոն, եւ ապա մատիցեն ի պաշտաւն սրբութեան, ի պատարագն, եւ ի խորհուրդն տէրունական, եւ զկէս սարկաւագաց ի սպասաւորութիւն եկեղեցւոյ, եւ ի տեսչութիւն այրեաց եւ վշտացելոց, որպէս Ղեւտացիքն՝ որ կրէին զսպասաւորութիւն. [եւ

---

§ 12. Ե. ‖173 B օր շաբաթուն եղիցի տօն եւ պաշտօն: ‖174 G ընդ ամենայն տիեզերքս: ‖177 "Սաղմոս ասասցեն" դրինք ըստ Ձեռագրաց Ս. Խաչի եւ Տիրոյենցի (K). B սաղմոս առեն, ADEFG սաղմոսեսցեն: ‖178 A արքային գալստեանն: ‖179 B ամենայն սրբոց:

§ 13. Զ. ‖181 B եւ զԱհարոն. C եւ Ահարոն. եւ նոքա մատիցեն ի խորհուրդ տէրունական եւն. G ...թէ եղիցին երիցունքն որպէս Մովսէսն եւ Ահարոնն...: ‖184 A ի պաշտաւն սրբութեանն: — B եւ ի պատարագ: ‖185 A եւ ի խորհուրդ (= G): — B եւ զկիսասարկաւագացն. C եւ կիսասարկաւագունք ի սպասաւորութիւն...: ‖186 G ի սպասաւորութիւնս: — A եկեղեցւոյ: ‖187 B եւ վշտացելոցն. C կիսասարկաւագունք... վտանգելոցն ղարիբին: ‖188 B որ կրէին սպասաւորութիւն. D ...զսպասաւորութիւնս, C (որ կրէին) զսպաս

զինուորական ձեւով չիշխեր ոք մերձենալ. Նոյնպէս եղիցի յեկեղեցւոջ. եւ մի ոք վայրապար ի բեմ սրբութեան եւ ի սպաս աւրինացն մերձեսցի. եւ սարկաւագունք սպասաւորք երիցանցն կարգեսցին, եւ ընտրեալքն՝ երիցունք։] կաթուղիկոսն դէտ եւ գլուխ եւ աւրէնսդիր լիցի ժողովրդեանն. զի ըստ բերանոյ Նոցա վճարեսցի ամենայն ինչ, որպէս Մովսէսին եւ Ահարոնին էր.

14. Է. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ եղիցի տաւն [ծննդեան եւ] յայտնութեան [Տեառն եւ] փրկչին մերոյ որ է գլուխ եւ սկիզբն տաւնից եկեղեցւոյ, որ աւր Զ. Յունուարի ամսոյ ըստ յունարէն թուոյ.

---

սրբութեան։ ‖[189] A զինեւորական։ — C ...ձեւով որք ոչ ոք իշխէին... եւ եկեղեցւոջն։ — DEFG նոյնպէս եղիցին յեկեղեցւոջ, B նոյնպէս եղիցի յեկեղեցւոջն։ ‖[191] A ի բեմ սրբութեանն։ C մի... ելցէ ի բեմն սրբութեան եւ ի սպաս օրինացն մի մերձեսցին։ ‖[192] BC եւ սարկաւագունքն։ — B սպասաւորք երիցանց։ — C սպասաւորք ...եղիցին եւ կարգիցին։ A սպասաւորք կարգեսցեն։ ‖[193] C աղաւաղ. "Իւ ընտրեալքն յերիցունց դէտ, գլուխ եւ օրէնսդիր լիցին ժողովրդեանն։ — G կաթուղիկոս ...գլուխ յաւրէնսդիր։ ‖[194] BC օրէնսդիր լիցի (B "լիցին„ = A.) ‖[196] BC Մովսիսին։ — B եւ զԱհարոնին, G եւ Ահարոնին։

§ 14. Է. ‖[198] BC տօն։ ‖[199] C չունի "Տեառն եւ„ բառերը։ ‖[200] BC սկիզբն տօնից եկեղեցւոյ. (A կը գրէ "եկեղեցոյ։„) ‖[201] G Յունվարի ամսոյ ըստ յունարէ թուոյ... B ..ր վեց է յունվար եւն. C ի վեցերորդում աւուրն յունուարի։ Cի մէջ չէ գրուած այս "ըստ յունարէն թուոյ„

[եւ մեծապէս խմբեսցեն զտաւնն զայն ցնծութեամբ եւ ուրախութեամբ, սաղմոսիւք եւ աւրհնութեամբ, եւ երգովք հոգեւորաւք, եւ ընթերցցին գիրք մարգարէականք եւ առաքելականք։]

15. Ը. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ զքառասուն աւր պահօ կարգեսցեն [յամենայն չարութենէ, ի մեղաց եւ ի կերակրոյ] յառաջ քան զաւրն չարչարանաց փրկչին մերոյ. եւ ապա արասցեն զաւրն չարչարանաց, պասեք Տեառն եւ տաւն յարութեան փրկչին. [ընթերցցին գիրք մարգարէականք եւ առաքելականք, որ պատմիցեն զչարչարանաց Տեառն եւ զուշակումն յարութեան փրկչին։]

---

խօսքը։ ‖[202] B զտօնն, G զտաւն. C ...զտօնն, եւ մեծահանդէս խմբիւք կատարեսցեն։ ‖[203] BC օրհնութեամբ եւ երգօք հոգեւորօք։ L չունի "աւրհնութեամբ։" ‖[204] G ընթերցցին մարգարէական գիրք եւ առաքելականք։

§ 15. Ը. ‖[208] G ...Թէ զքառասուն...։ — B զքառասուն աւուրս պահս կարգեսցին. C ...որ պահս պահեսցի։ ‖[210] BCL ի կերակրոց։ — B յառաջ քան զօրն..." C "զվերջ օր" կ'ըսէ։ ‖[211] C արասցեն զօր չարչարանաց, ABC արասցեն զյիշատակ չարչարանաց։ L չունի։ — DEF ...չարչարանաց փրկչին մերոյ, պասեք...։ C ...պասեքին եւ տօն յարութեան։ B տօն յարութեան։ ‖[214] DEFG որ պատմեսցեն (G կցէ "զչարչարանացն") — L չունի "զուշակումն" բառը։ C ամբողջն ազատ. "եւ մարգարէականքն ընթերցցին, նաեւ առաքելականք, ըստ վայելման չարչարանաց Տեառն եւ նախագուշակման յարութեան նորին։" ‖[216] Միայն

Քանզի եւ ինքն իսկ Տէր մեր Քրիստոս՝ տէր տաւնից եւ տարեկանաց՝ պահեաց զխ. տիւ եւ զխ. գիշեր. Նոյնպէս եւ Մովսէս [ի Սինէական լերինն ի ձեռն պահոցն իբրեւ սիրելի բարեկամ խաւսէր ընդ Աստուծոյ, եւ մեծապէս պատիւ գտեալ յերկնաւոր արքայէն՝ ահեղ երեսաւք արքունական աւրէնս եւ կանոնս բերելով իջանէր առ ժողովուրդն։ Նոյնպէս] եւ [Նախանձաւորն] Հեղիաս ի ձեռն քառասնաւրեայ պահոցն [մեծամեծ նշանս եւ զաւրութիւնս գործելով, ապա փառաւորեալ ասպատակէր յերկինս. եւ երեք մանկունքն ի ձեռն սրբութեան պահոցն ի մահուանէ թագաւորին ապրեցան. Հրեշտակ Աս-

---

DEF ունին "չոչ", ընթեռնլով "եւ ինքն իսկ Տէր...։" A Տէրն. C զի ինքն Քրիստոս տէրն ամենից զխ. տիւ եւ զխ. գիշեր պահեաց։ ||217 B կը գրէ ամբողջ "զքառասունն։" ||218 C այսպէս. "Նոյնպէս եւ Մովսէս ի ձեռն քառասնօրեայց պահոց իբրեւ սիրելւոյ եւ բարեկամի խօսեցաւ ընդ Աստուծոյ ի սինէական լերին. վասն որոյ մեծապէս ....։" ||219 BC ...եւ բարեկամ... խօսէր։ ||220 B պատիւ գտաւ երկնաւոր արքայէն... երեսօք ...օրէնս" եւն (վերջին երկու բառերս այսպէս կը գրէ նաեւ C.) L այլազգ։ ||221 C զարքունական օրէնս. (G ալ "օրէնս" կը գրէ)։ ||222 F առ ժողովուրդսն։ ||224 C [illegible] քառասնօրեայ պահոցն" (փխ. "ի ձեռն...։") — AB "քառասնօրեայ պահոցն։" ||225 B զօրութիւնս գործելով։ ||226 "Փառաւորեալ" ուղղագոյն եւ նախնական ընթերցումը պահած է միայն B. միւս ամէն ձեռագիրք "կառաւարեալ ասպատակէր։" ||228 G չի Հրեշտակ Աստուծոյ էջ... B չունի "Աստուծոյ." իսկ C "Հրեշ-

տուծոյ էջ առ նոսա, զբոցն բորբոքեալ շիջուցին, զթագաւորն ի գիտութիւն ճշմարտութեան ածին, եւ ինքեանք բարի անուամբ կեցեալ՝ արժանի եղեալ արքայութեանն Քրիստոսի։]

16. Թ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ կատարումն ամենայն գրոց ընթերցցի աւետարան, իբրեւ զկնիք պատուական ամենայն գրոց, եւ յոտն կալով ամենայն ժողովուրդն լուիցէ նմա, զի աւետիք փրկութեան են ամենայն մարդկան [բանիւ Կենարարին։]

17. Ժ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ զկնի պասեքին կատարեսցեն. Ծ. աւր յետ յարութեանն նորա, եւ արասցեն տաւն յիշատակի վերացմանն նորա առ Հայր յերկինս փառաւորեալ։

18. [ԺԱ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ ի Ջատկէն մինչեւ

---

տակ Տեառն էջ եւ եկաց . . . ուստի զբոց բորբոքեալ...։„ ‖[231] C անիմաստ "եւ ինքեանք բարի անձամբ կեցեալ։„ —DE կացեալ (փխ. "կեցեալ„։) — AB եւ Տիրոյենց ունին "արժանի եղեալ.„ միւսները՝ DEFGC "արժանի եղեն...։„ ‖[232] B յարքայութեան Քրիստոսի Աստուծոյ. C արքայութեանն Աստուծոյ. G արքայութեան Քրիստոսի։

§ 16. Թ. ‖[234] B է— թէ... C եթէ։ ‖[235] B ընթերջցի... կնիք։ ‖[237] C լուիցեն. B յոտն կալով ամենայն ժողովրդեան՝ լուիցեն...։ ‖[238] C... մարդկան՝ բարբառ (փխ. "բանիւ„) կենարարին։

§ 17. Ժ. ‖[241] յիսուն օր... տօն յիշատակ վերացման առ Հայր եւն։ C... զկնի յարութեան Տեառն եւ ապա արասցեն տօն վերացման նորա առ Հայր ի յերկինս։

*ի քառասներորդ աւր վերացման նորա ուրախութիւն եւ ցնծութիւն եղիցի. զի աւուրք յարութեան են եւ փեսայն յառագաստի. ապա յետ տաւնի վերացմանն պահեսցեն. եւ դարձեալ յիսներորդ՝ տաւն կատարեսցեն, եւ իբրեւ զառաջին Զատկին՝ գառն զենցի։]*

19. *ԺԹ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ եթէ եկամուտ ոք կամ բնակաւոր՝ որ ոչ գիտէ զհաւատս ճշմարիտ եկեղեցւոյ սրբոյ եւ զկարգս եւ զաւրէնս՝ որ կարգեալ է ի նմա, մի՛ լիցի առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ, եւ մի՛ ոք կարգեսցէ զայն-*

---

§ 18. ԺԸ. ||[245] G *եթէ ի զատկէն . . . ։* ||[246] B *մինչեւ ի քառասներորդ վերացման նորա* (*չունի* "*աւր*"), C *մինչեւ ի քառասներորդ աւուր . . . ։* ||[247] B *յաւուրք յարութեան.* F *մարմնոյն մէջ* "*աւուրք զօրութեան*" *կ'ըսէ, լուսանցքի վրայ ուղղուած՝* "*յարութեան.*" (K.) ||[248] C *փեսայն է յառագաստի։* — A *յետ ի տաւնի։* B *յետ տօնի* (= C) *վերացման* (= G) ||[249] BC *եւ դարձեալ յիսներորդն՝ տօն . . . ։* ||[250] A *տաւնս կատարեսցեն.* CFG . . . "*կատարեցի*", *այսինքն՝ տօնը։* — "*իբրեւ*" *բառէն յառաջ* "*եւ*" *չունին* CDEFL։ C *ազատ* "*իբրեւ առաջին տօնի գառն զենցի պատարագ հաշտարար։*"

§ 19. ԺԹ. ||[253] *փխ.* "*բնակաւոր*" *բառին՝* B *բնաւ* (*որ . . .*), C *եւ կամ բնական։* ||[254] B . . . *եկեղեցւոյ սրբոյ.* C *որ ոչ գիտիցէ զհաւատս ըստ կանոնի ճշմարտի եկեղեցւոյ սրբոյ եւ կամ զկարգս եւն։* — BC *եւ զօրէնս։* ||[256] C *մի՛ լիցի . . . հրամանատար։* ||[257] A *յեկեղեցոջ,* B *եկեղեցւոջ։* — G *եւ մի՛ կարգեսցի զայնպիսին եւն.* A *զայնպիսին,* B

պիսիսն, [զպոռնկեալսն, զշնացեալսն եւ զայլագործսն յերիցութիւն կամ ի սարկաւագութիւն եւ կամ յայլ ինչ սպասաւորութիւն եկեղեցւոյ մի՛ մերձեցուսցեն, զի մի կարգեալքն ընդ նոքաւք թիւրեսցին. զի եթէ ստուերք հանդերձելոցն Մովսիսի զանարատն ընտրէր ի սպասաւորութիւն խորանին, որչափ եւս առաւել, որ նորոյ ուխտիս է միջնորդ։]

20. ԺԳ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, [եթէ խաւսեցաւ Աստուած ընդ Աբրահամու եւ ասէ. Թլփատեսցի ութաւ-

---

գնոսա (փխ. "զայնպիսիսն„)։ ‖258 CB զպոռնկեալս, G զպոռնկեալսն եւ զշնացեալսն ... յերեցութիւն։ C ազատ. "Եւ մի ոք զպոռնիկսն, զշնացողսն, եւ զայլ այնպիսիս յերիցութիւն եւ կամ յայլ ինչ սպասաւորութիւն կարգեսցէ. զի մի„ եւն։ ‖260 ABG այլ ինչ (փխ. "յայլ„։) — A եկեղեցւոյ։ ‖261 G զի մի կարգեալք...։ ‖262 A թիւրեսցեն (փխ. "թիւրեսցին։„) — C բոլորովին ազատ. "զի մի գուցէ եւ նախակարգեալքն ընդ նոքօք թիւրեսցին, տես զի ի Մովսիսեան ժամանակին որ ստուեր եւ գուշակ էր հանդերձեալ ճշմարտութեանն, զանարատն ընտրէին ի մարդկանց ի սպասաւորութիւն խորանին, որչափն եւս առաւել որ նոր ուխտիս, որոյ միջնորդն է ստեղծօղն Մովսիսի, Քրիստոս Աստուած։„ ‖263 AG Մովսէսի։ ‖264 B նորոյս։ — G շփոթմամբ դուրս թողուցեր է սա բառերը՝ "խորանին, որչափ եւս առաւել որ„։

§ 20. ԺԳ. ‖267 B Բե (փխ. "եթէ„։) — BC խօսեցաւ (C "Աստուած՝ Աբրահամու,„ առանց "ընդ„ նախադրութեան)։ ‖268 G եւ ասէ եթէ Թլփատեսցի մանուկ ձեր ընդուրիայ.„ (փխ. "ու-

րեայ՝ մանուկ ձեր, եւ այն եղիցի նշանակ ուխտին յաւիտենական ընդ իս եւ ընդ ձեզ։ Լինէր նոյն ուխտ ընդ Մովսէսի. Հրաման առեալ յարարչէն՝ մշտկաւ զոպայիւ սրսկել ջուր զժողովրդեամբն, որ գուշակէր զմկրտութիւն հեթանոսաց. աւրինակէր Մովսէս եւ Ահարոն զհանդերձեալսն լինելոյ փոփոխումն ստուերագրին՝ հրամայէր ջրով լուանալ յարտաքնում սրահին, ապա մերձենալ ի սրբութիւնսն։ Աւրինակէր զայս մկրտութիւն Յեսու Նաւեայ՝ անցանելով ընդ Յորդանան. եւ ապա մտանել յերկիրն

---

թաւրեայ․, A ուխթաւրեա, B ուխթօրեա. (իսկ C "մանուկն ձեր„ կը գրէ։) ‖269 C եւ այն եղիցի յիշատակ յաւիտենական (փխ. "նշանակ ուխտին յաւիտենական„։) ‖271 B Մովսէսի։ C ազատ. "նոյն ուխտ եղեւ եւ ընդ ... որ հրաման առեալ։„ — G Արարչէն։ ‖272 C մշտկաւ զոպայի։ — AB սրսկեալ ջուր զժողովրդեամբն [A ժողովրդեամբն։] ‖273 B զմկրտութիւն հեթանոսացն. օրինակէր Մովսէս եւն։ G աւրինակ էր Մովսէսն Ահարոն.., C ազատ "...հեթանոսաց. Մովսիսի եւ Ահարոնի ստուերագրութիւնն օրինաց որ հրամայէր արանց նախ ջրով լուանըլ, եւ ապա մերձենալ ի սրահին սրբութեան, նշանակէր զմկրտութիւնն սուրբ։ Նաեւ Յեսուայ որդւոյ Նաւեայ անցանելն ընդ Յորդանանու եւ ապա մտանելն յերկիրն աւետեաց եւ պարգեւաց նշանակէր իսկ եւ իսկ զմկրտութիւն։ Նախանձայոյզ մարգարէին Եղիայի ընդ Յորդանան անցանիլն, կենդանոյն յերկինս վերանալն, նշանակէր զմկրտութիւնն։ Մեծին ի ծնունդս„ եւն եւն։ ‖277 BG օրինակէր (G աւրինակ էր) զայս մկրտութիւն Յեսու Նաւեայ եւն. (B չունի "Յեսու Նաւեայ անցանելով ընդ Յորդանան„ բառերը։) ‖279 F յերկիր

պարգեւաց։ Աւրինակէր զայս մկրտութիւն մեծն ի մարգարէս Նախանձաւորն Հեղիաս՝ անցանելով ընդ Յորդանան, կենդանւոյն վերանայր յերկինս։ Բերէր եւ Եղիսէ զսափորն ի գուշակումն մկրտութեան։ Մեծն ի ծնունդս կանանց՝ կնքահայրն Յովհաննէս, որ արժանի եղեւ մկրտել զանարատ զՏէր Յիսուս ի Յորդանան գետ, աւրինակ լինէր Նորոյ ուխտիս, եւ մանկանց եկե-

---

պարգեւաց, G երկիրն պարգեւաց։ ‖280 G աւրինակ էր... B օրինակէր զայս մկրտութիւնս մեծն եւն։ ‖282 A կենդանոյն = C։ ‖283 "Եւ Եղիսէ" ունին միայն DEFGL [G "Եղիսէէ սափորն...,"], իսկ ABC եւ նաեւ Տիրոյենց (K.) չունին զայս եւ անիմաստ են։ — B "գուշակումն" առանց "ի" նախդրի։ ‖284 Ըսկէ ("Մեծն ի ծնունդս") սկսեալ AB եւ Տիրոյենց (K) նոր կանոն մը չինած են՝ ԺԴ թուականը տալով, B եւ Տիրոյենց նաեւ սովորական բանաձեւը ("Կարգեցին առաքեալքն եւ հ՛գին հաստատութեամբ") աւելցուցած են սկիզբը։ Բայց իմաստը կը պահանջէ որ չանջատուի այս մասն եւ նաեւ Յովհ. Օձնեցւոյն յօրինած գլխակարգութիւնը կը ցուցընէ որ շարունակութիւն է այս ԺԳ կանոնին։ Այսպէս ալ ունին DEF եւ CL։ — ABCGL կնքահայրն, D նորանշան եղանակաւ "կընքամօյրն." նաեւ EF նախ "կնքամօյրն" ունէին եւ յետոյ սրբագրուած եղած "կնքահայրն։" ‖285 B Յովհաննէս, C Յոհաննէս։ — B եղեւ արժանի ...զանարատն (= Տիրոյենց, K) Տէր. C անոր տեղ՝ "Գառն Աստուծոյ զՏէրն մեր Յիսուս Քրիստոս ի Յորդանան գետն" (նաեւ G "գետն" կ'ըսէ։) ‖286 BC օրինակ լինէր (C լինելով... մանկանցն։) — L եւ ինքն իսկ տէրն օրինակ լինէր նորոյ ուխտիս։ ‖287 A "մանկանց եկեղեցոյ։" ‖288 "Ա-

ղեցւոյ։ Եւ ամենափրկիչն լուանալով զոտս մեր ի վերնատանս ջրով մկրտութեան զաւրացոյց զմեզ եւ անմեղացոյց սրբութեամբ աւազանին, աւրինակ աշխարհի եթող.] զի ի ձեռն քահանայութեան կարգի՝ մանուկ ութաւրեայ մկրտեսցի եւ եղիցի քրիստոսազգեաց, եւ վկայք՝ որ ոչ ունին զմկրտութիւն ջրոյն, արեամբն իւրեանց փրկեսցին։

21. ԺԴ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ իցէ ոք երկմիտ ի հաւատս եւ չիցէ ճշմարիտ ի պաշտամանն Տեառն, այնպիսին մի՛ պաշտեսցէ զպաշտաւն Տեառն. [մի՛ ձեռնադրեսցի, զի մի այլոցն ի հեղգութիւն՝ խմոր չարութեան լիցի, որպէս գրեալ

---

մենափրկիչն„ բառը միայն C ունի։ ||289 BCDEF ի վերնատանն. G ի վերնատունն։ A անշուշտ ուղղագոյն է "ի վերնատանս„ ընթեռնլով։ — BC զօրացոյց։ ||291 B օրինակ... եթող, C Ե— օրինակ..., G յաւրինակ...։ ||292 A ութաւրեայ, B ութօրեա։ — AB միայն "մկրտեսցի եւ եղիցի քրիստոսազգեաց.„ CDEFG մկրտեալ՝ եղիցի քրիստոսազգեստ (C քրիստոսազգեաց։) ||293 C վկայք ոչ+..., B վկայք որք չունին։ L ճոխացած է մեկնութեամբ։ ||294 B եւ Տիրոյենց (K) "արեամբ իւրեանց...։„

§ 21. ԺԴ. ||296 B Թէ իցէ. C –+ իցէ։ ||297 EFG ի պաշտաման. C այլազգ. "...ի հաւատս Տեառն, մի՛ կարգեսցի նա յառաջնորդութիւն եկեղեցւոյ, զի մի„ եւն։ ||298 A զպաշտօնն, B զպաշտօն. DG (նաեւ EF?) "այնպիսին մի՛ պաշտեսցէ զպաշտաւն Տեառն„ խօսքը չունին. իսկ L "եւ չէ ճշմարիտ ի գործ պաշտաման, մի՛ ձեռնադրեսցի„ եւն։ ||300 G "խմաւր... գրեալ է՝ Անիծեալ„ եւն.

է թէ Անիծեալ որ գործէ զգործ Տեառն հեղգութեամբ։] Նա զմարդիկ խաբէ եւ ոչ զԱստուած, այն՝ որ ոչ հաստատին կամակորութիւնք առաջի նորա։

22. ԺԵ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ որ սուտ երդնու կամ սուտ վկայէ եւ կամ երթայ առ կախարդս եւ հարցուկս, եւ քաւթեայս, եւ վհուկս, եւ հաւատայ բախտից, ծննդոց եւ աստեղագիտութեանց իբրեւ զայնոսիկ որ անաստուածքն են, խափանեսցի նա որպէս զանաստուած ի քահանայութենէ, եւ մի խառնեսցի ի պաշտաւն եկեղե-

---

C զի մի այլոցն հեղգութիւն եւ խմոր չարութեան եղիցի։ B... խմոր չարութեան լինի... Անիծեալ լիցի որ. (G անիծեալ է որ...) C ասկէ քիչ յառաջ "որպէս գրեալն է։" ‖302 B նա զմարդիկն։ ‖303 B չունի "այն". C աղաւաղ. "Նա ոչ կարէ զԱստուած, այլ զմարդն...։" — G որ ոչ հաստատեն կամակորութիւնք։

§ 22. ԺԵ. ‖306 B թէ որ... — C չունի "կամ" բառն "սուտ" բառէն յառաջ. "սուտ վկայէ" ունին միայն CDEG, ուրիշները չունին "սուտ"։ ‖307 G եւ կամ որ երթայ ի կախարդս։ — C առ կախարդս հարցուկս (առանց "եւ" շաղկապի.) եւ քաղդեայս. (B քօղդեայս, փխ. "քաւթեայս")։ ‖308 A "վհուկս" կը գրէ փխ. "վհուկս։" ‖309 CDEFG աստեղագիտութեանց. AB աստեղաբաշխութեանց։ ‖310 BG որ անաստուածք են. C ազատ. "այնպիսիքն յանաստուածիցն են, ուրեմն խափանեսցին որպէս... եւ մի քահանայացի եւ մի խառնեսցի" եւն։ ‖311 DEF իբրեւ զանաստուած (փխ. որպէս...) ‖312 B ի պաշտօն։ — A

*ցւոյ. եւ եթէ ժողովրդական ոք իցէ, մերժեսցի ի բաց։*

23. ԺԶ. *Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ որ սիրէ զՀրեայս եւ հաղորդի ընդ նոսա, կցորդ եղիցի Յուդայի Սկարիովտացւոյ՝ որ սիրեաց զՀրեայսն, կամ զհեթանոսս՝ որ երկիր պագանեն արարածոց փոխանակ արարչին. մի՛ մտցէ յեկեղեցի եւ մի՛ բնակեսցէ ի մէջ հաւատացելոց. եւ եթէ իցէ ի միջի նոցա, մի՛ թողցեն զնա, այլ որոշեսցեն եւ զատուսցեն ի բաց յինքեանց, եւ մի՛ կացցէ ի միջի նոցա. զի մի արմատ դառնութեան ի վեր երեւեալ՝ պղծիցին նովաւ բազումք։*

24. ԺԷ. *Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ ոք Հրեայ կամ հեթանոս եկեսցէ եւ խառնեսցի յեկեղեցի, եւ դար-*

---

*եկեղեցւոյ։* ‖[313] C *հոս ալ ազատ. “եւ թէ ի ժողովրդականաց ոք իցէ, մերժեսցի ի քրիստոնէական ազգէ եւ հաւաքմանէ։„*

§ 23. ԺԶ. ‖[316] AB *թէ որ...։* — B *որ սիրէ ընդ Հրեայս եւ հաղորդեսցի։* ‖[317] C *կցորդ եղիցի ընդ Յուդայի։* — A *Սկարիովտացւոյ*, B *սկարովտացւոյ*, C *իսկարիովտացւոյ։* ‖[318] AC (*որ սիրեաց*) *զՀրէայս*, B *զՀրէայսն.* (C *կը յաւելու՝ “է– զհեթանոսս„։*) ‖[319] BC *որ երկիրպագանեն։* ‖[320] B *յեկեղեցին.* C *մի՛ մտցէ նա... մի՛ բնակեսցի եւն։* ‖[321] AB *եւ ԲԷ իցէ.* C *եւ եթէ իցեն։* ‖[322] G *մի՛ թողցին։* — C *զատուսցեն զնա։* ‖[323] B *մի՛ կեցցէ,* C *կացէ։* L *չունի։* ‖[325] BDEFG *պղծեսցին.* C... *պղծեսցէ զբազումս ի հաւատացելոց։*

§ 24. ԺԷ. ‖[327] B *թէ ոք...։* — ABC *Հրէայ։* ‖[328] G *եւ խառնակեսցի եկեղեցի։* C *եւ խառնա-*

ձեալ թողցէ եւ երթիցէ յիւր բնութիւն, եւ դարձեալ կրկնեսցի եւ եկեսցէ ի նոյն պաշտաւնն զոր անարգեացն, մի՛ ընդունիցիք եւ մի՛ խառնիցէք ի մէջ ձեր, այլ որոշեալ զատուսցի ի միջոյ ամենեցունց, եւ կացցէ ի նմին կարգի՝ ուր էր զառաջինն, եւ մի՛ հաղորդեսցին ընդ նմա, որք ճանաչեն զնա։

25. ԺԸ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, թէ որ փոխ տայ եւ առնու վաշխ եւ տոկոսիս եւ շահի շահս ագահութեան, այնպիսին մի՛ համարեսցի ընդ հաւատացեալսն, եւ մի՛ կացցէ ի կարգի պաշտաման քահանայութեան. [ո՞չ լսիցէ զոր ետ պատուէր արարիչն Մովսէսի թէ Պատուիրեա որդւոցն Իսրայէլի զի

---

կեսցի ի ժողովս քրիստոնէից եւ յեկեղեցիս։ ‖[329] AB ուղղութեամբ կ՚ըսեն “յի-ր բն--թի-ն.„ իսկ DEFG “յիւր բն-կ--թի-նն„ = C “յիւր առաջին կրօնին բնակութիւնն„։ (L = C.) ‖[330] B եւ դարձեալ կրկին եկեսցէ. C եւ վերստին եկեսցէ... զոր չհաւանելով անարգեացն։ — G ի նոյն պաշտաւն։ ‖[331] B չունի “եւ մի՛ խառնիցէք„ այլ “մի՛ ընդունիցիք ի մէջ ձեր։„ ‖[332] G զատուսցէ։ ‖[333] BC ի միջի ամենեցուն... որ էր առաջին (C յորում էր զառաջին) եւ մի՛...։„ ‖[335] BCFG որք ճանաչեն, B ճանաչէին։

§ 25. ԺԸ. D ձեռագիրը նախ յաջորդ ԺԹ (§ 26) կանոնն ունի, յետոյ ասիկայ, եւ այն՝ իբրեւ կան. ԺԷ թուարկուած, ‖[337] B եւ եթէ փոխ տա։ CG Եթէ որ փոխ տայ։ ‖[338] FG վաշխս։ — BC ագահութեամբ։ ‖[339] A մի՛ համարիցի։ ‖[340] A մի՛ կայցէ ի կարգի„ (DEFG ի կարգ։) ‖[341] B Ե- ո՞չ լսիցէ։ — C եւ ոչ լսիցէ որ առէր արարիչն

մի՛ պահանջեսցեն զփոխս ի մերձենալ տաւնին թողութեան եւ ամին եւթներորդի․ որչափ եւս առաւել պատժոյ արժանի համարիցէք զայժմուս։]

26․ ԺԹ․ կարգեցին առաքեալք եւ եդին հաստատութեամբ թէ չէ իշխանութիւն քահանայապետի կամ երիցու եւ ո՛ իցէ առաջնորդ եկեղեցւոյ առանց իւրոց պաշտաւնակցացն առնել զինչ իւիք յեկեղեցւոջ, բայց կամաւք եւ միաբանութեամբ ամենեցուն արասցեն զոր ինչ կամին. զի մի՛ լիցի տրտմութիւն եւ հերձուածք ի միջի իւրեանց. [զի ի միաբանութենէ ամենեցուն եւ քարոզութիւնն հաւատարիմ լիցի, եւ հաւատքն հաստատուն, որպէս եւ փրկիչն ասէ

---

Մովսիսի թէ... որդոցն Իսրայէլի։ ‖343 C զփոխն (փխ. "զփոխս") — CDEFGL ի մերձենալ ամի (փխ. "տաւնին") թողութեան։ ‖344 D յեւթներորդի, A եաւթներորդի, B եօթներորդի․ GL Էրորդէ․ C մինչեւ եօթներորդ ամի։ ‖345 CFG պատժոց։ — ABF զայժմուս, DE զայժմոյս = C զայժմոյս նոր օրինացս։

§ 26․ ԺԹ․ ‖348 BCG Էին չէ... (C չունի "չէ"։) ‖349 B եւ ո եւս եւ իցէ. C կամ ով ոք իցէ առաջնորդ։ ‖350 A եկեղեցւոյ։ — AB առանց իւրոյ...։ — C "մի՛ առնիցէ իր" եւն։ ‖351 A յեկեղեցոջ։ — B բայց կամօք, C բայց կամօք եւ յօժարութեամբ։ ‖352 G ամենեցունց։ — A զոր ինչ կամին, C զոր ինչ եւ կամեսցին։ ‖353 C զի մի լինիցի հերձուած եւ տրտմութիւն. B զի մի տրտմութիւն եւ հերձուածք լիցի։ ‖354 A ի մէջ իւրեանց (G "Է-րոյ" կ'ըսէ փխ. "իւրեանց։") — C զի միաբանութեամբ ամենեցուն։ ‖355 ABG եւ

*թէ ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ ես ի մէջ նոցա։]*

27. ի. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ [ի կարգէ քահանայութեանն ընտրեալքն, անարատքն, որ սուրբ ի մամոնայէ իցեն, աւրինաց եւ կարգի եկեղեցւոյ հմուտք, եթէ եւ յանարգաց ոք իցէ, ի քահանայութիւն եւ ի գլխաւորութիւն կացուսցեն՝ միջնորդ լինել ընդ մարդիկ եւ ընդ Աստուած. զի] երեւեսցի գլուխ եւ առաջնորդ ամենեցուն. զի ի ձեռն նորա խնդրեսցի [չարութիւն եւ բարութիւն, մեղք եւ արդարութիւն] յամենեցունց, զի [դէտ] եւ [հովիւ է իբրեւ զ]Սա-

---

քարոզութիւն։ ‖[356] ABCG եւ հաւատն (B եւ հաւատն հաստատութիւն։) — CDEF “որպէս ե-...աւէ,„ այլք՝ “որպէս փրկիչն աւէ.„ (C աւէր։) ‖[357] G երկու եւ երեք ժողովեսցին (նաեւ C “ժողովեսցին։„) — DEFG վասն իմ (փխ. “յանուն իմ։„)

§ 27. ի. ‖[360] B Որ ի կարգէ քահանայութեան. (B ի կարգի, C ի կարգ։) ‖[361] C եւ սուրբքն իցեն (առանց “ի մամոնայէ„ բառին։) B եւ սուրբք իցեն ի մամոնայէ։ ‖[362] B օրինաց է կարգի... C եւ օրինաց կարգի. G յաւրինաց։ — A եկեղեցոյ։ C հոս այլազգ “հմուտք նաեւ եկեղեցականաց„ եւն։ ‖[363] Միայն DEFG եթէ եւ յանարգաց, (այլք չունին “եւ.„) G անարգաց, C եւ եթէ անարժանից, F անարժելոյ։ — C ի քահանայապետութեան եւ ի գլխաւորութեան կացցէ՝ միջնորդ լինել Աստուծոյ եւ մարդկան. (ABC ...ընդ մարդկան։) ‖[368] C ...արդարութիւն յամենից, G արարութիւն ամենե-

մուէլն, [զի] շրջէր եւ կարգէր եւ հրաման տայր [ըստ մարգարէութեանն Եզեկիէլի։]

ՀԸ. ԻԱ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ թէ որ լոկ են ի ստացուածոց եւ սոսկ ի մամոնայէ, եւ չերթան զկնի արծաթոյ շահից, [եւ ձեռք իւրեանց սուրբ են ի կաշառոյ եւ միտք իւրեանց յստակ ի չարութենէ եւ սիրտք եւ խորհուրդք իւրեանց կատարեալ են ի սէրն Աստուծոյ.] Նոքա ընտրեսցին ի պաշտաւն սեղանոյն Տեառն. [զի եթէ զՂեւտացիսն յամենայն իմէքէ, ի կալուածոյ եւ ի բաժնէ եղբացն հեռացուցեալ՝ ապա մերձեցուցանէր առ ինքն, որչափ եւս առաւել որ Նորոյ ուխտիս են

ցունց։ ‖370 C շրջէր եւ խրատէր եւ կարգէր։ ‖371 BC ըստ մարգարէութեան։ — Կանոնիս հնագոյն հայ թարգմանութիւնը տես էջ 207։

§ 28. ԻԱ. ‖373 G ԺԸ որ լոկ...։ — F "ղոկ„ կը գրէ. C ոք լոկ է ստացուածոց։ — B ի ստացուածոցն։ ‖375 DEFG արծաթաշահից. C նաեւ ոչ երբէք հետեւեցաւ զկնի շահից արծաթոյ եւ պահեաց զձեռս իւր մաքուր եւ յստակ յամենայն չարութենէ։ ‖376 DEG ի կաշառոց։ — A սուրբ եւ յստակ։ — DEFG չունին "եւ սիրտք։„ C ազատ. "եւ սիրտ իւր կատարեալ ունէր ի սէրն Աստուծոյ, ահա այնպիսիքն ընտրիցին զպաշտօնատարութիւն սեղանոյ Տեառն։ ‖377 AB եւ խորհուրդ իւրեանց։ ‖378 B ի պաշտօն սեղանոյն (— F սեղանոցն, G սեղանոյ։) ‖379 C զի թէ զՂեւտացին (D զՂեւտացիս.) ‖380 G յամենայնի (փխ. "յամենայն իմէքէ„), ի կալուածոյ եւն, C յամենայն [illegible], այսինքն ի կալուածոց։ ‖382 C (= L) որ Նորոյ ուխտիս է միջնորդ եւ սպասաւոր

սպասաւորք, միջնորդք եւ պաշտաւնեայք Քրիստոսի անարատք լիցեն եւ անմեղք։]

29. ԻԲ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ ամբարտաւանք եւ հպարտք եւ սէգք եւ մնապարծք, [եւ ատեցողք, կերողք եւ արբեցողք, ուսումնատեացք եւ քնէածք, եւ ծոյլք, եւ նախանձոտք չարեաց, եւ ցանկացողք չարեաց, եւ պատուասէրք, խիստք եւ նեղասիրտք եւ ցոփասիրտք, եւ յանդգունք, անգութք, անողորմք, եւ կռուողք, եւ ոխակալք, քսմսք, շոգմոգք, եւ որ ինչ նման է սոցին,] մի մեր-

---

եւ պաշտօնեայ Քրիստոսի, անարատ իցէ եւ անմեղ։ ‖383 A պաշտաւնոյք, B պաշտօնեայք։

§ 29. ԻԲ. ‖386 DG թէ։ — C ամբարտաւանքն եւ հպարտքն սէգքն (փխ. "սէգքն„) եւն։ — Զեռ. մեր մատ. 101 "սէք.„ AB սէգ։ ‖387 DEFG եւ Զեռ. 101 մնափառք (փխ. "մնապարծք„ զոր ունին ABC։) — BC ատեցօղք։ — AB եւ Զեռ. 101 չունին "կերողք եւ.„ C աղաւաղ "եւ կռվօղքն եւ ուսումնատեացք եւ քնածք եւ ծոյլք։„ ‖388 B արբեցօղք։ — DEF քնէածք. G քննէածք… նախանձաւորք։ ‖389 C պարզ "նախանձոտք„ (առանց "չարեաց„ բառին։) L երկուքն ալ չունի։ — D չունի ցանկացողք չարեաց,„ նոյնպէս L. իսկ BC ցանկացօղք չարեաց։ ‖390 C Է— խիստք։ — DEFG եւ Զեռ. 101 նեղասիրտք, ցոփասիրտք. (AB ցօփասիրտք, C ցոպամիտք։) ‖391 C յանդուգք A յանդուգ, G յանդունք։ — A եւ անգութք։ C եւ անողորմք, ոխակալք եւն։ ‖392 B կռվօղք։ — C հոս չունի "քսմսք։„ ‖393 G շոգմոգ որ ինչ նման եւն. F եւ (այս "եւ„ ունի նաեւ C) շոգմոգք. Զեռ 101 շոգմոք։ — C "շոգմոգք„ բառէն ետքն ունի "քսմսք։„ — DEFG որ ինչ նման են, C

*ձեսցին ի պաշտաւն քահանայութեան. վասն զի գրեալ է՝ Ի բաց կացէք յինէն ամենեքեան որ գործէք զանաւրէնութիւն։*

30. ԻԳ. *Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, [թէ որպէս Տէր հրաման ետ եւ պարգեւեաց մեզ թէ Զոր արձակիցէք յերկրի, արձակեալ լիցի յերկինս, եւ զոր կապիցէք յերկրի, կապեալ լիցի յերկինս, նոյնպէս եւ հրաման տուեալ քահանայութեան եւ երիցանց կարգի, զարժանիս աւրհնութեան՝ միաբան աւրհնել եւ զանարժանսն միաբան կապել եւ ըմբերանել։ Եւ զոր կապեսցենն, կապեալ կացցէ,*

---

“...նմանք են.„ Ձեռ. 101 “եւ այլ որ ինչ նման են։„ ‖[394] BC եւ Ձեռ. 101 ի պաշտօն։ ‖[395] B գրեալ է թէ։ — G ամենեքեանքն ոյք (այսպէս “ոյք„ ունին AC, իսկ B “որք։„)

§ 30. ԻԳ. ‖[398] C հրամայեաց (փխ. “հրաման ետ։„) ‖[399] A նախ “պարգեաց„ գրուած, յետոյ սրբագրուած՝ “պարգեւեաց։„ C հոս կը յաւելու “եւ պատուիրեաց։„ — B զոր արձակէք, DEF զոր արձակեցէք։ ‖[400] G երկրի (փխ “յերկրի։„) — B արձակեալ եղիցի, C եղիցի արձակեալ։ — Յաջորդ խօսքը (“եւ զոր կապիցէք ...յերկինս„) չունին CDEFGL, իսկ B եւ զոր կապէք ...եղիցի կապեալ եւն։ ‖[401] C “նոյնպէս եւ մեր հրաման տուեալ քահանայական եւ երիցական կարգի.„ (— F “կարգիս„ կը գրէ։) ‖[403] B զարժանիս օրհնութեան ...օրհնել եւ զանարժանն եւն։ — DEF զարժանիս օրհնութեանն։ C աղատ. “զայնուսիկ որք արժանի են՝ քահանայական կարգի միաբանութեամբ օրհնել, եւ զընդդիմական կապել եւ ըմբերանել, ցայնվայր մինչեւ հնազանդիցի„ եւն։ ‖[405] AB եւ զոր կապեննն... կայցէ։ ‖[406] C ապա

մինչեւ հնազանդեսցի առաջնորդին: Ապա] եթէ տարապարտուց եւ յանարժանս զոք կապեսցեն, պատիժ պատուհասի ընկալցին ըստ արժանի, որք ի զուրն կապեցին: Բայց որ կապեցաւն, ընկալցի ախորժելով զկապանսն, որպէս թէ իցէ արժանի կապանացն:

31. ԻԴ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, թէ մի՛ ոք յանդգնեսցի ի մարդկանէ, [որոյ չիցէ զաւծումն քահանայութեան ընկալեալ,] եւ արասցէ իրս ինչ իշխանութեամբ իբրեւ զքահանայ. [եւ կամ քահանայ աշառութեամբ եւ ակնառութեամբ գործեսցէ ինչ] առանց աւրինաց եւ իրաւանց, այլ արդարութեամբ եւ անակնառութեամբ:

32. [ԻԵ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ մի՛ ոք անարգեսցէ եւ

---

թէ տարապարտուց եւ անարժանապէս զոք . . . : ‖407 B փխ. "զոք կապեսցենն„ կարդալու՝ կը գրէ "զուր . . .„ G անարժանս զոք կապեսցին: ‖408 BC ըստ արժանեացն: — AB որք զուրն կապեցին, G որք ի զուր, C որք ի զուր կապիցեն: ‖410 DEFG ընկալցին ախորժելով: — C կամաւորապէս եւ ախորժելով. L "համբերութեամբ„ կ'ըսէ:

§ 31. ԻԴ: Ունի նաեւ Գօշ: ‖414 C որ ոչ իցէ ընկալեալ զօծումն մի՛ արասցէ իր ինչ... եւ քահանայն այն մի ինչ աշառութեամբ առնէ: ‖417 B աշառու (փխ. "աշառութեամբ„). Գօշ՝ "աշառանօք:„ BDEFGL յաջորդ "ակնառութեամբ„ բառը չունին, զոր ունի նաեւ Գօշ: ‖418 C եւ Գօշ "գործիցէ ինչ առանց օրինաց (— B "օրինաց, G յաւրինաց.) C յաջորդ "եւ իրաւանց„ չունի: ‖419 C "անառակութեամբ„ գրած է փխ. "անակ-

անգոսնեսցէ եւ արհամարհանաւք կալցի զքահանայն, Թէեւ կարի ոք անարժան եւ յանարգաց իցէ։ Գիտասցէ զի զԱստուած անարգէ. զի Աստուծոյ սպասաւոր է ձեզ ի բարիս. եւ համարս տալոց է ընդ ոգւոց ձերոց։ Ո՞չ գրեալ է՝ Զիշխան ժողովրդեան քո մի՛ բամբասեսցես։]

33. ԻԶ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, Թէ որք են յաստիճանի դատաւորութեան եւ իշխան են առնել դատաստան, եԹէ Թիւրիցէ եւ աչառիցէ երեսաց եւ

---

նառութեամբ." AB եւ անաչառութեամբ, DEF եւ Գօշ "անակնառութեամբ" պահած են։ — Գօշի Նկատմամբ տես էջ 205։

§ 32. ԻԵ։ Նաեւ Գօշ ունի այս կանոնը (տես վերը՝ էջ 205 եւն։) ‖421 C եւ Գօշ միայն "Եթէ մի ոք," այլ՝ "Թէ։" ‖422 A անկոսնեցէ։ — BC եւ Գօշ "արհամարհանօք։" G եւ արհամարհեցէ կալցի (այսպէս)։ ‖423 ABC Եթէ կարի եւն (փխ. "Թէեւ") — C եւ Գօշ չունին "անարժան եւ" բառերը։ — G անարգաց (փխ. "յանարգաց։") ‖424 BG զի Աստուած անարգէ։ — C վասն զի Աստուծոյ եւն։ ‖425 DEFG համարս տալոց ընդ ոգւոյ" (չունին "է"). Գօշ "համարս տալոց են," այլ՝ "համարս տացեն։" ‖426 C յաղագս հոգւոյ ձերոյ (փխ "ընդ ոգւոյ.") — AB ոգւոյ, G հոգւոց։ — C ո՞չ առաքէն գրեալ է. B Գօշ "զի գրեալ է։" ‖427 B զիշխանս ժողովրդեան եւն։ — DEF եւ Գօշ "մի՛ բամբասեսցես." AB ոչ բամբասեսցես։

§ 33. ԻԶ։ Նաեւ Գօշ ունի (տես էջ 205 եւն։) ‖429 BC եւ Գօշ "Եթէ որք...," — DEF յաստիճանի. C աստիճանի. AB աստիճան. G եւ Գօշ "յաստիճան։" ‖430 ABDEFG իշխեն (փխ. "իշխան են"). C "իշխան դատ առնել." միայն

պարտաւորիցէ զարդարն եւ արդարացուսցէ զպարտաւորն, մի եւս կացցէ ի կարգի դատաւորութեանն եւ պատուհասեալ կշտամբեսցի. [զի ոչ իմացաւ զգրեալսն աստուածային ձեռամբն յաւրէնսն Մովսիսի թէ Մի խոտորեցուսցես զիրաւունս ի դատաստանի, եւ կաշառ ի վերայ իրաւանց մի առնուցուս:]

34. ԻԷ. Կարգեցին առաջեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ ոք ելանիցէ յաշխարհէ ճշմարիտ վախճանաւ եւ կամ խողխողեալ յանուրինաց վկայ հաւատարիմ վասն անուան

---

Գօշ "իշխան են...„ B իշխեն առնել զդատաստանս: ‖[431] Այսպէս Գօշ: ABDEF եթէ թիւրեսցի [B թիւրեսցէ), եթէ աչառիցէ (B աչառեսցէ). C եթէ թիւր իցէ եւ աչառիցեն, G եթէ չթիւրեսցի, եթէ աչառիցէ: ‖[432] "Պարտաւորեսցէ„ բառը կը կցէ D "երեսաց„ բառին հետ "եւ„ զօդը չունենալով: ABDEFG պարտաւորեսցէ, C պարտաւորեսցեն... արդարացուսցեն: ‖[433] C մի եւս կացցեն: — Միայն Գօշ "ի կարգի,„ այլք՝ "ի կարգ:„ — BCG դատաւորութեան: ‖[434] B ոյլ պատուհասեալ են: ‖[436] B յօրէնսն: C չունի այս բառն եւ անիմաստ է: — G Մովսէսի: — C թէ մի խոտեսցես զիրաւունս: ‖[437] B դատաստանի (առանց "ի„ նախդրի:) ‖[438] BCDEFG եւ Գօշ "մի առնուցուս,„ իսկ A ոչ առնուցուս:

§ 34. ԻԷ. ‖[440] G "աշխարհէ ... վաղճանաւ եւ կամ խողխողեալ անաւրինացն:„ Նաեւ AB "վաղճանաւ„ կը գրեն, իսկ BC յանօրինաց: ‖[442] B վկայ հաւատարիմ յերկինք. C "հաւատարիմ եղեալ վասն անուան Տեառն, խոստովանելով զանուն Տեառն Յիսուսի Քրիստոսի:„ Վերջին մասս G "խոստովանելով զՔրիստոսին նեղութիւնս.„ ուղղելի

փրկչին՝ խոստովանելով զՔրիստոս ի Նեղութիւնս, որ վասն անուան Նորա լինի, արասցեն զյիշատակս Նոցա յաւուր մահուան Նոցա, [եւ զնշխարս ոսկերաց Նոցա ի պատիւ առեալ՝ փառաւորեսցեն զՔրիստոս, որ ետ Նոցա զայնպիսի համբերութիւն՝ յորդորումն եւ ի թողութիւն մեղաց մերոց:]

35. ԻԸ. Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ թագաւորք որք ունին զհաւատս եկեղեցւոյ սրբոյ, եւ խոստովանին զՔրիստոս, իշխանութիւն լիցի ընդ քահանայս ի բեմի կալ, իբրեւ զԴաւիթն եւ որ իբրեւ զնայն էին, [ըստ մարգարէութեանն եթէ թա-

---

“...զՔրիստոս ի Նեղութիւնս: ‖443 C ի Նեղութեան. DEF ի Նեղութիւնս (հմմտ. G): ‖444 C որ... լինին, ոչ արասցեն եւն: ‖445 AC յաւուր մահուան Նորա (փխ. “Նոցա:„) ‖446 B զնշխարս ոսկերաց ի պատիւ առեալ (չունի “Նոցա.„) C զոսկերս Նոցա ի պատիւ Նահատակութեան պահեսցեն եւ փառաւորեսցեն եւն: ‖447 G զայսպիսի համբերութիւն: ‖448 AB է յորդորումն. C եւ յորդորումն... մեղաց ամենեցուն:

§ 35. ԻԸ. ‖451 B թագաւորքն. C թագաւորք ունին (առանց “որք„ դերանուան:) ‖452 A եկեղեցոյ: — B չունի “եւ„ զօդը “խոստովանին„ բայէն յառաջ: — ABC ...խոստովանին զՔրիստոս, DEFG ...է Քրիստոս: ‖453 C իշխանութիւն լիցի Նոցա ... ի բեմն կալ: ‖454 BC իբրեւ զԴաւիթն: ‖455 AF զնայն, B զնա, DE զնոյն, G ...զԴաւիթն որ եւ զնայն էին ըստ մարգարէութեան եթէ ...: C չունի այս խօսքն, այլ “...իբրեւ զԴաւիթն. զի որպէս ասէ Դաւիթ ի մարգարէու-

գաւոր յուսացաւ ի Տէր, յողորմութեանց բարձրելոյն նա մի՛ զրկեսցի։ Բայց յայլ ինչ մի՛ համարձակեսցի, գուցէ որպէս զՈզիայն պատուհասեալ իցէ։]

36. ԻԹ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ ի պաշտաման եկեղեցւոյ ասասցեն զսաղմոսն եւ զաւրհնութիւնս Դաւթի պաշտել աւր ըստ աւրէ յամենայն ժամ, [զմարգարէութիւնսն Դաւթի ծռ սաղմոս.] որպէս եւ ասէն իսկ. Աւրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ աւրհնութիւն նորա ի բերան իմում. եւ՝ Յաւրէնս Տեառն խորհեցայ

---

թեան իւրում, թէ։ — BG ըստ մարգարէութեան։ ||456 ABC յողորմութենէ, G յողորմութեանց Բարձրելոյ։ ||457 BC նա մի՛ սասանեսցէ (փխ. "զրկեսցի։") — BG բայց այլ ինչ (փխ. "յայլ...") ||458 C գուցէ պատուհասեալ որպէս զՈզիայն իցէ ի բեմէն։

§ 36. ԻԹ. ||461 B թէ։ — G ի պաշտաման...։ ||462 AB ասասցեն սաղմոս, D ...զսաղմոս, F զսաղմոսն, G զսաղմոս, C զսաղմոսսն։ — B եւ զօրհնութիւնս... օր ըստ օրէ։ ||463 C ...օր ըստ օրէ, եւ աւել զհարիւր յիսուն սաղմոսն ըստ այնմ՝ Օրհնեցից եւն։ ||465 G որպէս եւ ասեն։ — Այստեղ միայն DEFG կ՚ըսեն "...եւ ասէն խոկ," այլք չունին "իսկ։" — A երկու անգամ ալ "ամենայն ժամ։" Ձեռագիրք կրճատմամբ ունին կաչումն, A մինչեւ "արհնու." B "օրհնութիւն," GL չունին "Զաւրհնութիւն... իմում" նախադասութիւնը։ ||467 DEF ի բերան իմում, C իմ։ — A խորհեցայ, C խորհեցի նա, G խորհեցայց ... ի գիշերի, սաղմոս ասացից եւն։ Հոս ալ A կրճա-

*ի տուէ եւ ի գիշերի, եւ սաղմոս ասացից եւ ի միտ առից եւ լսելի արարից զձայն աւրհնութեան նորա. [եւ դարձեալ՝ Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում եւ Թագաւորին մերում՝ սաղմոս ասացէք։]*

37. Լ. *Կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ յեկեղեցւոջ գիրք ընթերցցին՝ Հին կտակարանք, աւրէնք եւ մարգարէք եւ Նոր կտակարանք, [որ լինիցին վասն կենարար չարչարանաց Փրկչին մերոյ Քրիստոսի,] եւ գործք եւ խաւսք աւետարանչացն քարոզութեան [վասն բանին ճշմարտութեան,] եւ վար-*

---

*տեր է "ի տուէ" գրելով եւ ոկսելով յաջորդն՝ "եւ լսելի" եւն։* ‖468 C *"եւ այլուր ասէ. Սաղմոս ասացից... եւ դարձեալ թէ Լսելի արարէք" եւն։* ‖469 A *կրճատ՝ "զձայն աւրհնու."* BC *օրհնութեան։* ‖471 G *թագաւորի։* ABC *թագաւորին մերոյ.* C *սաղմոս ասացէք թագաւորին մերում, սաղմոս ասացէք։*

§ 37. Լ. ‖474 CDEFG *թէ։* — A *յեկեղեցւոջ,* C *եկեղեցւոջ։* — C *"ընթերցցին գիրք, այսինքն՝ Հին" եւն։* AB *հոս "գիրս" կ'ըսեն, եւ* B *"ընթերձյին,"* F *"ընթերցեն։"* ‖475 DCGL *Հին եւ Նոր կտակարանք։* — B *օրէնք։* ‖476 *Միայն* AB *հոս ունին "եւ Նոր կտակարանք," զոր այլք շփոթմամբ վերը դրած էին, որով* DEFG *չունին "աւրէնք եւ մարգարէք եւ Նոր կտակարանք" բառերը.* C *ապա "Հին եւ Նոր կտակարանք, օրինաց եւ մարգարէից, այսպիսիք որք պատմեցին զկենարար փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, վասն գործոց եւ խօսից քարոզութեան աւետարանչացն յաղագս բանին ճշմարտութեան" եւն։* — G *որ լի-*

դապետութիւն աշակերտաց փրկչին. եւ այլ աւելի քան զայս մի՛ ընթերցցի ի բեմի։

38. ԼԸ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ հաց պատարագին յօրում աւուր եփեսցի, ի նմին աւուր ելցէ ի սեղանն եւ մի՛ լիցի իշխանութիւն զկնի աւուրց հանել. [զի եւ Մովսէս ոչ պակասեցուցանէր զհացն ջերմ յերեսաց Տեառն։]

39. ԼԹ. կարգեցին առաքեալքն եւ եդին հաստատութեամբ, եթէ ոք ի կարգէ պաշտօնէից եւ յուխտէ եկեղեցւոյ, եւ կամեսցի կուսան լինել, բարւոյ գործոյ ցանկայ, համարձակ լիցի. վասն շինելով ի տեղիս տեղիս ժողովեալ աւրինաց եւ կարգի սրբութեան զգուշացին [ի

---

նիցի։ ‖[480] ABCF եւ վարդապետութեան աշակերտաց. C (առանց “եւ„ զօդին) վարդապետութեան մերոյ յաշակերտացս։ — C եւ այլ ինչ աւելի եւն։ ‖[481] B մի՛ ընթերցցի։ — C ի բեմին։

§ 38. ԼԸ. Ամէնքը միաձայն։ C չունի “իշխանութիւն,„ այլ “մի լիցի զկնի աւուրց հանել ի սեղանն, զի չէ պարտ. քանզի Մովսէս ոչ պակասեցուցանէր զջերմն հաց ի սեղանոյ երեսաց Տեառն։„

§ 39. ԼԹ. ‖[489] B թէ։ — C եթէ ոք ի պաշտօնէիցն եւ յուխտէ եկեղեցւոյն (A եկեղեցւոյ.) կամաւ ցանկասցի բարի գործել, համարձակիցի թէ վասն շինութեան եւ ժողովման կարգի կամ օրինաց սրբութեան եւն։ ‖[491] B բարի գործոյ։ — B համարձակ լիցի վասն շինելոյ։ (AB “շինելով,„ ուրիշ ձեռագիրներ՝ “շինելոյ։„) ‖[492] B չունի “ժողովեալ,„ եւ յաջորդը “օրինաց„ կը գրէ։ ‖[493] D սրբութեանն։ — C բայց զգուշացին ի կերակրոյ, եւ ի զինուորական զգեստուց

ու ճապաղ եղած է Ար., որ նաեւ կ'որոշէ թէ կիրակի եւ շաբաթ օրերը պէտք չէ պահք պահել։ կանոնիս ներքնոյն եւ պահոց մասին հմմա. վերը՝ էջ 54—5, տես նաեւ 143։

*16. Տող 233—238. կան. Թ:* Ասորին կան. Ը. (M. կան. Ժ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ի կատարման ամենայն գրոց ընթերցի Աւետարան՝ իբրեւ զկնիք ամ գրոց, եւ յոտն կալով ժողովուրդն լուիցէ նմա. զի աւետիք փրկութեան են ամենայն մարդկան։„ Միակ կանոնն է որ գրեթէ անարատ անցած է խմբագրին ձեռքէն։ Ար. բաւական զարգացած է (կան ԺԲ), ուր կ'ըսուի նախ թէ Արարածքն, Մարգարէքն, եւ Գործք Առաքելոց պիտի կարդացուին եկեղեցւոյ մէջտեղը բարձր տեղը մը (արաբը կ'ըսէ الانبل, Եթովպ. manbar, որ է աթոռ, գահ եւն.) վերջն ալ թէ աւետարանն ամէն գրքերէ աւելի յարգուի։ կանոնիս մասին տես վերն՝ էջ 29—35։

*17. Տող 239—243: կան. Ժ:* Ասորին՝ կան. Թ (M. կան. Ը.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ի կատարման. Ծ. աւուրց յետ յարութեան՝ արասցեն զյիշատակ վերացմանն նորա առ Հայր իւր փառաւորեալ։„ Հոս ալ M փոխեր է ըստ նորագոյն սովորութեան՝ յարութենէ ———— օր ետքը դնելով Համբարձման տօնը (տես վերը՝ էջ 47—8, 160.) ճիշդ Mի պէս նաեւ Ար. (կան. ԺԱ։)

*18. Տող 244—251. կան. ԺԱ:* Ասորին եւ արեւելեանք չունին, եւ նիւթն ալ հակառակ է նախընթացին, յայնմ որ Համբարձման տօնը քառասներորդ օրը կ'որոշուի։ Տես այս կանոնիս մասին վերն՝ էջ 227—30։

*19. Տող 252—265. կան. ԺԲ:* Ասորին (կան. ԺԱ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ որ ոչ գիտէ զհաւատս եկեղեցւոյ եւ զկարգս եւ զօրէնս՝ որ կարգեալ են ի նմա, մի՛ լիցի առաջ-

նորդ եւ հրամանատար (տես էջ 43), եւ որ գիտէ զայնոսիկ՝ բայց անցանէ զնոքօք, ոչ պաշտեսցէ. զի չէ ճշմարիտ ի պաշտամանն իւրում, ասէ:„ Խմբագրեալ հայր ճոխացած է վերջը յաւելուածներով. նման յաւելուածներ ունի նաեւ Ար. (կան. ԺԳ:) Տես վերը՝ էջ 76—7, 143, 190:

*20. Տող 266—294. Կան. ԺԳ:* Ասորին ըսէ. հայն ալ չափազանց ճոխացած է խմբագրին յաւելուածներովը. նախնականն հազիւ երկու երեք տող ըլլալու է. (տես վերը՝ 221, 226—7:) Չունին նաեւ Արեւելեանք:

*21. Տող 295—304. Կան. ԺԴ:* Ասորին (կան. ԺԳ.) "Դարձեալ կարգեցին Առաքեալքն, եթէ իցէ ոք երկմիտ ի պաշտաման եւ չիցէ ճշմարիտ ի նմա (տես էջ 172), այնպիսին դարձեալ մի պաշտեսցէ, զի չէ նմա ճշմարիտ տէրն պաշտաման. նա զմարդիկ խաբէ եւ ոչ զԱստուած՝ այն որ ոչ հաստատին կամակորութիւնք առաջինորա.„ (տես էջ 29, 94—5:) Ասորւոյն պէս նաեւ Ար. (կան. ԺԶ:)

*22. Տող. 305—314. Կան. ԺԵ:* Ասորին (կան. ԺԲ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ որ երդնու կամ (M եւ) ստէ, կամ վկայէ զվկայութիւն անօրէնութեան, կամ երթայ առ կախարդս եւ հարցուկս եւ քաւթեայս (քաղդէացիս, տես էջ 27) եւ վհուկս (— միայն M ունի "եւ վհուկս„ = Հայն,) եւ հաւատայ բախտից եւ ծննդոց՝ զոր ընդունին այնոքիկ որ ոչ ճանաչեն զԱստուած, եւ ինքն որպէս այր՝ որ ոչ ճանաչէ զԱստուած, մերժեսցի ի պաշտամանէ եւ մի պաշտեսցէ:„ Ար. երկու կանոն բրած է այս կտորը (կան. ԺԴ եւ ԺԵ.) որոնց վերջինը (կախարդութեան եւն մասն) շատ ճոխացած է: Կանոնիս մասին տես վերը՝ էջ 60—1, 89, 190:

*23. Տող 315—325. Կան. ԺԶ:* Ասորին (կան. ԺԵ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ որ սիրէ զՀրեայս՝ որպէս զՄկարիովտացին՝ որ

սիրեաց զնոսա կամ զհեթանոսս որ երկիր պագանեն արարածոց փոխանակ արարչին, մի՛ մնասցէ ի մէջ նոցա (յեկեղեցի) եւ պաշտեսցէ, այլ եթէ իցէ ի միջի նոցա՝ մի՛ թողցեն եւ մի՛ պաշտեսցէ դարձեալ ընդ նոսա:„ Ար. նոյնպէս՝ կան. ԺԸ: Տես ասոր մասին վերը՝ էջ 39—42, 88:

*24. Տող 326—335. կան. ԺԷ:* Ասորին (կան. ԺԶ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ոք ի հրէից կամ հեթանոսաց եկեսցէ եւ խառնեսցի ի նոսա (յեկեղեցի), եւ եթէ՝ իբրեւ խառնեալ էր ի նոսա, դարձցի եւ երթիցէ ի կողմն՝ ուր էրն, եւ եթէ դարձեալ կրկնեսցի եւ եկեսցէ առ նոսա, մի՛ ընդունիցին զնա. այլ իբրեւ ի կողմն՝ ուր էր զառաջինն, այնպէս հայիցին ի նա՝ որ ճանաչէինն զնա:„ Ար. կան. ԺԹ: Ասոր ալ մասին տես նախընթացին հետ՝ էջ 39—42, 88:

*25. Տող 336—346. կան. ԺԸ:* Ասորին (կան. ԺԴ) շատ համառօտ է՝ "Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ փոխ տայ եւ առնու տոկոսիս եւ փոյթ յանձին ունի զվաճառականութենէ եւ զագահութենէ (= Հայր "եւ շահի շահս ագահութեան.„ նման L եւ M "...զվաճառականութենէ ագահութեան.„) այնպիսին մի՛ եւս պաշտեսցէ եւ մի՛ կացցէ ի պաշտաման:„ Արաբ.-Եթովպ. քիչ մը տարբեր՝ կան. ԺԷ, ուր ագահութեան եւ վաշխառութեան հետ կը յիշուի նաեւ շնութիւն: Տես վերը՝ էջ 77—8, 87:

*26. Տող 347—358. կան. ԺԹ:* Ասորին (կան. ԺԷ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ չէ իշխանութիւն առաջնորդին առանց իւրոց պաշտօնակցացն առնել զիրս ինչ եկեղեցւոյ, այլ խորհրդով ամենեցուն հրաման տացէ, եւ արասցէ՝ ընդ որում ամենեքին միաբան են եւ ոչ ընդդէմ դառնան:„ Ճոխացած է Ար. (կան. Ի), որուն ինչ ինչ մասերը կը հաստատեն հայոյն մէկ քանի մասերն. այսպէս՝ "քանզի յայտ է հաճութիւն Ա-

տուծոյ եւ խաղաղութիւն ժողովրդեան եւ պարապ կրօնից. եւ մի՛ լիցի տրտմութիւն միոյ կողման վասն հրամանին իւրոյ եւ մի՛ հակառակութիւն անցանելով զիրաւամբք„ եւն եւն, որուն հետ համեմատելու է հայոյն բառն թէ՝ "զի մի՛ լիցի տրտմութիւն եւ հերձուածք. զի ի միաբանութենէ... եւ հաւատքն հաստատուն„ եւն: Տես վերը՝ էջ 73 եւն, 190:

27. *Տող 359—371. կան. Ի:* Ասորին (կան. ԻԴ) բոլորովին ուրիշ բան է, այսինքն՝ պերիօդտներու վրայ կը խօսի, մինչ խմբագրեալ հայն կերպարանափոխ եղած է: Բարեբախտութեամբ ճիշդ այս կանոնին Նախնական հայ թարգմանութիւնը հասած է մեզի "Կղեմայ„ առաքելական Կանոնաց մէջ մտնելով շփոթմամբ իբրեւ կան. ՁԴ: Ասորին, Նախնական հայն եւ խմբագրեալ հայն համեմատուած իրարու հետ տես վերը՝ էջ 207. Ներքին բովանդակութեան համար՝ էջ 50—54, 143—4: Բոլորովին ուրիշ տեղ եւ կարճառօտ ունի այս կտորն Ար. (կան. Ձ) այսպէս՝ "Ունիցին եւ քորեպիսկոպոսունս եւ պերիօդտօս (արաբականը՝ ابروايطوس, եթովպականը հոս չունի ո՛չ քորեպիսկոպոսի եւ ո՛չ պերեօդուտի յիշատակութիւն,) որ են տեսուչք, եւ քահանայս. եւ եղիցին որքս ի պատուի իմաստնոց որդւոց Իսրայէլի:„ Երկրորդ անգամ աւելի նման տարբերոյն ունի միեւնոյնը՝ կան. ԻՁ:

28. *Տող 372—384. կան. ԻԱ:* Ասորին (կան. Ի) "Դարձեալ եդին առաքեալքն եթէ որ լոկ են ի մամոնայէ եւ չերթան զկնի արծաթոյ շահից, նոքա ընտրեսցին եւ մերձեցուսցին ի պաշտօն սեղանոյ:„ Ճիշդ այսպէս չկայ կանոնս Արաբ.-Եթովպ. խմբագրութեան մէջ, բայց ընդարձակեալ եւ տարբեր ձեւով ընդհանրապէս նոյն նիւթոյ վրայ կանոն մը կայ հոն ալ (կան. ԻԳ), ուր կրկին անգամ կը շեշտուի որ եկեղեցականք "աղքատ„

ըլլալու են եւ «աշխարհական արուեստ» մ'ունենալու չեն։ Տես վերը՝ էջ 143, 190։

*29. Ցող 385—396. կան. իԲ։* Ասորին (կան. ԻԳ) համառօտ եւ առանց խմբագրեալ հայ բնագրին յաւելուածներուն՝ «Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ ամբարտաւանքն են եւ հպարտութեամբ սնապարծութեան ուռուցեալ՝ մի՛ մերձեցուսցին ի պաշտօն, վասն այնր՝ թէ որ բարձրացեալ է առ մարդկան՝ խոնարհեալ (խոտան) է առաջի Աստուծոյ, եւ ի վերայ նոցա ասացեալ է թէ՝ Ես հատուցից նոցա որ ամբարհաւաճեն։» Աս ալ շատ ճոխացած ունի Ար. (կան. ԻԵ.) եւ այս աւելի մասերուն ոմանք կը նմանին հայ խմբագրին ըրած յաւելուածներուն հետ։ Տես վերը՝ էջ 143, 190։

*30. Ցող 397—411. կան. իԳ։* Ասորին (կան. ԻԱ) համառօտ՝ «Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որ կապիցէ տարապարտուց (—բուն՝ ըստ պատահման —) յանարժանս, պատիժս պատուհասի ընկալցի ըստ արժանի, բայց որ կապեցաւն՝ ընկալցի զկապանսն որպէս թէ ըստ արժանւոյն կապեցաւ։» Շատ ճոխացած է հոս Ար. (կան. ԻԴ) որ վերջը կը կցէ թէ կրնայ բողոքուիլ՝ մետրապոլտին եւ պատրիարքին, որոնք վերջին վճիռը պիտի տան։ Կանոնիս մասին տես վերը՝ էջ 75—6, 190։

*31. Ցող 412—419. կան. իԴ։* Ասորին (կան. ԻԶ.) «Կարգեցին դարձեալ առաքեալքն թէ մի՛ ոք յանդգնեսցի եւ առնիցէ ինչ մի իշխանութեամբ քահանայութեան առանց օրինաց (ըստ արժանւոյն) եւ իրաւանց, այլ արդարութեամբ եւ առանց դորովանաց ակնառութեան։» Ըստ նիւթոյ նոյն՝ բայց կերպարանափոխեալ է (հայոյն պէս) նաեւ Ար. (կան. ԻԹ), ուր կը սահմանուի որ եկեղեցական առաջնորդք «զհրամանս» խստիւ պահեն եւն։

32. *Տող 420—427. կան. իե:* Ասորին չունի սոյն համապատասխանող կտոր մը: Հայոյն ու կտորին հարազատ ըլլալը կամ ոչ տես վերն՝ էջ 225. (Համմտ. նաեւ էջ 190:)

33. *Տող 428—438. կան. իզ:* Ասորին (կան. ԻԲ.) “Դարձեալ կարգեցին առաքեալքն թէ որք սովոր են լսել դատաստանս՝ եթէ աշառիցեն եւ պարտաւորիցեն զարդարն եւ արդարացուսցեն զպարտաւորն, մի եւս լուիցեն դատաստանս այլ, եւ դարձեալ ընկալցին կշտամբանս վասն ակնառութեան ըստ արժանի:„ Արաբ.-Եթով. խմբագրութեան մէջ ըստ երեւոյթին խառնուած են այս կանոնին որոշումները՝ ԻԴ (Հայ՝ ԻԳ, Ասորի ԻԱ, տես § 30) կանոնին բովանդակութեան հետ, իսկ զատ կանոն չենք գտներ: Կանոնս համեմատուած Աբգարու Պատմութեան նոյն մէկ կտորին հետ՝ տես վերը, էջ 89. (Համմտ. նաեւ էջ 190:)

34. *Տող 439—449. կան. իէ:* Ասորին (կան. ԺԸ.) “Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ վասն այնոցիկ որ ելանիցեն յաշխարհէ բարի վկայութեամբ հաւատոցն Քրիստոսի եւ ի նեղութեան՝ որ վասն անուան նորա, արասցեն զյիշատակ նոցա յաւուր մահուան նոցա:„ Նոյնպէս Ար. (կան. ԻԱ:) Տես վերը՝ էջ 63—65, 90:

35. *Տող 450—459. կան. իը:* Ասորին (կան. ԻԵ.) “Կարգեցին դարձեալ առաքեալքն, եթէ թագաւորք հանդերձեալ են հաւատալ ի Քրիստոս, իշխանութիւն լիցի նոցա, զի ելցեն եւ կացցեն առաջի սեղանոյն ընդ առաջնորդս եկեղեցւոյ. զի եւ Դաւիթ եւ որք իբրեւ զնոյն էին՝ ելանէին եւ կային առաջի սեղանոյ:„ Հայն սոյն յաւելուածին մէջ կը կցէ թէ “բայց յայլ ինչ մի համարձակեսցի„ եւն: Այսպիսի խօսք մ'ունի նաեւ Ար., որ երկու կանոն կը բովանդակէ թագաւորաց մասին, մին (կան. ԻԷ) ճիշդ նոյն վերնոյն հետ. իսկ երկրորդը (կան. ԻԸ) խմբագրեալ հայոյն յաւե-

լուածին իմաստով է՝ "Իսկ Թագաւորն մի Համարձակեսցի առնել չարիս ինքնակամ ի տաճարին առանց երկիւղի Աստուծոյ եւ առանց մեծարանաց նորա, զի Հաստատեսցէ Աստուած զաթոռ նոցա ի բարիս եւ երկարացուսցէ զաւուրս նոցա եւ Հաղորդս արասցէ զնոսա Հոգեւոր բարեացն յաւիտենականաց, եւ զի մի պակասիցի նոցա զաւակ՝ նստել յաթոռ իւրեանց։" Կանոնիս ծագման մասին տես վերը՝ էջ 35—37, 90։

36. *Ցող 460—472. Կան. ԻԹ*: Ասորին (Կան. ԺԹ.) "Դարձեալ կարգեցին առաքեալքն եթէ ի պաշտաման եկեղեցւոյ ասասցեն զօրՀնութիւնս Դաւթի օր ըստ օրէ, վասն այնր թէ՝ ՕրՀնեցից զՏէր յամենայն ժամանակի, յամենայն ժամանակի օրՀնութիւնք նորա ի բերանի իմում. եւ դարձեալ՝ ի տուէ եւ ի գիշերի խորՀեցայ եւ ասացի եւ լսելի եղեւ ձայն իմ առաջի քո։" (Կոչմանս մասին տես վերն՝ էջ 188 եւն։) Արաբ.-Եթովպ. խմբագրութիւնն աս վկայութեանց վրայ մէկ երկու Հատ ալ աւելցուցեր է (Կան. ԻԲ։) Տես վերն՝ էջ 90։

37. *Ցող 473—481. Կան. Լ*: Ասորին (Կան. Ժ) Համառօտ՝ "Կարգեցին դարձեալ Առաքեալքն թէ մի ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի (այլ գիրք), բայց միայն Հին Կտակարանք եւ Մարգարէք եւ Աւետարան եւ Գործք Առաքելութեանց նոցա։" Այս ասորական ասութեանց իմաստին Համար տես վերը՝ էջ 29—35; 90, 121։ Արաբ.-Եթովպ. յատուկ այս բացատրութիւններով կանոն մը չունի, կամ ճշդագոյն խօսելով՝ ասոր ալ նիւթը կցած է Թ. կանոնին Հետ. (տես վերը § 16։)

38. *Ցող 482—487. Կան. ԼԱ*: Ասորին (Կան. ԻԷ.) "Դարձեալ եդին առաքեալքն թէ Հաց պատարագին յորում աւուր եփեսցի՝ ելցէ ի սեղանն, եւ ոչ զկնի աւուրց՝ որ չէ օրէն։" Ար.

(կան. Լ) կը մեկնէ այս որոշումը կցելով որ օրէն չէ սրբագործեալ նշխարէն ալ պահել երկրորդ օրն եւ ընդհանրապէս սրբագործութեան օրը պէտք է նաեւ ճաշակել: կանոնիս մասին տես վերը՝ էջ 37—39, 144—5, 151:

*39. Տող 488—503. կան. ԼԲ:* Ո՛չ Ասորին եւ ո՛չ Ար. ունին այսպիսի կանոն մը. տես վերը էջ 223—5, եւ էջ 144, 190.

*40. Տող 504—537. կան. ԼԳ:* Աս ալ չկայ ո՛չ Ասորւոյն քով եւ ո՛չ յԱր., եւ իւր այժմու ձեւին մէջ խմբագրէն է. տես վերը՝ էջ 203—4, 222 ծան. 2, 190 եւն:

*41. Տող 539—559. (ԼԴ:)* Ասկէ եաքն ընդհանրապէս քիչ փոխած է Հայ խմբագիրը նախնական Հայ թարգմանութիւնը: Ասորին՝ “Արդ զայս ամենայն ոչ եթէ անձանց իւրեանց կարգեցին առաքեալքն, այլ այնոցիկ, որ զկնի իւրեանց գալոց իցեն. քանզի կասկածէին թէ պատրաստեալ (հանդերձեալ) էին գայլք զգենուլ զգեստ գառանց. քանզի բաւական էր ինքեանց Հոգին Մխիթարիչ՝ որ ի նոսա, զի՝ զոր աւրինակ եա կարգել ի ձեռն նոցա զօրէնս զայսոսիկ, առաջնորդեսցէ նոցա ըստ օրինաց. զի որք ընկալան ի Տեառնէ զօրութիւն եւ զիշխանութիւն, չէր ինչ նոցա պէտք եթէ յայլոց դնիցին նոցա օրէնք: Նա եւ Պաւղոս եւ Տիմոթէոս որ շրջէին ի կողմանս (յաշխարհին) Ասորւոց եւ Կիլիկեցւոց՝ զայն իսկ զայս օրէնս առաքելոցն եւ զերիցանց աւանդէին ամենեցուն՝ որ ընդ ձեռամբ առաքելոցն էին, յեկեղեցիս աշխարհացն՝ ուր քարոզէին եւ աւետարանէին:„ Ար. նաեւ այս մասն յատուկ խորագրով կը սկսի (բայց միայն Borg. ձեռագրին մէջ) այսինքն՝ “Վասն ժողովոյ Առաքելոց:„ Դարձեալ այս մասն շատ ճոխացած է հոն՝ Պաւղոսի յիշատակութեննէն եաքը (— որուն հետ կը յիշուի ո՛չ Տիմոթէոս, այլ Տիտոս եւ ըստ Վատիկանեան օրինակին

նաեւ Շէղա —) գրելով՝ "Եւ իբրեւ կարգեցին զայս կանոնս, ոչ դադարեցին եւ հանդերձ ի մեկնելոյ զգիրս սուրբս եւ ի յայտնելոյ մարդկան զամենայն՝ որ ինչ է ի գիրսն, յօգուտ հոգւոյ նոցա: Եւ կարգեցին կանոնս եւ այլ ինչ ի կարգաց եկեղեցւոյ սրբոյ, եւ եղեւ այս խոնարհութեամբ եւ հեզութեամբ եւ կատարելով սքանչելիս վասն ժողովրդեանն„ եւն: Վերջին տողս եւ յաջորդներն կը համապատասխանեն յաջորդ կտորին (§ 42:)

42. *Տող 560—569:* Ասորին՝ "Այլ աշակերտքն յետ դնելոյ զկարգս եւ զօրէնս, ոչ դադարէին ի քարոզելոյ զաւետարանն եւ ի նշանաց սքանչելեաց՝ զոր առնէր Տէրն մեր ի ձեռս նոցա. քանզի ժողովուրդ բազում ժողովէր հանապազ առ նոսա եւ հաւատայր ի Քրիստոս:„ Նմանն նաեւ Ար.:

43. *Տող 570—582:* Ասոր. "Եւ յայլոց քաղաքաց գային առ նոսա եւ՝ լսէին զբանս նոցա եւ ընդունէին. նաեւ Նիկոդեմոսի եւ Գամաղիէլ գլխաւորք ժողովրդեան Հրէից գային առ առաքեալսն ի ծածուկ եւ հաւանէին վարդապետութեան նոցա. այլ Յուդա եւ Ղեւի եւ Փեռի եւ Յուստոս որդիք Աննայի, եւ Կայիափա եւ Աղեքսանդրոս քահանայք (— հայը՝ "...Յուստոս՝ որդիք Աննայ եւ Կայիափայ եւ Աղեքսանդրոսի քահանայից„, այսպէս ալ կրնայ թարգմանուիլ Ասորին. —) գային եւ նոքա առ առաքեալս ի գիշերի եւ խոստովան լինէին ի Քրիստոս թէ որդի Աստուծոյ է. եւ երկնչէին յորդւոյ ժողովրդեան իւրեանց յայտնել զխորհուրդս իւրեանց որ առ աշակերտսն:„ Քիչ տարբերութիւն ունի նաեւ Ար.: Այս մասին համար հմմտ. Կոդրատոսի թուղթը՝ վերն էջ 123—131:

44. *Տող 583—605:* Ասորին՝ "Եւ ընկալեալ զնոսա առաքելոց սիրով՝ ասէին ցնոսա. Մի վասն պատկառանաց եւ երկիւղի մարդկան կորուսանէք զկեանսն ձեր՝ որ առաջի Աստուծոյ է, եւ պահան-

Ջնջիք ընդ հարսն ձեր զվրէժ արեանն Քրիստոսի զոր ընկալան ի վերայ իւրեանց. զի չէ ընդունելի առաջի Աստուծոյ, զի յորժամ իցէ ընդ երկրպագուս նորա՝ դարձեալ երթայցէք եւ խառնիցիք ընդ սպանողս որդւոյ նորա երկրպագելոյ. զիա՞րդ ակն ունիցիք ընդունելի լինել հաւատոց ձերոց ընդ ճշմարիտս, մինչդեռ իցէք ընդ սուտս. այլ արժան է ձեզ՝ որպէս արս որ հաւատան ի Քրիստոս, խոստովանել յայտնապէս զհաւատս զայս՝ զոր քարոզեմք մեք:„ Նոյնպէս Ար.:

45. Տող 606—621: Ասորին՝ "Իսկ իբրեւ լուան նոքա զայս յառաքելոցն՝ աղաղակեցին ամենեքին միաբան որդիքն քահանայից առաջի ամենայն ժողովրդեան առաքելոց թէ զխաչեալն Քրիստոս խոստովանիմք եւ հաւատամք թէ նա ի սկզբանէ է որդի Աստուծոյ եւ ուրանամք յայնցանէ՝ որ յանդգնեցան եւ խաչեցին զնա: Քանզի եւ քահանայք ժողովրդեան խոստովանէին ի ծածուկ զՔրիստոս. եւ վասն զլխաւորութեան ժողովրդեանն՝ զոր սիրէին, ոչ կամէին (սովորական հայ օրինակք "ոչ կարէին„) յայտնապէս խոստովանել, եւ մնացան նոքա զգրեալն թէ Տէր է գիտութեան (Տէր սրտագէտ է) եւ ոչ հաստատին կամակորութիւնք (արուեստք) առաջի նորա.„ (կոչմանս համար հմմտ. Կան. ԺԴ, վերը § 21:) Քիչ մը փոխուած է հոս Ար., իսկ աղաղակող "յորդւոց քահանայից„ համար կ'աւելցուի յայտնապէս թէ ի բաց առնելու է զԱննա եւ զԿայիափա:

46. Տող 622—634: Ասորին՝ "Եւ իբրեւ լուան հարքն նոցա զայս յորդւոց նոցա՝ սպառնացան նոցա յոյժ, ոչ զի հաւատացին ի Քրիստոս. այլ զի յայտնեցին եւ առակեցին զխորհուրդս հարց իւրեանց առաջի որդւոց ժողովրդեան իւրեանց: Բայց որք հաւատացինն յարեցան յաշակերտս եւ ոչ հեռանային ի նոցանէ. զի տեսանէին թէ զոր ինչ ուսուցանէին բազմութեան՝ զնոյն եւ արդեամբք

առնէին առաջի ամենայն ուրուք։„ Հոս ալ համառօտ է Ար.։

47. Տող 635—649։ Աստրին՝ "Եւ յորժամ նեղութիւն եւ հալածանք գային ի վերայ աշակերտացն՝ ուրախ լինէին ընդ կցորդ լինել նեղութեանց նոցա, եւ խնդութեամբ ընդունէին զտանջանսն եւ զբանտսն վասն հաւատոցն ի Քրիստոս. եւ զամենայն աւուրս կենաց իւրեանց քարոզէին զՔրիստոս առաջի Հրէից եւ Սամարացւոց. եւ յետ վախճանելոյ առաքելոցն եղեն առաջնորդք եւ հրամանատարք (տես էջ 43 եւն) յեկեղեցիս. եւ զոր ինչ աւանդեցին նոցա առաքեալքն եւ ընկալան նոքա ի նոցանէ՝ զամենայն աւուրս կենաց իւրեանց ուսուցանէին բազմութեան։„ Նոյնպէս Ար.։

48. Տող 650—675։ Աստրին՝ "Նոյնպէս աւանդեցին է— էփ——ն եւ նոքա ի վախճանի իւրեանց աշակերտաց իւրեանց զկնի իւրեանց զամենայն ինչ, զոր ընկալան յառաքելոց, եւ զոր ինչ գրեաց Յակոբոս յԵրուսաղէմայ, Եւ Շմաւոն է Հռոմ քաղաքէ (— ամէն հայ օրինակները դուրս ձգած են այս տողը, տես վերը. Արաբ.-Եթովպ. "եւ Պետրոս ի Հռոմայ.„ —) եւ Յովհաննէս յԵփեսոսէ, եւ Մարկոս յԱղեքսանդրիայ Մեծէ (— "մեծէ„ չունին Հայն եւ Ար. —), եւ Անդրէաս ի Փռիւգիայ, եւ Ղուկաս ի Մակեդոնիայ, եւ Յուդա Թովմաս (— Հայն "եւ Թովմաս.„ Ար. "Յուդա Եթովմաս„) ի Հնդկաց. եւ Թուղթքն Առաքելոյն (այսինքն Պաւղոսի ըստ Cur. եւ M, համաձայն Հայոյն "եւ Պաւղոսի առաքելոյ Թուղթքն.„ L. "Թուղթք առաքելոցն„ = Ար.) ընթերցեալ լինին եւ ընկալեալ յամենայն եկեղեցիս ընդ ամենայն տեղիս, որպէս ընթեռնուն Գործք Առաքինութեանց նոցա (տես էջ 33), զոր գրեաց նոցա Ղուկաս. զի յայսմ ծանիցին Առաքեալք եւ Մարգարէք եւ Հին Կտակարանք եւ Նորքս, թէ մի ճշմարտութիւն քարոզեցաւ յամենեսին, մի Հոգի

խօսեցաւ յամենեսեան ի միջէ Առաուծոյ, որում երկիր պագին ամենեքեան եւ զոր աւետարանեցին ամենեքին. եւ ընկալան տիեզերք (աշխարհք) զվարդապետութիւն նոցա: Եւ արդ ամենայն ինչ որ խօսեցաւ ի Տեառնէ ի ձեռն առաքելոց եւ առաքեալքն աւանդեցին աշակերտաց իւրեանց, հաւատացաւ (Հայր "եղեւ հաւատարիմ") եւ ընդունելի եղեւ յամենայն կողմանս՝ յակնարկել Տեառն որ ասէ ցնոսա թէ Ես ընդ ձեզ եմ մինչեւ կատարի աշխարհս." (կոչմանս մասին տես՝ էջ 30 եւն:) Ոչինչ տարբերութիւն ունի հոս Ար.: — Առաքելոց իրարու մէջ ունեցած կեղծ Նղնոյցոււնեան մասին՝ ինչպէս հոս կ՚աւանդուի, տես վերը՝ էջ 91, 94:

49. *Տող 676—684:* Ասորին՝ "Եւ վիճէին ընդ Հրեայս առաջնորդքն ի գրոց մարգարէից, եւ մարտնչէին նաեւ ընդ հեթանոս մոլորեալս զօրութեամբք նշանացն՝ զոր առնէին անուամբն Քրիստոսի:" Ասորւոյն համաձայն է նաեւ Ար.:

50. *Տող 685—702:* Ասորին՝ "Եւ ազգք ամենայն, նաեւ որ բնակեալ էին յաշխարհս Նէ-տտորս (— ասորի ձեռագիրք եւ Ար. "յայս աշխարհս." երկու բառերը շատ դիւրաւ կը շփոթին տառուոյն մէջ i եւ n գրերու նման ըլլալով տառւոյն մէջ. Լակարտ ուղղած էր ասորին ճիշդ հայոյն պէս՝ առանց տեղեկութիւն ունենալու վերջնոյս մասին. —) դադարեցին եւ լռեցին աւետարանաւն Քրիստոսի. եւ որ խստովանէին՝ աղաղակէին ի հալածանս թէ Հալածանքս այսօր աւուր եղիցին խաւանակ փոխանակ մեր՝ զի էաք յառաջ հալածիչք. զի էին ոմանք ի նոցանէ որ մահ սրոյ հրամայէր վասն նոցա, եւ էին ոմանք ի նոցանէ, զորոց զինչս բառնային ի նոցանէ եւ թողուին (զնոսա մերկս.) եւ որչափ նեղութիւն կայր (Հայ օրինակք "գայր") ի վերայ՝ այնչափ առաւելուին եւ աճէին ժողովք նոցա. եւ խնդութեամբ սրտից իւրեանց զամենայն

ազգ մահու ընդունէին։" Ար. ճոխացած ունի այս մասն, ի մանաւորի հալածանաց տեսակներու յիշատակութեամբ։

51. Տող 703—725։ Ասորին՝ "Եւ ձեռամբ քահանայութեանն՝ զոր ընկալան առաքեալքն ի Տեառնէ, թռեաւ վաղվաղակի աւետարան նոցա ընդ ամենայն կողմանս աշխարհի. եւ յորժամ այց առնէին միմեանց՝ պաշտէին զմիմեանս։" Այսչափ Ասորին. հայն՝ որ բոլոր այս միջանկեալ պատմական մասին մէջ (§§ 41—51) շատ քիչ փոխուած էր կանոնագրոց խմբագրէն, հոս քանի մ'անգամ ճոխացած է յաւելուածներով եւ կոչումներով սուրբ Գրքէն։ Իսկ Ար. հոս բոլորովին տարբեր է եւ յատուկ երկար վերջաբան մ'ունի, որով կ'աւարտի հոն գրութիւնն ալ. վասն զի յաջորդ Աշխարհացուցակը հոն ուրիշ տեղ է՝ ինչպէս յիշեցինք։ Այս վերջաբանէն յառաջ կ'ըսուի։ "Եւ քարոզութիւն նոցա եւ հրաւէր ոչ խափանեցաւ, մինչեւ սփռեցաւ ի չորեսին կողմանս երկրի," որ կը համապատասխանէ վերոյիշեալ մասին։

52. Տող 726—732. Ա։ Ասորին՝ (Ա.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան Երուսաղէմ եւ ամենայն աշխարհ Պաղեստինացւոց եւ Սամարացւոց եւ տան Փղշտացւոց, եւ աշխարհ Արաբացւոց եւ Փիւնիկեցւոց եւ որդւոց Կեսարու՝ ի Յակոբայ առաքելոյ, որ եղեւ առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ առաքելոցն՝ որ շինեցաւ ի Սիոն։" Արաբ.-Եթով. խմբագրութիւնն այս եւ յաջորդ մասերն աշխարհաց ցուցակի ունին կանոններէն յառաջ եւ բաւական տարբեր ձեւով։ Կեսարիոյ հետ կը յիշուի հոն յանուանէ Եմեսա, իսկ "աշխարհ Արաբացւոց եւ Փիւնիկեցւոց" խօսքին տեղ՝ "աշխարհ... Բեդուինաց Հիճազի" կ'ըսուի։

53. Տող 733—740. Բ։ Ասորին (Բ.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան յառաքելոց մեծն Աղեքսանդրիա եւ Թեբայիս (Լ. եւ Պենտապոլիս) եւ

Եգիպտոս Ներքին եւ ամենայն աշխարհն Պեղուսիոնի (ըստ CA ձեռագրի, Cur. M "Փեղոսն.„ հայր "Փիւղոնի,„ տես՝ էջ 176—7) եւ մինչեւ ցսահմանս Հնդկաց՝ ի Մարկոսէ աւետարանչէ, որ եղեւ անդ հրամանատար եւ առաջնորդ յեկեղեցւոջն զոր շինեաց անդ եւ պաշտեաց։„ Ար. "...յաշխարհին Եգիպտացւոց եւ Եթովպացւոց եւ Նուբեացւոց եւ որ շուրջ զնոքօք մինչեւ ի սահմանս Հնդկաց՝ ի Մարկոսէ, ի միոջէ ի չորից աւետարանչացն։„

54. *Տող 741—746. Գ:* Ասորին (Գ). "Ընկալան զձեռն քահանայութեան առաքելոց Հնդիկք եւ ամենայն աշխարհք ի նմա եւ որ շուրջ զնովաւ են, մինչեւ ի ծովն վերջին՝ ի Յուդայ Թովմայէ, որ եղեւ առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջն, զոր շինեաց անդ եւ պաշտեաց անդ։„ Ար. "Եւ ի Սինդ եւ Հնդկաստան եւ որ շուրջ զնովաւ մինչեւ ցծովն Կուբմիր (Borg. ծովն Կանուն)՝ ի Թովմայէ՝ յերկոտասան առաքելոցն։„

55. *Տող 747—755. Դ:* Ասորին (Դ.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց Անտիոք եւ Ասորիք (Հայր "Սուրիա„, տես էջ 179, 235) եւ Կիւլիկիա եւ Գաղատիա մինչեւ ցՊոնտոս՝ ի Սիմոնէ վիմէ, զի նա եդ զհիմունս եկեղեցւոյ անդ, եւ քահանայացաւ եւ պաշտեաց անդ մինչեւ ցժամանակն՝ յորում ել նա ի Հռովմ վասն Սիմոնի կախարդի, որ պատրէր զՀռովմայեցիս կախարդութեամբք իւրովք։„ Ար. "...Գաղատիա մինչեւ ցԵփրատ եւ Պոնտոս.„ վերջը յիշելով Պետրոսի Հռովմ երթալը՝ կը կցէ անոր գործունէութիւնն յարեւմուտս՝ այսինքն յաջորդ (Ե) կտորն՝ երկուքն իբրեւ մէկ հատած։

56. *Տող 756—764. Ե:* Ասորին (Ե.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց Մեծն Հռովմ եւ Իտալիա եւ Սպանիա եւ Բրիտանիա (Հայր "Բիւրիտոնիա„, տես 177—8), եւ Գաղղիա

հանդերձ այլովք աշխարհօք որ շուրջ զնոքօք՝ ի Սիմոնէ վիմէ, որ եւ յԱնտիոքէ ի Հռովմ եւ եղեւ հրամանատար եւ առաջնորդ յեկեղեցւոյ, զոր շինեաց անդ եւ շուրջ զնովաւ։" Ար. բաւական տարբեր է այս մասին մէջ։

57. *Տող 765—772.* Զ: Ասորին (Զ.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Եփեսոս եւ Թեսաղոնիկէ եւ ամենայն Ասիա եւ ամենայն աշխարհն Կորնթացւոց եւ Աքայեցւոց եւ որ շուրջ զնովաւ, ի Յովհաննէ աւետարանչէ՝ որ անկաւ զլանջօք Տեառն, եւ շինեաց անդ եկեղեցի եւ պաշտեաց անդ յառաջնորդութեան իւրում որ անդ։" Ար. "Ասիա եւ Տիւրոս" եւն։

58. *Տող 773—780.* Է: Ասորին (Է.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Նիկիա եւ Նիկոմեդիա եւ աշխարհն Բիւթանացւոց եւ Գաղատիա Ներքին (ըստ L. իսկ Cur. եւ M "եւ Գաղատացւոց", հայք "Գաղատեացին", տես վերը՝ էջ 178) եւ կողմանք որ շուրջ զնովաւ՝ յԱնդրէէ եղբօրէ Սիմոնի վիմի, որ եղեւ առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոյ, զոր շինեաց անդ եւ քահանայացաւ եւ պաշտեաց անդ։" Ար. աղաւաղ ունի անունները։

59. *Տող 781—787.* Ը: Ասորին (Ը.) "Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոցն Բիւզանդիա եւ ամենայն աշխարհն Թրակացւոց եւ որ շուրջ զնովաւ մինչեւ ցգետն մեծ (այսպէս ամէնքն, միայն L "ցգետն Դանուբ") որ որոշէ ընդ սահմանս Բարբարոսին (Աս. բուն՝ "որ որոշէ ընդ սահմանս բարբարոսաց") ի Ղուկասայ առաքելոյ՝ որ շինեաց անդ եկեղեցի, պաշտեաց անդ ի հրամանատարութեան եւ յառաջնորդութեան իւրում, որ անդ։" Ար. շատ փոխուած՝ "...Բիւզանդիա եւ Թրակիա եւ Ափրիկէ եւ որ շուրջ զնովաւ, ի սահմանաց Արաբացւոց մինչեւ ցծովն Պոնտոսի որ է ծով մեծ

*եւ մինչեւ յազգս հեռաւորս՝ ի Գուկայ„ եւն, ըստ յետնագոյն ճոխութեան Բիւզանդական եկեղեցւոյ:*

60. *Տող* 788—796. *ԺԹ*: *Այս եւ յաջորդն հայոյն մէջ փոփոխութիւններ կրած են ըստ ազգային աւանդութեան, որուն մասին տես վերը՝* 96—7, 153—4, 161, 198—9 *եւն: Ասորին է* (*Թ.*) "*Ընկալաւ զձեռն քահանայութեան առաքելոց Ուռհա եւ աշխարհ որ շուրջ զնովաւ յամենայն կողմանց, եւ Ծոբա* (*Հ.* "*Մծբին*„, *տես էջ* 13—4) *եւ Արաբ եւ ամենայն Հիւսիս եւ կողմանք որ զնովաւ եւ Հարաւ եւ ամենայն սահմանք աշխարհին Միջագետաց՝ յԱդդէէ առաքելոյ, որ էր յեւթանասունն եւ երկուց աշակերտաց, որ աշակերտեաց անդ եւ շինեաց անդ եկեղեցի եւ քահանայացաւ անդ եւ պաշտեաց անդ յառաջնորդութեան իւրում որ անդ:*„ M *ալ նորագոյն աւանդութեան հետեւած է գրելով՝* "*ի Թադդէէ, որ է Ադդէ, եւ Մարէս*„ *եւն: Աւելի եւս կերպարանափոխ եղած է Ար.* "*Եւ ի Միջագետս եւ ի Մոսուլ եւ ի յաշխարհին Բաբելոնի*„ *եւն դարձեալ թէ վաչկատուն Արաբաց աշխարհէն մինչեւ Նեճրան եւ Ովկէանոս՝* "*ի Մար Մարեայ, որ է մին յեւթանասնիցն:*„

61. *Տող* 797—806. *Ի*: *Ասորին* (*Թ.*) "*Ընկալան զաջ քահանայութեան առաքելոց ամենայն Պարսք եւ աշխարհք Հայոց եւ Մարաց եւ աշխարհք որ շուրջ զԲաբելոնիւ եւ Խուժաստան եւ Գէղք* (*տես վերը՝ էջ* 175—6) *մինչեւ ցսահմանս Հնդկաց* (*հայը՝* "*Գթաց*„, *տես էջ* 177—8), *ցԳոգ եւ Մագոգ, եւ դարձեալ ամենայն աշխարհք որ շուրջ զամենայն կողմամբքն, յԱգգէէ կերպատագործէ* (*տես էջ* 97, 154 *եւն.*) *յաշակերտէ Ադդէի առաքելոյ.*„ *Ար. շատ համառօտած է այս մասը:*

62. *Տող* 807—814. *ԻԱ*: *Այս կտորը չկայ ո՛չ Ասորւոյն եւ ո՛չ Արաբականին մէջ. բայց հա-*

մոզուած ենք որ Հայ խմբագրին յաւելուածը չէ, ուստի անկիւնաւոր փակագծի մէջ չառինք այս մասն։

63. *Տող 815—835. ԺԲ:* Ասորին (ԺԱ.) "Իսկ այլ ընկերք առաքելոցն շրջան ի հեռաւոր աշխարհս բարբարոսաց, (Հայն յաւելուածներ ունի, տես էջ 111, 213 եւն) եւ պաշտեցին անդ յառաջնորդութեան իւրեանց, եւ անդ եղեւ ելանել նոցա յաշխարհէս, իբրեւ յաջորդէին աշակերտք նոցա յետ նոցա մինչեւ ցայսօր, եւ փոփոխեալ կամ յաւելեալ ումեմն եղեւ ի թարգմանութեան նոցա։" Այս վերջին տողն Հայերէն օրինակաց մէջ յայտնապէս դուրս ինկած է (տես վերն՝ Հայ բնագիրն). իսկ ամբողջը ճոխացած խմբագրին յաւելուածներովն։ Քիչ մը շեղի նաեւ Ար., ուր նոյնպէս չկայ յիշեալ վերջին տողը։

64. *Տող 836—854:* Ասորին՝ "Իսկ Ղուկաս աւետարանիչ կալաւ զայս հոգաբարձութիւն եւ գրեաց զամենայն Առաքինութիւնս Գործոց Առաքելոց եւ զկարգս եւ զկանոնս պաշտաման (տես էջ 103 եւն) քահանայութեան նոցա եւ թէ յո՞ չոգաւ մի մի ի նոցանէ. արդ հոգաբարձութեամբ Ղուկաս զայս ամենայն եւ բազում ինչ առաւել քան զայս գրեաց եւ ետ ի ձեռս Պրիսկեայ եւ Ակիւղեայ աշակերտաց իւրոց. եւ սոքա յարեալ էին ի նա մինչեւ յաւր մահուան իւրոյ, որպէս յարեալ էին ի Պաւղոս՝ Տիմոթէոս եւ Երաստոս (M Արիստոս, տես էջ 177—8) ի Լիստրայ, եւ Մնէսոս (տես՝ անդ) աշակերտ առաջին առաքելոց, մինչեւ եկ նա (Պաւղոս) ի Հռովմ քաղաք, եւ եկաց ընդդէմ Տերտիղոսի հռետորի. եւ Ներոն կայսր ետ գլխատել սրով զնա եւ զՍիմոն վէմ ի Հռովմ քաղաքի։" Ասով կ'աւարտի Ասորին։

65. *Տող 855—872:* Այս վերջաբան կտորը չկայ Ասորւոյն մէջ եւ ոչ Արաբ.-Եթովպ. խմբագրութիւնն ունի։ Այս մասին տես վերը՝ էջ 235—

6: Ասորին ասոր տեղ սա վերջաբանութիւնն ունի՝ M "կատարեցաւ առաջին սինհոդոս Առաքելոց." L "կատարեցաւ գիր Ադդէի առաքելոյ:" — Հայոյն վերջաբանէն տարբեր՝ բայց ոչ աւելի կարճ վերջաբանական կտոր մ'ունի Ար., որ կ'աւարտի այսպէս՝ "Եւ կարգեցին վասն աշակերտացն զայս սուրբ կարգս, որ են իմաստուն կանոնք՝ որ կոչին յունարէն Առաքելականք այսինքն Առաքելոց, մի-աբան գտան առաքեալք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ կարգեցին եդին ամենայն ազգաց եւ հրամայեցին նոցա ընդունել զայնոսիկ" եւն:

---

Հոս կցելու ենք Անանիայի Շիրակացւոյ հե-տաքրքրական կոչումը, որ մեր աչքէն վրիպած էր ի կարգին (վերն էջ 238 եւն, 366 § 14) դնելու: Շիրակցւոյ տրուած "ի Յայտնութիւն Տեառն" ճա-ռին (Հրտ. Բ. Պատկանեան, Պետր. 1877, էջ 4) սկիզբը կ'ըսուի՝ "Ճառել արժանաւոր եղեաք նախ զտօնն Ծննդեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է սկիզբն տօնից եւ տօնականաց (տես էջ 305, 366) եւ գլուխ կացուրդաց եւ ամենայնից ի Քրիստոս յի-շատակաց: Տօն սրբոյ Ծննդեան Քրիստոսի ԲԺ. աւ-ուրբ յառաջ քան զտօն Մկրտութեանն ոչ կար-գեցաւ ի սրբոց առաքելոցն եւ ոչ ի նոցուն փոխա-նորդացն, որպէս եւ յայտնի է ի Կանոնաց օրինաց Առաքելոցն: Քանզի գրեալ է ի վեցերորդ գլուխ կանոնացն այսպէս՝ եթէ Կարգեցին առաքեալքն ե-դին հաստատութեամբ, զի եղիցի տօնն Ծննդեանն եւ Յայտնութեան Տեառն եւ փրկչին մերոյ գլուխ եւ ա-ռաջնորդ տօնից Եկեղեցւոյ, որ օր ԻԱ է տեբեթ ամ-սոյ, որ է Զ յունուարի ըստ Հռովմայեցւոց:" Շիրա-կացի առջեւն ունի ըստ այսմ խմբագրեալ հայ-երէնը. բայց "ԻԱ տեբեթ ամսոյ" իր յաւելուածն է, ինչպէս յայտնի է նոյն ճառին վերջէն ալ՝ ուր նոյնը եւ միւս ազգաց համապատասխանող ամսոց

անունները մի առ մի կը դնէ (տես անդ էջ 13—14։) Ուրիշ կանոններ ալ կը յիշուին նոյն ճառին մէջ, օրինակի համար սա տեղը (էջ 8) «Վասն Առաքելական կանոնին այսպէս ասեն Յոյնք եթէ ոչ էր նոցա պարապումն առ ի քննել զաւուրս տօնից...։ Ընդ [illegible] ապա եւ ընդ [illegible] մէջ երկրպագել (կան. Ա.) հիմ եւ [illegible] (կան. Բ.), պատուել եւ դատապարտել. եւ շաբաթ-շաբթին եւ կիւրակէն պահել (կան. Գ.—Դ.) են։

## Բ.

# ԹՈՒՂԹ ՅԱԿՈԲՈՒ ԱՌ ԿՈԴՐԱՏՈՍ

*Թուղթ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղէմի առ Կոդրատոս, զի ցուցցէ նմա թէ զինչ [հրաման] ետ Տիբերիոս կայսր վասն Հրէիցն որ [ի] խաչ հանին զՔրիստոս։*

*Յակոբոս եպիսկոպոս Երուսաղեմի առ Կոդրատոս անուն բարի եւ աշակերտ հաւատա-*

---

Հրատարակութեանս հիմն առնուած է Վենետկոյ մէկ ձեռագիրն՝ կանոնագիրք Ա (էջ 318։) Շնորհակալութեամբ յիշենք որ Մեծ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան զրկած էր այս թղթին ընդօրինակութիւնը. յետոյ գտանք նոյնը նաեւ հանգուցեալ Հ. Յովս. Վ. Գաթրճեանի թղթերուն մէջ ընդօրինակուած։ — Այս թղթին եւ "Վարդապետութեան Առաքելոց„ մէջ եղած կապակցութեան նկատմամբ տես վերը՝ էջ 123—131։ ‖[1] Ձեռ. կը գրէ "թուխ„ փխ. "թուղթ։„ Յաջորդ "Երուսաղէմի„ եւ ուրիշ բառեր եւ վերջաւորութիւններ պատուով կամ համառօտութեամբ գրուած են ձեռագրին մէջ՝ ինչպէս սովորական է հայերէն գրչագրաց, զորոնք չենք յիշեր մի առ մի։ ‖[3] Ձեռ. "զինչ ետ Սիբերիոս.„ դուրս ինկած է հոս՝ բաց ի Տիբերեայ անուան աղաւաղութենէ՝ նաեւ "հրաման„ բառը. հմմտ. քիչ մ'ետքն՝ "զինչ հրաման տացէ կայսր վասն նոցա„ եւ "զինչ հրաման տայ կայսր վասն այդորիկ։„ ‖[5] Ձեռ. "Ե-

ցեալ ի Տէր, ողջոյն։ Լուայ ես եւ ուրախ եղէ թէ քանի՛ փոյթ ունիս դու վասն քարոզութեան աւետարանին Քրիստոսի. թէ որպէս խնդութեամբ ընդունիս զայնոսիկ՝ որք կան ստուգութեամբ եւ ճշմարտութեամբ, եւ մաքառիս ընդդէմ Հրէից եւ հեթանոսաց, եւ ցուցանես զխաչահանուացն ի գրոց վկայութիւն վասն Տեառն մերոյ։ Զոր օրինակ ի ժամանակի մերում՝ իբր Տէրն առնէր զնշանս եւ զարուեստս եւ սքանչելիս՝ կացին ընդդէմ նորա եւ ոչ հաւատացին. սոյնպէս եւ այս օրինակ ընդդէմ մեր հակառակութեամբ եւ ուրացութեամբ իւրեանց։ Բայց այժմ զի յայտնի եղեւ նենգութիւն նոցա առաջի Պիղատոսի դատաւորի, եւ խոստովան եղեն Աննայ եւ Կայիափայ եւ Բենիամին եւ Նախմայէլ

պիսկոպոս յԵրուսաղեմի.„ կրնայ ուղղուիլ նաեւ "եպ. յԵրուսաղէմ։„ — Կրնայ նաեւ այսպէս կիտադրուիլ՝ "...աշակերտ հաւատացեալ, ի Տէր ողջոյն։„ ‖10—11 Ձեռ. "որք կան ստուգութեամբ եւ ճշմարտութեան.„ կրնայ նաեւ ուղղուիլ՝ "ի ճշմարտութեան„ եւն։ ‖12—13 Դժուարաւ ուղիղ է՝ "եւ ցուցանես զխաչհանուացն ի գրոց վկայութիւն.„ պէտք է գրել անշուշտ՝ "եւ ցուցանես խաչահանուացն (զառ) ի գրոց զվկայութիւն„ եւն։ ‖14 Ձեռ. !"ի ժամանակի մերոյ . . . հակառակութեան եւ ուրացութեան„ եւն։ ‖21 Ձեռ. "Նախմայէլ.„ բայց դժուարաւ ուղիղ է նաեւ "Նախմայէլ։„ Պիղատոսի Յիշատակարանաց մէջ (Acta Pilati առ Tischendorf, Evangelia Apocrypha. Lips. 1876, p. 216, տես նաեւ Gesta Pilati, անդ՝ էջ 336 եւն) կը յիշուին՝ Աննայ, Կայիափայ, եւ Սեմէս եւ Դաթայէս եւ Գամաղիէլ, Յուդաս,

գլխաւորք ժողովրդեանն իւրեանց, թէ ո՛րպէս ետուն կաշառ պահապանացն՝ որ պահէին զգերեզմանն Տեառն մերոյ, հանդերձ Արիստիդէսիւ եւ Անատօլիւ, զի թողցեն զոր ինչ տեսին: Նա եւ ինքեանք իսկ պահապանքն խոստովանեցան զայս՝ թէ արդարեւ առին կաշառ, զի մի՛ ասիցեն թէ յարեաւ Քրիստոս ի մեռելոց: Իբրեւ ի վերայ եկաց Պիղատոս ճշմարտութեամբ բանիցս այսոցիկ՝ հրաման ետ զի արգելցեն զդահիճսն ի բանդ: Եւ քանզի հազարապետ էր Պիղատոս կայսեր, գրեաց եւ եցոյց զամենայն զոր գործեցին Հրեայքն՝ ընդ դատաստան ընդ Տեառն մերոյ. զի կասկածէր նա յոյժ յայսմ բանէ՝ զոր լուաւ ի նոցանէ. Յիսուս այս, ասեն, թագաւոր էր Հրէից. եւ ո՛չ գիտէին Հրեայքն՝ թէ զի՞նչ հրաման տացէ կայսր վասն նոցա: Փոյթ լիցի քեզ այսուհետեւ, եղբայր մեր, զի լուիցես եւ ցուցցես ինձ թէ զի՞նչ հրաման տայ կայսրն վասն այդորիկ. զի ահաւադիկ առ ձեզ է արքայ Իտալիայ: Եւ զպատճէն թղթոյն՝ զոր առաքես

---

Ղեւի եւ Նեփթաղիմ, Աղեքսանդրոս եւ Յարիրոս„ եւն: ||25 “Զի թողցեն՝ զոր ինչ տեսինն„, այսինքն՝ լռեսցեն. անշուշտ ասորի բնագրի մ'ազդեցութեամբ գրուած: ||33 Հոս եւ քիչ մ'ետքն ալ Զեռ. “Հրէէայքն:„ Բոլորովին ուղիղ աւանդուած կրնայ չըլլալ աս խօսքը՝ “...զոր գործեցին Հրեայքն ընդ դատաստան ընդ Տեառն մերոյ:„ ||41 Մենք ուղղեցինք “եւ զպատճէն թղթոյն՝ զոր առաքես առ մեզ„ (այսինքն՝ “առաքեսցես„, ազդեցութեամբ ապառնոյն.) ձեռագիրն ունի՝ “եւ զպատճէն Նեռոյ:„ — Յաջորդ տողին մէջ՝ Զեռ.

առ մեզ, Թողցես յեկեղեցւոջդ Եփեսոսի առ Յոհաննու որդոյ Զեբեդեայ եւ [յ]եկեղեցւոջն Անտիոքու առ Սիմոնի վիմի. եւս եւս առաքեմ զպատճէն նորա առ եկեղեցին Աղեքսանդրի առ Մարկոս աւետարանիչն եւ Պողոս՝ որ եղեւ մեր ընկեր եւ գործակից ի Թեսաղոնիկէ։ Եւ զայս զի գրեցի առ քեզ՝ զի գիտասցեն եւ հեռաւորք զնենգութիւնս Հրէից, որ ոչ հաստատեցան։ Բայց Փիլիպպոս եւ Սենիկոս եւ Յաւստոս եւ Ղեւի

---

"Զեբեդեա։" ‖[44] Զեռ. "եւ առաքեմ զպատճէն նորա եկեղեցին Աղեքսանդրի" առանց "առ" նախադրութեան. Թերեւս կրնար գրուիլ պարզապէս "եկեղեցւոյն Աղեքսանդրի" (այսինքն՝ "Աղեքսանդրիայ, կամ նոյն քաղաքին։) ‖[46] Զեռ. "Սողոս" (փխ. "Պողոս"), որ կրնայ սկզբնականն ըլլալ։ ‖[49] Այս "զՆԵՆԳՈՒԹԻՒՆՍ ՀՐԷԻՑ՝ որ ոչ ՀԱՍՏԱՏԵՑԱՆ" խօսքին համար հմմտ. վերը՝ 28, 94—5 եւն։ Արդէն բազմաթիւ բառեր, ասութիւններ եւ տողեր կան նամակիս մէջ ճիշդ այնպէս՝ ինչպէս նաեւ "Վարդ. Առաք." գրութեան մէջ, ինչպէս է քիչ մ'առաջն եկող սա խօսքը "ՈՐՈՑ աւետարանն նորա ընդ ամենայն տիեզերս" եւն։ Ասոնց եւ նմաններուն համար հմմտ. վերը՝ էջ 123—6, ուր նամակիս մէկ մասն դէմ առ դէմ համեմատուած է նոյն գրութեան հետ։ ‖[50] "ՍԵՆԻԿՈՍ" ուղիղ է. ընդօրինակութեան մէջ շատ որոշ չէ սկզբան "Ս" տառը։ Պիղատոսի յիշատակարանաց վերյիշեալ տեղը (տես Ծան. ի տողն 21) "ՍԷՄԷՍ" (Σήμης) կ'ըսուի. ղպտերէնը (տես Tischendorf եւն) ունի "ՍԱՄԷՍ" ձեւով (Gesta Pilati "ՍՈՒՆԵ."), որ նաեւ ՂԵՒԻՆ՝ ունի ՂԻԲԷՈ տառադարձուած եւ "ՅԱԻՐՈՍ անունը (Ἰάειρος)՝ "ՀԷՐԷՍ"։ Ասոր համապատասխանողն է մեր այս թղթին մէջ "Ա-

*եւ Ափրէ եւ Ցուդայ՝ դպիրք անուանիք Հրէից, Հանդերձ այլովք ընկերօք իւրեանց եկին դարձեալ առ իս եւ խոստովան եղեն զՔրիստոս եւ ընկալան զմկրտութիւն, եւ աՀա մաքրուին ի գրոց մարգարէից ընդ որդիս ժողովրդեանն իւրեանց: Բայց Գամաղիէլ աւագ քաՀանայից Նոցա ոչ ուրանալով ուրանայ զՔրիստոսէ՝ իբրեւ զորդիս ազգի իւրոյ յայտնապէս, եւ ոչ խոստովանելով խոստովանի այժմ իբրեւ զմեզ. որք կամին չարախաւսել զմէնջ որդւոց ժողովրդեանն իւրեանց՝ ոչ ընդունի զնոսա. այլ ի լռութեան եւ Հանդարտութեան է, մանաւանդ զի եւտես թէ զկնի վերանալոյն Տեառն մերոյ առ Հայր իւր՝ որպէս թռեաւ աւետարանն Նորա ընդ ամենայն տիեզերս, իբրեւ զլոյս արեգականն՝ որ սփռեալ է ընդ ամենայն արարածս, եւ աՀա երկրպագի յամենայն Հեթանոսաց եւ փառաւորի յամենայն լեզուաց. եւ ի ձեռն խորՀրդոյ մարմնոյ եւ արեան իւրոյ՝ զոր ետ ի մեզ. եւ խափանեաց զոՀս ի տանէ խաչաՀանուացն. զի եբարձ ի Նոցանէ զքաՀանայութիւնն եւ ետ մեզ, եւ է Նայ ընդ երկրպագուս իւր եւ ոչ թողու զնոսա՝ մինչեւ կա-*

---

*փրէ„ յայտնապէս* = "փէ-է„ *Վարդապետութեան Առաքելոց:„* ‖[54] Ձեռ. "*եւ աՀա* [illegible]„ *փխ.* "*մաքրուին:„* — *Բառական Հետեւողութիւն է առորեայն ատութեանց յաջորդ խօսքին մէջ եւ յետոյ ըսելն* "...որդւոց *ժողովրդեանն.„ մանաւանդ* (*տող* 69) "*ի* տանէ *խաչաՀանուացն:„* ‖[65] Ձեռ. "*երկրպագի* ամենայն *Հեթանոսաց եւ փառաւորի* ամենայն *լեզուաց„ եւն:* ‖[72] "*Մինչեւ կատարի*

տարի այս աշխարհ. որոյ չիք կատարումն եւ սկզբան նորա՝ զայս զոր դու ինքնին գիտես։ Ողջոյն տուր Նիկանովրայ եւ Պարմենայ եւ Ոնոսիփորայ եւ եկեղեցեաց ամենեցուն՝ որ այդր են, եւ քահանայից եւ առաջնորդաց նոցա։ Ողջոյն առ յեկեղեցւոյս Երուսաղէմի՝ որ աստ է. եւ սպասեմ եւ ակն ունիմ՝ զի գրես ինձ զպատճէն բանիցս այսոցիկ ի ձեռն Արիստիդեայ։

---

այս աշխարհ.„ տես վերը՝ էջ 31 ծնթ։ ‖[74] Սխալ գրութիւն մը կայ հոս յայտնապէս՝ "որոյ չիք կատարումն եւ սկզբան (ձեռ. "սկսբան„) նորա.„ պէ՞տք է գոնէ գրել՝ "որոյ չիք կատարումն եւ սկիզբն նորա.„ այն ատեն "որոյ... նորա„՝ որչափ ալ հոս անճահ երեւնայ՝ ոճական արամէաբանութիւն մը կ'ըլլայ. բայց կարելի է որ բառ մ'ինկած ըլլայ այս տեղ։ — Ձեռագրին մէջ է "Պորմենան„, ինչպէս նաեւ "Ոնոսիփորայ„ (այս ձայնաւորի պէսպիսութիւնք կրնայ ասորի բնագրի մ'անորոշ ընթերցմանէն ըլլալ, եթէ միայն հարազատ է ձեռագրին աւանդածը։) ‖[77] Ձեռ. "Ողջոյն առ եկեղեցո„ ծնթ։ ‖[81] "ի ձեռն Արիստիդեայ„ մենք ուղղեցինք (ձեռ. "Արիստիդեայ„.) հմմտ. քիչ մը վերը՝ "հանդերձ Արիստիդէսիւ եւ Անատօլիւ„ ("Անատոլիոս։„)

Գ.

## ԿԱՆՈՆՔ ԹԱԴԴԷԻ

Սահմանք կանոնաց սրբոյն Թադէոսի ի քաղաքն Ուռհայի ի լուսաւորելն զնոսա։

1. Յորժամ լուսաւորեցաւ քաղաքն մկրտութեամբ, ձեռնադրեցան եպիսկոպոսունք, քա-

---

Բնագրիս ձեռագրաց մասին տես վերը՝ էջ 269։ Թադէի կանոնաց եւ անոնց “Վարդ. Առաք.„ գրութեան հետ ունեցած կապակցութեան վրայ ընդարձակ խօսած ենք մեր քննութեան մէջ. (տես վերն՝ էջ 131—150). եւ սոնց շատ կտորները դէմ առ դէմ դրած համեմատութեամբ տարի անվաւերականին համանիւթ կտորներուն։ Այսպիսի համեմատութիւնք եւ յիշատակութիւնք կը գտնուին նաեւ մեր հետազօտութեանց բովանդակ ընթացքին մէջ։ Ասոր համար յաջորդիւնիւթոց ծանօթութիւններ չենք դներ՝ բաց ի քանի մ'անցողակի ակնարկութիւններէն. այլ միայն ձեռագրաց ընթերցուածոց տարբերութիւնները։

Վերնագիրն եւ § 1. M “Սահմանք եւ կանոնք Թադդէոսի առաքելոյ ի գալն նորա յՈւռհա քաղաք եւ լուսաւորել զնոսա մկրտութեամբ սուրբ աւազանին, ուր ձեռնադրեաց եպիսկոպոս„ են։ C (եւ C², որ ամէն տեղ՝ ուր յատուկ չի նշանակուիր, նոյն է C-ի հետ.) “Կանոնք եւ սահմանք Թաթէոսի առաքելոյ։ Իսկ ի գալն իւր առաքեալն Թաթէոս ի քաղաքն Ուռհա, լուսաւորեաց զնոսա մկրտութեամբ սուրբ աւազանին, եւ ձեռնադրեաց

հանայք եւ սարկաւագունք, եւ հաստատեցան վարդապետք եւ օրէնսուսոյցք եւ եղեւ հաստատութիւն եկեղեցւոյ եւ սեղանոյ Աստուծոյ. սկսան հարցանել ցնա զամենայն կարգաւորութիւն եկեղեցւոյ եւ զամենայն կրաւնս քրիստոնէից, եւ նա պատուիրեաց նոցա կարգաւ ըստ հրամանի փրկչին:

---

զեպիսկոպոս„ եւն: ||3 AD ձեռնադրեցին. B ձեռնադրեցաւ:—ABD եպիսկոպոսունս, քահանայս եւ սարկաւագունս (նաեւ M “քահանայս եւ սարկաւագունս:„) ||5 ABD հաստատեցին (B հաստատեցաւ) վարդապետս, օրէնսուսոյցս (A աւրէնսուսոյցս:„) — Անկէ ետքն M բոլորովին տարբեր է՝ “Եւ եղեւ պայծառութիւն եկեղեցւոյ Աստուծոյ եւ սեղանոյ: Կամեցաւ գնալ անտի զի քարոզեսցէ եւ այլոց քաղաքաց, եւ կացոյց փոխանակ իւր զԱդդէ կերպասագործ. Ժողովեցան ամենեքեան հարցանել նմա զկարգ եկեղեցւոյ եւ զկրօն քրիստոնէութեան. եւ նա պատմեաց նոցա կարգաւ ըստ հրամանի փրկչին, որ ունի գլուխս ԻԹ:„ ||7 A եկեղեցոյ: ||8 A հարցանել ընա զամենայն: — B կարգաւորութիւնս: ||9 B կրօնան, D կրօնս: ||10 B չունի “կարգաւ:„ ||11 K Փրկչին եւ Աստուծոյ: — C ունի այս ամբողջ հատածն կերպարանափոխած ձեւով՝ “...սարկաւագունս: Եւ մինչ կամեցաւ գնալ անտի վասն քարոզելոյ այլոց քաղաքաց զաւետարանն Քրիստոսի, կացոյց փոխանակ իւրեան զԱդդէ կերպասագործն, եւ հաստատել կարգեաց ի վերա նոցա վարդապետս եւ օրէնսուսոյցս. եւ եղեւ կարի պայծառութիւն եկեղեցւոյ, եւ զսահմանադրութիւնս քրիստոնէութեան, եւ նա անյապաղ ուսուցանէր եւ կանոնաւորէր ըստ հրամանի փրկչին Յիսուսի Քրիստոսի:

2. Ա. Հարցումն առաջին՝ թէ ո՞րպէս պարտ է կալ եպիսկոպոսին ի տեսչութեան։

— Ասէ Առաքեալն. Եպիսկոպոսն եղիցի անարատ, պարկեշտ, ուսուցող. մի՛ արծաթասէր, մի՛ արբեցող, մի՛ կերող, մի՛ զաւշաքաղ, մի՛ հարկանող, մի՛ կաշառառու. այլ հանդարտ, որպէս ասացն եղբայրն մեր եւ գլխաւորն Պաւղոս, եղիցի աւրինակ բարւոյ, տքնող, պահող, ատեցող զհանգիստ քնոյ, լինել աւրինակ հաւտին ամենայն կարգաւ, առնել ձեռնադրութիւն արժա-

---

Եւ ահա ի ներքոյ այսորիկ գլխոյ են երեսուն եւ երկու հարցմունք, որոց առաջինն է այս„ եւն։

2. Ա. ‖[12–3] C Որպէս պարտ է եպիսկոպոսին կալ ի տեսութիւն եկեղեցւոյ։ DM եպիսկոպոսի. M չունի "թէ„, յետոյ՝ "ի տեսչութիւն եկեղեցւոյ։„ ‖[14] BCM չունին՝ "Ասէ առաքեալն,„ այլ տեղ CM "Պատասխանի։„ — B. Այլ եպիսկոպոսն. C եպիսկոպոսն պարտի լինել անարատ, ուսուցանող (BD ուսուցող), մի՛ "Երկբ-նակ„ եւն, որ աղաւաղութիւն է Mի սա խօսքին մ՛ երկբան, մի՛ արծաթասէր„ եւն։ ‖[16] B "մի՛ կերող„ եւն, նոյնպէս C ամէն-օղ վերջաւորութիւնքն. M մի՛ կերող, մի՛ արբեցող։ — BCDM զօշաքաղ։ — M կը կարդայ՝ (= C) "մի՛ կաշառառու, մի՛ բամբասող, մի՛ հակառակող (C հակառակ), այլ հեզ եւ հանդարտ (C հեզ, հանդարտ), պահող, տքնող, ատեցող զհանգիստ քնոյ, լինել սիրող արտասուաց քան ծաղու, լինել աւրինակ„ եւն։ C այս վերջինները՝ "պահօղ, եւ տքնօղ, ատեցօղ զհանգըստութիւն քնոյ, արտասուաց սիրօղ քան զծաղու„ եւն։ Ուստի CM չունի "որպէս ասաց... բարւոյ„ խօսքը։ ‖[18] B Պօղոս... տքնօղ եւն։ ‖[19] BDM օրինակ ...հօտին։ ‖[21] M կարգօք. առնել ար-

նաւորաց, այնոցիկ՝ որ հաստ եւ գիտունք են գրոց, կարգաց եւ աւրինաց Աստուծոյ։

3. Զտգէտսն խոտեալ ի բաց՝ մի՛ ձեռնադրեսցէ, քանզի տգիտութիւն Աստուծոյ խոտե-

---

ժանաւոր ձեռնադրութիւն այնոցիկ, որ հաստուկ եւ գիտունք են. ‖[22] B որ զի գիտուն եւ հաստուկ են։ ‖[23] BDM օրինաց։

3. C բոլորովին տարբեր հոս եւ յաջորդն (§ 4)՝ "Այլ եւ պարտի լինել բարի օրինակ հօտին եւ առաջադրելոց իւրոց բարեպէս կարգադրութեամբ, նաեւ ոչ թարց քննութեան եւ ստուգիւ ճանաչման ումեք տայցեն զկարգ եւ զաստիճան քահանայութեան, եւ մի՛ երբեք զանգէտս եւ զանվերահասս գրոցն աստուածայնոց եւ օրինաց կամ այլազանապէս անարժանս հրաւիրեցեալ մուծանիցեն յայս կարգ երիցութեան, այլ խոտեալ ի բաց վարիցին զայնպիսիս. քանզի տգէտն է ատելի Աստուծոյ իբրեւ չարագործ։ Ուստի կարի զգուշանալ պարտին եպիսկոպոսունք, եւ եւս առաջնորդք եւ վերատեսուչք՝ զտգէտս ձեռնադրել կամ քահանայ կամ սարկաւագ, զի մի զանբարկանալի բնութիւնն Աստուծոյ ի բարկութիւն յորդորեսցեն եւ ի նմանէն պատիժ կրիցեն. քանզի տգէտ քահանայի ամենակերպ վնասակարութեանն պատիժ ի յաւուրն արդար դատաստանին Աստուծոյ ձեռնադրող եպիսկոպոսն եւ մանաւանդ առաջնորդ այնմիկ քաղաքին կրելոց է, վասն ոչ արտավարելոյն աղաչանաց ումեք ունկդիր լինելոյն, կամ յաղագս ագահութեանն յառատապէս տրից նուիրելոց համոզեալ յորդորելոյն. զի բազմակերպ կորուստ է այս հոգւոյ. ուրեմն հետեւի իսկ զտգէտս եւ զագահս մի՛ երբեք նստուցանել առաջնորդ կամ հրաւիրել առ աստիճան եպիսկոպոսութեան։ Վերջապէս այն եպիսկոպոսն, եթէ վասն անդի կամ

*լի է քան զամենայն չարագործութիւն. յայսմանէ առաւել զգուշասցի քան յամենայն իրաց. քանզի ոգէտ քահանայ կամ սարկաւագ կամ ով ոք է յառաքելական աստիճանի, ի բարկութիւն շարժէ զԱստուած. զի բերանովն ի միտ առնու եւ ասէ եւ սրտիւ ոչ իմանայ զասացեալն, եւ բարկացուցանէ զԱստուած. եւ վնասակար ամենայնի եպիսկոպոսն լինի:*

4. *Արդ քանզի կորուստ է այդ հոգւոց, փախիցէ յայսմանէ. զուսումնասէրն եւ զգիտունսն յառաջեցուսցեն ամենայն պատուով. իսկ*

---

*վասն կաշառի կամ յաղագս բարեխօսութեան զոգէտ իմն ձեռնադրեսցէ, նզովեալ եղիցի. եւ յաւուր դատաստանի ընկալցի զպատիժ պատուհասի, զի ոչ զգուշացոյց, այլ վասն արծաթոյն յորդորեաց:„* ‖[24] M “*զոգէտս.„ իսկ չունի՝* “*ի բաց:„* ‖[25] B *ոգիտութիւնն.* M *անգիտութիւն Աստուծոյ ատելի է որպէս չարագործութիւն. յայսմանէ զգոյշ լիցի քան եւն:* ‖[27] A *քան ամենայն իրաց.* B “*քան զամենայն յիրաց . . . ոգէտն„ եւն:* ‖[28] M *սարկաւագունք:* ‖[29] B *ով ոք է առաքելական աստիճանի.* D . . . *յառաքելական յաշտիճանի.* M *ով ոք եւ իցէ յառաքելական յաստիճանն:* — M *զԱստուած ի բարկութիւն շարժէ:* ‖[31] A “*զասացեալ.„* M *չունի այս եւ ասոր յաջորդ չորս բառերն, ուստի կը կարդայ՝* “*Զի թէ բերանովն ի միտ առնու եւ առնէ եւ սրտիւն ոչ իմանայ, վնասակար լինի ամենայնի եպիսկոպոսն:„* ‖[33] A *ամենայնին,* D *յամենայնին:* — AB *լինել:*

4. (Ա) ‖[34] AB *Արդ քահանայ* (B *քահանայք*) *որ կորուստ է այդ հոգւոյ* (B *հոգւոց*) . . . M . . . *այս ամենայն հոգւոյն:* ‖[35] D *յայս ամենայնէ:* — M *չունի* “*եւ զգիտունս:„* ‖[36] D *յա-*

զտգէտսն ամենևին մի՛ կացուցանել առաջնորդս կամ վերակացուս շնորհի եկեղեցւոյ։ Իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսն՝ արասցէ զայն վասն կաշառոց կամ վասն մերձաւորութեան կամ վասն բարեխաւսութեան, այնպիսի եպիսկոպոսն նզովեալ եղիցի, եւ որ ինչ վնաս ծնանիցի, տացէ վրէժս յաւուրն դատաստանի յանմահ տանջանսն։

5. Բ. Ո՞րպէս արժան է եպիսկոպոսին ունել զիւրսն կամ զօտարսն։

— Դարձեալ ասէ առաքեալն. Արժան է եպիսկոպոսին զամենայն հաւատացեալս միապէս սիրել, եւ զիւր մերձաւորսն մի՛ առաւել մեծա-

---

ռաջացուցեն, M յառաջացուցէ։ ‖[37] M զտգէտն. — M առաջնորդ եւ վերակեցու շնորհի ինչ . . . D . . . վերակեցու ինչ շնորհի։ ‖[39–40] B իսկ յանդրգնեալ. — M եպիսկոպոսին . . . զայս կամ վասն կաշառոյ, կամ վասն . . . ։ (B կաշառուց եւ վասն . . . D կաշառոյ կամ . . . ։) ‖[41] BD բարեխօսութեան. M բարեկամութեան։ ‖[42] B . . վնաս ծնանիցէ. M եւ որ ինչ անտի վնասք ծնանին, ընկալցի վրէժս։ ‖[43] M յանմանց տանջանս։

5. Բ։ ‖[45] Ասկէ սկսեալ ամէն կանոնի սկիզբն հարցմունքն ունի միայն M անթերի, իսկ պատասխանւոյն սկիզբն տարբեր՝ չունենալով "Դարձեալ ասէ Առաքեալ" բառերը, եւ սկիզբն ալ համառօտելով, օրինակի համար այստեղ այսպէս սկսելով՝ "Պարտ է եպիսկոպոսին զամենայն հաւատացեալս միապէս . . . սիրել" եւն։ C ալ հարցմանց եւ սկզբնաւորութեանց մէջ սովորաբար Mի հետ կը միաբանի (հոս հարցման մէջ C ". . . ունիլ զիւրսն" եւն։) ‖[47] C Պարտ է եպիսկոպոսին (= M) զամենայն հաւատացեալսն։ ‖[49] CM "աւելի սիրել"

րել քան զայլ հաւատացեալսն, թէպէտ եւ եղբայր իցէ կամ քոյր. եւ կաշառ ամենեւին մի՛ առնուլ, այլ զինքն մեռեալ համարել աշխարհի. մի՛ երբեք քրքրել եւ զուարճանալ կամ լկտի ինչ խաւսել, կամ հրապարակաւ զոք յանդիմանել առանց երկրորդ հարցմանց, նախ առանձինն՝ ապա երկու կամ երեք վկայիւք վարդապետաւք. հեշտական հանդերձիւք մի վարել. եւ մի՛ բնաւ առանց ընկերակցացն հարցմանց գործել ինչ, զի այն է հաճոյ Աստուծոյ. կացուցանել ընդ ձեռամբ իւրով տեսուչս վարդա-

փխ. "առաւել մեծարել.„ ||[50] M քան զայլ հաւատացեալս. — BM թէպէտ եղբայր իցէ (M է.) C չունի "թէպէտ . . . քոյր„ խօսքը։ ||[51] M "կաշառ . . .| մի՛ առցէ. զինքն մեռեալ„ եւն։ ||[52] C զի ինքն մեռեալ համարեցեալ է յաշխարհի. (M ալ "յաշխարհի։„) ||[53] CM մի՛ երբեք զբօսնուլ. (C կը կցէ՝ "կամ զուարճանալ եւ լկտապէս խօսակցիլ.„) ||[54] BD խօսել։ ||[55] D հարցման. — M "նախ առանձին, ապա երկրորդ կամ երրորդ վկայիւք.„ (չունի "վարդապետաւք.„ BD վարդապետօք.) C նախ առանձնապէս եւ ապա երկու եւն (առանց "վարդապետաւք։„) ||[57] BM կը կարդան՝ "Հրեշտակական հանդերձիւք մի՛ վարել (B վարիլ.) M կը կցէ տակ "մի՛ պճնող։„ C աւելի այլափոխեալ՝ "Հեշտացուցիչ եւ զայլս ի նախանձարկութիւն ձգման աւիթ հանդերձ մի՛ զգենուլ, զինքեանս միշտ անպաճոյճ պահել. զի մի գուցէ ճգնազգեաց արանց պատճառ գայթակղութեան երեւեսցին. պարտին կացուցանել ընդ ձեռամբ իւրեանց տեսուչս„ եւն։ ||[58] B եւ բանիւ առանց ընկերակցացն. M չունի՝ "եւ մի՛ բնաւ.„ (տակ տեղ՝ "առանց ընկերաց հարցմանց մի՛ գործել։„) ||[60] CM

պետս, տեսուչս գաւառաց քաղաքաց՝ հովուել զհաւատացեալսն. եւ ժողովրդոցն հնազանդել հովուաց կացուցելոցն յեպիսկոպոսէն։

6. Կարգեսցէ ի չէնս երկուս կամ երիս քահանայս եւ մի սարկաւագ, իսկ յագարակն քահանայ մի եւ սարկաւագ մի։ Զհաշմեալ զոք մի՛ ձեռնադրել. զի թէ զարատաւորն պատարագ չտայր մատուցանել մարգարէն, ո՞րչափ եւս առաւել՝ որ զայս պատարագս մատուցանէ, արժան է անարատ լինել. առանց վկայից եւ քննու-

---

կացուցանել տեսուչս գաւառաց, քաղաքաց վարդապետս, հովուել զհօտ (C զհօտս) Տեառն։ ||62—3 B զհաւատացեալս . . . ժողովրդոց . . . հովուաց եւն. — M հնազանդ լինել հովուացն կարգելոց եւն (ADM հովուացն.) — D յեպիսկոպոսէ, (B չունի.) C “եւ ժողովուրդքն եւս պարտին հնազանդել հովուաց իւրեանց։„

6. (Բ) ||64 B եպիսկոպոսն կացուսցէ ի չէնս յերկուս կամ յերիս քահանայս եւն. C եպիսկոպոսն կարգեսցէ եւն։ — CM երկու կամ երեք քահանայ (C քահանայս), եւ սարկաւագ մի։ ||65 M յագարակսն. (C չունի “իսկ յագարակն„ եւն խօսքը։) ||66 BM զհաշմեալ ոք. C միայն՝ “զհաշմեալս.„ — CM մի՛ ձեռնադրեսցէ։ ||67 DCM զի եթէ. — M արատաւորն պատարագ չհրամայէ եւն. C զարատաւորսն ոչ երբէք հրամայէ մարգարէն պատարագ մատուցանել՝ որ իցէր ի կենդանիս, ո՞րչափ եւս զերկնաւոր պատարագն պարտիմք մատուցանել առանց արատոյ (վերջինը՝ “ո՞րչափ եւս„ եւն ունի ճիշդ այսպէս նաեւ M։) ||70 B եւ առանց վկայից. M “. . . քննութեան եւ առանց հաւանութեան ժողովրդեան, զի անտի մահաբեր„ եւն; C “մի զոք ձեռնադրել առանց քննութեան

թեան մի՛ զոք ձեռնադրել, զի մահաբեր վնասք ծնանին։

7. Գ. Որպիսի՞ չափով պարտ է ձեռնադրել քահանայս եւ սարկաւագունս, եւ ո՞րչափ կալ ի կարգին։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Արժան է եպիսկոպոսին ձեռնադրել քահանայս երեսնամիս, եւ զերեսուն ամ կալ ի կարգին եւ ապա լռեսցէ. իսկ յիսնեմիք կամ թէ աւելի՝ մի՛ ձեռ-

---

եւ վկայից հաւատարմութեան։" (իսկ "զի մահաբեր" եւն վերջին խօսքը չունի C։)

7. Գ. ‖73—6 Համմ. Նէոկեսարիոյ ժողովոյն կան. ԺԱ (Hefele, I, 249.) — Հարցումն ունի միայն M. իսկ C այսպէս՝ "Ո՞րքան պարտի գոլ ըստ տիոց նուիրեցեալն ի քահանայութիւն կամ ի սարկաւագութիւն, կամ ո՞րքան պարտի կալ մնալ ի պաշտամունս քահանայականի գործառնութեան։" ‖76 CM չունին "Դարձեալ" եւն։ ‖77 M կարգել քահանայս երեսնամէ. C ձեռնադրել զերեսնամեայ քահանայս. — B զերեսնամիսն. — D "զԼ." M "Լ." C եւ զերեսնամեայ ժամանակ կացցեն ի քահանայութեան . . . լռեսցեն։ Իսկ յիսնամենեայն ոչ է հրաման կամ վայել քահանայանալ կամ սարկաւագ կոչել կամ յամուսնութիւն յօրդորել. պատճառն է, զի յիսնամենից մարդկանց սկսին անզօրանալ անձինք ի ժրութենէ, եւ հետեւի մնալ եւս նիրհութիւն, ուստի յայնմ հետէ հազիւ կարէ զինքն ուղեւորել եւ կանոնաւորել ի հոգեկողմն ճանապարհի, ապաքէն զայլս որպէս ուղերձեսցէ. վասն որոյ չէ հարկ. զի մի դուցէ զայլս հոգալոյ ողոգաւ՝ զինքն իւր տուժեսցէ։" ‖78 B կր կարգայ "ամս" փխ. "ամ։" — M չունի՝ "ապա լռեսցէ։" յետոյ՝ "Ծ. ամենեցին" (այսպէս)։ ‖79 AD յիս-

նադրել քահանայ կամ սարկաւագ, եւ մի՛ ամուսնութիւն հրամայել. զի յայսմ՝ վայր անձինք աղճատին եւ միտք, եւ ժամանակ է զինքն պատրաստել իւրում՝ ուղեւորութեանն՝ պայծառացուցանել զիւր զլապտերն. զի մի՛ գայլն հոգալով՝ զինքն անփոյթ արասցէ եւ զրկեսցի յաւիտենից կենացն։

8. Դ. Որպիսի՞ օրինակաւ պարտ է ընտրել զլաւսն յոռեացն եւ ձեռնադրել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Արժան է եպիսկոպոսին հրաժարել ի ձեռնադրութենէ ագահաց եւ տխմարաց, յանմտից, ի ցոփասըրտից, ի վաստամտից, յափշտակողաց, ի շնացողաց եւ յայլ վատթարութենէ. զայնպիսիս ամենեւ-

---

նեմբք, B յիմնամբք (այսինքն՝ "յիմաստեայք„.) — B կամ թէ աւելիք. — D մի՛ եւս։ ||81 M եւ անձն աղճատին եւ միտքն։ ||82 ADC ժամանակք, եւ զինքն . . . M ժամանակ (է) զինքն . . .։ ||84 A յիւրում. — M ուղեւորութեան . . . զլապտերսն։ ||84—5 M գայլս . . . անհոգս արասցէ ի յաւիտենական կենացն. — BD զրկեսցի յաւիտենական կենացն։

8. Դ. ||87—8 Հարցումն ունի M. իսկ C այսպէս՝ "Որպիսի՞ կերպիւ եւ եղանակաւ ընտրել պարտի եպիսկոպոսն ի յոռեաց զլաւագոյնս յաղագս ձեռնադրելոյ սպասաւոր Քրիստոսի եւ եկեղեցւոյ։„ ||89 M այսպէս ունի՝ "Աւելի հրաժարեսցի եպիսկոպոսն ի ձեռնադրութենէ ագահաց եւ տխմարացն, ցոփամտաց եւ վատամտաց, յափշտակողաց, եւ ի շնացողաց եւ յայլ վատթարագործաց. զայնպիսիսն ամենեւին„ եւն։ ||91 B եւ յանմտաց, ցոփասրտաց, ի վաստարտաց։ ||93 D յայլ ի վատթարու-

ին մի՛ ձեռնադրել եւ մի՛ բարկացուցանել զԱստուած։

Գ. Ե. Զի՞նչ օրինակաւ պարտ է ուղղել զսուրբ սեղանն եւ որպէս սպասաւորել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Արժան է եպիսկոպոսին հաստատել սեղան ի քարանց աւրինակ խաչին եւ զայն ծածկել սրբովք կտաւ-

---

թենէ։ — C ամբողջ կանոնն այսպէս ունի՝ "Պարտաւորի եպիսկոպոսն կարի զգուշութեամբ եւ որքապէս հայեցողութեամբ ջոկել եւ զանազանել զարժանաւորսն ի մէջոյ նուիրելոց կերպակերպ փորձառութեամբ. եւ զանվայելսն յայս կարգ ի բաց վարել. զի մի արատեսցի պաշտօնն. զի ագիտաց, ախմարաց, անմտաց, ցոպաբանից, վատաբանից, յափշտակողաց, գողոց, ագահաց, բարկացողաց, ծուլից, հպարտաց, ոկրամոլից, արուամոլից, շնացողաց եւ այլ այսպիսեաց վատթարաց մի՛ ոք ձեռն դիցէ եւ զԱստուած երկնի եւ երկրի ի բարկութիւն շարժեսցէ եւ զոգի իւր կենդանույն ի դժոխս առաքեսցէ. զի ոչ երբէք վայելէ այսպիսեաց կարգ սրբազան։"

Գ. Ե. ‖96—7 Հարցումն ունի M, իսկ C՝ "Որպիսի՞ կերպիւ եւ օրինակաւ պարտի ուղղել զսեղանս եւ սպասաւորել։" ‖98 M ամբողջն այսպէս ունի՝ "Արժան է առնուլ ի քարանց օրինակ խաչի, եւ զնա ծածկեսցեն սուրբ հանդերձիւք, եւ ընդ առաւօտս եւ ընդ երեկս եւ ի ժամ պատարագին, անխնայ լիցի խնկարկութիւն եւ լուցումն ի ժամու իւրեանց"։ C "Արժան է եպիսկոպոսին հաստատել սեղան ի քարանց, օրինակ խաչին անշարժապէս, եւ ծածկեսցեն սուրբ հանդերձիւք, նաեւ ընդ առաւօտու, ընդ երեկոյի եւ ի ժամ սուրբ պատարագին խնկարկութիւնն մի՛ պակասեսցի։" ‖100 BD օրինակ։ ‖101 D ընդ առաւօտս։ — Նիւթոյն հա-

ովք եւ խնկարկութեամբ ընդ առաւաւտս եւ ընդ երեկոյս եւ ի ժամ՝ պատարագին խափան մի՛ լիցի խնկոց եւ լուցմանց։

10. Զ. Զհաց եւ զգինի ո՞րպէս պատշաճեսցուք առ սուրբ սեղանն։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Զհացն պատարագին, յորում աւուր մատուցանիցեն, ի նմին աւուր եփեսցեն՝ խաչապէս դրոշմաւ. Նոյնպէս եւ զգինին սուրբ բաժակին սուրբ ամանաւ հանցեն ի սուրբ սեղանն։ (Եւ մի՛ ոք յանդգնեսցի խառնել ջուր ի յայն բաժակն, զի չէ այն աստուածահաճոյ, այլ անագորոյն մոաց. եւ որ

---

մար հմմտ. Սահակայ յաղագս Քորեպիսկոպոսաց կան. Բ (Կանոնագիրք՝ ՌԼԹ) "Եւ զատաճարս աղաւթից՝ յորս սուրբ եւ աստուածընկալ սեղանն է հաստատեալ, յորոյ վերայ կատարի մեղաքաւիչ եւ կենդանարար խորհուրդ մարմնոյ եւ արեան ապրեցուցչին մերոյ եւ Տեառն, ըստ արժանի բաւականութեանն զարդարուն պահեսցեն անխափան լուցմամբք եւ խնկարկութեամբք" եւն։ Կան. ԺԲ Օձնեցւոյ (Կանոնագիրք ՌՃՀԴ) "Ոչ է արժան զսեղանն՝ յորոյ վերայ պատարագն Քրիստոսի մատչի, փայտեղէն կանգնել եւ շարժուն. այլ քարեղէն եւ անշարժ հիմնայուցանել" եւն։

10. Զ. ‖[104–5] Հարցումն ըստ M. իսկ C՝ "ի սեղանն սուրբ զգինին եւ զհացն ո՞րպէս պատշաճ է ընծայել եւ մատուցանել։" ‖[106] CM չունին՝ "Դարձեալ" եւն։ — BD զհաց։ ‖[107] M յորում աւուր զպատարագն մատուցանեն. — B ...աւուրն եփեսցեն։ ‖[108] M դրոշմամբ։ ‖[109] D զգինի ... ամանօք. M ի սուրբ աման պահեսցեն եւ սուրբ ամանաւ հանցեն ի սեղան։ ‖[110–114] Փակագծի մէջ առնուածը յետնամուտ ընդմիջարկութիւն է. (տես

առնէ որ՝ այնպիսին չէ քրիստոնեայ, եւ նզովեալ եղիցի՝ մինչեւ դարձցի յաղանդոյն։)

11. — Է. Ո՞րպէս պարտ է օրհնել զեկեղեցին եւ զսուրբ սեղանն։

— Եւ ժողով արասցէ եպիսկոպոսն քահանայից աթոռակցացն իւրոց, սարկաւագաց, ժողովրդոց, յորժամ սեղան հաստատէ. եւ մատուցեն աղօթս օրհնութեամբ եւ արտասուաւք, սաղմոսիւք, մարգարէիւք եւ առաքելովք եւ

---

վերը՝ էջ 37—39։) — D "...ջուր յայն բաժակ," եւ չունի "մի՛ որ" եւն նախադասութեան սկիզբն "է—։" — M Աստուծոյ հաճոյ. — B անդառն մնաց. — AB զայնպիսին։ — B եւ նզովեալ ... ի յաղանդոյն. — M չունի "եւ որ առնէ" եւ վերջին մասն՝ վասն զի հրատարակիչը դուրս թողուցած է։ — C ամբողջ կանոնս այլափոխած է՝ "Զհաց պատարագին յորում աւուր մատուցանել հարկաւորիցի, ի նմին աւուր պարտիմք եփել եւ ո՛չ յառաջագոյն, եւ խաչապէս դրոշմելով. նոյնպէս եւ զգինին բաժակի ի սուրբ ամանս պահեսցեն եւ սուրբ ամանով հանցեն ի սեղանն սուրբ. եւ մի՛ որ յանդգնօրէն ժպրհիցի ջուր խառնել ի բաժակի, զի չէ օրէն, այլ վէսամտութիւն, եւ այնպիսին չէ ճշմարիտ քրիստոնեայ. եւ նզովեալ լիցի մինչեւ ի դառնալ աղանդոյն։"

11. Է. ‖[115–6] Հարցումն ըստ M. իսկ C՝ Որպիսի՞ կերպիւ պարտի օրհնել զեկեղեցի եւ զսեղան։ ‖[117] CM Յորժամ զսեղան (C սեղան) հաստատէ եպիսկոպոսն, [C պարտի զի] ժողով արասցէ աթոռակցաց իւրոց, [C թէ] քահանայից, [C թէ] արկաւագաց, եւ [C թէ] ժողովրդոց, մատուցանել աղօթս եւն։ ‖[118] A քահանայի աթոռակցացն. (D աթոռակցաց։) ‖[120] A օրհնութեամբ. —

սուրբ աւետարանաւ աւծեալ իւղով սրբով. եւ ապա մատուսցեն պատարագ։

12. Ը. Թէ որպէս պարտ է յաւուր շնորհի մխիթարութիւն առնել ժողովրդեան կերակրովք եւ ըմպելեօք։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Յորժամ հաստատէ եպիսկոպոսն զսեղանն, արժան է ի նմին աւուր զննմունս առնել, զուարակս եւ նոխազս եւ ոչխարս. որպէս Սողոմոն արար ի շի-

---

BDCM արտասուօք։ ||[121] C սաղմոսիւք եւ առաքելական ընթերցուածովք, սուրբ աւետարանօք, օծանել սուրբ իւղով եւ ապա պատարագ մատուցանել. — B առաքելօվք. M առաքելաւվք. (D չունի "եւ առաքելովք։") ||[122] AB աւետարանութեամբ. D աւետարանութեամբք. M "եւ սուրբ աւետարանաւ," բայց չունի "աւծանել իւղով սրբով։" — BD օծանել սրբով իւղով։ ||[123] M մատուցանել պատարագն։ — Տես Մակարայ կանոն Է. (Կան. ՆԿԳ.)

12. Ը. ||[124–6] Հարցումն ունի M. իսկ C "Արդ եթէ պարտ է պարտ է (այսպէս) յաւուր սեղանականգման վասն շնորհաւորութեան մխիթարել զժողովուրդս կերակրօք եւ ըմպիւք, այսինքն գինեաւ։" — իսկ կանոնն այսպէս ունին CM. "Յորժամ հաստատէ եպիսկոպոսն (C եպ. հաստ.) սեղան, արժան է զննմունս առնել, [C եթէ] զուարակս եւ արջառս եւ ոչխարս, որպէս Սողոմոն (C Սօղոմոն) արար ի շինուածս [C շինել] տաճարին." [C կը կցէ "եւ հաստատեաց սեղան, եւ հաճոյ եղեւ Աստուծոյ եւ հաստատեցաւ. Տէր ի հոտ անուշից։"] ||[128] BD հաստատեսցէ։ ||[129] ABD զենմունս առնէ վասն Աստուծոյ։ ||[130] A զշինուածս. BD ի շինուած։

նուած տաճարին իւրոյ ի հաստատել սեղանոյն, եւ հաճոյ եղեւ Աստուծոյ եւ հաստատեցաւ Տէր ի հոտ անուշից։

13. Թ. Ո՞րպէս արժան է ժողովրդականացն կալ յաղօթս յեկեղեցւոջ։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Յորժամ ի մի վայր ժողովեսցին հաւատացեալքն յաղօթս ի տուն Աստուծոյ, զայլ մի ինչ խօսեսցին, բայց միայն զաղօթսն. մի՛ քրթմնջեսցեն ընդ միմեանս, այլ կացցեն ընդ արեւելս, ձեռս ի վեր համբարձցեն, խնդրելով զարդարանալ եւ արքայութեան արժանի լինել, եւ բարութեանցն՝ որանդն է պատրաստեալ, արժանանալ։

---

13. Թ. ‖ [134–5] Հարցումն ունի M = C. (C ...պարտի ժողովրդոց եւն։) — Իսկ կանոնն այսպէս ունի M. "Յորժամ ժողովին ժողովուրդք հաւատացեալք ի տուն Աստուծոյ, մի՛ քրթմնջեսցեն եւ մի՛ ընդ միմեանս նայեսցին, զայլ ինչ մի՛ խօսեսցին, բայց միայն յաղօթս Աստուծոյ. կացցեն ընդ արեւելս ձեռս ի վեր ամբարձեալս. խնդրելով զարդարութիւն եւ արքայութեանն արժանանալ, զոր պատրաստեաց Աստուած։„ — C այսպէս ունի՝ "Յորժամ հաւատացեալ ժողովուրդք համախմբին ի տան Աստուծոյ, զայլ ինչ մի՛ խօսեսցին, այլ միայն զաղօթս ընդ Աստուծոյ. մի՛ քրթմնջեսցեն եւ մի՛ ընդ միմեանս հայեսցին, այլ կանգնեալ ի յարեւելս կոյս եւ ունելով զձեռս ի վեր ամբարձեալ յաղօթս, խնդրեսցեն զարդարութիւնն Աստուծոյ եւ զարքայութիւն նորա, զոր պատրաստեալ ունի սիրողաց եւ հաւատացելոց իւրոց։„ — B յորժամ ի մի վայր։ ‖ [137] A ժողովեսցին. D ժողովին. — B հաւատացեալք աղօթս ... (D յաղօթսն։) ‖ [139] B բայց միայն յաղօթսն։ ‖ [141] BD ամբարձցեն. —

14. Ժ. Եթէ ոք տգիտութեամբ ձեռնադրեցաւ քահանայ եւ յետոյ յայտնեսցի, զի՞նչ արժան է առնել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ ձեռնադրեսցէ զոք եպիսկոպոսն քահանայ կամ սարկաւագ, եւ յանցանք ինչ լինիցին առ նմա, որպէս եւ է մարդոյ, զինչ (եւ) է աղտեղութեամբ, շնութեամբ կամ գողութեամբ կամ սպանութեամբ, եւ ի ժամ ձեռնադրութեանն չգիտաց ոք, եւ ապա յետոյ ինքն զղջասցի կամ զինչ եւ իցէ պատճառանաւք յայտնին, ոչ կարէ նա սպասաւորութիւն առնել սեղանոյն, եւ ոչ պատարագ մատուցանել, այլ արտաքոյ ապաշխարել զյանցանս իւր զերկոտասան ամ. ապա որ ինչ արժան է՝ շնորհել նմա առաջի նորքոյ բեմին

---

B զարդարանայն։ ||[142] B բարեացն որ անդէն է. A բարութեանց։

14. Ժ. ||[144–6] Հարցումն ունի M. իսկ C "Եթէ ոք եպիսկոպոս տգիտութեամբ ձեռնադրեսցէ զոք անարժան քահանայ, եւ զկնի յայտնեսցի, զի՞նչ պիտոյ է առնել։„ ||[147] CM չունին՝ "Դարձեալ„ եւն. — M եթէ ձեռնադրեսցի ոք եպիսկոպոս կամ քահանայ կամ սարկաւագ, եւ յանցանք լինի առնն, շնութիւն կամ գողութիւն կամ այլ ինչ աղտեղութիւն եւն։ ||[149] A չունի՝ "առ նմա։„ ||[151] A սպանմնութեամբ։ ||[152] B ձեռնադրութեան. — M չգիտաց որ եւ վկայեաց ոչ ոք։ ||[153] D ապա ինքն յետոյ. — B եւ կամ։ ||[154] M կամ պատճառանօք ինչ իւրն յայտնեսցին։ ||[155] AB պատարագն։ ||[156] M արտաքոյ եկեղեցւոյն ապաշխարեսցէ . . . ԺԲ ամ։ ||[157] A զանցանս. B զյանցանան. (A՛ զԺԲ ամ։) ||[158] D արժանն է. M

սպասաւորութիւն առնել եւ կալ ի պատուին բեկեալ սրտիւ մինչեւ ցաւր մահուն իւրոյ:

15. ԺԱ. Եթէ ձեռնադրեցաւ ոք եւ յետոյ գարշեցաւ, զի՞նչ արժան է առնել:

— Դարձեալ ասէ Առաքեալն. Իսկ եթէ ձեռնադրեսցէ զոք եպիսկոպոսն, եւ մարդն ուղիղ էր, ապա շնացաւ կամ գողացաւ կամ այլ ինչ վատթար գործեաց, այնպիսին ամենեւին բարձցի ի քահանայական շնորհէն, եւ ձեւն եւ նշանն. քանզի անհնար է նմա այլ քահանայանալ, այլ արտաքոյ ապաշխարել ԺԵ ամ.

---

որ ինչ պարտ է շնորհել նմա ի ներքոյ բեմին սպասաւորութիւն առնել, կալ ի պատուին մ–բեկեալ մինչեւ եւն: — AB ի պատիւ, D ի պատուի: ‖[160] B ցօր մահուան. D յօր մահուան: — C ամբողջ կանոնն այլափոխած՝ "Թէ ի ձեռնադրել քահանայն կամ սարկաւագն, լիցի յանցանք ինչ՝ շնութիւն կամ գողութիւն եւ այլ այսպիսի աղտեղութիւն, որ ի ժամ ձեռնադրութեան ոչ միով իւիք յայտնեցեալ եղեւ եպիսկոպոսին, զի ոչ ոք վկայեաց, եւ յետոյ իւրոյ ինքեան զղջմամբ կամ այլ միջնորդօք յայտնեցեալ եղեւ, ոչ երբէք կարէ այնուհետեւ սպասաւորել սեղանոյն կամ պատարագել, այլ արտաքոյ եկեղեցւոյ երկոտասան ամ ապաշխարել կալով ի պատուի. սակայն բեկեալ սրտիւ մնալ մինչեւ ցօր մահուանն:„

15. ԺԱ. ‖[161—2] Հարցումն ունի M. իսկ C. "Եթէ ոք զկնի ձեռնադրութեան շնացեալ, գարշելի գտաւ, զի՞նչ արժան է առնել:„ ‖[163] CM չունին "Դարձեալ„ եւն: ‖[164] M եթէ ուղիղ էր մարդն, ապա յետոյ եւն: ‖[167] B բարձցի ի բաց. M այնպիսեացն ամենեւին բարձցի քահանայութիւնն եւ շնորհն: ‖[168] B նշան. — M զի ան-

ապա յայնժամ եկեղեցւոյ արժանանայ եւ հաղորդութեան սուրբ պատարագին, եւ ընդ այլ զինուորսն կացցէ յեկեղեցւոջն. եւ անհնար լիցի նմա այլ ի բեմ ելանել, կամ կարդալ կամ սաղմոս ասել մինչեւ ցաւր մահուան իւրոյ. քանզի պղծեաց նա զսուրբ ամուսնութիւնն եւ առ ոտն կոխեաց. մի համարձակեցուսցէ եպիսկոպոսն, քանզի չէ հնար նմա այլ քահանայ լինել:

հնարին է. (D անհնար է։) ‖169 M արտաքոյ եկեղեցւոյ ապաշխարեսցէ. — A ժե (ամ), D ժէ, B տասն եւեօթն։ ‖170–3 A ապա յորժամ եկեղեցի արժանանայ. B ապա յայնժամ եկեղեցի արժանանայ. D ապա յորժամ եկեղեցւոյ արժանանայ. — M հաղորդութեան խորհրդոյն. ընդ զինուորսն կացցէ. (AD ալ չունին "եւ„ շաղկապն "ընդ զինուորսն„ բառերէն յառաջ։) ‖174 M սաղմոսել — B ցօր. DM յօր։ ‖175 M պղծեաց զսուրբ ձեռնադրութիւնն։ ‖176 M մի համարձակեցուսցի նմա, զի չէ հնար նմա այլ քահանայանալ։ — C ամբողջ կանոնն այսպէս ունի փոփոխած՝ "Թէ մարդն այն ի սկիզբն էր լաւ, եւ ապա եղեւ շնացող եւ գող, ի նմանէն բարձցի շնորհն քահանայութեան, ձեւն եւ նշանն եւս, զի անհնար է նմա վերստին քահանայանալ, ուստի արտաքոյ եկեղեցւոյ ապաշխարեսցէ ժէ ամ, եւ ապա մտցէ յեկեղեցի եւ հաղորդութեան արժանաւորեսցի սրբոյ խորհրդոյն. բայց ի մէջ եկեղեցւոյ ընդ զինուորս կացցէ. զի անհնար է նմա ի բեմն ելանել կամ կարդալ եւ սաղմոսել մինչեւ ցօր մահուան իւրոյ. զի պղծեաց եւ ոտնահարեաց զսուրբ ձեռնադրութիւնն։ Իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսն կամ վասն կաշառի կամ վասն բարեխօսութեան հրաման տայցէ այնպիսւոյ քահանայանալ, զպատիժ կրեսցէ յաւուրն դա-

16. ԺԲ. Իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսն վասն կաշառոյ կամ՝ վասն բարեխաւսութեան կամ՝ վասն մերձաւորութեան հրաման տացէ այնպիսւոյն քահանայութեան, տացէ վրէժս յաւուրն դատաստանի յաններելի տանջանսն։

17. ԺԳ. Ամուսնացեալ քահանայ ո՞րպէս պատրաստեսցի պատարագ մատուցանել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Ամուսնացեալ քահանայք յորժամ՝ զսուրբ պատարագն

---

տաստանի աներողապէս։" — Ասոր եւ նախընթացին նիւթոյն համար հմմտ. Նիկիոյ կան. Ժ (Hefele, I, 413), Թ (I, 412), ԺԲ (I, 415), որոնց մանաւանդ վերջնոյն հայ թարգմանութիւնը (Կանոնագիրք ՄԺԷ) շատ նման է "Թադդէի" այս կանոնին, այնպէս որ "Թադէի" կանոնացս յօրինողն առջեւն ունեցած է կանոնագրքին այն կտորը։

16. ԺԲ. ‖[178] Այս կտորն իբրեւ յատուկ կանոն ունին ABD, ուստի կը պակսի նաեւ հարցումը։ Իսկ CM ձեռագրաց մէջ այս մասն կցուած եւ վերջաբանութիւն է նախընթացին, ուստի C-ի ընթերցումքն տես § 15ի վերջը։ — M յանդգնեցի. — A եպիսկոպոս։ ‖[180] M "կամ՝ վասն մերձաւորութեան" չունի։ — M եւ հրաման տացէ նմա քահանայութեան եւն։ ‖[181] A այնպիսոյն։ ‖[182] M վրէժ. — M դատաստանի։

17. ԺԳ. (CM ԺԲ։) ‖[184–5] Հարցումն ունի M. իսկ C՝ "Ամուսնացեալ քահանայն որպիսի՞ կերպիւ պարտի պատրաստել զինքն վասն մատուցանելոյ պատարագ։" ‖[186] Կանոնն այսպէս կը սկսի ի CM. "Երիս աւուրս հրաժարեսցի ի կնոջէն եւ ապա պատարագ մատուսցէ (C մատ. պատ.), զի եթէ զհայն (C զհայ) յառաջաւորութեանն (C զա-

մատուցանել կամին, զերիս աւուրս հրաժարեսցին ի կանանց իւրեանց ցմատուցման աւուրն. զի եթէ զհաց զառաջաւորութեան ոչ ետ քահանայն առանց քննելոյ եւ զսրբութիւնն գտանելոյ, որչափ եւս առաւել որ զայս երկնաւոր պատարագ մատուցանեն, պարտին սուրբ լինել եւ պատրաստ որպէս Աստուծոյ սպասաւորս, ահիւ կալ եւ դողութեամբ, զի արժանի լիցին անմահ կենացն։

18. ԺԴ. Անձամբ քահանայ որպէս արասցէ։

— Եթէ ոք կուսութեամբ քահանայութիւն ընկալեալ է, այնպիսին տքնող լիցի, պահող,

---

առաջաւորութեան)„ եւն եւն։ ‖189 B ի կանանցն իւրեանց մատուցման աւրն։ ‖190 D զառաջաւորութեանն. — M չետ քահանայն, C ոչ ետ քահանային առանց քննութեան, որչափ եւն (M առանց քննութեան եւ սուրբ գտանելոյ ի կանանց։) ‖191 B զսրբութիւն։ ‖192 CM չունին "զայս․„ (C "որչափ եւս առաւել զերկնաւոր պատարագն մատուցանողն զինքն սուրբ պարտի պահել․ M որ զերկնաւոր պատարագն մատուցանէ։) ‖193 M պարտ է. C "պարտի պահել ահիւ եւ սարսափմամբ. զի հոգեւոր պսակի արժանասցի․„ որով կը լմննայ կանոնը։ ‖194 M ... որպէս Աստուծոյ իսկ կալ ի սպասու ահիւ եւ դողութեամբ, զի պսակաց արժանի լիցի եւ անմահ կենաց։ — D եւ պատրաստս. — B սպասաւոր։ — AB ... լինիցին անմահ կենացն։

18. ԺԴ. (M ԺԳ. իսկ C չունի այս կանոնը։) ‖197—8 Հարցումը միայն M ունի։ ‖199 D եւ եթէ ոք. — M եթէ կուսան քահանայ ոք լիցի, այն-

*յորում աւուր զսուրբ պատարագն մատուցանել կամին, պատրաստ լիցին, զգիշեր ամենայն տքնել սուրբ խորհրդով առանց ամենայն կեղծաւորութեան, զի ընդ Աստուծոյ խորհուրդ մտանէ։*

19. **ԺԵ.** *Եթէ արժա՞ն է քահանային երդնուլ։*

— *Քահանայ որ երդնուցու, ամենեւին մի՛ լիցի նմա ի քահանայութեան կալ, զի զբանն Աստուծոյ արհամարհեաց։*

20. **ԺԶ.** *Որպէս պարտ է քահանային լինել։*

— *Արժան է քահանային աղքատասէր լինել, քաղցրաբան, խորհրդական, զմեղուցեալսն*

---

*պիսին եւն.* M *չունի յաջորդին մէջ “եւ պահող” եւ “զսուրբ” բառերը, եւ կը կարդայ՝ “...զպատարագն մատուցանել կամիցի, պատրաստեսցի զգիշերն ամենայն սուրբ խորհրդով կատարեալ մտօք առանց կեղծաւորութեան. քանզի ընդ Աստուծոյ ի խորհուրդ մտանէ։*

19. **ԺԵ.** (M **ԺԴ**, C **ԺԳ**։) ‖[205—6] *Հարցումն ըստ* CM (*բայց* C “... *երբէք երդնուլ*”։) ‖[207] M *այսպէս ունի ամբողջը՝ “Նմա չէ արժան կալ ի քահանայութեանն, զի զբանն Աստուծոյ անարգեաց։”* C *ամբողջն՝ “Զի եթէ երդնուցու՝ այնուհետեւ չէ արժան ի կարգի քահանայութեան մնալ. զի զբանն Աստուծոյ արհամարհեաց։”* ‖[208—9] A *զի բանն արհամարհեայ.* — B ... *արհամարհեաց նա*։։

20. **ԺԶ.** (M **ԺԵ**, C **ԺԴ**։) ‖[210—11] *Հարցումն ըստ* M. *իսկ* C՝ “*Քահանայն որպիսի՞ կերպիւ ունիլ պարտի զկարգ քահանայութեան։*” ‖[212] M *չունի “քահանային.”* — C. *Արժան է քահանայի քաղցրաբան եւ խորհրդական լինել, զմեղուցեալսն*

ուղղել ապաշխարութեամբ, պահաւք եւ աղաւթիւք, եւ զամենեսեան արքայութեան արժանացուցանել, զի յերեւելն Քրիստոսի ամենեքեան առնուցուն զանթառամ պսակն, զոր անդն է պատրաստեալ։

21. ԺԷ. Որ հաւատացեալ է եւ մկրտեալ եւ անկանիցի ի մեղս, զի՞նչ արժան է առնել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Որ միանգամ ի Քրիստոս մկրտեալ են, մի՛ երբեք լիցի նոցա անկանել ընդ մեղաւք, այլ աստուածահաճոյ վարել զկեանս իւրեանց. մի՛ շնալ, մի՛ գո-

---

սերով խրատելով յապաշխարութիւն մուծանել, եւ կրկնակի որդիս Աստուծոյ առնել միջնորդութեամբ ապաշխարութեան։ ‖[213] B ի քաղցրաբան։ ‖[214] DM ուղղել. AB ուղիղ. — M յապաշխարութիւն. — BDM պահօք եւ աղօթիւք։ ‖[215] M չունի “ե-„ յառաջ քան “զամենեսեան։„ — AB արժանացուցանէ. D արժանացուցէ. M արժանացուցանել։ ‖[216] M չունի “ամենեքեան.„ յետոյ կը կարդայ “զանթառամ փառաց պսակն.„ առանց վերջին նախադասութիւնն ունենալու։ ‖[217] B զանթառամն. — D որ անդ է եւն։

21. ԺԷ. (M ԺԶ, C ԺԵ, B ԺԸ։) ‖[219—20] Հարցումն ունի M. իսկ C ու տարբեր ընթերցմունքս՝ “որ ոք . . . նաեւ մկրտեալ, եթէ անկանիցի . . . զի՞նչ պարտի առնել նմա։„ ‖[221] CM չունին սկիզբն մինչեւ “մկրտեալ„ եւն. եւ կը սկսին այսպէս՝ “Մի՛ երբէք լիցի նոցա„ (C “պարտի նմա„) եւն։ ‖[223] C անկանիլ. — BCDM մեղօք. C աւելէ ետքը՝ “այսինքն՝ շնութեան, գողութեան, երդումն (C եւ C[2] բուն “էրօ-մ.„) ունելով, բամբասելով, այլ իբրեւ ճշմարիտ ժողովուրդ Աստուծոյ թարց

*ղանալ, մի արբենալ, մի երդնուլ, մի բամբասել, այլ որպէս Աստուծոյ իսկ ժողովուրդ առանց ամենայն կեղծաւորութեան։*

22. ԺԲ. *Որ շնայ՝ զի՞նչ պարտ է առնել։*

— *Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ ոք այր կամ կին քրիստոնեայ շնացաւ, արտաքոյ եկեղեցւոյ ապաշխարեսցէ զերիս ամս տքնել պահեալ եւ աղաւթեալ, եւ լուծումն ի շաբաթու եւ ի կիւրակէի լիցի եւ ի տէրունական տաւնսն, մինչեւ ի կատարել երից ամացն. ապա ի չորրորդումն լիցի արժանի հաղորդութեան։ Եւ որ գողասցի ոք, զնոյն պատուհաս կրեսցէ.*

---

*աղտոյ լինել։"* ‖225 M *չունի՝ "մի արբենալ," յետոյ կ'ըսէ՝ "մի գողանալ, մի բամբասել եւ մի երդնուլ, այլ որպէս" եւն։* ‖226 B *ժողովուրդն։* ‖227 MC *առանց աղտոյ լինիլ։*

22. ԺԲ. (M ԺԵ, C ԺԶ, B ԺԷ։) ‖228 *Հարցումն ունին* CM. (C ...*զի՞նչ պարտի առնել։*) ‖229 CM *չունին սկիզբն մինչեւ "շնացաւ," եւ կը սկսին այսպէս՝ "Այնպիսին* (M *չունի*) *արտաքոյ եկեղեցւոյ երեք ամ ապաշխարեսցէ* (M *ապ. գ. ամ*) *պահօք,* (M *եւ*) *աղօթիւք,* (C *եւ*) *տքնութեամբ. եւ լուծումն" եւն։* ‖230 D *այլազգ՝ "արտաքոյ եկեղեցւոյ, ապաշխարեսցեն" եւն.* AB *արտաքոյ ապաշխարեսցէ եկեղեցւոյ.* (A *յեկեղեցոյ։*) ‖232 D *պահել եւ աղօթել.* B... *աղօթեալ։* — D *լուծումն շաբաթու եւն.* M *լուծումն ի շաբաթ եւ կիւրակէի եւ ի տէրունական տօնս եւն.* C *միայն թէ շաբաթ եւ կիւրակէ լուծցէ եւ ի տօնս տէրունականս։* ‖234 MC *կատարիլ...* (C *եւ*) *յամին չորրորդի հաղորդութեան արժանի լիցի եւն.* (A *ի չորրորդումն։*) ‖237 *Վերջին մասս չունի* M *կամ*

ապա թէ ի մեղսն յաւելցեն, կրկին ապաշխարեսցեն։

23. ԺԹ. Որ ի շնալն զորդեծնութիւն հեղուցու, զի՞նչ պարտ է առնել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ ոք ի քրիստոնէից ի շնանալն զորդեծնութիւնն հեղուցու եւ զԱստուծոյ երկիւղն ոչինչ համարի, զի մի՛ մարդկան յայտնեսցի, այնպիսին ընդ սպանողսն ապաշխարեսցէ բազում հառաչանաւք։

24. Ի. Որ հեղու զինքն՝ զի՞նչ առնելի է։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ ոք անժուժկալաբար լքկէ զինքն եւ հոսումն արասցէ

Ճշդիւ եւս՝ չէ հաղորդած մեզ Աբէլ եպ., վասն զի բուն ձեռագրին մէջ կայ։ C "ապա թէ յամեալ իցէ ի մեղս, վեց ամ ապաշխարեսցէ։„ — Համմտ. Կան Ի. ժողովոյն Անկիւրիոյ (Hefele, I, 339։)

23. ԺԹ. (M ԺԸ, C ԺԵ։) ‖239—40 Հարցումը գրած ենք վերն ըստ C (որ կը կարդայ՝ "զսերմն որդեծնութեան„ եւ յետոյ՝ "զի՞նչ պարտի առնել։„) M չունի հարցումն, կամ հարցումն եւ կանոնին սկիզբն ձուլուած են մէկտեղ՝ այսպէս. "Որ ի շնալն զորդեծնութիւնն հեղուցու, զի մի մարդկան յայտնեսցի, եւ զԱստուծոյ երկիւղն առ ոչինչ համարի, այնպիսին ընդ սպանողի ապաշխարեսցէ բազում հառաչանօք.„ — C այսպէս ունի կանոնս՝ "Այնոքիկ որ զսերմ որդեծնելութեան հեղուն, զի մի մարդկան յայտնեսցին, եւ զերկիւղն Աստուծոյ ոչինչ համարին, ընդ սպանողսն համարեսցին։„ ‖242 B ի քրիստոնէիցն. — A ի շնացեալն։ — B ի զատ հեղուցու։ ‖244 B ընդ սպանօղսն։ ‖245 BD հառաչանօք։

24. Ի. (M ԺԹ, C ԺԸ։) ‖246 Հարցումն է M‑ի համեմատ. C՝ "Որ հեղու զիւր սերմն, զայնպիսին

մարմնոյն, պիղծ է այնպիսին. ընդ չնացողն ապաշխարեսցէ. եւ եթէ յաւելեալ իցէ ի գործն՝ կրկին ապաշխարեսցէ. եւ այնպիսիքն ձեռնադրութեան մի՛ լիցին արժանի։

25. ԻԱ. Որ ընդ արուի պղծի, զի՞նչ արժան է առնել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ որ պղծի ընդ արուի, պիղծ է այնպիսին, զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ արտաքոյ եկեղեցւոյն, եւ ի ժամանակի որոշմանն հաղորդեսցի։

26. ԻԲ. Եթէ ամուսնացեալք շնան, զի՞նչ արասցուք։

---

զի՞նչ առնել պարտի։” ‖[247] CM սկիզբը չունին եւ կը սկսին այսպէս՝ “Պիղծ է այնպիսին (C այնպիսին պիղծ է), ընդ չնացողս (C չնացողն) ապաշխարեսցէ.” (C ասկէ ետքը միայն սա խօսքն ունի՝ “եւ մի՛ քահանայասցի։”) ‖[249] B ընդ չնացողն. A ընդ չնացելոյն։ ‖[250] Փխ. “եւ եթէ յաւելեալ” եւն՝ կը կարդայ M՝ “Եւ եթէ յամէ, կրկին ապաշխարեսցէ եւ ձեռնադրութեան արժանի մի՛ լիցի։” (“մի՛ լիցի” ունի նաեւ B։)

25. ԻԱ. (M Ի, C ԺԹ։) ‖[253—4] Հարցումը ունին CM. (C լաւ եւս՝ “...ընդ արուի ...զի՞նչ արժան է առնել զայնպիսին։”) ‖[255] Կանոնը կը սկսին CM այսպէս՝ “Զամենայն աւուրս կենաց իւրոց” եւն։ ‖[258] A եկեղեցոյն, C եկեղեցւոյ. — B եւ ժամանակս որոշմանն. M ի ժամանակի որոշման իւրոյ. C. ի ժամանակի որոշմանն իւրոյ։

26. ԻԲ. (M ԻԱ, C Ի։) ‖[260—1] Հարցումն ունին CM. (C ...ամուսնացեալքն շնայցեն ...։)

— Դարձեալ ասէ Առաքեալն. Թէ որ առնակին իցէ եւ շնացաւ, ԺԲ ամ ապաշխարեսցէ արտաքոյ եկեղեցւոյ արտասուաւք զամենայն սրբապահ. յետ վեց ամի անցանելոյ՝ [ի] շաբաթու, կիւրակէի եւ ի տէրունական տաւնս լուծումն արասցէ, եւ ի տարւոյն զչորրորդ մասն պահեսցէ. եւ ապա մտցէ յեկեղեցի եւ հաղորդեսցի:

27. ԻԴ. Կախարդին զի՞նչ արասցուք:

— Կախարդի՝ ուրացողի կանոնք եղիցին ի վերայ:

---

‖262 Կանոնք կը սկսին CM այսպէս՝ "Արտաքոյ եկեղեցւոյ ապաշխարեսցեն զերկոտասան ամ (M Տասներկու ամ արտ. եկեղեցւոյն ապաշխարեսցէ) արտասուօք, վեց (M զվեց) ամ օրէնս մի առցեն (M առցէ) եւն: Ասկէ ետքն C այսպէս ունի մնացեալը՝ "եւ զտարւոյն զմի մասն կերիցեն եւ զշաբաթ, զկիւրակէ եւ զտէրունեան տօնս կերիցէ, եւ ապա մտցեն յեկեղեցի եւ հաղորդեսցին:" Իսկ M այսպէս ունի մնացածը՝ "Եւ զտարւոյն երեք մասն պահեսցէ եւ մի մասն կերիցէ, եւ զշաբաթ եւ զկիւրակէ եւ զտէրունականն տօնան կերիցէ, եւ մտցէ յեկեղեցի եւ օրէնս առցէ:" — B թէ որ: ‖263 A երկոտասան ամ. ‖264 BD արտասուօք: ‖265 D սրբապաշն: ‖266 A շաբաթիւ. — B տօնան, D տօնս: ‖267 A ի տարոյն, B ի տարւոյն: ‖268 BD յեկեղեցին:

27. ԻԴ. (C ԻԲ:) M չունի այս կանոնը: ‖270 Հարցումը դրինք C ի համեմատ: ‖271 AB կախարդի եւ ուրացողի. — ABD եղիցի: — Կանոնը բոլորովին տարբեր ունի C. "Զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ, եւ ապա ի վախճանի հաղորդեսցի:" Այս խօսքը քաղուած է ԻԹ կանոնէն:

28. ԻԴ. *Զչորեքշաբաթ եւ զուրբաթ արժա՞ն է պահել:*

*— Արժան է քրիստոնէից զուրբաթ եւ զչորեքշաբաթ պահել եւ աղօթել. զի աւուրք չարչարանաց են Տեառն մերոյ, տրտում արտասուաւք յիշելով զնորա զխոնարհութիւն, եւ գոհանալով զնմանէ՝ որ եկն եւ փրկեաց զմեզ իւրովք չարչարանաւք. պահել մինչեւ ցինն՝ ժամն:*

29. ԻԵ. *Որ շնայ եւ զմանուկն սպանանէ, զի՞նչ արասցուք այնպիսւոյ:*

*— Որ շնայ եւ զմանուկն սպանանէ, յաւր մահուան իւրոյ ապաշխարեսցէ եւ ի վախճանին հաղորդեսցի:*

---

28. ԻԴ. (M ԻԸ, C ԼԱ:) ‖[273] *Հարցումն ոչ-նին* CM. (C ... *որպէս արժան է.*) *եւ կանոնը կը սկսին այսպէս՝ "Արժան է պահել եւ աղօթել, զի աւուրք չարչարանաց Փրկչին մերոյ են, տրտում կալ* (C *տրտմիլ եւ արտասուել*), *յիշել զնորա կամաւոր խոնարհութիւն՝ գոհանալով* (C *զնորին ...խոնարհութիւնն եւ գոհանալ*) *զնմանէ, որ եկն եւ փրկեաց զմեզ իւրով կամաւոր չարչարանօքն* (C *կը կցէ՝ վասն որոյ պահեալ լիցի ծոմով*) *մինչեւ ցինն ժամն:"* ‖[277] B *չունի "են":* — D *մերոյ Տեառն են.* — BD *արտասուօք:* ‖[278] B *յիշել.* D *յիշելով զխոնարհութիւն նորա:* ‖[280] A *չարչարանաւ.* B *չարչարանօքն.* D *չարչարանովն:* ‖[281] BD *ժամ:*

29. ԻԵ. (C ԻԳ:) M *չունի այս կանոնը:* ‖[282–3] *Հարցումը դրինք* C *ի համեմատ:* ‖[284] C *եւ* N *այսպէս ունին այս կանոնը՝ "Զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ, եւ ի վախճանի հաղորդեսցի:"* — BD *յօր:* ‖[285] A *ի վաղճանին.* B

30. ԻԶ. Ո՞րպէս կատարեսցուք զաստուածային տօնից կարգս։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Յորժամ զտէրունական տաւնսն կատարեն հաւատացեալքն, նախ յառաջ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ եւ ի սպաս տաւնին, եւ ապա տաւնեսցեն։

31. ԻԷ. Զսուրբ քառասնորդսն ո՞րպէս արժան է պահել։

— Դարձեալ ասէ Առաքեալն. Զսուրբ քառասունսն պահեսցեն հաւատացեալքն սրբութեամբ, ուրոյն զշաբաթ եւ զկիւրակէ. եւ

---

ի վաղճանի։ — Առր աղբիւրն է Անկիւրիոյ կան. ԻԱ. (Hefele, I, 241։)

30. ԻԶ. (M ԻԷ. C Լ։) ‖[287–8] Հարցումն ունին CM. (C ...զաստուածային տօնս։) ‖[289] Կանոնն այսպէս ունի M. "Նախ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ տօնին, եւ ապա կատարեսցեն։„ C Նախ պահեսցեն մի շաբաթ ի պատիւ սուրբ տօնին եւ ի սպաս, եւ ապա կատարեսցեն։ ‖[290] B տէրունական. — BD տօնսն։ ‖[292] BD տօնին տօնեսցեն։

31. ԻԷ. (M ԻԹ, C ԼԲ։) ‖[293–4] Հարցումն ունին CM. (M "ո՞րպէս„ չունի, այլ միայն՝ "արժա՞ն է„ եւն։) ‖[295] CM չունին սկիզբն՝ "Դարձեալ„ եւն։ — C զայս սուրբ քառասունսն. M քառասներորդսն։ ‖[296] Փխ. "հաւատացեալքն„՝ կր. կարդան CM "ամենայն քրիստոնեայք։„ — "Սրբութեամբ„ չունի C։ Յաջորդն այսպէս ունին CM "որոշ (C զատ) ի շաբաթէ եւ ի կիւրակէ։„ Ասկէ ետքը C այսպէս ունի կանոնը՝ "Եւ ի յաւուրս չարչարանաց Տեառն մերոյ մի՛ ոք իշխեսցէ ժոտիլ եւ ծիծաղել, այլ պարտի տրտմիլ վասն ազնութեան փրկչին, եւ անդադար աղօթել. եւ ապա զկենարար պասէքն արասցեն ցնծութեամբ

յորժամ յաւր չարչարանաց Տեառն գայցեն, տքնեսցեն եւ անդադար աղօթեսցեն. ժպիրհ մի՛ ումեք ելցէ յայն աւուրսն, այլ արտասուս ընդ Տեառն մերոյ. եւ ապա զկենարար պասէքն առասցեն, ցնծալով ընդ յառնելն Տեառն մերոյ. աղաւթիւք փառաւորել զնա՝ որ փրկեաց զմեզ յարութեամբն իւրով, եւ ետ մեզ երգակից լինել վերնոցն. Նմա փառք յաւիտեանս ամէն:

---

ընդ յարութեան Տեառն, եւ փառաւորել զԱստուած, որ փրկեաց զմեզ եւ ետ մեզ երգակից լինիլ վերնոցն. Նմա փառք եւ գոհութիւն յաւիտեանս յաւիտենից ամէն:„ ‖[298] B օր չարչարանաց, D յօր...: ‖[299] A աղաւթնեսցեն: M յորժամ Տեառն մերոյ չարչարանաց աւուրք գան՝ ժպրհել մի՛ ոք իշխեսցէ յայն աւուրս, այլ արտում րաս Տեառն մերոյ՝ տքնութեամբ անդադար աղօթեսցեն եւն: — B եւ ժպիրհ... յայնմ աւուրսն եւն: ‖[301] M պասէքն... ցնծասցեն ընդ Տեառն մերոյ յառնելն: ‖[303] M փառաւորեսցեն: ‖[304] A երկակից: ‖[305] D զի Նմա վայելէ փառք: — CM ձեռագիրք այս փառաբանութեամբ կը փակեն կանոնաց շարքը. վասն զի հոն վերջին կանոնն է այս կտորը: Նաեւ AB այսպիսի վերջաբան մ'ունին, եւ յաջորդ կանոններն իբրեւ ուրոյն խումբ մը՝ իբրեւ Կանոնք "Հարցողաց„ կը կցեն: Կարելի է որ բառ այսմ յաջորդ ԻԸ—ԼԳ աւելի յետասմուտ ըլլան, որ շատ՛ հաւանական է: Բայց անկարելի ալ չէ, որ այս կանոնը բովանդակ կարկատանաց վերջին կտորն էր նախնաբար եւ տեղափոխութեամբ հոս ինկած. վասն զի կանոնաց յետեւառաջութիւնք ցանցառ չեն ձեռագրաց մէջ. (հմմտ. M եւ C:) Ընդհան-

## ՀԱՐՑՈՂԱՑ

32. ԻԲ. Որ զՔրիստոս ուրանայ եւ զղջացեալ դառնայ, զի՞նչ արասցուք:

— Պատասխանի. Զամենայն աւուրս կենաց իւրոց ապաշխարեսցէ արտասուաւք, պահաւք եւ աղաւթիւք, տրաւք տնանկաց, եւ ի վախճանին հաղորդեսցի:

33. ԻԹ. Հարցումն. Որ պղծի ընդ անասնոյ, զի՞նչ արասցուք:

— Պատ. Որ ընդ անասնոյ պղծի՝ որչափ ամք են մարդոյն՝ ընդ ունկնդիրսն կացցէ, ապա

---

բայց այժմու ձեռագիրներով անհնար է որոշել թէ որն է բնագրին նախնական կերպարանքը:

---

"Հարցողաց:" 32. ԻԲ. (D ԻԹ, M ԻԲ, C ԻԱ:) ||306 "Հարցողաց" խորագիրն ունին միայն AB. իսկ D. "ԻԲ. Հարցումն:" MC չունին: ||307 C ապա դառնայ՝ որպէս արասցուք. — B "զի՞նչ արասցուք նմա:" Հոս եւ մինչեւ վերջը չունին CM "Հարցումն" եւ "Պատասխանի" բառերը. ունին միւսներն՝ նաեւ հարցումներով այս մասերուն: ||310 BCDM արտասուօք, պահօք, եւ աղօթիւք. (B չունի "եւ":) ||311 CM եւ տրօք տնանկաց. — D տրովք եւն: ||312 M չունի՝ "եւ" (ի վախճանին) եւն. C ի վախճանի: — Նիւթոյն համար հմմտ. Անկիւրիոյ կան. Ա (Hef. I, 222) եւ ուրիշներ:

33. ԻԹ. (D ԻԲ, C ԻԵ:) ||313—318 M չունի այս կտորը: — NC այսպէս ունին հարցումը "Թէ (C որ) ընդ անասուն պղծեսցի, ի՞նչ արասցուք (C ապա նմա:)" Պատասխանին ալ այսպէս ունին NC. "Որչափ ամն մարդոյն են (C է), ապաշխա-

Ի ամ ընդ ձեռամբ, ապա մտցէ յեկեղեցի ընդ ժողովուրդսն, եւ ի վախճանին հաղորդեսցի։

34. Լ. Հարցումն. Որ կամաւք մարդ սպանանէ, ո՞րպէս արժան է։

— Պատասխանի. ԺԵ ամ ընդ ունկընդիրսն կացցէ, Ե ամ ընդ ձեռամբ. եւ յետ անձին իւրոյ հաղորդեսցի։

35. ԼԱ. Հարցումն. Որ մի մաւր կաթամբ սնեալ են աւտարք ի միմեանց, արժա՞ն է ամուսնանալ։

— Պատասխանի. Չէ արժան. զի ծնող եւ սնուցանող ընդ մի համար է։

---

բեսցէ, եւ ի վախճանին հաղորդեսցի։" — AB այս կտորին մէջ չունին հարցումն, իսկ վերջը կը կարդան՝ "եւ վաղճանին հաղորդեսցի։" — Աղբիւրն է Անկիւրիոյ կան. ԺԶ. (Hef. I, 235։)

34. Լ. (M ԻԳ, C ԻԴ։) ‖[319] Հարցումն ունին ADMC. (D կամօք մարդ սպանէ. A նոյնպէս՝ "սպանէ մարդ." M... սպանանէ, որո՞վ արժան է. C... սպանանիցէ, զի՞նչ արժան է առնել նմա։) ‖[321] BM Տասն եւ հինգ, D տասն եւ Ե. — C Ընդ ունկնդիրս կացցէ ԺԵ ամ, եւ զայլ ժամանակս ընդ ձեռամբ եւն։ — DM ընդ ունկնդիրս (= C.) — D հինգ ամ. M մի ամ։ ‖[323] C անձինն։

35. ԼԱ. (M ԻԴ, C ԻԷ։) ‖[324] Հարցումն ունին ABDMN. (ամէնն ալ կը գրեն՝ "մօր... օտարք" եւն. B օտարք միմեանց՝ արժա՞ն եւն. N եւ են օտարք եւն.) իսկ C այսպէս ունի՝ "Որ որք միով կաթամբք սնեալ իցէ, բայց օտարք ի միմեանց, ընդ միմեամբ ամուսնացի՞ն թէ ոչ։" ‖[327] B ծնօղ. D ծնօղն. A ծնաւղ. ‖[328] A սնուցող, B սնուցանօղ. MN սնուցօղ. — AB մի հա-

36. ԼԲ. Հարցումն. Եթէ ազգականք ամուսնանան, զի՞նչ արասցուք։

— Պատասխանի. Քակել արժան է ի միմեանց եւ ծանր ապաշխարութիւն ի վերայ դնել. զի չէ ամուսնութիւն, այլ հանապազ պոռնկութիւն եւ ընդ անիծիւք արարչին։

37. ԼԳ. Հարցումն. Որ զսահման ընկերին յափշտակէ, որպիսի՞ ինչ է։

— Պատասխանի. Զոր գրեաց Մովսէս հրամանաւ Աստուծոյ, իջցեն անէծքն ի վերայ նորա եւ եղիցի նզովեալ ի կեանս եւ ի մահ։

---

մար է. (չունին “ընդ„). D մի համարի. M ի մի համարի են. N ընդ մի համար է։ — C այսպէս ունի՝ “Թէպէտ օտարք են, բայց չէ արժան, զի ծնօղ եւ սնուցանօղ ընդ մի համարի են եւ լծակցութենէ։„ — Տես Կան. ԻԲ Անկիւրիոյ (Hefele, I, 241։)

36. ԼԲ. (M, ԻԵ. C ԻԸ։) ‖[329] Հարցումն ունին ABCDMN. (C... ամուսնանան ընդ միմեանս...։) ‖[331] B միայն “միմեանց„։ ‖[332] C չունի “ի վերայ։„ ‖[333] CN կը կարդան “հանապազ.„ իսկ ABD յարակայ։ — M չունի “այլ հանապազ պոռնկութիւն.„ յետոյ կը գրէ՝ “եւ ընդ անիծիւք արարչին է„ (C եւ ընդ արարչին անիծիւք։„)

37. ԼԳ. (M ԻԶ, C ԻԹ։) ‖[335] Հարցումն ունին ABCDM. (D զսահմանս)։ ‖[336] M որպիսի ինչ. — C ո՞րպէս արասցուք։ ‖[338] Փխ. “Հրամանաւ Աստուծոյ՝„ ունի M “յօրէնս. Իջցէ„ եւն. C “յօրէնս՝ հրամանաւն Աստուծոյ. ուստի իջցէ

37. Իբրեւ կատարեաց զայս սուրբ Առաքեալն Թադէոս, ասէ ցժողովուրդն. Հարք եւ եղբարք, որք Տեառն ետուք զանձինս, այս ձեզ յինէն օրէնք եւ այլոց՝ որ յետ ձեր լինելոց են:

38. Արդ հաստատուն կացէք ի Տէր սիրելիք՝ յամենայն[ի], զոր լուարուք յինէն. մի անցանէք ըստ սահմանս ըստ այսմ. զի բարի լիցի ձեզ եւ երկայնակեաց լինիցիք, եւ եղիցի ձեզ յիշատակ բանս այս, եւ մի մոռանայք յաղօթս ձեր:

---

նոյն անէծքն ի վերայ գլխոյ նորա եւ եղիցի„ եւն: — A իջցեն անէծք. (M "իջցէն... եղիցի„ եւն, առանց՝ "է-„ շաղկապի:)

---

Վերջաբան: 37. ‖340 BCM եւ իբրեւ. ‖341 BC Թաթէոս, M Թադդէոս. (ուղղելի՝ "Ադդէ:„) ‖342 C Որովհետեւ ընդ Տեառն ետուք զանձինս ձեր, ուրեմն այս ձեզ յինէն օրէնք լիցի, ոչ միայն ձեզ, այլ զկնի ձեր եկողաց: Արդ հաստատուն կացէք յամենայնի եւ պահեցէք, զոր ինչ լուայքդ յինէն. մի անցանէք ընդ պատուիրանօք, որ սահմանեցաւ ձեզ. զի եւ դուք պահելով զնոսա երկայնակեացք լինիջիք, եւ եղիցի ձեզ յիշատակ բանս այս: Եւ զայլ հարկաւոր կարգադրութիւնս եւն: ‖343 DM եւ այլ՝ որ յետ ձեր եւն. (B յետ ձեզ:)

38. ‖344 D չունի՝ "սիրելիք„. ‖345 B ամենայնի. M հաստատուն կացէք յամենայնի եւն: ‖346 B ըստ սահմանս ըստ այսմիկ: — M զի ձեզ բարի լիցի: ‖347 BDM երկայնակեացք. (B կ'ըսէ "իցէք„ փխ. "լինիցիք:„ C տես վերը՝ § 37:

39. *Եւ զայլ կարգաւորութիւնն ուսուցէ ձեզ Ադդէ, զամենայն՝ զոր լուաւ յինէն, ըստ կարգին՝ զոր կարգեցին եղբարքն Առաքեալքն ցեառն: Պահեսջիք խաղաղութեամբ ի փորձանաց չարին. խաղաղութիւն ընդ ձեզ:*

40. *Զայս օրինադրութիւն ես Զաքարիա աշակերտ առաքելոյն Թադէոսի գրեցի. որպէս լուայ ի նմանէ՝ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս:*

---

39. ‖[350] BD *կարգաւորութիւնս.* — "*Ադդէ*" *պէտք է ուղղել ընել՝* "*Աֆֆէ:*" ‖[352] B *ունի նախ՝* "*զոր գրեցին կարգեցին,*" *յետոյ* "*գրեցին*" *բառն աւրուած.* — B *եղբարք առաքեալք,* M *եղբարք եւ առաքեալք:* — C *այսպէս ունի ամբողջը՝* "*Եւ զայլ հարկաւոր կարգադրութիւնս ուսուցէ ձեզ Ադդէ, զոր ինչ լուեալ է յինէն ըստ կարգին, զոր հաստատեցին եղբարքն, որք են առաքեալքն, եւ պահեսջիք խաղաղութեամբ յամենայն արկածից չարին. արդ այժմ խաղաղութիւն ընդ ձեզ:*"

40. ‖[355–6] N *օրէնադրութիւն.* AB *օրինադրութիւնս:* — N *Զաքէ աշակերտ Թադէոսի առաքելոյ.* B *աշակերտ Թաթէոսի առաքելոյն:* ‖[357–8] AB *հաւատացելոյն ի Քրիստոս* (B "*Քրիստոսի*":) — *Միայն* CDN *ունին վերջաբանս՝* "*նմա* (N *որում*) *փառք յաւիտեանս.*" (C *կը կցէ՝* "*Ամէն:*") — C *այսպէս՝* "*Եւ զայս օրէնադրութիւն ես Զաքարէ աշակերտ սուրբ առաքելոյն Թաթէի գրեցի, որ լուայ ի նմանէ վասն ամենայն հաւատացելոց ի Քրիստոս, որում փառք հանդերձ Հարբ եւ Հոգւով:*"



ՔԱՂՈՒԱԾ

# ԿԱՆՈՆԱԳՐՈՑ ՔՆՆՈՒԹԵՆԷՆ

Հ. ՅՈՎՍԷՓԱՅ Վ. ԳԱԹՐՃԵԱՆ*

---

Մեր կանոնաց Հաւաքողը ստէպ կը յղէ մեզի ուրիշ կանոնաց անուն մը՝ Առաքելական անուանելով զանոնք։ Անտիոքայ ժողովոյն Ա. կանոնին մէջ ասանկ կը գրէ. «Ամենայն ոք ով եւ համարձակեսցին եւ լուծցեն զսահմանս սուրբ եւ մեծ ժողովոյն որ ի Նիկիա ժողովեցան եւ զԱռաքելոցն»․․․․ վասն զի մեր Թարգմանչին կամ Հաւաքչին համար գլխաւոր կանոններն այսպէս երկու կը բաժնուին, Առաքելական եւ Նիկիական։ Անոր համար է որ Շահապիվանի կանոններէն առաջ երկու անգամ, մէյ մը՝ վերնագրին մէջ կ՚ըսէ, «Սահմանք եւ կանոնք... զոր եդին վարդապետք Հայոց ի լրութիւն Առաքելական եւ Նիկիական կանոնաց»․ մէյ մ՚ալ՝ անոնց Յառաջաբանին վերջը՝ «Զայս ասացեալ միաբան քահանայապետացն եթէ Առաքելական եւ Նիկիական կանոնն հաստատուն կացցեն եւ մեք հնազանդեալ եմք, բայց որ ինչ պիտոյ է ի լրութիւն ի նոյն կանոնս, եւ մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ եւ կողմանս արեւելեացս։»

---

* Առնելով հանգուցեալ Հ. Յ. Գաթրճեանի անտիպ գործքէն՝ այս կտորը, կատարած կ՚ըլլանք վերը տուած մեր մէկ խոստումը (տես էջ 17—8:) Պէտք չէ մոռնալ որ հեղինակը գրած է 1868—70ի մէջ, այս մասին քիչ մ՚աւելի կանուխ ալ. որով շատ բան տակաւին լոյս տեսած չէր այն ատեն:

Աս Առաքելական կամ Առաքելոց կանոնները՝ զորոնք մեր Հաւաքիչը կը յիշէ, վերաբերութիւն չունին ան Առաքելոց կանոնաց հետ՝ որոնց ծագումը յունական է եւ կ'ըսուին "ի ձեռն Կղեմայ" (per Clementem)։ Ասիկայ ուրիշ բան չէ, բայց եթէ "Վարդապետութիւն Առաքելոցն" ըսուած ծածկական (apocryphe) գրուածքը՝ որուն արաբացի թարգմանութեան գլուխները, Վանսլէպէն առնելով, յառաջ բերած էր Պիքքէլ գերմանացի ի Պատմ. եկեղ. իրաւանց (Bickell, Geschichte des Kirchenrechts, Giessen, Հատ. Ա 1843, էջ 178—81) եւ 1856ին Վիեննա՝ Լակարտ (գերմանացի) առջի անգամ ասորերէնը հրատարակեց[1], եւ վերջապէս Լոնտոն 1864ին Cureton ուրիշ լաւագոյն ձեռագրէ մը հրատարակեց անգլիական թարգմանութեամբ մէկտեղ[2]։ Կը կարծենք՝ որ գերմանացի գիտնականը (Լակարտ) զուր ջանացած է (էջ 89—95) այն "Վարդապետութեան" յունարէն սկզբնագիր մը վերականգնելու։ Ասիկայ ստուգիւ Արեւելեան կողմերուն բոլորովին սեպհական կտոր մը է, որն որ կրնայ յունարէն գրուած Առաքելոց կանոններուն իբրեւ համապատասխանող բան մը բռնուիլ, առ. ուշն՝ չորրորդ դարուն վերջերը արդէն գրուած պիտ'որ ըլլայ, դեռ. Ծննդեան եւ Յայտնութեան ցայն վայր միացեալ տօները Արեւելից նահանգին Հռոմէն եկած առաջարկութեան համեմատ իրարմէ չզատուած։ Մէջը պարունակուած եկեղեցական Բարեկարգութիւնը բոլորովին օրէ-էլէօն գոյն ունի, բառ անձկագոյն նշանակութեան ստ բառին, օրինակի աղագաւ՝ Զ. կանոնին մէջ։ Յայսօր տիրող Հայ տումարին գլխաւոր գծագրութիւնը կը

[1] P. Lagarde, Reliquiae juris ecclesiastici antiquissimae. Lips. 1856. I, p. 32—44.

[2] Cureton, Ancient syriac documents. Lond. 1864, p. 24—35.

պարունակեն Ա, Ե, Է, ԺԱ, ԼԱ կանոնները։ Վերջապէս բոլորովին ԼԴ գլուխը մինչեւ վերջը, այսպէս ըսենք, արեւելեան Ծածկականներու (apocrypheներու) յատուկ գաղափարները կ'երեւցնէ։

Իրօք առաջինկայ հայերէն թարգմանութիւնն ալ ուրիշ տեղէ եկած չէ, բայց եթէ ասորերէնէ։ Անմիջապէս ասորական-հայկական ձեւերն աչքի կը զարնեն, օրինակի աղագաւ՝ "Աջ քահանայութեան" փոխանակ ըսելու "ձեռնադրութիւն" (χειροθεσία), թէպէտ եւ առ վերջինը նոյն իսկ ասորերէնէ եղած թարգմանութեանց մէջ ալ կը մնայ՝ ան բառերուն կարգէն ըլլալով որոնց համար վերը խօսեցանք։ "Առաջի ազգացն օտարաց՝ զոր ոչ գիտեմք զլեզուս նոցա, զիարդ կարեն նոքա լսել մեզ՝ զոր ոչ գիտեն զլեզուս մեր" ըսելը կատարեալ ասորականութիւն մըն է։

Անհնարին ընդդիմութիւն մը չկայ՝ որ յունական կանոնաց թարգմանիչը միանգամայն ասորի կանոններն ալ հայերէնի դարձուցած ըլլայ. շատ առանձ երկլեզու հայրենակիցներ ունեցած ենք հինգերորդ դարու մէջ, որոնք նախ առաջ եւ աւելի հիմնովին ասորերէն գիտնալով՝ ետքէն քիչ շատ յունարէն ալ սորված են։ Սակայն մեր Հաւաքիչը յայսմ թարգմանութեան պէտք ունեցած չէ։ Այս "Առաքելոց վարդապետութիւնը" կամ "Առաքելական կանոնք" իբրեւ հայերէն՝ Հայոց եկեղեցական պատմութեան մէջ իրեն կանոնաց Հաւաքումէն երիցագոյն է եւ հինգերորդ դարուն առջի կէսին կը վերաբերին։ Ասոր թարգմանիչը շատ շուրջ, շատ ճիշդ է, թէպէտ ասորերէնէ թարգմանած ըլլալու քանի մը նշաններ կու տայ, բայց անոնք շատ քիչ են. ընդհանրապէս՝ պարզ, վճիտ, քերականական եւ սովորական ձեւերու հաւատարիմ հայերէն մ'ունի։

Բայց մեր Հաւաքիչը՝ զանիկայ պարզապէս ընդօրինակելով եւ իրեն ժողովածոյքին գլուխ

զետեղելով գո՞ն չ՚ըլլար․ դարձեալ՝ կրկին կերպով՝ իր ձեռքը հոն կը տեսնենք։

Նախ իրեն բառարանը (lexicologie) զինք կը մատնէ, օրին․ աղագաւ՝ "ցոփասիրտ„ (կան․ ԻԲ․) "ձեռնադրել յօծումն քահանայութեան„ (Յուլր․) "օծումն քահանայութեան ընկալեալ„ (կան․ ԻԴ․) "ընդհանրական եկեղեցւոյ սրբոյ„ (2 անգամ, Յուլր․) "կարգեցին եդին„ (համեմատէ Շահապ․ Յուլր․ վերջին տողը)․ "մերձեցուցանել„ յերիցութիւն (կան․ ԺԲ․) "զի մի կարգեալքն ընդ նոքօք թիւրեսցին„ (կան․ ԺԲ․) "կուսան„ (կան․ ԼԲ)․ "համարձակ լիցի վասն չինելոյ„ (ԼԲ․) "կցորդ լինէին նեղութեանց նոցա„ (Սորին՝ "նեղեալ ընդ նոսա„ ԼԴ․) "զուգեալ„ ամուսնութեամբ (կան․ ԼԳ․) "որբութեամբ զուգել„ (կան․ ԼԳ․) "առնեն տօն... ամենայն քաղաքն Հռովմայեցւոց„ (ԼԴ վերջերը․) "Քահանայապետ„ (եպիսկոպոս), համեմատէ Շահապ․ Յուլր․ (2 անգամ) եւ այլն։

Երկրորդ ուրիշ ունակութիւններէն կը ճանչցուի, այսինքն կարճ կամ երկայն յաւելուածներով՝ որոնք երբեմն յարմար եւ երբեմն անյարմար են տեղւոյն եւ որոնց նիւթը հաստատակօրէն Սուրբ Գրքէն է[1], ինչպէս նաեւ իրեն սիրական գաղափարներովը։ Ինչպէս՝ Շահապիվանի կանոններէն ինչ ինչ յունական կանոնաց մէջ բերուած խոթուած տեսանք, սանկ ալ քանի մը բան կամ բացատրութիւն կը գտնենք երկուքէն ալ հոս ատորի կանոնաց մէջ կրկնուած, եւ կամ թէ հոս եւ թէ հոն հաստատակաբար կը գտնուի՝ առանց սորի բնագրէն հարազատութեան երաշխաւորութիւն մ՚ըլլալու, օր․ աղագաւ՝ կան․ Ը․ կ՚ըսէ "Նախանձաւորն Հեղիաս ի ձեռն քառասնօրեայ պահոցն... կառավարեալ աստատակէր յերկինս„ եւ այլն, որ կը համեմատի Շահապիվանի Ժ․ կանոնին խօսքերուն։

---

[1] Տես անմիջապէս աս Առաքելական կանոնաց վերնագրին մէջ։

Երբ որ ԺԹ Առաք. կանոնը կ'ըսէ. "ի միաբանութենէ ամենեցուն եւ քարոզութիւնն հաւատարիմ լիցի եւ հաւատքն հաստատուն, որպէս եւ Փրկիչն ասէ, թէ ուր երկու կամ երեք ժողովեալ են վասն իմ, անդ իմ եմ ի մէջ նոցա", կէս մը կը համեմատի Շահապիվանի ԺԸ. կանոնին խօսքին, կէս մ'ալ գրեթէ բառ առ բառ նոյն է Ղաւոդիկեայ ժողովոյն ծայրը [illegible] աւելցուած մասին սա խօսքին "Որպէս եւ փրկիչն ասէ թէ Ուր" եւայլն: Դարձեալ երբ որ Կան. Ի. կ'ըսէ. "Եթէ եւ յանարգաց ոք իցէ ի քահանայապետութիւն եւ ի գլխաւորութիւն կացուսցեն միջնորդ լինել ընդ մարդիկ եւ ընդ Աստուած", կը յիշեցընէ Շահապիվանի ԺՁ. կանոնին խօսքը: Նոյնն ըսելու է նաեւ Կան. ԻԵ. "...Արհամարհանօք կալցի զքահանայն թէ եւ կարի ոք անարժան եւ յանարգաց իցէ," Շահապիվանի ԺՁ Կանոնին սա խօսքին՝ "զանարժանութեան, եթէ (եւ) կարի յանարգաց ոք իցէ եւ յարհամարհելոց" համեմատելով: Դարձեալ ԼԳ կանոնին սա խօսքը "սոյնպէս եւ սահմանեալ առաքելական կանոնաց . . . մինչեւ ի չորրորդ զարմն չունի իշխանութիւն առնել" կը համեմատի Շահապիվանի Կան. ԺԳ: Առ առաքելական կանոնաց մէջ եղած փոխադրութիւններով կրնար ապաքէն ցուցուիլ որ Շահապիվանի կանոնք ստուգիւ Առաքելական կանոնաց համաձայն դրուած են, ինչպէս որ ժողովոյն Հայրերը կ'ուզէին մեր Հաւաքչին պատմածին համեմատ: Վերջապէս "Կենարար" բառին յաճախ գործածութիւնը. սա "որպէս աստ յինձ Կենարարն" — "որպէս եւ աստ յն Կենարարն" (ԼԴ.) ասորերէն բնագրին մէջ հիմ չունեցող յաւելուածներ են՝ որոնք Շահապիվանի կանոնաց եւ Յունական Կանոնաց մէջ ալ կը պատահին: Առանց սա Հաւաքման երեք մասանց մէջ բառից եւ խօսից շրջան մը կը դառնայ:

Ի վերայ այսր ամենայնի բոլորին վրայ նայելով մեր Հաւաքչին ըրած այլայլութիւնները, մանաւանդ թէ ոչ այնչափ այլայլութիւն որչափ յաւելուածները, ոչինչ են։ Անոր համար՝ Լակարտէն եւ Գիւրըթոնէն հրատարակուած տարի բնագիրը հայ թարգմանութեան հետ համեմատելով հետեւեալ կէտերը երեւան կու գան. այսինքն՝

1. Հիմնական տարի բնագիրը տեղ տեղ քաղուած է, ոչ ամէն կանոն ունի եւ ոչ ունեցածը միշտ ամենայն մասամբ ամբողջ։ Ուստի հայ թարգմանութիւնը աս "Առաքելոց վարդապետութեան" հնագոյն եւ ամբողջագոյն բնագիրն ունեցած է։

2. Սակայն ինչ որ հիմնական տարի բնագրէն աւելի է հայերէնին մէջ, Երբեմն բնագրին չի վերաբերիր։ Թէ երբ աս դէպքն է, ընտրելու որոշ միջոցները բաւական գիտենք։

Առաջիկայ հրատարակութեան մէջ կը ջանանք ամէն բան զանազանել։

Աս "Առաքելոց վարդապետութիւնն" ով թարգմանած է, չենք կրնար գիտնալ. բայց ինչ բաներ անոր հետ մէկտեղ նոյն թարգմանչէն թարգմանուերեն, գիտենք։ Անցեալ տարի առիթ ունեցանք հայերէն ձեռագիր մատենից մթերքներուն մէջ այլեւայլ կտորներ տեսնելու՝ որոնք ուրիշ բան չեն եւ չեն կրնար ըլլալ, բայց եթէ տարի աղբիւրներէ յառաջ եկած ծածկական (apocryphe) գրուածներ՝ միեւնոյն գրչով հայերէն թարգմանուած Ե դարուն առջի կէսին. որոնք չէ թէ միայն հայերէն լեզուաւ իրարու կ'աղաղակեն, հապա իրենց ներքինն ալ նոյն գաղափարաց վրայ շինուած է, միեւնոյն արուեստանոցը կ'ակնարկէ։ Ասանկ կտոր մըն է Փարիզու կայսերական մատենադարանին մէջ (anc. fonds 88, Մատենին Գլ. ԼԳ.) Ղեբուբնայի (չէ թէ Ղերուբնայի) ծածկական գրութիւնը սա վերնագրին տակ՝ որն որ անվրէպ

Հին թարգմանչին ձեռքէն ելած է "Թուղթ Աբգարու„. կը գործածէ Մ. Խորենացի Հայերէնը, որուն ասորերէնը՝ Եւսեբիոս (Եկ. Պատմ. Ա. Դպր. ԺԳ.)։ Առաջին անգամ ասոր մտադրութիւն ըրած էր Հ. Սուքիաս Պարոնեան Վենետկոյ Մխիթարեան ուխտէն վերջի տարիներս։ Անգէտ էր ասկից Cureton, երբ որ վերոյիշեալ գիրքին մէջ զՂեբուբնա առջի անգամ ըլլալով ասորերէն հրատարակեց անգղիական թարգմանութեամբ մէկտեղն, բայց ասիկայ շատ կրճատ է։ Աս տարի ամբողջը հայերէնէն թարգմանած հրատարակեց գաղղիերէն Յովհ. Էմինեան պարոնին Լանկլուայի ձեռօք հրատարակուած "Հայ պատմագրաց„ Ա. Հատորին մէջ¹։ Սոյն խմորէն է ուրիշ կտոր մը Վենետկոյ "Ա. կանոնագրոց„ վերջերը (էջ 318) իբրեւ "Թուղթ զոր առաքեաց Յակոբոս եպիսկոպոս Երուսաղէմի առ Կոդրատոս զի ցուցցէ (սա) նմա թէ զինչ (հրաման) ետ Տիբերիոս կայսր վասն Հրէիցն որ ի խաչ հանին զՔրիստոս։„ Ինչպէս նաեւ Վիեննայի Թիւ 2 ձեռագիր մատենին մէջ՝ "Յիշատակարանք որ եղեն վասն Քրիստոսի առաջի Պոնտացւոյ Պիղատոսի իշխանի Հրէաստանի„։ Աս վերջինը վերո-

---

¹ Կը լսենք՝ որ Հ. Ղեւոնդ Ալիշան Հայերէնը պիտի տպագրէ՝ կարեւոր ծանօթութեամբք։ Նոյնը ուրիշ ձեռագրէ մը Երուսաղէմ Յակոբեանց Վանքին տպարանէն տպուած ծանուցուեցաւ լրագրաց մէջ, բայց դեռ չտեսանք։

— Ըստ այսմ հեղինակին՝ ասոնք գրած ժամանակ՝ տակաւին չէր տեսած Հ. Ղ. Ալիշանի հրատարակութիւնը (Վենետ. 1868) եւ իւր գաղղիերէն թարգմանութիւնը՝ նոյն տարին։ Երուսաղէմի տպագրութիւնն ալ 1868 տարեթիւը կը կրէ։ Իսկ Լանգլուայի հաւաքման մէջ եղած թարգմանութիւնը (I, 315–328) ամբողջական չէ բոլորովին, բոլոր վարդապետական մասերը դուրս ձգուած ըլլալով։ Բաց աստի հեղինակին ծանօթ էր միայն Curetonի հրատարակած ասորին, որ լիակատար չէր. ամբողջը Լոյս հանեց յետոյ G. Phillips (Lond. 1876։) Նորագոյն բազմաթիւ քննութիւնքն չենք յիշեր։

յիշեալ Փարիզեան մատենին մէջ "Աբգարու Թղթոյն" կամ "Վարդապետութիւն Թադէի" անմիջապէս իբրեւ Գլ. ԼԴ. կը յաջորդէ։ Ասոնք երկուքը մէկէն գտած է Cureton անոնց ասորերէնն ալ միեւնոյն մատենի մէջ։

Մէկ կողմանէ ասոնց հայերէն լեզուին նոյնութիւնը եւ մէկալ կողմանէ՝ գաղափարաց խնամութիւնը ցուցնելու համար՝ ահա

## ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ՄԸ

Ա = Առաքելոց Վարդապետութիւն, Բ = Թղթոյն Աբգարու, Գ = Թղթոյն Յակոբայ։

1. Ա. Վարդապետութիւն առաքելոցն զկնի վերանալոյն Քրիստոսի առ Հայր իւր.

— զկնի աւուրց հանել. կան. ԼԱ.—որ զկնի իւրեանց լինելոց իցեն, ԼԴ.

— Բ. Յետ վերանալոյ Քրիստոսի յերկինս առ Հայր իւր։ — Յորժամ վերացայց յերկինս առ Հայր իմ. — եւ զվերանալ նորա առ Հայր իւր յերկինս. — զկնի վերանալոյն նորա. — զ(կերպարանս) վերանալոյ յերկինս առ Հայր իւր։ Հմմտ. Զկնի ընթեռնլոյ զթուղթսն. — եւ զկնի այսոցիկ կամեցաւ ... եւ զկնի աւուրն այնորիկ հրամայեաց Աբգար ...։

— Գ. Զկնի վերանալոյն Տեառն մերոյ առ Հայր իւր։

2. Ա. Յամի երեքհարիւրորդի երեսներորդի իններորդի իշխանութեան Յունաց ի թագաւորութեան Տիբերեայ Կայսեր Հոռոմոց։

— Բ. Յամին երեքհարիւրորդի քառասներորդի թագաւորութեան Տիբերիայ Կայսեր Հոռովմոց ...

— Գ. չկայ։

3. Ա. Որ օր չորք էր մարգաց ամսոյ ...

— Բ. Որ օր երկոտասան էր Տրեայ ամսոյ ... որ օր ԺԴ. էր Արեգ ամսոյ ... որ օր ԺԲ. էր Ահկի ամսոյ ... որ օր չորեքտասան էր Մարերի ամսոյ.

— Գ. չկայ։

4. Ա. Ինմին իսկ ի յայմմ աւուր ...։ — Զայն իսկ զայս օրէնս պատուիրէին զառաքելոցն. ԼԴ։

— Բ. Զայն իսկ Քրիստոս քարոզեմք եւ աւետարանեմք. — Վասն սորին իրացս իսկ այսոցիկ. — զայն իսկ զայս գիրս։

— Գ. չկայ։

5. Ա. Եւ գոհանային ցնծալից ուրախութեամբ...

— Բ. Եւ գոհանային ցնծութեամբ.

— Գ. չկայ։

6. Ա. Եւս առաւել ուրախութիւն լիցի, յորժամ...: Առաւել եւս ուրախ լինէին, ԼԴ. -- առաւել եւս (= որչափ եւս առաւել) առաջնորդեսցէ նոցա. ԼԴ.

— Բ. Առաւել եւս տեսանէին զբազմութիւն նշանաց որ լինէին յետ վերնալոյ նորա: — Եւ նա իսկ թագաւորն եւս առաւել ուրախ եղեալ յայսմ:

— Գ. չկայ:

7. Ա. Մինչդեռ յայսմ մտածման էին աշակերտքն Տեառն:

— Բ. չկայ:

— Գ. Մտքաւ էին ընդդէմ Հրէից եւ հեթանոսաց: — Մտքաւ էին ի գրոց մարգարէից ընդ որդիս ժողովրդեանն իւրեանց:

8. Ա. Զօրութիւնս սքանչելեացն եւ զնշանս եւ զբժշկութիւնս . . . զայսպիսի նշանս եւ զմեծամեծ զօրութիւնս . . . եւ զնշանս եւս զմեծամեծս եւ զզօրութիւնս՝ զոր . . . ԼԴ. — Եթէ ոյր անուամբ առնեմք զնշանս եւ զբժշկութիւնս, ո՛վ ուսուցանէ նոցա. Յ—ՎԲ:

— Բ. Զնշանս եւ զսքանչելիս եւ զօրութիւնս մեծամեծս եւ զարմանալիս: — Թէ զիարդ ուսուցանէր եւ կամ՝ ոյր անուամբ բժշկէր եւ կամ ո՞րով զօրութեամբ առնէր նշանս եւ սքանչելիս. — զամենայն նշանսն եւ զսքանչելիսն Տեառն եւ զփառաւորեալ զօրութիւնս նորա... եւ թէ որպէս առնէր նա զօրութիւնս մեծամեծս նշանս եւ զօրութիւնս եցոյց նոցա:

— Գ. Իբրեւ Տէրն առնէր նշանս եւ զարուեստս եւ սքանչելիս:

9. Ա. Զձեռնադրութիւն քահանայութեան (փխ. ընկալու՝ զքահանայութիւն). — զի ընկալան զաջ քահանայութեան.

— Բ. Զձեռնադրութիւն քահանայութեան ընդունէին ի նմանէ բազումք. — Ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան (ասորին՝ աջ քահանայութեան էին)։

— Գ. չկայ:

10. Ա. Նովին պարգեւօք . . . ի նմին աւուր եդին նոքա կանոնս եւ կարգս եւ օրէնս. — արքունական օրէնս եւ կանոնս. — զկարգս եւ զօրէնս. — զկարգս եւ զօրէնս. — պէտք ինչ էին կարգաց եւ օրինաց, ԼԴ. — զկարգս եւ զօրէնս զայսոսիկ. ԼԴ:

— Բ. Եւ ըստ կարգաց եւ օրինաց կատարեսցուք:

— Գ. չկայ:

11. Ա. Որք միաբանէին աւետեաց աւետարանին, քարոզութեան նոցա, եւ արդար եւ ճշմարիտ ուսմանն եւ հաւատարիմ վարդապետութեան իւրեանց:

— Բ. Եւ վասն ճշմարիտ քարոզութեան նորա:

— Գ. չկայ:

12. Ա. Զխորհուրդ սուրբ մարմնոյ եւ արեան իւրոյ. — Խորհուրդ տէրունական մարմնոյ եւ արեան Տեառն:

— Բ. չկայ:

— Գ. Ի ձեռն խորհրդոյ մարմնոյ եւ արեան իւրոյ:

13. Ա. Ի սուգ եւ ի տրտմութիւն.

— Բ. Եղեւ սուգ եւ տրտմութիւն.

— Գ. չկայ:

14. Ա. Եւ արասցեն տօն յիշատակի վերացման նորա առ Հայր իւր (յերկինս) փառաւորեալ:

— Բ. Իջեալ ինքն միայն եւ ելեալ հանդերձ բազմօք առ Հայր իւր փառաւորեալ. — եւ վասն փառաւորեալ թագաւորութեան նորա, զոր խոստացաւ յաշխարհի:

— Գ. չկայ:

15. Ա. Ընկալցի ախորժելով զկապանսն, ԻԳ:

— Բ. Ընդունէին զբան նորա ախորժելով:

— Գ. չկայ:

16. Ա. Կարգեցին առաքեալքն ... եթէ յեկեղեցւոջ գիրս ընթերցցին հին կտակարանք, օրէնք եւ մարգարէք, եւ աւետարանք ... եւ այլ աւելի քան զայս մի ընթերցցի ի բեմի: (“Ընթեռնուլ„ այսչափ յաճախ գործածուած՝ յունական կանոնաց թարգմանչէն չէ:)

— Բ. Բայց զգիրս զորս ընթեռնուցուք յեկեղեցւոջ ժողովրդեան առաջի՝ զարարածս եւ զմարգարէս եւ զաւետարան ... զայն իսկ զայս գիրս ընթերցջիք յեկեղեցւոջ Քրիստոսի եւ այլ աւելի քան զսոսա մի ընթեռնուցուք:

— Գ. չկայ:

17. Ա. չկայ:

— Բ. Եւ տուն նաեւ զպատճէն (= զպատասխանի) թղթոյն. զոր բերին աստի:

— Գ. Եւ զպատճէն թղթոյս զոր առաքես առ մեզ, թողցես յեկեղեցւոջն Եփեսոսի. — Ակն ունիմ զի գրես ինձ զպատճէն (= զպատասխանի) բանիցս այսոցիկ ի ձեռն Արիսդիտեայ:

18. Ա. Նիկոդեմոս եւ Գամաղիէլ գլխաւորք ժողովրդեանն ... Այլ եւ Յուդա եւ Ղեւի եւ Փեռի եւ Յովսէփ եւ Յուստոս՝ որդիքն Աննայ եւ Կայիափայ եւ Աղեքսանդրոսի քահանայիցն գային ի գիշերի ...: (“Զարչարանաց յիշատակարանին„ մէջն ալ իրենց խաղն ունին “Ղեւի եւ Փեռի:„)

— Բ. Ի տան Գամաղիէլի քահանայապետին Հրէից. — զԳոդողիա որդի Կայիափայ եւ զՅուդայ որդի Աբաթողոմայ՝ զգլխաւորս եւ զհրամանատարըս Հրէից:

— Գ. Գամաղիէլ աւագ քահանայից նոցա. — բայց Փիլիպպոս եւ Սենիկոս եւ Յոստոս եւ Ղեւի եւ Ափրէ (գուցէ՝ Փեռի) եւ Յուդայ դպիրք անուանիք Հրէիցն հանդերձ այլովք ընկերօք իւրեանց:

19. Ա. Որդիք քահա-

նայապետիցն յարեցան Առաքեալսն։

— Բ. Այդ կերպարանագործ եւ Փղոա... յարեցան յԱյդ Առաքեալ։

— Գ. չկայ։

20. Ոչ հրապարակին համակրութիւնք առաջի նորա. ԼԳ։

— Բ. չկայ։

— Գ. Զի գիտացեն եւ հեռաւորք զնենգութիւնս Հրէից, որ ոչ հրապարակային։

21. Ա. Զի տեսանէին զառաքելոցն թէ զոր ինչ ուսուցանէին բանիւք, զնոյն եւ արդեամբք ցուցանէին առաջի ամենայն ուրուք։

— Բ. Քարոզեմք յայտնի առաջի ամենայն ուրուք. — քանզի այսպէս պատուիրեաց մեզ Քրիստոս, զոր ինչ բանիւ քարոզեմք, զնոյն եւ արդեամբք կատարեսցուք առաջի ամենայն ժողովրդեան։ — Զոր ինչ ասէին եւ ուսուցանէին... ինքեանք գործովք ցուցանէին յանձինս իւրեանց... եւ զոր բանիւքն ասէին, զնոյն եւ արդեամբք կատարէին։

— Գ. չկայ։

22. Ա. Ըստ նմին օրինակի թուեաւ վաղվաղակի քարոզութիւն աւետարանին ընդ ամենայն տիեզերս։

— Բ. Որպ թուուցեալ աւետարանն ընդ ամենայն տիեզերս։

— Գ. Զի ետես թէ... որպէս թռեաւ աւետարանն նորա ընդ ամենայն տիեզերս։

23. Ա. Կարգեցին կացին քահանայապետք, գլուխք եւ առաջնորդք քարոզել եւ աւետարանել եւ ուսուցանել...

— Բ. Լինէին քարոզք եւ աւետարանիչք. — քարոզեմք եւ աւետարանեմք. — զի լիցուք մեք քարոզիչք եւ աւետարանիչք։

— Գ. չկայ։

24. Ա. Սիմոն Պետրոս վէմն հաւատոյ... անդրանիկն Առաքելոց. Յովհ. — Նախ Սիմոնի վիմի. Վերջ.

— Բ. Իբր Պետրոս ի Հռոմ քաղաքի մի աշակերտացն Յիսուսի, որ էր գլուխ ամենեցուն. — առաջի Սիմոնի վիմի։

— Գ. Առ Սիմոնի վիմի։

25. Ա. Յակոբայ առաքելոյ որ եղեւ հրամանատար եւ առաջնորդ (= եպիսկոպոս) եկեղեցւոյն որ յԵրուսաղէմ. — Մի ասցի առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջ (այնպիսին)։

— Բ. Յակոբայ որ էր մեր առաջնորդ եւ հրամանատար յեկեղեցւոջն որ շինեալ էր յԵրուսաղէմ. — Այդ եղեւ առաջնորդ եւ հրամանատար... աթոռոյ Այդէի Առաքելոյն. — Որ էին գլխաւոր եւ հրամանատար քաղաքին։

— Գ. Ողջոյն տուր... եկեղեցեաց ամենեցուն որ այդր են եւ քահանայից եւ առաջնորդաց նոցա։

26. Ա. չկայ։

— Բ. Հանդերձ պլովք

ընկերովք քովք. — հան-
դերձ այլովք ընկերովք ի-
րեանց:

— Գ. Հանդերձ այ-
լովք ընկերովք իւրեանց:

27. Ա. Եւ կողմանք՝ որ
շուրջ զնովաւ են. (տես
ԼԴ. Է եւն:)

— Բ. Եկեղեցւոյն որ
յԵրուսաղէմ եւ ի քաղաքսն
որ շուրջ զնովաւ են. —
ընդունէին զվարդապետու-
թիւն նորա ամենայն աշ-
խարհն Միջագետաց եւ ա-
մենայն կողմանք՝ որ շուրջ
զնովաւ.

— Գ. չկայ:

28. Ա. ՅԱդդէ Առա-
քելոյ որ է մին յեւթանա-
սուն առաքելոցն. — ՅԱդ-
դէ կերպատագործէ յա-
շակերտէ Թադէի (տես՝
Ադդէի) առաքելոյ որ բժշ-
կեաց զԱբգար թագաւոր
Ուռհայի:

— Բ. Առաքեաց առ
Աբգար թագաւոր զԱդէ
առաքեալ, այն՝ որ մի յեւ-
թանասուն եւ երկուցն էր:
— Բայց Ադդէ կերպատա-
գործ . . .:

— Գ. չկայ:

29. Ա. Յուսամք ի հո-
գաբարձութիւն նորա վասն
մեր: — Գրեաց հոգաբար-
ձութեամբ:

— Բ. Բազմացի հո-
գաբարձութիւն առ ոչ-
խարս. — Այս իսկ հոգա-
բարձութիւն լիցի ձեզ
զամենայն աւուրս կենաց
ձերոց:

— Գ. չկայ:

30. Ա. Ըստ արժանի
իւրեանց գովութեանն:

— Բ. Ըստ արժանի
պատուոյ նոցա:

— Գ. չկայ:

31. Ա. Վասն զի յաւուր
միաչաբաթւոջ եղեւ լինե-
լութիւն արարածոց:

— Բ. Վասն զի վար-
դապետութիւն մի եւ լե-
զու մի թագաւորէ. —
վասն զի առն ամպարշտու-
թիւն է. — վասն զի
վտահ եմ:

— Գ. չկայ:

32. Ա. չկայ:

— Ա. Ընտրողքն յեր-
կնաւորաց. — երկրպագեա-
ցեն արարածք:

— Գ. Ահա երկրպագի
յամենայն հեթանոսաց:

33. Ա. Որդւոց ժողո-
վրրդեան:

— Բ. Որդւոց ժողո-
վրրդեան իւրեանց:

— Գ. Ընդ որդիս ժո-
ղովրդեանն իւրեանց:

34. Ա. Ընկեր եւ գոր-
ծակից (տես:)

— Բ. չկայ:

— Գ. Սաւղոս որ եղեւ
ընկեր եւ գործակից:

35. Ա. Խաչահանուենքն
— խաչահանուացն —
(տես:)

— Բ. Նոյնպէս տես:

— Գ. Ցուցանես զխա-
չահանուացն ի գրոց վկայ-
ութիւն:

“Յակոբայ առ Կոդրատոս[1]„ թղթոյն մէջ կ'ըսուի՝ “Յայտնի եղեւ նենգութիւն նոցա առաջի Պիղատոսի դատաւորի եւ խոստովան եղեն Աննա եւ Կայիափա եւ Բենիամին եւ Նախմայէլ գլխաւորք ժողովրդեանն իւրեանց թէ որպէս եւտուն կաշառ . . . ։ Քանզի հազարապետ էր Պիղատոս Կայսեր, գրեաց եցոյց զամենայն զոր գործեցին Հրեայքն ընդ դատաստան ընդ Տեառն մերոյ . . . ։ Փոյթ լիցի քեզ այսուհետեւ, եղբայր, զի լուիցես եւ ցուցցես թէ զինչ հրաման տայ կայսրն վասն այդորիկ, զի աւադիկ առ ձեզ է արքայ յիտալիա։„

Ուրեմն աս թուղթը կախում ունի վերյիշեալ “Յիշատակարաններէն„, այսինքն իբր թէ Պիղատոսի առ Տիբեր կայսր գրած երկայն տեղեկութենէն՝ զորն որ in loco հարցաքննութեամբ առայած ըլլայ, եւ որն որ կը սկսի “Յամի ութուտասներորդի իշխանութեանն կայսեր թագաւորին Յունաց„. ինչպէս որ “Առաքելոց վարդապետութիւնն„ ալ կ'ենթադրէ Թադէի կամ Ադդէի վարդապետութիւնը„ կամ “Աբգարու թուղթը„։ Ասոնց ամէնը մէկէն մէկ գրչէ թարգմանուած ըլլալուն ամենեւին տարակոյս չի կրնար ըլլալ. բայց եթէ մէկ ձեռքէ շինուած ըլլալուն իրաւամբք կրնայ կասկածուիլ, ստուգիւ մէկ դպրոցէ ըլլալուն ոչ երբեք։ Աս ծածկականներու հոսանքը հինգերորդ դարու սկիզբները Եդեսիայի դպրոցէն՝ ուր դեռ կը յաճախէին մերինոնք, մեզի քալած եկած է։

Ահաւասիկ աս եւ այսպիսի “Առաքելական կանոններով„ է՝ որ կը լրանայ Հայաստանի Ե դարուն երեքմասնեան (tripartita) կանոնաց ժողովածոյքը ունենալով իր մէջը՝ 1. Առորէ՝ Կանոնք

1 Անշուշտ Կոդրատոսը կամ Կուադրատոսը՝ Ադրիանու կայսեր Ապաքանութեան գիր (apologia) տուող Կուադրատոսը կ'ուզէ որ ըլլայ՝ մեր թղթոյն հնարիչը։ Աս ծածկականներուն հեղինակները, ինչպէս կը տեսնենք, ժամանակագրութեան համար շատ հոգ չեն ըներ։ Ասանկ է Ղերուբնեան ալ։

Առաքելոց, ԼԴ. — 2. Յունական՝ ա. կանոնք Նիկիոյ Ի. բ. կանոնք Անկիւրայ. գ. կանոնք Կեսարեայ. դ. կանոնք Նիոկեսարեայ. ե. կանոնք Գանգրայ. զ. կանոնք Անտիոքայ. է. կանոնք Ղաւոդիկեայ ԾԹ. — 3. Հայ՝ կանոնք Շահապիվանի Ի։ — *Ասոր ըստ մասին թարգմանութեան եւ ըստ մասին հաւաքուելուն՝ եթէ տարին ճշդիւ չենք գտներ, կրնանք տարիները մերձաւորապէս գըտնել, եւն։*



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տամի, Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թարգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8' Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թարգմ. Ոսոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թարգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8 Երես՝ Ժ+533 (1 գընկատիպ.): Ֆր. 4.50

